# ԵԶՆԻԿ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԾԷ.

# ԵՂԻՇԷ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1909.

# ԵՂԻՇԷ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

ԲԱԲԳԷՆ Ծ. Վ. ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ

Ի ԴՊՐԵՎԱՆՈՒՑ

---

*Պատմութիւնը գիտութիւններուն ամէնէն դժուարն է։*
*Մինչեւ այն հաւատքը ունեցած եմ՝ որ պատմական գիտութեան սկզբնաւորութիւնը տարակուսելով, ստուգելով, հետազօտելով կ'ըլլայ։*

Ֆիւսթէլ տը Գուլանժ

---

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1909.

# ԶՕՆ

## ՍԱՍՆՈՅ ՀԵՐՈՍՆԵՐՈՒՆ

---

Վարդանանց պատմութիւնը հայ զգացումներու հաւատարմութեան եւ հերոսութեան ցնցիչ մէկ դրուագն է։

Այդպիսի դրուագի մը յիսնութեան նուիրուած այս գիրքը կը ձօնեմ՝ Սասնոյ քաջերուն, Սասնոյ ֆէտայիներուն, որոնք բոլոր Մարօնի, Վարդաններու այդ միշտ գեղեցիկ, միշտ հիանալի երկրին վրայ գուրգուրացին անկեղծ հայրենասիրութեամբ՝ ՍԵՐՈԲԻ եւ ԱՆԴՐԱՆԻԿԻ նման անմահ հերոսներու շունչով։

ԲԱՐԳԷՆ ՎԱՐԴԱՊԵՏ

ԳԵՐԱՊԱՏԻՒ

# Տ. ՄԱՂԱՔԻԱ ԵՊՍ. ՕՐՄԱՆԵԱՆ

**ՎԵՐԱՏԵՍՈՒՉ ԴՊՐԵՎԱՆՈՒՑ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ**

**Կ. ՊՈԼՍՈՅ**

---

*Սրբազան Հայր*

*Ահա այն Քննական Ուսումնասիրութիւնը, որուն ծրագիրը պաշտօնապէս հաստատեց Դպրեվանուց Տեսչութիւնը՝ 1894 Յուլիս 7, ԾՇ. Թարգմանչաց գիշերը:*

*Ինչպէս որ դիտել տուի գործիս Յառաջաբանին մէջ, ծրագիրը կարելի չեղաւ գործադրել իւր սեղմ վիճակին մէջ:*

*Աշխատութիւնս բաւական տաժանելի եղաւ. բայց միանգամայն կրնամ անկեղծօրէն ըսել, թէ լուրջ: Այսօր գոհ եմ. բայց ո՛չ յաւակնոտ:*

*Այս գործը, Սրբազան, պաշտօնապէս վերջինն է անշուշտ մեր ուսանողական պարտաւորութիւններուն: Բայց ես այս գիրքը պաշտօնապէս սա համոզումով կը յանձնեմ Տեսչութեան, թէ բուն սկիզբն է այս մեր աշխատութիւններուն:*

*Պիտի չվարանիմ, Սրբազան, խնդրել, որ այս գործը, ինչպէս նաեւ մեր Քահանայական Ձեռնադրութեան առթիւ գրածները, կեդրոնանային Դպրեվանուց Մատենադարանին մէջ պաշտօնական գործողութիւններու աւարտումէն յետոյ. խնդիր մը, որուն անտարակոյս կը ձայնակցին իմ ընկերակից Հայրեր եւ կը համակրին թէ Պատրիարքութիւնը եւ թէ Տեսչութիւնը:*

*Երախտագիտական զգացումներով լեցուած այս Հաստատութեան հանդէպ, որ կեդրոն եղաւ զարգացմանս եւ ասպարէզիս ընտրութեան,*

*Մնամ որդիական յարգանօք*
*Սրբազնութեանդ*

*ԲԱԲԳԷՆ ԱԲԵՂԱՅ ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ*
*Դպրեվանուց*

*1896 Ապրիլ 9/21*
*Դպրեվանք*
*(Արմաշ):*

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*(Գործիս Ձեռագրին)*

*Եղիշէի Վարդանանց Պատմութեան վրայ հիմնական եւ ամբողջ քննութիւն մը դեռ չէ եղած։ Ուսումնասիրութիւնս իբր թէզ* (thèse) *իւր նոր ծրագրով քայլ մ'է դէպի այդպիսի քննութիւն մը։ Ոսկի գրքոյկին մէջ նկարուած Ե. րդ դարը՝ ուսումնասիրելու հետաքրքրական երեւոյթներ ունի։ Ջանացի հիմնապէս շօշափել այդ ամէնը՝ գործիս Երեք գիրքերովը։*

*Դպրեվանքի Տեսչութենէն պաշտօնապէս տրուած թէզի սեղմ ծրագրի մը համաձայն ուսումնասիրած եմ Վարդանանց Պատմութիւնը եւ դարը։ Բայց անկարելի եղաւ ծրագրին սեղմութեան հաւատարիմ մնալ։ Նիւթի նորութիւնը՝ կարեւոր մանրամասնութիւններ կը պահանջէր։ Ասով սակայն, իրապէս ամբողջ եւ մանրամասն քննութեան մ'ենթարկուած չեղան Վարդանանց պատմութիւնն ու դարը իրենց մէն մի կէտին մէջ։ Այդպիսի աշխատութեան մը համար պէտք է ծանօթագրել թէ Եղիշէն եւ թէ Փարպեցին՝ արդի հայերէնի վերածելով այդ սքանչելի գրուածները։ Եղիշէն մանաւանդ ծանօթագրուելու յարմար գործ մ'է իւր բազմակողմանի հարցերով. իւրաքանչիւր տողը բացատրութիւն մը, ծանօթութիւն մը կը պահանջէ։ Գործիս ծրագրով ուսումնասիրութիւն մը՝ որչափ ալ ընդարձակուի՝ չի կրնար Վարդանանց Պատմութեան ամէն կէտը լման ընդգրկել։*

*Աշխատութիւնս բոլորովին աղքատ մատենադարանի մը հանդէպ ստիպուեցայ ընել։ Ոչ միայն ձեռագիրներ հնագոյն դարերէն մնացած, այլ նոյն իսկ Վարդանանց պատմութեան աշխարհաբար թարգմանութեան կամ նոր հրատարակութեան առթիւ*

գրուածներ, եւ դարուն վրայ ո եւ է տեսակէտով ուսումնասիրութիւն մը՝ անհնար եղաւ ձեռք բերել: Այս վիճակը տաժանելի բան մ'ունէր ինծ համար: Ինչ որ աչքիս առջեւ ունեցայ սակայն, կամ տեղեկացայ անոնց մասին՝ նշանակեցի գործիս ներածութեան մէջ:

Ուսումնասիրութեանս պատմութիւնը պիտի չընեմ. ուսումնասիրողներ շատ լաւ կը զգան պատմագիտական եւ քննադատական խնդիրներու փափկութիւնը: Խնդիրները դիտելու ուղղութիւնս, տեսութիւններս, այդ փափկութեան հաւատարմութիւնն է: Փ. Գուլանժի համոզումով՝ եթէ պատմական գիտութեան սկզբնաւորութիւնը տարակուսելով, ստուգելով, հետազօտելով կ'ըլլայ, քննադատութիւնը, որու գործն է գիտնօրէն տարակուսիլ, ստուգել եւ հետազօտել, հարկ է որ չշեղի իր նպատակէն եւ այդ նպատակին տանող շաւղէն, որպէս զի կարող ըլլայ իր ձեռք բերած արդիւնքը համադրել: Այս եղած է քննական եւ քննադատական ուսումնասիրութեանս նպատակը:

Միայն մասնաւոր կէտ մ'ունիմ դիտել տալու: Եղիշէի աղբիւրներէն՝ առաւելապէս ծանրացայ Փարպեցւոյ վրայ. աղբիւր մը՝ որ առձեռն պատրաստ ունեցած պատմական գրուածներուս ամէնէն անվիճելին է: Այս երկու պատմագիրներու գրուածներուն մէջ իմ մատնանիշ ըրած երեւոյթը պատահական բան չկրնար նկատուիլ: Բառական՝ նկարագրական՝ նմանութիւններ, հետեւելու արուեստական եղանակ մը, այդ երեւոյթը կը յօրինեն: Եզրակացութեանս վրայ ապահով եմ: Այս կէտը դիտել կու տամ յատկապէս անոր համար՝ որ միեւնոյն եզրակացութեան կարելի է յանգիլ առանց Փարպեցու ալ: Երրորդ աղբիւր մը կրնայ լուծել երկու պատմագիրներու (Փարպեցի, Եղիշէ) նմանութիւններու գաղտնիքը. նմանութիւններ, որ կարծես անժխտելի աղերս մը կը դնեն անոնց գրուածներուն մէջ: Երրորդ աղբիւրի մ'ենթադրութիւնը անհրաժեշտ չէ. եթէ ձեռագիրներու շարք մը, մանաւանդ երբ Աբրահամ Խոստովանողի անունով գտնուած գործեր, — որոնց մասին իմ առոյգ ենթադրութիւնները յատուկ նամակով մը հաստատեց Հ. Յ. Տաշեան՝ գիտուն վարդապետը — (Հմմտ էջ 39, 144–5, 150–151 ծն.), լոյս տեսնէ օր մը,

այն ատեն չունէինք միայն գիրի տարբերի. Ճիմնա-կան եզրակացութիւնն այն գիրի մեայ (տե՛ս էջ 212):

Կէտ մ՚ալ: Քննադատական ոգին չնուազեցներ մեր մատենագրութեան արժէքը: Լաւ է իրական արժէքը գիտնալ մեր ունեցած մատենագիրներուն, քան թէ նախապաշարուիլ անոնց վրայ: Եղիշէի անձին նկատմամբ տարակոյսներ յայտնել եւ Վարդանանց Պատմութեան շարագրական տարրները երեւան բերել, նշանակել՝ չստորնացներ գրուածին յարգը. Ոսկի Մատեանը՝ նորէն եւ միշտ ոսկի է. Հարկաւոր չէ, սակայն, գիտնալը թէ ի՛նչպիսի հանքերէ հանուած է այդ ոսկին:

1896 Ապրիլ 6/18 Դպրեվանք:

Բ. Ա. Կ.

---

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

(ԳՈՐԾԻՍ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ)

Այս էջերը անծանօթ չեն բանասէրներուն։ 1905ի Նոյեմբերէն սկսելով մինչեւ 1907ի Դեկտեմբերը՝ ՀԱի մէջ ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ընդհանուր խորագրին տակ պարբերաբար հրատարակուեցան ասոնք։

Այս գիրքը գրուած է 1894—96, իբր աւարտաճառ (thèse) Դպրեվանքէն վարդապետական գաւազան ընդունելու համար։ Իսկ 1898ին արժանացած է Սահակ-Մեսրոպեան Մրցանակին՝ Յովսէփ Իզմիրեանց Գրական Յանձնաժողովի կողմէն, որ գործին քննութիւնն ու գնահատումը յանձնեց Մեծ. Թովմաս էֆ. Թէրզեանի, որուն տեղեկագիրը դրած եմ այս հրատարակութեան վերջը՝ իբր Յաւելուած։

Գործիս գրութենէն մինչեւ ՀԱի մէջ հրատարակութիւնը՝ տասնեակ տարիներ անցած էին եւ մենք անփոփոխ հրատարակեցինք զայն, բացի քանի մը յապաւումներէ, որոնք տեղի ունեցան հրատարակիչներուս փափաքին գոհացում տալու եւ գործիս հրատարակութիւնը աւելի եւս չյապաղեցնելու համար[1]։

---

1 Այդ յապաւումներն են՝ Գրդ Գրքին Երդ, Զրդ եւ Էրդ գլուխները, ուր խօսուած էր սա՛ նիւթերու վրայ.

Մենք կը յուսայինք աւելի կանուխ հրատարակել այս գործը, նոյն իսկ Կ.Պոլսի մէջ, բայց կարելի չէր...: Քանի մը տարի յառաջ, Ս. Էջմիածնի 1600ամեակին առթիւ պիտի կրնար լոյս տեսնել Եղիշէս «Հրատարակուելիք ժողովածուի» մը մէջ: «Այս գործը տարբեր է (էր) ՊԱՏՄԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ» ձեռնարկութիւնից եւ նուիրուած պիտի լինի (լինէր) ոչ թէ տառերի 1500ամեակին, այլ Ս. Էջմիածնի հաստատութեան: Ժողովածուն բաղկացած կլինի հայագիտութեան ամէն ճիւղի վերաբերեալ յօդուածներից եւ ուսումնասիրութիւններից՝ Մայր Աթոռի կարող միաբանների եւ առհասարակ հայ բանասէրների մասնակցութեամբ[1]»: Բայց Ռուսիոյ մէջ Հայ Եկեղեցւոյ կալուածներուն եւ ստացուածներուն գրաւումը՝ ամէն բան խանգարեց Ս. Էջմիածնի մէջ եւ ձեռագիրը Ս. Էջմիածինէն Վիեննա անցաւ՝ Մխիթարեան Մեծ. Հարց տպարանէն հրատարակուելու համար:

ՀԱյ խմբագրութիւնը առաջին յօդուածին գլուխը դրաւ սա ծանօթութիւնը. — «Տասը տարի յառաջ, 1895—1896ին գրուած եւ

---

Հայ եկեղեցին Հինգերորդ Դարուն. Վարդապետութիւն, Խորհուրդներ (Երդ գլ.) Պաշտամունք, Պահք (Զրդ գլ.), Տօնք, Բեմը, Պաշտօնէութիւն, Վանականութիւն, Հայ Եկեղեցւոյ ոգին (Էրդ գլ.):

1 Տ. Գարեգին Վրդ. Յովսէփեանի 1905 Մարտ 15 թուակիր նամակէն: Գարեգին Վրդ. Պատմագիրք Հայոցը Հրատարակող Մասնախումբի անդամներէն է, եւ ինքը ստանձնած է Եղիշէի բնագրին կազմութիւնը Պատմագիրք Հայոցի շարքին մէջ հրատարակելու համար:

վարժատրեալ աշխատութիւն մըն է ներկայ ուսումնասիրութիւնս, զոր այս թիւէն սկսեալ հետզհետէ պիտի հրատարակենք։ Անշուշտ առաջնութիւնն այս գործին է այն բոլոր նորութեանց եւ գիւտերուն մէջ, որոնք այլեւայլ կողմերէ, առաւել կամ նուազ չափով եղան այս տասը տարուան ընթացքին մէջ Եղիշէի մասին — բնականաբար իրարմէ անկախ[1]»։

Այս առանձին հրատարակութիւնն ալ սակայն ուշացաւ քանի մը պատճառներով, որոնց ամէնէն կարեւորն էր Աբրահամ Խոստովանողի գործին հրատարակութիւնը։ Ասիկա շատ կարեւոր էր Եղիշէի աղբիւրներուն մասին աւելի եւս վճռական ըլլալու համար։ Բայց ե՞րբ լոյս պիտի տեսնէր այդ գործը։ Մեծ. Հ. Յ. Տաշեան՝ ուսումնասիրութեանս խմբագրութեան ատեն կը գրէր ինծի Ա. Խոստովանողի գործի մասին, թէ «Մօտերս առաջարկ մ'եղաւ ի լոյս հանելու ամբողջը՝ քննութեամբ. այս ալ մէկ երկու տարիէն յառաջ դժուարաւ ի գլուխ կրնայ ելլել» (տե՛ս էջ 150, ծնթ. 1)։ Սակայն ես դեռ 1906ին այդ ծանօթութեան վրայ

---

¹ Հայր խմբագրութիւնը իր կողմէն շահեկան ծանօթութիւններ ալ գրաւ մա՛նաւանդ Ներածութեան ծանօթութիւններուն քով, գործին պարբերական հրատարակութեան առթիւ, անկախ իմիններէն, եւ ԽՄԲ. ստորագրութեամբ, որոնք դարձեալ հրատարակիչներու կարգադրութեամբ դուրս մնացին այս առանձին հրատարակութեան ատեն։ — Իսկ իմ կողմէ աւելցուած քանի մը նոր ծանօթութիւններ շեղագրով են եւ ստորագրուած Նոր Ն. Հ. համառօտագրութեամբ, եւ տարբերելով թէ՛ պարբերական եւ թէ՛ առանձին հրատարակութեան մէջ։

կ՚աւելցնէի նոր մըն ալ, ըսելով՝ "ցաւալի է որ անկից ի վեր տասնեակ տարիներ անցան եւ Հայ մատենագրութիւնը դեռ բախտը չունեցաւ տեսնելու Խոստովանողի գործին հրատարակութիւնը ոեւէ ձեւի ներքեւ, կամ գէթ ուսումնասիրութիւն մը այս մասին" (Նոյն անդ)։ Այս դիտողութեան վրայ ՀԱի մէջ ՇՆրհ. Գալուստ Դպիր Տ. Մկրտչեան ծանուցանել տուաւ "ի գիտութիւն բանասէրների, որ Աբրահամ Խոստովանողի Արեւելեան Վկայքն արդէն տարիներ յառաջ տպագրուած վերջացած է։ Մնում է ինձ մի երկու տեղեկութիւն աւելացնել ձեռագիրների մասին եւ մի կարճ յառաջաբան. յոյս ունեմ այլ եւս շատ չյետաձգել։ Զանազան արտաքին ու ներքին արգելառիթ հանգամանքներ մեծապէս նպաստեցին այս գործի ուշանալուն" եւն (ՀԱ. 1906, Յուլիս, էջ 223բ)։

Այս ծանուցումէն ետքը ես գրեցի Էջմիածին՝ Խոստովանողի Մեծ. Հրատարակչին եւ ուզեցի տպագրուածը, որ բարեհաճեցաւ օրինակ մը նուիրել ինծի 5 Դեկտ. 1907 թուականով, որ հազիւ ձեռքս հասաւ 1908 Փետր. 8ին, եւ անկից մինչեւ հիմայ ալ դեռ նոր ատեն կը գտնեմ այս տողերը գրելու համար՝ իբր նոր յառաջաբան՝ հրատարակութիւնը ակամայ ձգձգուած գործի մը սկիզբը։

Կը փափաքէի Ա. Խոստովանողին բուն գործը աչքի առջեւ եւ ձեռքի տակ ունենալ՝ այն ենթադրութեամբ, որ պիտի կրնայի նորութիւններ գտնել հոն՝ անոր Եղիշէի հետ ունե-

ցած աղերսին նկատմամբ։ Բայց յուսախաբ եղայ. վասն զի ինչ որ Սոփերքի մէջ դիտած էի եւ ի վեր հանած, նոյնը կը շեշտուի Խոսվանողի գործին այս ամբողջական հրատարակութեամբ ալ։

Գ. Տ. Մկրտչեան իր այս աշխատալից գործը հրատարակած է խումբ մը օրինակներու մանրակրկիտ համեմատութեամբ, որոնց մէջ է նաեւ Սոփերքի ծանօթ Ի. հատորիկը, զոր Ж ով ներկայացուցած է համեմատութեանց մէջ[1]։

---

[1] Այս հրատարակութիւնը միջակ 8ածալ 248 երեսներէ կը բաղկանայ, եւ կը բովանդակէ։

Ա. Յառաջաբան—բովանդակութիւն մը սա խորագրով. "Վկայութիւնք բազմաց մարտիրոսաց, որք ի Պարսս կատարեցան, հազարք հազարաց եւ բիւրք բիւրուց, զորս այժմ սուղ ինչ պատմեցից՝ զարանց եւ զկանանց յանուանէ՝ եւ ապա յետոյ զբովանդակն, եւ թէ վասն որոյ պատճառի եղեն վկայք. երանելւոյն Եփրեմի Արեւելեան Գրոց ասացեալ զբաւանդակն" էջ 1–4։

Բ. Վկայութիւն բազմաց սուրբ նահատակաց արեւելեայց, որ կատարեցան վասն Քրիստոսի. էջ 5—94։

Գ. Վկայութիւն սրբոյն Շմաւոնի եպիսկոպոսի, որ վկայեաց անթիւ բիւրուք յերկիրն Արեւելից ի Շապհոյ Պարսից արքայից արքայէ. էջ 95–146։

Դ. [Ջհահդուս՝ փոխանակ Շմաւոնի՝ կատարեցին սրով հարիւր արամբք ի քսանն ապրիլի] էջ 147–149։

Ե. Վկայութիւն քերց Շմաւոնի՝ Թերբուայ եւ քեռն իւրոյ եւ աղախնոյն. էջ 150–155։

Զ. [Վկայեցին եւ այլ սուրբ արք հարիւր եւ կանայք տասն ի տասն մայիսի ամսոյ] էջ 156։

Է. Վկայութիւն սրբոյն Յեզանդխտոյ ի քաղաքին որ անուանեալ կոչի Բեթուլաք յաշխարհին Գերմանացւոց. էջ 157—165։

Ը. Վկայութիւն Բարբաշմինայ եպիսկոպոսի եւ վեշտասան այլ եւս վկայից, որ ընդ նմին վկայեցին. էջ 166—172։

Սոփերքի Թերի հրատարակութիւնը բոլորովին կը լրանայ եւ կ՚ուղղուի Մկրտչեանի հրատարակութեամբ, այնպէս որ ամբողջ գործը կարդացած ատենդ՝ կարծես Եղիշէն կը կարդաս։

---



ՅԱՒԵԼՈՒԱԾ



Բնագրէն Դ եւ Զ գլուխներ կը պակսին. այդ խորագիրները գրուած են Ա. գլխի (= բովանդակութեան) համեմատ։ Եթէ այդ պակասութիւնները չըլլային, գործը աւելի ստուար պիտի ըլլար անշուշտ։

Գ. Տ. Մկրտչեան դիտել կու տայ ինծի, թէ „խնդրում եմ ի նկատի ունենալ, որ ինչ ինչ սրբագրութիւններ եւ ուղղութիւններ լինելու են յառաջաբանում։ ՙՅաւելուածում, գրուած վկայաբանութիւնները Աբրահամի թարգմանութիւնները չեն. յատկապէս վերջինը՝ (= Ակիփսիմ. Այիթալ. եւ Յովսէփ) ոչ իսկ ասորերէնից, այլ յունարէնից եւ համեմատաբար շատ ուշ ժամանակի թարգմանութիւն։"

Մարութասի գործին խմբագրական ոճը, վկայաբանական արուեստին ճոխութիւնը, թարգմանչին ոսկի հնչումը փառաւոր ներդաշնակութիւն մը կը կազմեն, եւ Եղիշէն ճանչցող մը՝ կարելի չէ որ այդ ներդաշնակութեան խորը լսել չկարծէ Եղիշէի զուգընթաց շեշտի մը խաղացումը եւ չըստիպուի անգամ մըն ալ ձեռք առնել Ոսկի Գրքոյկը նոր էջեր ու տողեր համեմատելու համար Խոստովանողի թարգմանութեան հետ։ Այսպիսի աշխատութիւն մը կրնայ հետաքրքրական ըլլալ՝ աւելի եւս հաստատելով համեմատութեան եզրները, բայց նորութիւն մը կամ առաւելութիւն մը չաւելցըներ մեր պաշտպանած դատին։ Խոստովանողի թարգմանութիւնը գրական աղբիւր մըն է Եղիշէի համար եւ ոչ թէ պատմական։ Մինչ Փարպեցին կը մնայ պատմական միակ աղբիւրը Եղիշէի համար, եւ մենք արդէն ամուր

---

Ինչպէս ըսինք, աշխատալից հրատարակութիւն մըն է այս, մաքուր տպագրութիւն ամէն կերպով, մանր մանր համեմատութիւն օրինակներու, ճշգրիտ մէջբերումներ ուրիշ գրական վկայութիւններու եւն։ Ըստ մեզ շատ լաւ պիտի ըլլար ասոր Եղիշէի հետ ունեցած հանգիտութիւններն ալ նշանակել։ Քանի որ գործը, թէեւ տպագրուած, բայց դեռ չէ հրատարակուած, կարելի է այս աշխատութիւնն ալ ընել։ Ասկից զատ, փափաքելի է որ, հակառակ "ի գիտութիւն բանասէրների" հաղորդուածին, բանասէր Յ. Մկրտչեանը բարեհաճէր ընդարձակ յառաջաբանով մը օժտել այս թանկագին գործը, այս Սահակ-Մեսրոպեան դպրոցի հայերէնը ցոլացնող ընտիր թարգմանութիւնը, շօշափելով այն բոլոր խնդիրները, որոնք կը վերաբերին Ա. Խոստովանողի անձին եւ գործին. գործին մա՛նաւանդ իր Եղիշէի հետ ունեցած աղերսին նկատմամբ։

կեցած կ'ըլլանք մեր եզրակացութեան վրայ (տես էջ 212)։

Ուրեմն Եղիշէին վրայ քննական ուսումնասիրութիւնը հրատարակելով այնպէս ինչպէս որ գրած էի տարիներ յառաջ, բանասէրներու եւ պատմագիրներու կը ներկայացնենք կարգ մը դիտողութիւններ ու դատողութիւններ, որոնց մէջ հիմնապէս փոփոխելիք բան մը չենք գտած դեռ. վասն զի Եղիշէի մասին մինչ անկախ եղած եւ ինծի ծանօթ ուսումնասիրութիւններու մէջ, մեր ըսածները հերքող դիտողութիւններ չեն եղած։ Միայն, Եղիշէի հայերէնի մասին գրածներս, էջ 213—224, ճշդուելու են։ Մենք այնպէս կը կարծենք, որ Սահակ-Մեսրոպեան Դպրոցի հայերէնը իր որոշ նկարագիրն ունի, որուն վրայ կատարեալ իրաւունքով կը պնդեն Վիեննայի Մխիթարեան Հայր Դպրոցը եւ անոր համակարծիք եղողներ։ Եղիշէի հայերէնին նկատմամբ գրածներս այս տեսութեամբ միայն ճշդուելու են, եւ կը յուսամ թէ այսչափ բացատրութիւն մը բաւական է՝ եղած չափազանցութիւնները չափաւորելու համար։

Երբ մէկ կողմէն այս ուսումնասիրութիւնը կը հրատարակենք, միւս կողմէն պէտք է խոստովանիմ, որ Եղիշէի վրայ դեռ շա՛տ բան կայ ըսելիք։ Անոնք որ Միքայէլ Փաշա Փօրթուգալի ճոխ եւ հմուտ ծանօթութիւններով հրատարակած Եղիշէով ամէն բան լուսաբանուած կարծեցին Վարդանանց Պատմութեան շուրջը, այս էջերը կարդալով պիտի տեսնեն, թէ ի՛նչչափ խնդիր-

ներ կան դեռ մութի մէջ, որոնց մասին փոքրիկ վարանք մը իսկ չէ ունեցած Հանգուցեալ ուսումնասէր փաշան։

Կ'ըսպասենք որ Եղիշէի վրայ մեզի կարելի եղածին չափ լաւ ուսումնասիրուած գործ մը եւ լաւ կազմուած Եղիշէ մը տայ Գարեգին Վրդ. Յովսէփեանց, որ շատոնց մխրճուած է Եղիշէի մէջ՝ վերակազմելու համար անոր բնագիրը։

Գիրք մը, որ բնագրական այնչափ պէսպիսութիւններ կը ներկայացնէ եւ շրջապատուած է բանասիրական լուրջ դժուարութիւններով, բաւական է ինքնին շատ մը խնդիրներ յուզել տալու։

Մենք այդ խնդիրներէն ձեռք առած ենք միայն անոնք, որոնց քննութիւնը օգտակար է լուսաբանելու համար Վարդանանց Պատմութիւնը:

Նիւթին ծանօթներ միայն պիտի գնահատեն, թէ որչափ յաջողած ենք մեր այս առաջադրութեան մէջ։

1908 Յուլիս 24/6. ՆԾ:
Դպրեվանք (Արմաշ):

ԲԱԲԳԷՆ ՎԱՐԴ.

# ԱՄՐՏՕԼՈՒ ՁԵՌԱԳԻՐԸ

---

*Ըսինք քիչ մը յառաջ թէ Գարեգին Վրդ.՝ Եղիշէի բնագիրը վերակազմելու հոգը ստանձնած է՝ զայն հրատարակելու համար* ՊԱՏՄԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ*ի շարքին մէջ։*

*Հմուտ Վարդապետը հարկաւ պիտի կրնայ ձեռք բերել Բաղէշի Ամրտօլ վանքին ձեռագիր Եղիշէն, որ մինչեւ հիմայ ծանօթ հին ձեռագիրներու ամենէն հինն է՝ գրուած ՇՀԹ* = 1130*ին.* (*Տես իմ* ԾՈՎՔ*ը, էջ* 49—50*. ինչպէս նաեւ այս գործը էջ* 145—146*, Ծնթ.* 1)։

ԾՈՎՔ*ը գրելու ատեն այդ ձեռագրին յիշատակարանը միայն ունէի. ետքը ընդօրինակութիւն մըն ալ ձեռք բերի, որ դժբախտաբար շատ խակ օրինակ մը եղաւ, զուրկ բանասիրական ճշդութենէ։ Աւելորդ պիտի ըլլար այսպիսի ընդօրինակութեան մը վրայ հիմնուելով տեղեկութիւն տալ հոս բնագրին ամբողջութեան վրայ։ Միայն քանի որ այս ընդօրինակութիւնը յանձնարարութեանս համեմատ բնագրին հետ երես առ երես եւ տող առ տող եղած է, կրնամ բովանդակութիւնը դնել հոս՝ իբր հետաքրքրական։*

*Ձեռագիրը մկնակեր է. սկիզբէն եւ վերջէն, ինչպէս նաեւ մէջէն թուղթեր ինկած են։*

Սկիզբէն մինչեւ Բրդ յեղանակին առաջին մասերը (մեր գործածած հրատարակութեան համեմատ էջ 16. տող 6) բոլորովին կը պակսին։ Մնացած կրծուած երեսը կը սկսի եւ զդոյն [պատուէր հրամանի առ ամենես]եան ար[կանէր]։ Բառերով։ Ձեռագիրը այնքան գէշ կրծուած է, որ իւրաքանչիւր երեսի իւրաքանչիւր տողէն հազիւ մէկ երկու բառ փրկուած է. կրծուածները քանի՛ քիչնան, երեսներն ալ այն համեմատութեամբ կը լեցուին, եւ վերջապէս հազիւ ամբողջական երեսներու կը հանդիպինք Գրդ յեղանակին մէջ՝ Թէոդոս կայսեր ուղղուած “հրովարտակ”ի պատճենին քովերը։

Մեր սովորական օրինակներու մէջ՝ Արտաշատի ժողովին սկիզբը սա խորագիրը կայ. “Անուանք եպիսկոպոսացն, որք պատասխանեցին Նամակին”, մեր ձեռագիրը ունի [... ժողովեցան ի տեղեաց... միաբանութեամբ նախար ... Նամակին պարսից] խորագիրը, կետադրուած տեղերը կրծուած են։

Երրորդ վասն միաբանութեան Սբ. եկեղեցեացն.

Չորրորդ վասն երկպառակութեան իշխանին Սիւնեաց եւ ընկերաց իւրոց.

Հինգերորդ կրկին անգամ ընդդէմ կալ Հայոց պատերազմաւ թագաւորին.

[Վեցերորդ չկայ. եւ ուրիշ օրինակներու այս բաժանումը, որ “Ցետ այսորիկ իբրեւ ետես զօրավարն Պարսից”ով կը սկսի, մեր ձեռագրին մէջ պարզ նշան մը ունի լուսանցքի

վրայ։ Ուշագրաւ է մանաւանդ որ ուրիշ օրինակներու Երդ Յեղանակին խորագիրը, “Յարձակումն Արեւելեայց.„ մեր ձեռագրին մէջ տարբեր է. այսինքն ուրիշ օրինակներու Զրդին խորագիրը մեր օրինակին մէջ Երդին խորագիր եղած է]։

Ութներորդ Յեղանակն յորում կարգադրի (?) դարձեալ առաքինութիւնն Հայոց եւ չարագոյն եւս երեւի անաւրէնութիւնն Վասակայ։

Արտաքոյ եւթն յեղանակին Ութերորդ, դարձեալ վասն Նորին պատերազմին եւ չարչարանաց սուրբ քահանայիցն. [փոքրիկ յիշատակարան մը վերջը]։

Դարձեալ վասն խոստովանող երանելեաց աշակերտաց Նոցունց. (փոքրիկ յիշատակարան մըն ալ)։

Անուանք Նախարարացն որք կամաւ եւ յաւժարութեամբ ետուն զանձինս իւրեանց վասն սիրոյն Քրիստոսի ի կապանս արքունի.

Այս հատուածն ալ կը վերջանայ պատմագրին ծանօթ խոստումով. “բայց ի տեղի այսր դարձեալ ինձ գալ պիտի„. եւ ըստ սովորականին կը յաջորդէ.

“Իսկ կանայք երանելի առաքինեացն„, որ կը վերջանայ “ժառանգեսցուք զքաղաքամայրն բարեաց„ բառերով. եւ նոր խոստում մը անմիջապէս պատմագրին կողմանէ, թէ “բայց եւ ինձ յայս ճառ պիտոյ է գալ, եթէ Տէր ինքնին կամեսցի: Գրեցաւ յիշատակարանս այս վասն սուրբ նահատակութեան Նախարա-

բացն Հայոց եւ սուրբ կանանց։ Ընդ որում եւ զմեզ արժանի արասցէ սբ երրորդութեանն տանել զյիշատակս նոցա ի փառս ամենասուրբ երրորդութեանն յաւիտեանս ամէն։ Տէր Աճ ողորմեայ Յակովբոսի գրչի. Ամէն„։

Աստ անմիջապէս կը յաջորդէ.

Տեսիլ Սրբոյն Սահակայ Պարթեւի Հայոց Հայրապետի "Բազում անգամ աղաչեցին զՍբ Սահակ գալ յաթոռն„. Եւ աւէ. մի՛ բռնադատէք մխիթարել զիս. եւ այլն, ուղղակի Ղ. Փարպեցիէն, եւ կը վերջանայ, "Եւ լուեալ զայս ամենայն խասս լռեցին, ոչ այլ ինչ բռնադատեալ զերանելին, այլ գոհանալով փառաւորէին զՏէր Աստուած. յաւիտեանս յաւիտենից. ամէն„։

Վկայութիւն սրբոց իշխանացն Համազասպայ եւ Սահակայ Նախարարաց ի տանէ Արծրունեաց. (Տես Սոփերք ԺԲ, էջ 61—80)։

Ողբք վասն քանդալոյ թագաւորութեանն Հայոց յազգէն Արշակունեաց եւ եպիսկոպոսապետութեանն յազգէն Սրբոյն Գրիգորի, զոր ասաց Մովսէս Հայոց պատմագիր եւ վարդապետ։ — Այս ողբէն անմիջապէս ետքը դրուած է Յակոբոս գրչին բուն յիշատակարանը, զոր հրատարակած ենք արդէն ԾՈՎՔի մէջ (էջ 49 ծնթ.)։

Յաղագս զարմից Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի եւ բովանդակ պատմութիւն

Մեծին Ներսիսի Հայոց հայրապետի, որ կը վերջանայ այս բառերով. "Եւ հասեալ Մանուէլ զաւրավարն Հայոց Վարազդատաւ որդւովն իւրով, եւ ընկեցեալ ի ձիոյն կամէր սպանանել", եւ կ'ընդհատի. պակասը շատ քիչ բան է (Տե՛ս ՍՈՓԵՐՔ Զ. էջ 122)[1]։

Աստ կը յաջորդէ Սիսիանոսի ներբողը ի սուրբ Քառասունսն. բայց դժբախտաբար առաջին երեսները ինկած են մեր օրինակին մէջ, որ կը սկսի "[հաւ]ատոյն ընդ նոսին գտանել եւ աշխատել տարժանմամբ վաստակոցն" եւն. (Տե՛ս Սոփերք. ԺԲ. էջ 8։ Սոփերքի խորագիրն է "Սիսիանոսի հայոց վարդապետի ներբողեան ի Սուրբ Քառասունսն").

Երանելւոյն Մովսէսի քերթողահաւրն, յիշատակ սրբոյ Հռիփսիմեա եւ նորուն վկայակցացն սրբազան կուսանացն, ներբողեան ի Հանդէս նոցա հրաշիցն յաւրինուածով:

Սկսուած. "Նորահրաշ եւ գերապայծառ է տաւնս", որ կ'ընդհատի վերջէն սա բառերով "զբաժակ անմահութեան եւ լու...":

Ինչպէս կը տեսնուի այս տեղեկութիւններէն, Ամիտօլի ձեռագիրը, իբր հնագոյն օրինակ, հետաքրքրական է թէ Եղիշէի եւ թէ միւս նիւթերու վերաբերութեամբ:

---

1 Կ'արժէ Մեծն Ներսէսի պատմութեան բնագիրն ալ վերակազմել։ Սոփերքի (Զ) հրատարակիչը արդէն շատ մը օրինակներ գործածած է, առանց մոռնալու Մեսրոպ Երիցու հրատարակեալ գործն ալ (տպ. Կ. Պոլսէն 1737 — ՌՃՁԶ)։ Մեր օրինակը նոյն է Սոփերքի Զ.ին հետ. բայց տարօրինակ է Կ. Պոլսի տպագրութեան պէսպիսոյթը։

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

---

ԵՂԻՇԷ = *Սրբոյ Հօրն մերոյ Եղիշէի Վարդապետի Մատենագրութիւնք, ըստ ընտրելագոյն ընթերցուածոց գրչագրաց. տպ. Վենետիկ* 1859.

ԲՈՒԶ. = *Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց ի չորս դպրութիւնս Բ. տպ. Վենետիկ* 1889.

ԿՈՐԻՒՆ = *Կորիւն Վարդապետի, Մամբրէ Վերծանողի եւ Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք. տպ. Վենետիկ* 1833.

ԵԶՆԻԿ = *Եզնկայ Կողբացւոյ Բագրեւանդայ եպիսկոպոսի Եղծ Աղանդոց. տպ. Վենետիկ* ՌՄՀԵ (1826).

ՓՐՊ. = *Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան. տպ. Վենետիկ* 1878.

ԽՈՐ. = *Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց տպ. Վենետիկ* 1881.

ՍԵԲԷՈՍ = *Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, եւ այլն, ի լոյս ած Ք. Պ. տպ. Ս. Պետերբուրգ* 1879.

Մ. ԿՂՆԿՑՏ. = *Պատմութիւն Աղուանից, արարեալ Մովսիսի Կաղանկայտուացւոյ, ի լոյս ընծայեաց Կ. Վ. Շ. տպ. Փարիզ* 1860.

ՕՁՆԵՑԻ = *Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք. տպ. Վենետիկ* 1833.

ՅՎ. ՊՏՄ. = *Յովհաննու Կաթողիկոսի Դրասխանակերտացւոյ Պատմութիւն Հայոց. ի լոյս ընծայեաց Մ. Էմին տպ. Մոսկվա* 1853.

ԹՎՄ. ԱՐԾՐ. = *Թովմայի Վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն Տանն Արծրունեաց, ի լոյս ած. Ք. Պ. տպ. Ս. Պետերբուրգ* 1887.

ԱՍՈՂԻԿ = *Տիեզերական Պատմութիւն Ստեփաննոսի Վարդապետի Տարօնեցւոյ, ի լոյս ընծայեաց Կ. Վ. Շ. տպ. Փարիզ* 1859.

Մ. ԳՕՇ = *Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, Վահան Ծ. Վրդ. ի Բաստամեանց. տպ. Էջմիածին* 1880.

**ՎԱՐԴԱՆ** = Հաւաքումն պատմութեան Վարդանայ Վարդապետի լուսաբանեալ· տպ· Վենետիկ 1862·

**ԿԻՐԱԿՈՍ** = Կիրակոսի Վարդապետի Գանձակեցւոյ համառօտ պատմութիւն ի սրբոյն Գրիգորէ յաւուրս իւր լուսաբանեալ· տպ· Վենետ· 1865·

**ՕՐԲԷԼ·** = Պատմութիւն Նահանգին Սիսական Ստեփաննոսի Օրբէլեան Արքեպիսկոպոսի Սիւնեաց, ի լոյս ընծայեաց Կ· Վ· Շ· տպ· Փարիզ 1859·

**ՍՈՓԵՐՔ** = Սոփերք Հայկականք Հտ· Զ· Թ· Ի·

**Չ· ՊՏՄ· ՀԱՅ·** = Պատմութիւն Հայոց եւ այլն, Հ· Մ· Չամչեանց· տպ· Վենետ· 1784·

**ՀՆԱԽՕՍ·** = Հնախօսութիւն Աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի Հ· Ղ· Վ· Ինճիճեանի տպ· Վենետիկ 1835·

**ՊՏՄ· ՊԱՐՍԻՑ** = Պատմութիւն Պարսից Մ· Գ· Թաղիադեանց· Հտ· Ա· տպ· Կալկաթա 1846·

**ՏԻԶ· ՊՏՄ·** = Տիեզերական Պատմութիւն Հ· Յ· Վ· Գաթրճեանի· Հտ· Բ· տպ· Վիեննա 1852·

**ԱՅՐԱՐԱՏ**<br>**ՍԻՍՈՒԱՆ**<br>**ՍԻՍԱԿԱՆ** } Հ· Ղ· Ալիշանի

**ՅՈՒՇԻԿՔ** = Յուշիկք Հայրենեաց Հայոց Հ· Ղ· Ալիշան· Հտ· Ա· տպ· Վենետ· 1869·

**ՀՅԿՆ** մատենագիտութիւն Հ· Գար· Զ· տպ· Վենետիկ 1883·

**ՊՏՄ ՀԱՅ· ԴՊՐ·** = Հայկական Հին Դպրութեան Պատմութիւն (Դ·—ԺԳ· դար)· Հ· Գար· Զ· Բ· տպ· Վենետիկ 1886·

**ՀԵՐՔՈՒՄՆ** = Դաշանց թղթոյ քննութիւնն ու հերքումն· Արար Կ· Վ· Շ· տպ· Պարիս 1862·

**ԳՐ· ԽԼԹ·** = Ղազար Փարպեցի եւ գործք նորին, պատմական եւ գրական քննութիւն Գրիգորի Խալաթեան· տպ· Մոսկուա 1888·

**ԹՐԳՄ· ԽՈՐ·** = Մովսէս Խորենացու Հայկական Պատմութիւն· Աշխարհաբար թարգմանեց եւ լուսաբանեց Խորէն Ծ· Վրդ· Ստեփանէ· տպ· Ս· Պետերբուրգ 1889·

**ՔՆՆ· ՔՆՆԱՍԷՐ** = Քննասէր· Քննութիւնք Նորայրի, պրակ· Ա· եւ Բ· 1887·

**ԳԱՂՏՆԻՔ** = Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքն· Քննադատութիւն Հ· Բարսեղ Վ· Սարգիսեանի· տպ· Վենետիկ 1890·

**ԳՐ· ՍՐԿ·** = Եղիշէի Ձեռագիրների համեմատութիւն· Համեմատեց Գարեգին Սարկաւագ Միաբան Ս· Էջմիածնի (մինչեւ 6րդ Փուլա)· տպ· Էջմիածին 1892·

**ՔՆՆԿ. ՊՏՄ.** = *Քննական պատմութիւն Հայոց Ա. Մ. Գարագաշեանի. տպ. Թիֆլիս* 1895. [Ա, Բ, Գ, *հատորները միայն*]։

**ԲԱԶՄԱՎԷՊ** = *Բազմավէպ հանդիսարան, Վենետիկ.*

**ՀԱՆԴԷՍ** = *Հանդէս Ամսօրեայ, Վիեննա եւն. եւն.*։

**ՓԻԼՈՆ** = *Փիլոնի Եբրայեցւոյ գործերը "ի հին թարգմանութենէ", տպ. Վենետ.* 1822, 1826 *եւ* 1892։

La Pèrse = La Pèrse, par M. L o u i s D u b e a u x, Paris 1841.

Canon = Histoire du canon des Saintes-Écritures dans l'église chrétienne. Par E d o u a r d R e u s s, seconde édition, Strassburg 1864.

Coll. = Colléction des historiens anciens et modernes de L'Arménie. Par V i c t o r L a n g l o i s, Paris 1867.

**ՊՐՈՍԷ** = Collection d'historiens arméniens. Th. Ardzrouni X. S. etc. Traduits. Par M. B r o s s e t, t. 1. S. Pétersbourg 1874.

**ՀԱՐԼԷ** = Avesta Livre sacré du Zoroastrisme etc. Par C. d e H a r l e z, deuxième édition, Paris 1881.

Marc-Aurèle = Marc-Aurèle et la fin du monde antique. Par E r n e s t R e n a n. Quatrième édition. Paris 1882.

**Ֆ. ԿՈՒԼԱՆԺ** = Recherches sur quelques problèmes d'histoire Par F u s t e l C o u l a n g e s. Paris 1885.

**Ֆ. ՆԷՎ** = L'Arménie chrétienne et sa litterature. Par F e l i x N é v e. Louvain 1886.

Annales = Annales du Musée Guimet. Tome vingt-quatrième. L e Z e n d - A v e s t a etc. Par J a m e s D a r m e s t e t e r. A. B. C. Paris 1893.

**ՊՏՄ. ԻՍՐԱՅ.** = Histoire du peuple d'Israël. Par E r n e s t R e n a n, tome cinquième, Paris 1894.

**ԾԱԿ..** = H i s t o i r e G é n é r a l e, tome premier LES ORIGINES (Paris Armand Colin... Editeurs.) etc.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Մեր մատենագրական համաստեղութեան ամէնէն փայլուն աստղերէն մին է Վարդանանց Պատմութիւնը. բայց անոր գիրքը դեռ չէ՛ որոշուած գիտական զննութիւններով։ Հայ մատենագրու-թեան անանուն գրուածներուն ամէնէն անուանին եւ ամէնէն ծանօթն եղած է այն Գիրքն-Ոսկի, զոր դարեր չեն կրցած հինցընել։ Այս գրքին կախար-դանքը անմատչելի ըրած է զինքն քննադատական հետազօտութիւններու։ Հիացումը եղած է էն խորին ուսումնասիրութիւնը Վարդանանց Պատ-մութեան եւ պաշտումը՝ ամէնէն խիստ քննադա-տութիւնը։ Սրբազան նախապաշարում մըն է այս. իրողութիւն մը սակայն, որ երբեք պիտի չխախտի։ Քննադատութիւնք աւելի լաւ պիտի բացատրեն այս գիրքը սիրցնող գաղտնիքը. եւ այս նկատմամբ եղած մէն մի հետազօտութիւն անոր նպատակը պիտի չեշտէ։ Դէպքերու ճշգրիտ պատկերներն եւ կենդանի հօսանքը՝ բացատրութեանց բունին մէջ պիտի մնան միշտ։ Մատենագրական գետնի վրայ միայն կռուան մը պիտի ընծայէ այն՝ քննա-դատին համար։

Վարդանանց Պատմութեան ըմբռնումի տե-սակէտը միշտ պիտի ըլլայ հիացումն ու պաշտումը, որուն ամէնէն դրական ապացոյցը տուած է հայ մամուլը իր բեղմնաւոր տպագրութիւններով։ Բայց, վերջապէս, եւրոպական մամուլն ալ ան-տարբեր չէ մնացած այս գրքին հանդէպ։

Գրքի մը բազմաթիւ հրատարակութիւնները հասարակաց կարծիքը կը ցոլացնեն եւ անոր ուսումնասիրութեան մէջ ծանր կշիռ մ՚ունին։ Ճիշդ այս հրատարակութիւններն են Վարդանանց Պատմութեան ալ ուսումնասիրութեան սկիզբը։

## Ա. Հրատարակութիւնք։

Բազմատիպ եւ բազմօրինակ հրատարակութիւններ ունեցած է Վարդանանց Պատմութիւնը։ Հին եւ Նոր Կտակարանի գրքերէն միայն Դաւթի Սաղմոսներն ու Չորս Աւետարանները կրցած են անոր չափ տպագրութիւններու արժանանալ. բան մը, որ ցոյց կու տայ՝ թէ Սուրբ Գրքերու չափ ժողովրդականացած է Ոսկի-Գրքոյկը։ Վարդանանց Պատմութիւնն ալ արդէն սուրբ գրքի մը, մանաւանդ Աւետարանի մը պէս բան մը նկատուած է։ Առաջին հրատարակիչները՝ գրքին այս յատկութիւնը լեզուական, ազգային եւ քրիստոնէական ըմբռնումի երկիւղածութեամբ դիտած են. վերջինները՝ լոկ շահագործութեամբ։

Վարդանանց Պատմութեան առաջին տպագրութիւնը եղած է, ըստ "Քնար Հայկականի" հաւաքողին, Ամսթերտամի մէջ (էջ 34—343)։ Հ. Գ. Զարբհանէլեան չէ յիշած զայս իր Մատենագիտութեան մէջ՝ Եղիշէի տպագրութեանց շարքում։ Առաջին տպագրութիւն համարուած է սակայն, Աստապատցի Աբրահամ Վարդապետին հրատարակածը՝ Կ. Պոլսի մէջ 1764ին (= ՌՄԺԳ)։

Հետեւեալ ցուցակը Վարդանանց Պատմութեան տպագրութիւնները կը պատկերացնէ։ Աստղանշուածները կրցած եմ ձեռք բերել. Մնացածները մասամբ Մատենագիտութենէն, մասամբ Էմիլ Տեզայի յօդուածէն (Բզմվ. 1893 Նոյ. էջ 514) եւ այլ տեղերէն քաղած եմ։ Զարբհանէլեանի ցանկը շատ թերի է։ Մատենագիտութիւնը 1883ի

հրատարակութիւն մ'է. ցանկալի էր այդ տարեթիւը կանխող ժամանակամիջոցում լոյս տեսած բոլոր օրինակներու նկատմամբ կարեւոր տեղեկութիւններ գտնել հոն։ Չեմ կրնար սակայն պնդել թէ իմ ցանկը բացարձակապէս ամբողջական է. ինձ անծանօթ տպագրութիւններ կրնան գտնուիլ։ Ցանկը կը ներկայացընեմ ժամանակագրական կարգով.

1. *1764. Կ. Պոլիս։ Հրատարակիչ Տ. Աբրահամ Վրդ. Աստապատցի։ Սկիզբը "Առ ընթերցողս Սուրբ Մատենիս Նախերգանք" մը՝ Ստեփանոս Պետրոսեանէ (էջ 4—8)։ "Վերջաբանութիւն" մը՝ էջ 212—214։ Վրիպակաց ցանկ մը էջ 215—216։ "Յիշատակարան" մը էջ 217—220։ Ամբողջ 220 էջ "երկսիւն" զարդարուն շրջագծերու մէջ։ Ընծայականին ճակատը արծուէնշան մը։ Ամէն գլուխ զարդագրերով (թռչուն) եւ լուսանցազարդերով կը սկսի։

2. 1774. Պետրպուրգ։

3. 1787. Նոր Նախիջեւան։ Լանգլուա յիշատակուած կը գտնէ այս տպագրութիւնը Պատկանեանի Catalogue de la littérature arménienneի մէջ (Coll. t. II. p. 181)։

4. 1787. Պետրպուրգ։ Հրատարակիչ Տ. Յովսէփ Արքեպիսկոպոս Արղութեանց։ Այս տպագրութիւնը, որ հազուագիւտ է այժմ, 1764ի հրատարակութեան "կրկին տպագրութիւնն" է (Պտմ. Հայ. Դպր. էջ 327—328)։

5. *1823. Կ. Պոլիս։ Հրատարակիչ Տ. Պօղոս Պատրիարք. Աշխատասիրող Տ. Անդրէաս Վրդ. Նարինեան։ — Էմիլ Տեզա՝ չգիտեմ այս տպագրութեան իբր տարեթիւ 1813 սխալմամբ դրած է, թէ այդ տարեթիւով տպագրութիւն մ'ալ կայ —։ "Յառաջաբան" մը Պօղոս Պատրիարքէ (էջ 3—6)։ "Յաւելուած" Բարձումայի զրոյցին, Թովմայի Պատմութենէն հանուած (էջ 215—18).

“Ցանկ Գրքոյս„ մը (էջ 219—227)՝ իբր վերլուծական ցանկ։ “Բացատրութիւն անծանօթ եւ դժուարիմաց բառից այսր մատենի„ (էջ 228—239)։ Ամբողջը 239 էջ։ Սկիզբը պատկեր մը, որ կը ներկայացնէ “Սուրբ Հաւատոյ սիւն երկնաբերձ, Ցոլսէփ՝ Սահակ՝ Ղեւոնդ երեց„։

6. **1816.** Կալկաթա։

7. **1825.** Վենետիկ։

8. **1828.** Վենետիկ։

9. **1832.** Վենետիկ։

10. ***1838.** Վենետիկ, Մատենագրութիւնք։

11. **1842.** Վենետիկ։

12. ***1852.** Վենետիկ։

13. ***1859.** Վենետիկ, Մատենագրութիւնք։

14. **1860.** Կ. Պոլիս։

15. ***1861.** Թէոդոսիա. “Ըստ Անձեւացեալ օրինակի„. Հրտ. Խորէն Վրդ. Գալֆայեան։ Ներածութիւն մը հրատարակչէն։

16. **1861.** Մոսկուա. Տպ. Յովհաննէս Բաբայեան քաթանեանց։

17. **1861.** Փարիզ. Տպ. Արամեան (Ա. Տպագր. Արամեանի)։

18. ***1864.** Վենետիկ։

19. ***1865.** Երուսաղէմ։

20. **1866.** Կ. Պոլիս։

21. **1867.** Զմիւռնիա։

22. ***1871.** Կ. Պոլիս (Բ. Տպգր. Արամեան)։ Պատկերազարդ. Միանձանց խրատը կցուած։

23. ***1871.** Կ. Պոլիս (Ա. Տպագր. Գավաֆեան)։ Սկիզբը “Ցաւաշաբան„ մը, վերջը կցուած Միանձանց Խրատը. երկսիւն։

24. ***1873.** Կ. Պոլիս (Բ. Տպագր. Գավաֆեան)։

25. ***1879.** Տփխիս. “Ըստ Անձեւացեալ օրինակի„. Հրտ. Տ. Գաբր. Արքեպս. Այվազեան. “Զեկուցումն„ սկիզբը։

26. 1892. Մոսկուա. “Ըստ Անձեւացեաց օրինակի„. Հրտ. Խ. Յովհաննեսեանց: Հրատարակիչը կցած է իւր տպագրութեան Հայ-Ռուս. բառարան մը, որուն “Յաւելուած„ մ'ալ հրատարակած է, ըստ Հ. Յ. Տաշեանի տեղեկութեան — — “Յաւելուած Եղիշէի Պատմութեան„ նոյն գրքին Հայ-Ռուս. բառարանին. Մոսկ. Տպ. Բարխ. 1892, 8° էջ 38:

Առնցմէ զատ Զարբհանէլեան կը նշանակէ “Միւս այլ տպ. ի Մադրաս Հնդկաց?„:

Այսչափ տպագրութիւն զանազան ծաւալներով եւ այնքան նշանաւոր կենդրոններու մէջ, ոչ մի գիրք ունեցաւ Հայկական Մատենադարանէն:

1764ի տպագրութեան նպատակը ուղղակի պատասխան մըն է Վարդանանց պատմագրութեան նպատակին: Էջմիածնի միաբաններէն “Բազմաշխատ„ Աբրահամ Վրդ. Աստապատցի, իւր Զմիւռնիոյ Առաջնորդութեան միջոցին (1763) առաջին անգամ կը հրատարակէ Եզնիկի ծանօթ գրուածը: Հայ. Մատենադարանը այդ երկու Վարդապետին կը պարտի իւր փառքը (Եզնիկը): Ո՛չ միայն կորուստէ ազատելու համար, ինչպէս Եզնիկը, նոյնպէս Եղիշէն ալ տպագրել կու տայ, այլ մանաւանդ “զի երանելի Վարդապետն Եղիշէ՝ յազգէս մերմէ գոլով եւ ունելով զմեծ սրբութիւն, զլիակատար իմաստութիւն, եւ զաթենական ուսման ճոխութիւն, ոչ վայելուչ վարկաւ նաեւ աշխատութեան սորին (որ է ներկայ գիրքս) մնալ ըստ գանձու ընդ երկրաւ ծածկեցելոյ. ... Քանզի չքնաղաշուք մատեանս այս ոչ սակաւ հոգեւոր հարստութիւն յինքեան ունի պարունակեալ: Այսինքն՝ զի է իբր քրիստոնէական ուսման ճաշակ, արարողութեանց սրբոյ եկեղեցւոյ անկարծիք վկայութիւն. ուղղափառ դաւանութեան տիպ. վասն հաւատոյ նահատակութեան քաղցրութիւն. աղօթախոսութեան հաստուած. հոգեկան եռացութեան եւ արտասուաց

բղխման ուժգնապէս գրգռիչ. ազգասիրութեան եւ Հայրենի սուրբ օրինաց սակի՝ քարոզութիւն եւ Հոգեւոր նախանձայարուութիւն. աւանդապահից ժողով. արեամբ ներկեալ նահատակաց մերոց, թէ կարգաւորաց եւ թէ աշխարհականաց, յականէ յանուանէ յիշատակութիւն. յատուկ ազգին մերոյ մակաբեան գործ եւ տեղի պարծանաց։ Նաեւ ըստ իմաստասիրացն սահմանի, Դիմօք՝ Պատճառօք՝ Տեղեօք՝ եւ ժամանակօք՝ մեծագործութեան պատմութիւն։ Արդարեւ՝ զսա ընթերցմամբ խոկացողացն ի մանկութենէ, շարադրութեան օրինակ եւ Հայկաբանութեան գաղափար„։ Այհա գնահատումը մէկ ու կէս դար յառաջ այս "գանձափիղ եռկեղէն գրքին„ եւ տպագրութեան նպատակը (Յիշտկ. էջ 218—219)։

Այս տպագրութեան արժէքն ըստ ինքեան բարձր է իբր առաջին հրատարակութիւն. որովհետեւ ձեռագիրը, որ մեր Դպրեվանքի մատենադարանի ձեռագրի խումբին կը պատկանի (տե՛ս էջ, 45 եւ շրնկ.) բաղդատական արժէք մը չունի. իսկ ընթերցուածի տարբերութիւններ առաւել կամ նուազ ամէն ձեռագրի մէջ կը գտնուին։ 1823ի Հրատարակութեան Յառաջաբանում՝ Պօղոս Պատրիարք (Ա. Պոլսեցի) դիտել կուտայ՝ թէ 1764ի տպագրութեան մէջ "տեառնէն Բողմոգէն վրէպակք. է՛ ասէ՝ չէ իմաստ բանիցն գլխովին ընդհանրապէս է շրջեալ եւ է՛ դասաւորեալք կամ այլայլեալք իմաստ անիմանալի գործեալ„ (էջ 5)։ Այս եղանակաւորումը գաղափարողներու. մանաւանդ վերագրելի է, որ ձեռքէ ձեռք այլայլելու չափ յառաջ մղուած է։ Լանգլուա՝ Հ. Ս. Սոմալեանի հեղինակութեամբ՝ երկու հրատարակութիւններն ալ fort incorrect կը գտնէ (Coll. p. 181)։

Այս հրատարակութիւնը (1764) այլեւայլ կարծիքներու շարժառիթ եղած է՝ գլխաբաժանումներու նկատմամբ։ Ըստ Ֆէտէրի տեղեկու-

թեան, Նայման թէ անվաւեր կ'ուզէ համարիլ Վարդանանց Պատմութեան Ութերորդ գիրքը եւ թէ Հինգերորդ գլուխը 1764ի հրատարակչին ձեռքով բաժնուած Վեցերորդէն — "Յառաջաբանութեան մէջ 7 գլուխ միայն կը խոստացուի, մինչ այժմ գործքն արդեամբք 8 գլուխ ունի։ Բայց թէ ասոր համար իրաւունք ունինք ութերորդ գիրքը՝ ինչպէս Նայման կ'ուզէ, անվաւեր համարիլ, տարակուսական է անշուշտ։ Վասն զի յառաջաբանութեան մէջ շատ ընդհանուր կերպով յառաջ բերուած Եօթն գլխոց նիւթոց ցուցակը չ'արտաքսեր Ութերորդ գլխոյն մէջ պատմուած իրողութիւնքն եւ Եօթներորդ գլխուն վերջին խօսքերը, զորոնք Նայման ամբողջին վերջը կը համարի, նախ միայն Վասակայ յանցաւորութեան եւ արդար պատժոյն նկատմամբ են։ Անշուշտ կարելի է որ յառաջաբանութեան եւ գրքին աւարտման մէջ եղած այս տարբերութիւնք հեղինակէն եղած ըլլայ արդեամբք, որ արտաքին պարագաներէ կրնար խափանուած ըլլալ իր նախնական ծրագրին եւ արդեամբք ի գլուխ հանածին մէջ գտնուող այս հակասութիւնք ջնջելու։ Արդեամբք ալ Ութերորդ գլուխն անկատար կ'երեւայ։ — Քննադատական երկրորդ դժուարութեան մ'արդէն ակնարկեցինք։ Ըստ ասութեան Նայմանի՝ ամէն ձեռագրաց Հինգերորդ գլուխը կը պակսի, որով առաջին տպագրութեան հրատարակիչը (Կ. Պոլիս, 1764) Վեցերորդ գլուխն երկու մասի բաժնած է։ Իւր այս ընթացքին հետեւած են միւս ամէն յետագայ հրատարակիչք. (Աշֆ. Մոնփ. ժէ. էջ 109—110 ծնթ.)։ Այս տողերու թարգմանիչն (Հ. Յ. Տ.) անմիջապէս դիտել կուտայ թէ — "Նայմանի ըսածը 1764ի տպագրութեան նկատմամբ ճիշդ չ'երեւար. գոնէ այս տպագրութեան մէջ տեղ մ'ալ ակնարկութիւն չկայ թէ Հինգերորդ գլուխն իւր ձեռագրին մէջ կը պակսէր եւ թէ հրատարա-

կիչն Վեցերորդին մէկ մասը Հինգերորդ գլուխ հաշուած ըլլայ. ոչ յէջ 97՝ ուր Ե. գլուխը կը սկսի եւ ոչ Հրատարակչին Յառաջաբանին եւ Վերջաբանին մէջ։ Գլխոց բաժանումն նոյն է նաեւ Հռչակաւոր Անձեւացեաց կոչուած օրինակին մէջ (Թէոդոսիա 1861 եւ ի Կ.Պոլիս 1866), նոյն անդ։

Գէտտէրի տուած տեղեկութեան համեմատ Նայման խոշոր հակասութեան մը մէջ ինկած է։ Եթէ մէկ կողմէն Ութերորդ գլուխը անվաւեր կը համարի Նայման եւ միւս կողմէն կ՚ըսէ թէ «ամէն ձեռագրաց Հինգերորդ գլուխը կը պակսի», Վարդանանց Պատմութիւնը միայն Վեց գլուխներէ բաղկացած պէտք է ըլլայ. ընդհակառակը՝ Նայման պէտք էր որ այն ատեն Ըորդ փոխանակ անվաւեր համարելու՝ Եօթներորդը համարէր պատմագրին ծրագիրն արդարացընելու համար։ Ութերորդը՝ ինչպէս կ՚ակնարկէ Գէտտէր, չը կրնար անվաւեր համարուիլ. իսկ Հինգերորդ գլուխը «ամէն ձեռագրաց» մէջ չը պակսիր։ Այս նկատմամբ կը խօսինք յետոյ։ Այս տեղ կը կրկնենք թէ Գորդ գլխէն ուղղակի Զորդին անցնող օրինակները Վարդանանց Պատմութեան ձեռագիրներուն յատուկ մէկ խումբը կը կազմեն եւ ինչպէս ինձ կը թուի, այդ խումբի ձեռագիրներուն առաջին օրինակին մէջ անուշադրութեան մ՚արդիւնք է այն եւ ոչ թէ Բարծումայի կարծեցեալ սրբապղծութեան (տես Ա. Գիրք. Գլ. Ե.)։

Սխալ է դարձեալ ըսել՝ թէ «ամէն յետագայ հրատարակիչք» 1764ի տպագրութեան հետեւած ըլլան։ Ոչ թէ ամէնը, գէթ մէկը՝ 1823ի հրատարակութիւնն իսկ անոր չէ հետեւած, այլ ընդհակառակն քննադատած է զայն իբր «բազմապիսի վրիպակներով» լեցուն, եւ հրատարակած է նորը «ըստ ընտրելագոյն եւ անսխալ գաղափարին, զոր հաւատարիմ գրչութեամբ ընդօրինակեալ էր ի Հայաստան՝ բարեյիշատակ Գէորգ Դպիրն Պալա-

տական, որ եւ ունէր յիշատակարան օրինակ զայս„[1]։ Այս Հրատարակութեան հետեւած ձեռագիրը Անձեւացեաց խումբին կը պատկանի, որուն գլխաբաժանումներուն համաձայնած է զարմանալի զուգադիպութեամբ մը 1764ի հրատարակչին ըրած բաժանումը։ Հրատարակիչն, Աբրահամ Վրդ. Աստապատցի, իւր ձեռքն ունեցած է ձեռագիր մը մեր Մատենադարանի ձեռագրի խումբէն. եւ տեսնելով թէ հին Գ՝ոդ գլխէն ուղղակի Զ՝ոդը կ'անցնի պատմութիւնը, պակաս մը նկատելով, կը բաժնէ Զ՝ոդին առաջին մասը եւ կը կազմէ Հինգերորդ որ նախապէս “չէր յօրինակին„, եւ այսպէս գրքի ընծայականին կը յարմարցնէ գլխաբաժանումները — “ուստի ըստ խոստման որքոյն՝ եղէ– կարգադրեալ„ —։ Աբրահամ Վարդապետի բաժանումը, որ սուտ զարմանալի զուգադիպութիւն մըն է՝ ըստ ամենայնի համաձայն Անձեւացեաց բաժանումին, կամ ուղղակի իր քննաբանեան արդիւնքն է, այսինքն՝ դիտել թէ “Ցետ այսորիկ„ կրնայ նոր գլխի մը սկսուածն ըլլալ — որովհետեւ Վարդապետը ուրիշ բաժանումներ ալ ըրած է պատմութեան երկար գլուխներուն տաղտուկը դարմանելու համար (տե՛ս վարը) — կամ կերծիք. այսինքն՝ իւր

---

[1] “Գրեցաւ պատմական մատեանս սրբոյն Եղիշայի, ի Մեծն Հայաստան, ի թուականին Հայոց ՌՄԼ (= 1781) գրչութեամբ Գէորգայ ուրումն անարժանի Կոստանդնուպոլսեցւոյ, եւ այլ՝ յօրինակէ իմեքէ հնագունէ, որ էր գրեալ յԱյրարատեան աշխարհի ի թուականութեան Հայոց ՈԺԶ (= 1167), յաւուրս հայրապետութեան Տեառն Ներսէսի, եղբօր Գրիգորիսի, որ նստէր ի Կլայն Հռովմէական„ (էջ 5—6)։

*Գէորգ Դպրի այս ձեռագիրը կը գտնուի Ազգ. Մատենադարանի Ձեռագրաց Բաժնին մէջ, մեր նոր կազմած ցուցակի համեմատ Թիւ 136։ — Ի դէպ է յիշել Թիւ 137 ձեռագիրն ալ, Մ. Խորենացւոյ Պատմ.ը, որ միեւնոյն գրչէն ելած է։ Նոր ծ. Հ. 1905։*

առջեւ ունեցած ըլլայ Անձեւացեաց խումբէն օրինակ մը կամ նախաւոր տպագրութիւնը, եւ ատոնց հետեւած իր բաժանումին մէջ։ Բայց հրատարակիչն ուրիշ ձեռագիր մը չէ կրցած ձեռք ձգել, ինչպէս կը խոստովանի իր վերջաբանին մէջ, եւ միակ օրինակի մը վրայէն ըրած է իր հրատարակութիւնը։ Իսկ առաջին տպագրութեան մը մասին չենք կրնար դատում մ'ընել, քանի որ "Քնար Հայկականի" Յառաջաբանին մէջ իբր առաջին տպագրութիւն յիշուած Ամսթերտամի հրատարակութիւնը չունինք մեր ձեռքը, եթէ երբեք սխալ մը չէ այսպիսի հրատարակութեան մը նկատմամբ եղած յիշատակութիւնը "Քնար Հայկականի" մէջ. որովհետեւ, ինչպէս ըսինք վերը, ծանօթ չէ այն թէ Զարբհանէլեանի, թէ Տեղայի։

Ի՛նչ ալ ըլլայ սակայն այսպիսի բաժանման մը հիմը, խնդիրը նոյն է մեզ համար։ Գլխաբաժանումները կամ խորագիրները կրնան փոխուիլ. ուրիշ խումբի մը համեմատ Զրդը Էրդէն բաժնուած է (տես Ա. Գիրք. Գլ. Դ.). բայց այս ամէն բաժանումներու տակ Վարդանանց Պատմութեան բովանդակութիւնը նոյն է։

Այս խնդրով ինքն Աբրահամ Վարդապետն ալ զբաղած է բաւական խղճմտութեամբ, թէեւ Հ. Յ. Տաշեան դիտել կու տայ թէ գրասէր Վարդապետը "ո՛ եւ է ակնարկութիւն մը չէ ըրած "Յառաջաբանին եւ վերջաբանին մէջ"։ Անշուշտ անուշադրութեան արդիւնք մըն է այս քննադատութիւնը։ Ահա՛ հրատարակչին դիտողութիւնը վերջաբանին մէջ, որ հետաքրքրական է. — "Այլ արդ՝ յա՛յտ լիցի եւ այս, զի հեղինակ սուրբ գրքոյս՝ յսկզբան անդ թէպէտ խոստացեալ էր խօսիլ յեօթն եղանակս, եւ այլ ինչ յաւել ի նոսա, սակայն սա ի վերջնումն սոցանց փոփոխեցմանց եւ ի նկրտումն որպէս ախորժմանց՝ զերկարափոյթն ի նոցանէ ըստ զանազանից տարբերութեանց խորագրելով ...

Աբրահամ Վարդապետի երկխօսութիւնը, ոսկւոյ մէջ կապար չխառնելու երկխօսութիւնը, հաւանական է որ շատ մը գաղափարողներ չունեցան եւ տեղի տուին ոչ միայն գլխաբաժանումներու պէսպիսութեան, այլ մանաւանդ ընթերցուածներու բազմաթիւ եւ նշանակելի տարբերութիւններուն։ Աբրահամ Վրդ. կը ճանչնայ Վարդանանց Պատմագրութեան յարգը եւ իւր հիացումը բացատրելու համար մեր ամէնէն նուիրական բառերը կը գործածէ. “Սուրբ մատեան„ (էջ 4), “Սուրբ Գիրք„ (էջ 208, 212—214, 217), “Զքնաղաշար մատեան„, “Շահաւէտ Գիրք„ (էջ 217, 218)։

Պոլսի երկրորդ հրատարակութիւնն ալ միեւնոյն նպատակով եղած է. գնահատումը նոյն է առաջինին հետ — “Մի յառաւել օգտակար եւ ընտիր մատենից խոստովանելի է արդարեւ զառաջիկայս պատմագրութիւն, արարեալ Սրբոյն Եղիշէի աստուածախօս Վարդապետի... որ եւ ըստ վայելուչ շարագրութեան եւ ծաղկազարդ ոճոյն, եւ ըստ այլ եւս կարեւոր եւ գեղեցիկ հանգամանաց, գրեթէ իբրեւ զարեգակն լուսապայծառ ցոլանայ ի մէջ այլոց բազմապատիկ պատմագրութեան նախնեաց մերոց, եւ ոչ սակաւ նպաստամատոյց լինի ուսումնասէր մանկանց դպրոցաց՝ զարգանալ ի յօրինուածս գեղեցիկ շարադրութեան„ (էջ 3)։

Ինչպէս տեսանք վերագոյն՝ 1764ի տպագրութիւնը ծանրապէս կը քննադատէ այդ տողերը գրողն, եւ կը շեշտէ թէ “զայս ամենայն զոր ասացաք՝ եւ առաւել քան զայն կարէ տեսանել ընթերցասէրն ի բաղդատելն զսա ընդ հնոյն„, թէեւ շատ ընտիր տպագրութիւն մը չէ իւր հրատարակածն ալ։

Գլխաբաժանումներու մասին ո՛եւէ դիտողութիւն չունի 1823ի հրատարակիչը։ Դիտելու է միայն՝ թէ այս երկու տպագրութիւններն ալ Ցեղա-

Նալլ տեղ Գլուխ կը գործածեն. մինչ վերջինը (1823), որ Անձեւացեաց օրինակին հետ նոյն բաժանումներն ունի եւ շատ հաւանական է որ այդ խումբին պատկանող օրինակէ մը գաղափարուած ըլլայ, Անձեւացեացին հետ Ցեղանով չը գործածեր։ Այս փոփոխութիւնը պէտք է ենթադրել որ Գէորգ Դպրի ձեռքով եղած ըլլայ, թէեւ կարեւորութիւն մը չունի ըստ ինքեան, քանի որ Անձեւացեաց օրինակներն ալ Ցեղանով կը գործածեն։ Բայց աւելորդ չէ դիտել թէ սկզբնագրին մէջ ոչ Գլուխ կար, ոչ Ցեղանով, այլ պարզապէս ընծայականին մէջ դրուած խորագիրներ. սապէս «Առաջին զժամանակն», «Երկրորդ զիրացն պատահումն յիշխանէն արեւելից», եւն։

Հրատարակութեանց իւրաքանչիւրին վրայ պիտի չխօսինք անոնց ի լոյս գալուն նպատակն եւ արժէքը գնահատելու համար։ Առաջին հրատարակութիւնը պէտք էր զբաղեցըներ զմեզ՝ Նայմանի կարծիքը եւ յարակից դիտողութիւնները քննելու համար. իսկ երկրորդը՝ իբր հերքումն «յետադէայ ածէն» հրատարակիչներուն 1764ի հրատարակչին ընթացքին հետեւողութեան, հետեւաբար եւ իբր քննադատութիւն առաջինին բազմադիմի վրիպակներուն. թէեւ, ինչպէս ըսինք, այս ալ զերծ չէ վրիպակներէ, մանաւանդ սխալ բացատրութիւններէն այն բառերուն, որք իբր «անծանօթ եւ դժուարիմաց» ստուգաբանուած են։

Նայման շատ յանդուգն վճռած է. իւր վճիռներն սակայն կարճ երեւակայական են գիտական ճշդութիւն մ'ունենալու համար։

Ընդհանրապէս խօսելով՝ Վարդանանց Պատմութեան հրատարակութիւնները հետզհետէ խնամքով սկսան բազմապատկուիլ։ Միակ թերութիւնը, զոր կը դիտեմ ինձ տրամադրելի եղած օրինակներուն, բաց ի 1838ի Մատենագրութենէն, է ձեռագիրներու տարբերութիւնը չնշանակել ու-

եւ է ձեւով։ Այս մեծ ծառայութիւն մը պիտի մատուցանէր մանաւանդ անոնց, որք Վարդանանց Պատմութեան ուսումնասիրութեամբ կամ թարգմանութեամբ կը զբաղին։ Բաւական չէ «ըստ Անձեւացեաց օրինակին» կամ «ըստ ընտրելագոյն օրինակաց» ծանօթութիւնը։

Բ. Օտար Թարգմանութիւնք եւ ուսումնասիրութիւնք։

Վարդանանց Պատմութեան ուսումնասիրութեան ուրիշ մէկ կողմն է, անոր օտար լեզուներու յեղումը։ Այս տեսակ թարգմանութեանց տրուած կարեւորութիւնը կշիռ ունի Վարդանանց Պատմութեան մատենագրական եւ պատմական գնահատումին համար։ Եւրոպա իւր գլխաւոր լեզուներու վերածելով իւրացուցած է զայն։ — Այս թարգմանութեանց ցանկը դարձեալ ժամանակագրօրէն կը կազմենք. աստղանշուածներն ձեռքիս տակ են.

1. **1830.** Անգլիերէն։ The history of Vartan, and of the battle of the Armenians: Containing an account of the religious wars between the Persians and the Armenians; by Elisaeus Bishop of the Amadunias. London 1830, pp. XXIV+111 gr. in 4°. Թարգմանիչ Նոյման (Charles Frédéric Neumann).

2. **1840.** Իտալերէն։ Eliseo storio Armeno del v° secolo. Venezia, nelle tipografia di Alvisopoli. 1840. 236 pp. in 8°. Թարգմանիչ Կաբբելլեթթի (Joseph Cappelletti).

3. ***1844.** Գաղղիերէն։ Soulèvement national de l'Arménie chrétienne au Ve siècle contre la loi Zoroastre, sous le commendement du prince Vartan le Mamigonian, ouvrage écrit par Elisé Vartabed, sur la demande de David le Mamigonian, son collègue; traduit en

français par M. l'abbé Grégoire Kabaragy Garabed. Paris au comptoire des imprimeurs-unis, 1844, in 8°.

4. **1853.** Ռուսերէն։ Տփխիս, Թրգ. Պ. Շանշեանց։

5. **1863.** Ռուսերէն. Մոսկուա։

6. ***1864.** Գաղղիերէն։ Élisé Vartabed. Histoire de Vartan et de la guerre des Arméniens [écrite] à la demande de David Mamigonian. Collection t. II, p. 182—251.

*Նոյնման իւր անգլիերէն թարգմանութեան՝ հրատարակուած «Թարգմանութեանց ժողովոյն» ծախքով՝ կցած է նաեւ հայերէն լեզուի ընթացք մը։ Ամբողջական թարգմանութիւն մը չէ այս։ Թարգմանիչն ուզած է Վարդանանց Պատմութեան գլխաւոր մասերը ծանօթացնել ազատ թարգմանութեամբ (տե՛ս Գապարաճի էջ* XIV *եւ Փ. Նէվ էջ* 302. — *Հմմտ. Բզմվ.* 1893 *Ապրիլ. էջ* 178)։

*Իտալերէն թարգմանութեան, որ* 1828*ի հրատարակութեան վրայէն եղած է, բանասիրական յատկութիւնն աւելի կարեւոր կ'երեւի, ըստ Փ. Նէվի վկայութեան.* Ayant reconnu à la consultation des manuscrits de Saint-Lazare, il a pu mettre plus de rigueur dans sa tâche de philologue։ *Նէվ այսպէս գրելով, ըստ Է. Տէղայէ, «ոչ ուղղապէս. կը մեկնէ թարգմանչին սա խօսքերը. «Ինձ առաջնորդ առի* 1828*ին տպագիրը, որ հաւատարմութեամբ եղած է հայ ստոյգ գրչագրաց վրայ, որ կը պահուին ի հռչակաւոր մատենադարանի Մխիթարեանց»։ — Ըստ Տեղայի տեղեկութեան Թոմմազէոյ ըրած է այս թարգմանութեան համար թէ «աւելի հաւատարիմ է քան վայելչաբան»* (*Բզմվ.* 1893, *Նոյ. էջ* 315)։

*Գապարաճի իւր գաղղիերէն թարգմանութեան յառաջաբանին մէջ խօսելով Կապպէլէտտիի թարգմանութեան մասին, կ'ենթադրէ թէ*

իտալացին Վարդանանց Պատմութեան դժուարիմաց եւ մթին հատուածներուն հանդէպ անյաջող մնացած ըլլայ. որովհետեւ Խորենացու Իտալերէն թարգմանութեան մէջ՝ Վենետիկցիներէն օգնական ունենալով հանդերձ, Վիստոնեան եղբարց լատին թարգմանութենէն ալ օգտուած է, նոյն իսկ անոնց սխալներն ալ օրինակելով. ահա՛, կ'ըսէ Գապարածին, “ce que je puis affirmer de celle de ses traductions que je connais. Quant à celle d'Elisée, je dirai, sans vouloir rien préjuger, que l'on trouve dans cet historien tant de passages difficiles et inintelligibles, et tant de subtilités inabordables pour un étranger, qu'elle que soit sa vaste érudition, que pourrais affirmer, sans trop offençer M. Cappelletti, que l'interprétation qu'il a eu donnée, différera en bien des endroits de la mienne“ (p. XIV—XV)։ Ընդհակառակը՝ Լանգլուայի համար Կապպելլէտտիի թարգմանութիւնը excellent է (Coll. p. 181)։

Գապարածիի գաղղիերէն թարգմանութիւնը բոլորովին շրջուած է։ Ազատ թարգմանութիւն մը, ըստ Լանգլուայի՝ շատ անհարազատ, մանաւանդ .*paraphrase* մ'է. — mais cette version est trés-infidèle et doit être plutôt considérée comme une paraphrase que comme une traduction —։ Փ. Նէվ կը պաշտպանէ այս գաղղիերէն առաջին թարգմանութիւնը (էջ 303)։ Ստուգիւ՝ Գապարածի ոչ միայն չափազանց ազատ թարգմանչի գրիչ մը գործածած է, այլ նոյն իսկ Ցեղանակներու թիւն ալ չէ պահած. 11 գլուխներու բաժնած եւ շարունակութիւն մ'ալ կցած է Փարպեցիէն քաղելով։ Թէեւ Գապարածին, այս “ծագումով հայ, սրտով Ֆրանսացի„, ինչպէս կ'ըսէ ինքն, կը յաւակնի շատ լաւ հասկցած ըլլալ Վարդանանց Պատմութեան ամէնէն դժուարիմաց կէտերը, բայց պարզապէս յաւակնութիւն մըն է ասի։ Իւր բոլոր

կենսագրական, հնագիտական, մատենագրական տեղեկութիւններն, անձնական են լոկ։ Այսպէս՝ Վարդանանց Պատմագրին նկատմամբ ըսածները (Յառաջ. էջ VI—IX) թէ նա տղայութեան (պատանեկութեան) ժամանակ Աղեքսանդրիա, Աթէնք, Կ. Պոլիս կը ղրկուի, վերադարձին կ'ընդգրկէ եկեղեցականութիւնը, անմիջապէս Վարդապետ կ'անուանուի իր հմտութեան եւ բարուց սրբութեան համար, եւայլն։ Յետոյ բանակի քահանայ (aumônier) եւ առաջին քարտուղար կ'ըլլայ Վարդանին, եւ այս բարձր պաշտօնին մէջ է որ կը գրէ իր պատմութիւնը։ Աւելին կայ. Elisée fut non-seulement l'historien le plus remarquable de son pays; mais encore il en fut comme un des apôtres de la civilisation. Il fonda un grand nombre d'écoles, à la tête desquelles il prit soin de mettre des professeurs aussi éclairés que pleins de zèle, s'efforçant par tous les moyens possibles d'inspirer aux Arméniens ce goût des sciences et de la sagesse dont lui même, tout le premier, donnait l'exemple (p. VII)։ Եղիշէ այս գործերով զբաղած էր, կը յարէ, երբ կը սկսի պատերազմը եւ իբր ականատես՝ կը նկարագրէ իր տեսածները շատ ժամանակներ յետոյ, իւր ընկերակից Դաւիթ երէց Մամիկոնենի խնդրանօք, վերջապէս կը մարի այն կեանքը այս փառաւոր աշխատութիւններու մէջ 480ին (Հմմտ. Փ. Նէվ էջ 300 եւ Հրատ. Նկրգ. Վարդանայ Հ. Մ. Բժշկեանի, տպ. Վենետ. 1850)։ Անշուշտ դիտելի է՝ որ Գասպարաճի Թարգմանիչներու կեանքը կը խտացնէ Վարդանանց Պատմագրի վրայ։ Բայց անճիշդ չափազանցութիւն մ'է այս. մեզ ծանօթ ոչ մէկ վկայաբանութիւն կամ կենսագրութիւն կը յիշատակէ թէ դպրոցներ բացած ըլլայ Եղիշէ, ուսուցիչներ կարգած, եւայլն, եւ 480ին ալ մեռած։ Այնչափ ճշգրիտ եւ մանրամասն կենսագրական

տեղեկութիւն, մեր մատենագիրներու, մանաւանդ Վարդանանց Պատմագրի մասին, հրաշք մ'է։

Միայն 38 ծանօթութիւններէն (էջ 297—357) 21 եւ 24 տոմարական հաշիւը, 23՝ [illegible] բացատրութիւնը, 26՝ Թէոդոսի գրուած Նամակին (?) տրուած կարեւորութիւնը, մանաւանդ յարաբերութեանց նկատմամբ ըրած խորի՜ն ուսումնասիրութիւնը, 30՝ [illegible] եւ [illegible] մեկնութիւնները, 32՝ իբր թէ ութերորդ եղանակը 10 կամ 15 տարի վերջ գրուած մ'է (ծնթ. 2) թարգմանչին յաւակնութեան ամէնէն փայլուն ստուգանիշներն են։ — Թարգմանութենէն հատուածներ բաղդատել բնագրի հետ՝ մեր ծրագրէն դուրս կը մնայ։

Պետրոս Շանշեանցի ռուսերէն թարգմանութիւնը, բաւական յարգ ունի ըստ Լանգլուաի, իսկ Տ. Խ. եպս. Ստեփանէ կ'ըսէ թէ „չէ կարող շատ ընտիր թարգմանութիւն համարվիլ" (ինձ ուղղուած անձնական նամակ)։

Լանգլուայի թարգմանութիւնն աւելի հաւատարմութեամբ եղած է։ Մատենագրական համառօտ, հմտալից Ներածութիւն մը եւ տեղ տեղ կարեւոր ծանօթութիւններ միայն աւելցուած են բնագրին վրայ։ Աւելի ծանօթութիւններ կը սպասուէր Լանգլուայի թարգմանութենէն, մանաւանդ պարսկական իրաց նկատմամբ։

Գաղղիերէն թարգմանութեանց շարքում պէտք է յիշել նաեւ Սէն-Մարտէնի Վարդանանց Պատմութենէն ինչ ինչ հատուածներու թարգմանութիւնը Հ. Զօհրապի օգնութեամբ։ Գապարաճին կ'ենթադրէ թէ Սէն-Մարտէնի ամբողջական թարգմանութեան մը չյաջողելուն պատճառը, բնագրին դժուարութիւններն եղած ըլլան (XIII—XIV)։

Այս բոլոր հայերէն հրատարակութեանց եւ օտար թարգմանութեանց մէջ՝ Վարդանանց Պատ-

մագիրն աւանդական անձնաւորութիւնն է. այսինքն՝ Վարդանի գործակից, ականատես, եւայլն:

Օտար թարգմանութիւններէն կախուած են գրեթէ օտար ուսումնասիրութիւններն ալ: Այս ուսումնասիրութիւններն ընդհանրապէս Վարդանանց Պատմագիրը Եւրոպայի ծանօթացընելու համար եղած են՝ շատ նեղ, բայց փայլուն շրջանակի մը մէջ: Նայմանն է դարձեալ՝ որ իր թերակատար թարգմանութեան առթիւ գրած է (գերմաներէն) ի «Բերլինեան Տարեգիրս գիտնական քննադատութեան» 1829, 1830, որ յետոյ գրքոյկի ձեւով առանձինն ալ հրատարակուած է: Պատկանեան, ըստ Փէտտէրի տեղեկութեան (Աշխ. Մտնտր. Ժէ. էջ 115), կը յիշէ նաեւ Յ. Բերեսին (J. Beresin), Քննութիւն Եղիշէի Պատմութեան թարգմանութեան ի Պ. Շանշեանցէ, Պետր. 1857 (ռուսերէն), եւ հատուած մը «Կաւկաս» ռուս թերթին մէջ, որուն հեղինակն է՝ ըստ Պատկանեանի, Գ. Մելիքով:

Գապարաճիի թարգմանութեան առթիւ Փ. Նէվ գրած է, ինչպէս կ'ըսէ ինքն, Université catholiqueի (Paris t. XX. novembre et décembre 1845) մէջ, անշուշտ աւելի ներբող մը քան քննադատութիւն մը, ինչպէս արդէն կը գուշակուի իր տեղեկացընելու ձեւէն:

Վարդանանց Պատմութեան վրայ եղած ինձ ծանօթ ուսումնասիրութիւններն են — Փ. Նէվի «Քրիստոնեայ Հայաստան եւ իր գրականութիւնը» գործին Եղիշէի նուիրուած գլուխը, էջ 299—316 (L'Arménie chrétienne et sa littérature par Félix Nève, in 8°. p. 403. Louvain 1886): Չորս հատուածներէ կը բաղկանայ ուսումնասիրութիւնս § I. Biographie d'Elisée աւանդական ծանօթ հիմերու վրայ շինուած եւ այն ալ հետեւողութեամբ Գապարաճիի տեղեկութիւններուն. քննադատական հանգամանքէ զուրկ բոլորովին: — § II. His-

toire de la guerre des Arméniens contre les Perses sous Vartan։ Շատ սեղմ համառօտութիւն մը պատերազմի դէպքերուն։ Պատերազմը կ'անուանէ La bataille de l'Ararat (?)։ — Այս գլխուն կու տայ մատենագրական հակիրճ տեղեկութիւններ Վարդանանց պատմութեան հրատարակութեան եւ ուսումնասիրութիւններու մասին։ — § III. Vues d'Elisée; mérites de son style. պատմագրի բուն ընծայականը թարգմանելով — անճիշդ — ի վեր կը հանէ պատմագրին նպատակը։ Ոճին նկատմամբ իր հիացումը կէս քննադատական շեշտով մը կը յայտնէ. — «Ձեւը Եղիշէի մէջ անյարմար չէ նիւթի բնական մեծութեանը։ Ոճն անտարակոյս զերծ չէ այն թերութիւններէն, զոր եւրոպական քննադատութիւնը կը վերագրէ արեւելեան պատմագիրներու մեծ մասին. բայց իր ճարտասանական ձեւերու չափաւոր գործածութեան համեմատութեամբ չենթարկուիր այն ստգտանքին, զորս ուրիշ հայ գրողներ կը հրաւիրեն իրենց վրայ։ Եղիշէի ոճն փայլուն է եւ ներդաշնակ. միշտ համաձայն, քիչ բացառութեամբ, այն ճշդութեան եւ յստակութեան, որք էական օրէնքներն են փոխաբերական լեզուի։ Չենք ըսեր Հ. Սուքիաս Սոմալեանի հետ (Quadro p. 32) թէ Եղիշէ մրցակից մ'եղած ըլլայ յոյն պատմագիրներու, բայց կը ճանչնանք իրեն հետ՝ թէ «իր պատմութեան մէջ նկարագրութիւնները շատ յստակ եւ պարզ են. մտածումները ճիշդ եւ առողջ փիլիսոփայութեամբ մը լեցուն. նկարները կենդանի եւ արտայայտիչ։ Ո՛ր բանի մէջ որ կերպով մը աննման եղած է նա իր ներկայացընել ուզած անձերուն նկարագիրը ճշդութեամբ գծելու եւ զանոնք իրենց բնական գոյներովը միշտ զգեցընելու դժուարին արուեստն է այն»։ Այն երկարաբանութիւնները, որք Եղիշէի գործին մէջ աստ անդ կը նշմարուին, ծագում կ'առնուն մանաւանդ սովորական նկարագրէն իր

առաջադրութեանը, որ յիշատակներու բնութեան հետ կապուած է։ Երկայնաբանութեան ուրիշ պատճառ մ՚ալ գլխաւոր անձնաւորութիւններու բերանը դրուած երկար ճառերու ներմուծումն է, այն ամէն հաւանականութեամբ, որուն ենթակայ են աւանդութիւնով հաւաքուած խօսքերը։ Եղիշէի՝ ինչպէս նաեւ շատ մը հայ պատմագիրներու շարադրութեան յատուկ նկարագիրն է բարոյական զարտուղութիւններու (digression) գործածումը ճառի ձեւով յօրինուած՝ իր պատմութեան շատ մը տեղերուն մէջ. այս վարդապետական (didactique) կամ, եթէ կ՚ուզէք, խրատական (parénitique) մասը, որ ուրիշ գործերու մէջ անպատեհ պիտի երեւէր, եւ որ տեղի կու տայ պատմութեան յաճախակի ընդհատումներուն, անհաշտ չէ՛ այս տեղ հեղինակին ունեցած հաստատուն նպատակին հետ, այսինքն՝ մեծ պատուհասներէ զօրաւոր վարդապետութիւններ հանել»։ — § IV. De l'intérêt des faits dans l'histoire d'Elisée; l'esprit chrétien de la nation arménienne. այս հատուածում Ֆ. Նէվ կը պատկերացընէ հայ-քրիստոնէութեան մեծութիւնը, համառօտելով նախարարներուն առ երեսս ուրացութեան եւ վերադարձէն անմիջապէս յետոյ ի գործ դրուած համախումբ բուռն ընդդիմութեան, Վասակի մատնութիւններուն, Վարդանի քաջագործութիւններուն, հայ եկեղեցականներուն դերին կարեւորութեան եւայլ պարագաները։ Այս ամէնէն երկար հատուածն է իր ուսումնասիրութեան, զոր կը վերջացընէ Վահանի (Մամիկոնեան) վրայ տեսութեամբ մը. այս տեսութեան մէջ հետեւած է Գապարաճիի Փարպեցիէն ըրած բովանդակութեանը։

Ֆէլիքս Նէվի ուսումնասիրութիւնը կը ծառայէ մի միայն Վարդանանց Պատմութիւնն իր աւանդական վիճակին մէջ ծանօթացընելու Եւրոպային։ Հայ մատենագրութեամբ զբաղողները

շատ չհետաքրքրեր իբր մատենագրական ուսումնասիրութիւն մը. կամ ինչպէս կ'ըսէ Է. Տէղը (Բզմ. 1893. Նոյ. էջ 521. ծնթ.) “Այս գրուածս չկրնար շատ բան սորվեցնել հայու մը՝ որ Եղիշէի բնագիրն դիմացն ունի։ Նէվ՝ հայկական իրաց տեղեկութիւն չունեցողներու ծառայութիւն մը կը մատուցանէր՝ որ տասը տարի յառաջ աւելի սակաւագիւտ էր„։

Նոյն կաղապարով եւ նոյն արժէքով ուսումնասիրութիւն մ'ունի Գէտտէր՝ գերման հայագէտն ալ, որ թարգմանուած է Վիեննայի Ազգ. Մատենադարանին ԺԷ. հատորին մէջ — “Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Գէթթէրի„, խումբ մը գրուածներու հետ։ Թարգմանիչն եւ ծանօթագրողն է Հ. Յ. Տաշեան։ Եղիշէի նկատմամբ գրուածը, յիշեալ հատորին մէջ կը գրաւէ 105—115 էջերը, երեք հատուածով։ — 1. **Եղիշէ Միանձն**. աւանդական կենսագրութիւնն է պատմագրին. բայց չընդունիր որ Ամատունեաց եպիսկոպոսն եղած ըլլայ. Բարձումայի զրոյցին կարեւորութիւն կը տրուի։ Հայագէտը ծանօթութեան մը մէջ կը հերքէ Նայմանի այն կարծիքը, որուն համեմատ իբր թէ Եղիշէ ուղղափառ դաւանութենէ խոտորած ըլլայ։ Գ. Նէվ եւս ծանօթագրած է զայդ (էջ 304)։ — Ահա Նայմանի պատճառաբանութիւնն եւ Գէտտէրի հերքումը. “Արծրունեաց այս տեղեկութիւնը (Բարձումայի նկատմամբ) առիթ տուած է Նայմանի՝ Եղիշէի ուղղափառ հաւատքը տարակուսի տակ ձգելու։ Եւ որովհետեւ կ'երեւայ նաեւ թէ Եղիշէի պատմութեան Հինգերորդ գլուխը կը պակսի, կ'ըսէ նոյն մատենագիրն՝ լեզուի իրեն յատուկ համարձակութեամբ մը հետեւեալը. “Եթէ Եղիշէի ձեռագրին ընդօրինակողք արդեամբք գլուխ մը ջնջած են, կրնանք վստահութեամբ մ'ենթադրել թէ այն տեղ հռովմէական-առաքելական եկեղեցին եւ անոր վարդապետութիւնը շօշափուած էին։ Եղիշէ ան-

ձուկ յարաբերութիւն ունէր ինչպէս կ'իմանանք Թովմայ Արծրունւոյ տուած մէկ տեղեկութենէն, ասորի Բարծումայի՝ Նեստորի հռչակաւոր կողմնակցին հետ, եւ այս պատճառաւ կրնային անշուշտ իր ընդհանուր եկեղեցիէն խոտորող կարծիքները յետին ժամանակի ուղղափառ կղերէն իր գրքին ընդօրինակութեանց ժամանակ դուրս թողուած ըլլալ„ (էջ 65—66)։ Սակայն գլուխ մը դուրս թողուիլը կրնար նոյնպէս Հայ հեղինակին ուղղափառութիւնը ցուցընել, ինչպէս Նայման կ'ուզէ անոր Նեստորականութեան ապացոյց առնուլ։ Վասն զի ենթադրենք թէ այն գլուխը դուրս թողուեցաւ միաբնեայ ընդօրինակողներէ եւ ոչ թէ ուղղափառ կամ “հռոմէական-առաքելական. կղերէն վերջին ժամանակաց. այն ատեն կրնար այս բանս պատահած ըլլալ անշուշտ նոյնպէս անոր համար որ Եղիշէ ուղղափառօրէն կ'ուսուցանէր քան անոր համար որ Նեստորաբան էր„ (էջ 107)։ Ֆէտտէր սա հերքումով հաստատած կ'ըլլայ կարծեցեալ Եղ. գլխու մը պակասը։ Գլուխ մը չպակսիր Վարդանանց Պատմութեան մէջ, հետեւաբար ոչ Նայմանի եւ ոչ ալ Ֆէտտէրի կարծիքն ուղիղ կրնայ ըլլալ։ Վարդանանց Պատմութիւնը դաւանաբանական գրուած մը չէ։ — 2. Գրու-թիւնը. Այս հատուածում հայագէտս Կիրակոսի յիշատակած գրուածները կ'ընդունի իբր գործ Վարդանանց Պատմագրին։ Սեղմ շրջանակով մը կը ներկայացընէ պատերազմին պարագաները եւ կ'ընդունի թէ Վարդանանց Պատմութիւնը “հիմնեալ է ականատեսի վկայութեանը վրայ„ (էջ 109)։ Ծանօթութեան մը մէջ, ինչպէս տեսանք վերեւ (էջ 6—8), կը հերքէ Ըր. Ցեղանակին կարծեցեալ անվաւերականութիւնը։ Վարդանանց Պատմագրին ընծայուած միւս գրուածներու նկատմամբ — բացի Միանձանց խրատէն, զոր ընդունելով իբր “Եղիշէի անշուշտ վերջին, բայց ապա-

Հովապէս ամէնէն գեղեցիկ գործն„ 481 էն յետոյ գրուած՝ — դիտել կու տայ թէ անոնց "Հարազատութիւնը կրնայ կասկածանաց ենթարկուիլ„ ....."ուստի անշուշտ իրաւունք ունինք զանոնք եթէ ոչ Եղիշէի անտարակուսելի հարազատ գրութիւն, գոնէ Ե. կամ Զ. դարու գործեր համարելու„ (էջ 111—112)։

Հայագէտս յետոյ (էջ 114—115) Հրատարակութիւնք, Թարգմանութիւնք, Մատենագրութիւն հատուածիկներով կը ծանօթացընէ Վարդանանց Պատմութեան վրայ եղած աշխատութիւններու ցանկը։ Իւր ներկայացուցած Հայերէն Հրատարակութիւններու ցանկը շատ թերի է։

Գէտտէրի ուսումնասիրութիւնը, լաւ եւս մատենագիտութիւնը, ինչպէս Գ. Նէվինը, պատրաստուած Արեւմուտքի համար, հազիւ հետաքրքրական է իբր քննադատութիւն։

Ասոնց վրայ պէտք է աւելցնել՝ 1. Էմիլ Տիլլօն (Emile Dillon) որ բանասիրական քննադատական ուսումնասիրութիւն մը նուիրած է Վարդանանց Պատմութեան դժուար կէտերուն (տես Գ. Նէվ. էջ 303. — Բուլլէտ. 1893. Նոյ. էջ 516)։ — 2. Միանսարեանցի գործն՝ Bibliographia Caucasica et Transcaucasica՝ որ ըստ Տեղայի "ընտիր„ է եւ "ցանկէ մ՚աւելի վեր. բայց դժբախտաբար անկատար մնացած է, տպ. Պետրբ. 1874—76. Եղիշէի տպագրութեանց եւ թարգմանութեանց վրայ կը խօսի յէջ 519—521„ (Բուլլէտ. անդ)։ 3. Էմիլ Տեղայի հմտալից մէկ յօդուածը՝ թարգմանուած Բուլմաքէրի Նոյ. թուին 513—521 էջերում (Հմմտ. Հանդէս 1893. Նոյ. էջ 343)։ — E. Teza. La Storia dei Vartaniani di Eliseo nella nuova edizione di Mosca. Roma 1893. 8º pp. 14. R. Accad. 1893 pp. 397—408. — Իտալացի հայագէտը կը խօսի Խ. Ցովհաննեսեանի նոր հրատարակութեան եւ այս առթիւ եղած քննա-

դատութեանց վրայ. խիստ կը գտնէ Խալաթեանը։ — Կապպէլլէտտիի եւ Լանգլուայի թարգմանութեանց հինգ տեղերը կը բաղդատէ. կը խօսի աշխարհաբար (ռուսահայ.) կրկին թարգմանութեանց վրայ։ Այս բազմակողմանի յօդուածը կարելի է ընդհանուր տեսութիւն մը համարիլ, թէեւ թերի, ցարդ Վարդանանց Պատմութեան վրայ եղած զանազան աշխատութիւններու վրայ։

**Գ. Հայ Թարգմանութիւնք եւ ուսումնասիրութիւնք։**

Վարդանանց Պատմութիւնն երկու անգամ ռուսահայոց աշխարհաբար լեզուին վերածուած է.

1. **1863.** Թէֆլիզ. Թրգմ. Մարտիրոս Սիմէօնեանց, ըստ Տեզայի։ Փէտտէր նշանակած է Մոսկուա 1869 (Աշխ. Մտնտ. ԺԵ. էջ 115)։

2. ***1891.** Թէֆլիզ. Թրգմ. Հ. Ղուկասեանց. տպ. “Արօր„ Տ. Նազարեանցի։

Սիմէօնեանցի թարգմանութիւնը սպառած է այժմ. հետեւաբար չեմ կարող բան մ'ըսել. ոչ ալ այդ առթիւ եղած քննադատական կամ մատենագրական գրուածներ ծանօթ են ինձ՝ եթէ երբեք հրատարակուեցան այս տեսակ գրուածներ։

Հ. Ղուկասեանցի թարգմանութիւնը աչքիս առջեւ է։ Այս թարգմանութեան վրայ գրեց Հ. Յ. Տաշեան քննադատական մը՝ (Հանդէս 1892 Ապրիլ էջ 117—120. — Հմմտ. Տեզայի յօդուածը Բզմվ. 1893 Նոյ.)՝ նշանակելով անճիշդ թարգմանութիւններ, սխալ իմացումներ։ Հ. Յ. Տ. “շատ խորթ„ կը դատէ այդ թարգմանութիւնը եւ իրաւամբ քիչ կը գտնէ 15 ծանօթութիւնները։ “Նոր դար„ի (1891 թ. 171 եւ 172, 180) եւ “Մուրճ„ի (1891 թ. 11, էջ 1390—1397, կրկին 1892 թ. 1) մէջ այս թարգմանութեան վրայ քննադատութիւններ երեւցած են՝ ըստ Հ. Յ. Տաշեանի տեղեկութեան, որ “շատ աւելի հիմնական„

կը համարի Մուրճինը։ Ընդհանրապէս շատ ազատ եւ շատ տեղ ալ անյաջող, այս թարգմանութիւնը, աւելի խղճամիտ եւ աւելի խորին հմտութեամբ օժտելով պէտք էր տալ ժողովրդեան եւ ուսանողներուն ձեռքը։ Չեմ գիտեր թէ նախորդ թարգմանութեան վրայ ինչ առաւելութիւն ունի այս։ Ի՛նչ ալ ըլլայ տարբերութիւնը, մանաւանդ ուսանողներու համար աւելի հետաքրքրական հանգամանք մը պէտք էր ունենալ այս թարգմանութիւնը։ Անճշդութիւններ ներելի չեն, այլեւայլ օտար թարգմանութիւններու հանդէպ։

Թարգմանիչը քննական ակնարկ մ'իսկ չէ նետած իւր թարգմանած գրքին եւ անոր հեղինակին վրայ, որք հաւասարապէս ծանր խնդիրներով շրջապատուած են։ Վարդանանց Պատմագիրը՝ Հ. Ղուկասեանցի համար եւս աւանդական Եղիշէն է, “Վարդան Մամիկոնեանի ատենադպիրն„ եւ “Թերեւս նորա ազգականը„, եւ Արտաշատի ժողովականներէն մին (Ց-Ք. V—VI) եւայլն։ — Գործը կը բաղկանայ Յառաջաբանէն եւ ծանօթութիւններէն զատ՝ 259 էջերէ։ Գլուխներու ցանկ մ'ալ չէ կցուած գրքին վերջը։

Հայերէն ուսումնասիրութեանց մէջ, ամէնէն յառաջ Հ. Գար. Զ.ի “Պատմ. Հայ. Դպրութեան„ (Բ. տպ. 1886) գործին մէջ, աւելի բան մը կը սպասուէր քան ինչ որ ըրած են եւրոպացի հայագէտներ։ Ոչինչ նորութիւն այս գործին 312—28 էջերուն մէջ, որոնք Եղիշէի նուիրուած են։ Բաց աստի ժամանակագրական, չենք գիտեր, ինչ հաշուով Գիւտէն անմիջապէս վերջ դրուած է Եղիշէն, յետոյ Խորենացին եւ յետոյ Փարպեցին։

Հայերէն հիմնապէս եւ ամբողջ ուսումնասիրութիւն մը չէ եղած դեռ Վարդանանց Պատմութեան վրայ։ Հրատարակութիւններ եւ թարգմանութիւններ աւելի զբաղեցուցած են մտքերն ու մամուլը՝ քան ո եւ է ուսումնասիրութիւն մը։

Եղածներն ալ մատենագրական կամ բանասիրական ցրիւ գրուածներ են, որոնք լոյս տեսան կամ թարգմանութեան մ'առթիւ կամ օտար հեղինակներու գործերէն, մանաւանդ Աւեստայի կամ Իրանական հարցերու վրայ նորագոյն ուսումնասիրութիւններէն թելադրուած։ Այս վերջին տեսակին կը պատկանի բանասիրական մը — "Քանի մի պարսկերէն բառեր որ գործածուած են ի պատմութեան Եղիշէի„ — Բզմվ․ի 1895 Յունուար (էջ 5—7) եւ փետր․ (էջ 49–52) թիւերում։ Ո՛ եւ է իրանագէտ հեղինակի մը հետազօտութիւնները, զոր օր․ Տարմշթեթերի՝ Զէնդ Աւեստա երկու հոյակապ հատորները կամ պահլաւերէնի եւ հին պարսկերէնի ընտիր բառարան մը, պիտի դիւրացընէին քանի մը բառեր մեկնելու աշխատութիւնը։ Որովհետեւ Վարդանանց պատմութեան մէջ կա՛ն ուրիշ բառեր ալ եւ բացատրութիւններ, զոր օր․ չխօշակ առնել, անդամել, ժաշկէն, չաղէճ, Ճրաշայ, ատա, ճաղ, խորամն․ Միհր Մայրաձէն, ամբարակապետ, դերհանդերձապետ, եւայլն, եւայլն, եւ ասոնց վրայ բան մ'ալ չգրեց վերոյիշեալ յօդուածի գրողը։[1]

Գալով մատենախօսական կամ քննադատական գրուածներու, ասոնց մէջ առաջին տեղը տալու է 1․ Հ․ Մ․ Ջամչեանին (Պտմ․ Բ․ էջ 120 եւ

---

[1] Ետքը տեղեկացանք՝ որ յօդուածագիրն է Միքայէլ Փորթուգալ Փաշա, որուն սպասուած գործը Հեղինակին մահէն ետքը հրատարակուեցաւ սա խորագրով․ Եղիշէ Վարդապետի վասն Վարդանանց եւ Հայոց Պատերազմին եւ քննադատական թարգմանութիւն Միքայէլ Փաշայի Փորթուգալ, Վենետիկ 1903։ Այս գործը արդիւնք է մանրազնին աշխատութեան, որ բոլորովին կեդրոնացած է Եղիշէն լուսաբանելու․ բայց եթէ քննադատութիւն Եղիշէի բնագրական կազմութիւնը վերլուծելու համար, երբեք արժէք չունի․ վասն զի Եղիշէն աւանդական ծանօթ պատմագիրն է Փաշայ Հեղինակին համար։ Նոր Ծ․ Հ․ 1905։

456) որ Եղիշէն եւ Փարպեցին իրարմէ անկախ նկատեց առանց պատճառաբանութեան ։ Ջամչեան գրեց խումբ մը ծանօթութիւններ ալ երկու պատմագիրներու համաձայնութեան եւ այլ մասնաւոր խնդիրներու վրայ (անդ, էջ 456—468), որչափ ալ ասոնք իրենց կշիռը կորուսած ըլլան այժմ նոր հետազօտութեանց հանդէպ ։

2. Հ. Յովսէփ Գաթրճեան, Վիեննայի գիտնական Հօր դիտողութիւններն Վարդանանց Պատմագրի նկատմամբ, զոր իբր ջինջ գրող մը կ'ընդունի (Հանդէս 1887 Յունուար. Հատուկտորք) ։

3. Պ. Գր. Խալաթեան, որ իւր "Ղազար Փարպեցի եւ Գործք նորին„ (Մոսկուա 1883) գրուածին մէջ Եղիշէն աղբիւր համարեցաւ Փարպեցւոյ Պատմութեան ։

4. Պ. Կ. Կոստանեանի Հիւսուածքին (1877) Գ. հատորը, որուն մէջ, ինչպէս որ կը գրէր ինձ Տ. Խ. եպս. Ստեփանէ, "կան այս մասին տեղեկութիւններ„ ։

5. Վարդանանց Պատմութեան վերաբերմամբ սկսուած կարեւոր աշխատութիւն մ'ալ կայ, որ զուտ բանասիրական արժէք մ'ունի՝ իբր կռուան ոսկի գրքոյկին զանազան ընթերցուածներուն մէջ ընտրութիւն մ'ընելու ։ Այս աշխատութիւնն է "Եղիշէի ձեռագիրներէ համեմատութիւն. Համեմատեց Գարեգին Արկ. Միաբան Ս. Էջմիածնի„ (1892), որուն դեռ 6 թերթերը լոյս տեսած են ։ Գ. Սարկաւագը 1879 ի Տփղիսի տպագրութիւնն եզր ընտրելով կը համեմատէ Էջմիածնի Մատենադարանին Nr. 1645 (ըստ տպագրեալ ցուցակի), Nr. 1643, Nr. 1641 եւ Nr. 2463 (ըստ ձեռագիր համառօտ ցուցակի) Եղիշէի ձեռագիրները ։ Համեմատութիւնը հասած է մինչեւ էջ 56 տող 12 Տփղիսի տպագրութեան ։ Համեմատուած ձեռագիրներու մասին ընդարձակ տեղեկութիւններ կու տայ գործին սկիզբը էջ Ա — ԺԱ ։ "Երկու խօսք„ով ալ կը բացա-

տրէ համեմատութեան նպատակը, որուն կարեւոր մէկ մասը յառաջ կը բերենք. — «Ճշմարիտ ուսումնասիրութեան հաստատուն հիմքը ձեռագիրներէ համեմատութիւնը համարելով, յանձն առինք այս աշխատութիւնը — տաժանելի եւ ձանձրանալի իբրեւ մեքենայական գործ, բայց քաղցր եւ ախորժելի իբրեւ ուսումնասիրութեան ուղիղ ճանապարհ։ Համեմատութեան համար ընտրեցինք մեր ամենասիրելի, բայց ամենէն քիչ ուսումնասիրուած մատենագիրներից մէկը՝ Եղիշէն։ Գործն սկսել էինք ընդարձակ ծրագրով — համեմատել Մայր Աթոռի ընտիր ձեռագիրները, որ բաւական բազմաթիւ են, աչքի առաջ ունենալով հնագոյն Յայսմաւուրքների եւ Ճառընտիրների Եղիշէից առած հատուածները, եւ վերջապէս նախնի այն մատենագիրները, որոնք ուղղակի կամ անուղղակի կերպով օգտուել են Եղիշէից։ Այս ծրագրով սկսեցինք մեր համեմատութիւնը, որի ժամանակ աշխատել ենք ամենափոքր տարբերութիւններն էլ աչքից չփախցնել — ձեռագիրները իսկութեամբ երեւան հանելու նպատակով. եւ այդ ծրագրի իրագործմամբ կամենում էինք Եղիշէի ուսումնասիրութեան խնդիրը ամենահաստատուն հիմքերի վրայ դնել։ Բայց այժմ ստիպուած լինելով թողնել մեր ծրագրի կատարելապէս իրագործումը, աւելորդ չհամարեցինք ի լոյս ընծայել ներկայում պատրաստ համեմատութիւնների արդիւնքը»։ — Կը յուսանք որ թերի չթողուիր այս հրատարակութիւնը, որ իւր ամբողջութեամբ միայն կրնայ հետաքրքրական ըլլալ։

6. Քննական ուսումնասիրութիւն մը կարելի էր գտնել Ա. Մ. Գարագաշի Քննական պատմութեան վերջին հատորում, քանի որ քննադատ հեղինակս իւր ուսումնասիրութիւնը հասուցեր է մինչեւ Փարպեցու Պատմութեան վերջը։ Չգիտեմ թէ ինչ եղրակացութեան յանգած է եւ թէ ինչ է

իր դատումը Եղիշէի եւ Ղազարի Պատմութիւններուն, մանաւանդ Եղիշէի անձին եւ Պատմութեան վրայ, թէեւ հեղինակիս ինչ ինչ տեսութիւնները՝ Քննկ. պտմ. Բ. եւ Գ. մասերում՝ համաձայն են իմ քննութեան արդիւնքին (Բ. Մաս էջ 40, 49, 61—63, 98. Գ. Մաս էջ 27, 28, 183—185, 362—367)։

7. Տարբեր տեսակէտով մը կարելի է ուսումնասիրութիւն մը համարիլ Հ. Ղ. Ալիշանի "Կարմիրն Վարդան" բանաստեղծօրէն գրուածը՝ "Յուշիկք", Ա. Հատոր եւ Նուագներն՝ Վարդանանց դէպքերու եւ անձնաւորութեանց վրայ, մանաւանդ "Պլպուլն Աւարայրի" քերթուածը. սանք անշուշտ բանաստեղծական արժէք մ'ունին՝ քան պատմական։

8. Ցաւալի է որ աշխատութիւններ կան Վարդանանց Պատմութեան նկատմամբ, ինչ տեսութեամբ ալ ըլլան անոնք, որք լոյս չեն տեսած։ Ասոնցմէ է բարձրաստիճան ծանօթ անձնաւորութեան մը գործը[1]։ Ուրիշ մ'ալ կայ, եթէ մի եւ նոյն գործին չակնարկուիր, որուն մօտալուտ հրատարակումը կ'աւետէր Տ. Գ. Արքեպս. Այվազեան՝ իր տպագրութեան (1879) Ձեկուցումին մէջ — "Կամ էր մեզ եւ պարզաբանութիւնս ինչ հակիրճս ի ստորեւ իջիցն դրոշմել՝ առ ի դիւրահաս գործելոյ համբակաց զբառս ինչ եւ զբանս բնագրին, մանաւանդ զպարսկականսն եւ զմթինս, սակայն լաւ վարկաք ի ժամուս փութոյ զայդ աշխատութիւն մեկնաբանութեան ի ջանասիրութիւն վարժապետացն առնել ապաստան. որոց այժմէն աւետաւորեմք զմօտալուտ հրատարակութիւն այնպիսւոյ ընդարձակ աշխատասիրութեան, զոր պատրաստեալ է քաջահմուտ ոմն

[1] Փորթուգալ Միքայէլ Փաշայի քննադատութիւնքը, զոր ծանօթագրեցինք վերը (եր. 27)։

Նոր Տ. Հ. 1905։

ընդունել մերոյ եւ օրինաց եւ պարզին բարբառոյ եւ ուղղագրական գենին ընտանութեանց„։

Օտար հեղինակներու ուսումնասիրութեանց շարքէն դիտմամբ դուրս թողուցինք հետաքրքրական յօդուած մը, որ լոյս տեսաւ Հանդէսի մէջ (1893 Մայիս, էջ 129—133)։ — "Եղիշէի պատմութեան հատուածոյ„ խորագրով։ Հրատարակողն՝ անգլիացի հայագէտ Փր. Կոնիբեր՝ կ'ըսէ թէ այդ հատուածները "շատ հին երկաթագիր տառերով գրուած, զորոնք Լիոնի Մատենադարանի թիւ 15 ձեռագրին կազմին մէջ„ գտած է։ "Այս ձեռագիրը, կը յաւելու, ծիսական նիւթեր կը բովանդակէ, որմէ Փարիզի Մատենադարանին համար ընդօրինակութիւն մ'եղած է. բայց չեմ գիտեր թէ արդեօք ընդօրինակողն ուշադրութիւն դարձուցա՞ծ է թէ ոչ՝ այս հատուածոց վրայ։ Հատուածներուն առաջին տողերն անընթեռնլի են. եւ կազմին գործածելու համար ուղղահայեաց կերպով եւ գրութեան մէջէն կտրուած են իւրաքանչիւր էջի երկու սիւներուն միոյն կամ միւսին իւրաքանչիւր տողին կա՛մ սկիզբը եւ կա՛մ վերջը։ Այս պակասաւոր տողերը լրացուցի Եղիշէի պատմութեան 1892 տարւոյ Մոսկուայի հրատարակութեան համեմատ, անկիւնաւոր փակագիծներու մէջ դնելով այս յաւելուածները։ Հատուածոյքս մագաղաթէ են՝ որ քիչ մը վնասուած է եւ դեղնցած. իւրաքանչիւր էջը քսան տող ունի։ Իւրաքանչիւր առաջին տողն անընթեռնլի է„։

Հատուածորները ներկայացընելէ վերջ, սա դիտողութիւնները կը յաւելու հայագէտը. "Հատուածոյքս որչափ ալ պակասաւոր են՝ կ'ապացուցանեն որ Եղիշէի բնագիրը յառաջ շատ տարբեր էր անկէ՝ զոր այսօր տպագրութիւնք մեր առջեւ կը դնեն։ Այս տարբերութեանց ամէնէն աւելի աչքի զարնողները հոս կը դնենք ի մի ամփոփուած ըստ իւրաքանչիւր հատուածորին„։

«Հատուածոր» 1. Առաջին հատակոտորին Բ սեան նախընթաց մասին բնագիրը բոլորովին ուրիշ էր քան զայն՝ զոր այժմ կ'ընթեռնունք. վասն զի արդի տպագրութեանց մէջ չենք գտներ Ա. սեան տողերուն վերջին տառերը։

«Հատուածոր» 2. Այժմու տպագրութեանց ինն տողերը՝ «անդադար մնէր» բառերէն մինչեւ «գաւառ Բաբելոնացն» բառերը՝ յետամուտ ընդմիջարկութիւն (interpolation) են։ Նոյնպէս օտարամուտ են «այլ հոգէ» բառերէն վերջն եղած տողերը մինչեւ «Տարնեցան»։

«Հատուածոր» 3. «Այր որէ» բառերէն սկսեալ մինչեւ «կոտորեցան ի Քրիստոսոս» խօսքը կը պակսի արդի ձեռագրաց հրատարակութեանց մէջ։

«Հատուածոր» 4. Այս մասին 10—13 փոքրիկ տողերուն մէջ պատմուած կը գտնենք այն՝ որ արդի հրատարակութեանց մէջ մէկ ու կէս մեծադիր էջ կը լեցընէ։ Այս տեղ ուրեմն մեր (նորագոյն ժամանակի) ձեռագիրք անհեթեթ մեծութեամբ ընդմիջարկութիւն մը կը ներկայացընեն։ Իսկ 10րդ տողին համար՝ պէտք է կրկին անգամ համեմատել հատակոտորը. վասն զի գուցէ տառերէն մի քանին սխալ կարդացած ըլլամ։

«Բայց աստի այս 4րդ հատակոտորին կէսերը տպագրութիւնք նոր գլուխ մը կը սկսին։ Հատակոտորը նիւթոյ այս բաժանումը չ'ընդունիր որ թերեւս համեմատ է այն ծրագրին՝ զոր Եղիշէ իւր պատմութեան սկիզբը կը նախագծէ ըսելով թէ իւր բոլոր պատմէլիքը պիտի աւանդէ «յետընթելոյ»։

«Համառօտ ըսելով հատակոտորքս կը ցուցընեն՝ բաց ի մանր տարբերութիւններէն՝ նաեւ զայն որ հեղինակիս գործքը պարունակող ձեռագիրք չափազանց կերպով կերպարանափոխ եղած ու ընդմիջարկութիւններ առած են՝ հաւանականօրէն Ժ դարէն ետքը»։

Հայագէտիս գիւտը հետաքրքրական է երկու ընդհանուր տեսակէտով. 1. Թէ Վարդանանց Պատմութեան ձեռագիրք աղաւաղուած են չափազանցօրէն նեւէ եղանակաւ. 2. Թէ Եղանակներու բաժանումը՝ ճիշդ եօթն պիտի ըլլան։ Այս երկու ընդհանուր տեսակէտներով համամիտ ենք հայագէտին։ Սակայն 4րդ հատակոտորի մէջ "ան-ՀԵԹԵԹ ՄԵԾ--ԹԵ-ՄԲ ԸՆԴՄԻՋ-ԱՐԿ--ԹԻ-Ն„ մը գտնել եւ զայն ուրիշ կերպարանափոխութիւններու հետ "հաւանականօրէն Ժ դարէն ետքը„ եղած ենթադրել՝ չթուիր հաւանական ըլլալ։ Ա. հատակոտորին նկատմամբ բան մը չենք կրնար ըսել, քանի որ մագաղաթի մնացած տառերը տպագրութեանց մէջ չկան. միայն պէտք է ենթադրել որ այս մագաղաթին մէջ ամփոփուած կտորը յետասմուտ ընդմիջարկութիւն մ'եղած ըլլայ։ Այս ենթադրութիւնը հակառակ է անշուշտ հայագէտիս եզրակացութեան, որուն համեմատ տպագրութիւններու ձեռագիրներն են որ ընդմիջարկութիւններ կրած են։ — 2 հատակոտորին մէջ ընդմիջարկութիւն նկատուած կտորը այդ հանգամանքը չունի երբեք. "Եւ քանզի գարնանային էր ժամանակն, ծաղկալից դաշտքն գառնային յորդահոսանս արեանց բազմաց„ եւ այլն, զուտ ոսկի գրչէն ելած՝ պատերազմի բուն պատմական ժամանակը մատնանիշ կ'ընէ. այսինքն՝ Մայիս ամիսը եւ ո՛չ Յունիսը՝ ինչպէս ընդունուած է առհասարակ։ — 3. Հատակոտորի յաւելուածը կարելի է ուղղակի գաղափարողի ձեռքով եղած համարիլ։ Բնագրի սա խօսքերէն — "Եւ միահամուռ լինի հազար եւ երեսուն եւ վեց այր„ — յետոյ շատ լաւ յարմարցուցած է գաղափարողը, "Նստուած ողորմի„ ի ձեւով մը, "որք մեծաւ ճգնութեամբ վաւն սուրբ հաւատոյ ի վերայ պատերազմելոյ կատարեցան ի Քրիստոս„։

4. Հատակոտորի մէջ, ինչպէս ըսինք, "անհեթեթ„ ընդմիջարկութիւն դժուար է նկատել՝

տպագրութեանց (1859) էջ 93 տող 33 — էջ 95 տող 26 պատմական հատուածը։ Կոնիբերի այս ենթադրութիւնը կ՚ըսէ Պ. Գր. Խալաթեան (Հանդէս 1895 Ապրիլ էջ 14) “մեծ հաւանականութիւն է ստանում, եթէ այդ յիշատակարանի վրայ աւելացնելու լինենք նաեւ “Բազմավէպի 1851 թ. Յուլիս համարում լոյս տեսած՝ խորին հնութիւն կրող Ճաշոցի մի շատ հետաքրքրական երկաթագիր մագաղաթեայ պատառիկը։ Սա բովանդակում է ներկայ Եղիշէի Պատմ. Ե. յեղանակի սկիզբը (“Մեծ է սէրն Աստուծոյ ..... սիրոյն Աստուծոյ„ — 5 տող) տպագրից բաւական տարբեր ընթերցուածներով եւ՝ որ գլխաւորն է՝ ուշադրութեան արժանի այս վերնագրով “Վկայութիւն սրբոյն Վարդանա եւ Հմայեկա եւ Վահանա եւ Սահակա Հայոց սպարապետաց եւ ամենայն սուրբ արանց որք մեռան ի Քրիստոս„։ — “Վարդանանց Պատմութեան„ մէջ ծանօթ օրինակներում պակասում է այս վերնագիրը, որից կարելի է հետեւցնել, թէ Եղիշէի հնագոյն բնագիրը աւանդում էր նաեւ Հմայեկի (Մամիկոնեան, երեք տող է նուիրում սորան տպ. օրինակը) եւ մանաւանդ Վահան (Մամիկոնեան եւ ոչ Արծրունի, ինչպէս ենթադրում է “Բազմավէպի„ յօդուածագիրը) ու Սահակ (Բագրատունի) սպարապետների վկայութեան մասին, որոնց անունն անգամ չենք գտնում տպագիր օրինակներում եւ որ ունի սակայն Փարպեցին։

“Գուցէ այս իսկ նախնական բնագիրը լինի, որից օգտուել է Փարպեցին եւ որը Սեբէոսին (Է. դար) էլ ծանօթ էր. յետոյ նա ենթարկուել է փոփոխութիւնների եւ նորից մշակուել՝ ըստ երեւութին, ոչ վաղ քան Է. դարը„։

Պ. Գր. Խալաթեան՝ Կոնիբերի ենթադրութիւնը հաստատելու ժամանակ, անգլիացի հայագէտին կարծեաց բոլորովին հակառակ եզրակացու-

թեան մը յանգած է։ Ըստ Կոնիբերի հաստատոր-ներուն՝ արդի տպագրութիւնք «անհեթեթ ընդ-միջարկութիւններ» կրած են. ըստ Խալաթեանի հատուածներ պակասած են արդի տպագրութիւն-ներէն։

Բուզանդի այն հին թիւերը չկան մեր մատենադարանում, որպէս զի կարենայի անձնական դատում մ'ընել. բայց Գ. Խալաթեանի յառաջ բերած պատառիկը եւ ըրած դիտողութիւնները բաւական են ինձ ցուցնելու թէ Եղիշէ՝ Հմայեկի, Վահանի եւ Սահակի նկատմամբ չէր կրնար գրած ըլլալ իւր Պատմութեան մէջ։ Որովհետեւ Վարդանանց Պատմագիրը՝ դիտաւորութիւն ունեցած է ընդհանրապէս Վարդանի հետ զբաղիլ, եւ միայն Վարդանանց Պատմութիւնը գրել եւ ոչ Վահանեանց։ Հետեւաբար Վահան եւ Սահակ չէին կրնար Վարդանանց Պատմութեան մէջ մտնել. հակառակ պարագայում պիտի բռնադատուէինք ենթադրել՝ թէ Եղիշէ Վահանեանց Պատմութիւնն ալ գրած պէտք էր ըլլալ։ Ինչպէս հոն կրնար յետուլ դէպք մը, որ ժամանակագրօրէն շատ ետք կը մնայ։ Վարդանանց Պատմագիրը գէթ իւր «ուխտանոփեալ» կեղծիքը չմատնելու համար զգուշութիւն պիտի ընէր վտանգաւոր թակարդի մը մէջ չիյնալու։ Անկից զատ Վահան «դեռ տղայ մըն էր» երբ իւր հօրեղբայրը՝ Վարդան, եւ հայրը՝ Հմայեակ՝ նահատակուեցան։ Վահան եւ իւր եղբայր-ները. «Որք էին յոյժ տղայք», դեռ իբր պատանդ կը մնային Տիզբոնում եւ Աշուշայ՝ Վրաց իշխանը՝ 455ին զանոնք ազատեց Յազկերտ Բ.ի ձեռքէն (Փրպ. էջ 323—325. հմմտ. էջ 223, 243 եւ 419 — Վահան կ'ըսէ «չէ է հասոյն իմոց ես տղայ հասոյէ») ինչ-պէս միեւնոյն ժամանակ Պատմութեան մէջ կրնար յիշատակուիլ իբր վկայուած կամ նահատակուած։

Իսկ թէ ինչու Վարդանանց Պատմագիրը Հմայեկի նահատակութիւնը՝ ընդերկար չպատմեր

եւ երեք տողով միայն կը բաւականանայ, զայս ետքը կը բացատրենք (Ա. Գիրք Գլ. Է) եւ գլխաւոր կէտերու վրայ հիմնուելով կը ջանանք ցուցնել՝ թէ ինչ են այսպիսի թերութեանց պատճառները կամ թէ ինչ եղանակով կը գրէ Վարդանանց Պատմագիրն իւր գործը — ինչ է իւր Փարպեցու Պատմութեան հետեւելու ուղղութիւնը։

Արդ՝ "Բազմավէպ. ի մէջ հրատարակուած "խորին հնութիւն կրող Ճաշոցէ մը շատ հետաքրքրական մագաղաթեայ պատառիկը", ինչպէս դիւրին է մակաբերել, ոչ թէ Վարդանանց Պատմութեան Երդ Յեղանակէն դուրս ընկած հատուած մ՚է, այլ Վկայաբանական գրուած մը, որ "ուշադրութեան արժանի" (*) այս վերնագիրը կը կրէ իւր սկիզբը։ Հետեւաբար "Նախնական" բնագիր մը չէ կարելի նկատել զայն, որմէ օգտուած ըլլան Փարպեցին եւ Սեբէոս։

Իսկ Կոնիբերի նկատած "անհեթեթ ընդմիջարկութիւնները" անհարազատ չեն պատմութեան բունին եւ գրչին։ Ժրդ դարու գրիչ մը այնքան յաջող պատուաստ մը պիտի չկարենար ընել։ Հաւանական է որ, ինչպէս կ՚ենթադրէ իմ հմուտ Վարդապետ Տ. Եղիշէ Դուրեան, տեղ տեղ համառօտուած օրինակ մ՚ըլլայ այն հատակոտորներուն պատկանած ձեռագիրը։ Այն մագաղաթները շատ կարեւոր են ցուցնելու համար՝ թէ ինչպէս գլուխները (Յեղանակ) կը միանան իրարու հետ կամ խորագրի սխալներու կ՚ենթարկուին այս կամ այն գաղափարողի ձեռքին տակ։ Ընտիր օրինակ մը չէր կրնար նկատուիլ հատակոտորներուն պատկանած ձեռագիրը։ Արդի տպագրութիւններու կարծեցեալ ընդմիջարկութիւններու քով, այս ձեռագիրն ալ ունի ընդմիջարկութիւն. զայս կը ցուցնէ Ա. Հատակոտորին Ա. Սիւնը. եւ եթէ Զրդ յեղանակին Էրդ ի հետ ձուլուած ըլլալը ստուգանիշ մը կը համարուի արդարացնելու պատմագրին "յեւթն

գլուխ„ գրելու ծրագիրը, կան խումբ մը ձեռագիրներ ալ, մեր Մատենադարանի ձեռագրի խումբէն, որք արդի տպագրութեանց Ե[րդ] եւ Զ[րդ] յեղանակները միացընելով նոյն վախճանին կը հանին։ Այս տարբերութիւնները էական չեն պատմութեան բովանդակութեան հանդէպ։

Կոնիբերի հատակոտորներու ձեռագիրներէն պէտք է առանձին խումբ մ՚ենթադրել, որք կը ցուցընեն ընդհանուր աղաւաղումներ Վարդանանց Պատմութեան մէջ։ Այս աղաւաղումները Ժ[րդ] դարէն ետքը ենթադրել անճիշդ կ՚երեւի. որովհետեւ այն ժամանակէն (1267) մնացած ձեռագրի մը վրայ եղած 1823 ի տպագրութիւնը (տես էջ 323—24) չունի այսպիսի աղաւաղումներ, եւ համաձայն է ծանօթ տպագրութիւններու հետ։

Այս էր Վարդանանց Պատմութեան ուսումնասիրութեան (տպագրական, բանասիրական) հանգամանքն՝ երբ ինձ վիճակեցաւ ձեռնարկել ներկայ աշխատութեանս։ Ոսկի Գրքոյկի վրայ գրուած ցրիւ մատենախօսականներու կամ բանասիրականներու առթիւ ամէն ոք կը գանգատէր՝ թէ Եղիշէ ամէնէն քիչ ուսումնասիրուած է։ Պէտք է խոստովանիլ որ, կարծես ա՛լ հասած էր այս թանկագին մատենին ալ քննադատական գետնի վրայ դիտելու վայրկեանը՝ Ագաթանգեղոսէն, Բուզանդէն, Զենոբ Գլակէն եւ Խորենացիէն յետոյ։

Ուսումնասիրութիւնս ծրագրած եւ սկսած էի գրել՝ երբ հետաքրքրական շարք մը յօդուածներու լոյս տեսան Հանդէս-ի մէջ՝ (1895 Յուն. էջ 20—23., Փետր. էջ 58—61., Ապրիլ էջ 110—113)՝ "Եղիշէի Պատմութեան Աղբիւրը„ խորագրով։ Յօդուածագիրն է Պ. Գր. Տէր-Պօղոսեան, որ Եղիշէի երեք կէտերը բաղդատելով Փարպեցու հետ՝ հակասութիւններ կը գտնէ առաջինին մէջ եւ հաւաքաբանօրէն կը ցուցընէ՝ որ երկու պատմագիրներու

Հասարակ Երրորդ աղբիւր մը կայ, կամ Փարպեցին աղբիւրն է Եղիշէին։

Այս յօդուածները կը հերքէին Պ. Գր. Խալաթեանի այն կարծիքը, որուն համեմատ Եղիշէ իբր աղբիւր ծառայած պիտի ըլլար Փարպեցու պատմութեան։ Պ. Խալաթեան նոյն կերպով Խորենացին ալ աղբիւր կը ծառայեցնէր Փարպեցու Պատմութեան։ Գաղղիացի Հայագէտ Կարրիերի նորագոյն հետազօտութիւնները Խորենացու աղբիւրներուն վրայ, Պ. Խալաթեանի այդ կարծիքն ալ կը հերքէին։ Այս երկու նորութիւններու հանդէպ Պ. Խալաթեան յետս կոչում մ'ըրաւ իր կարծեաց եւ բոլորովին հակառակ եզրակացութեան մը յանգեցաւ "Եղիշէի աղբիւրներէն [illegible]" գրած յօդուածովը (Հանդէս 1895 Ապրիլ, էջ 113—116)։ Խորենացու համար, ակնարկելով Կարրիերի հետազօտութիւններուն, ըսաւ "Եթէ հաստատուին այս կարծիքները, որ՝ ըստ իս՝ շատ մօտ են հաւանականութեան, այն ժամանակ այլ կերպարանափոխութիւնների թւում անհրաժեշտ կը լինի ընդունել նաեւ, որ ոչ թէ Խորենացին էր՝ իբրեւ Ե. դարու երկրորդ կիսու մատենագիր, նոյն դարու վերջերը եւ Զ. դարի սկիզբը ծաղկած Փարպեցու աղբիւրը, ինչպէս էի ենթադրել, — այլ ընդ հակառակը" (նոյն անդ)։ Իսկ Եղիշէի Փիլոնի ճառերուն հետ ունեցած աղերսը դիտելով, եւ ցուցընելով թէ այդ ճառերը ոչ թէ Երդ դարու թարգմանութիւն են, ինչպէս կարծած են Ն. Բռք. Հայկազեանի աշխատասիրողները, այլ Էրդ դարու, կը միտի Վարդանանց Պատմութեան տարեթիւը երկու դար իջեցնել, թէեւ, կը յաւելու "ակնարկածս փաստը ինքը դեռ կարօտ է ապացուցի — [illegible] Ե. դարու գործ համարուած Փիլոնի հայ թարգմանութիւնը Է. դար տեղափոխելը մի ենթադրութիւն է բաւականին հաւանական, որ պէտք է սակայն ստուգուի հիմնաւոր քննութեամբ։ Բայց այս

տեղ են մտադիր եւ չեմ ենթադրում թէ [illegible] շատ [illegible] առել„ (նոյն անդ)։

Թէ Պ. Գր. Տէր-Պօղոսեանի եւ թէ Պ. Գր. Խալաթեանի դիտողութեանց արդիւնքը (Պ. Խալաթեանինը՝ Փիլոնի նկատմամբ) նորութիւն մը չէին ինձ համար։ Երբ Տէր-Պօղոսեանի յօդուածներուն առաջին մասը կարդացի Հանդէսում, որուն կարեւոր ծանօթութիւն մը կցեց խմբագրութիւնը, անմիջապէս գրեցի (1895 Յունուար 1/13) Հ. Յ. Տաշեանի՝ Եղիշէի ուսումնասիրութեանս գլխաւոր եզրակացութիւնները հաղորդելով։ Գիտուն Վիեննացին պատասխանեց իմ նամակին՝ Փետր. 11 թուակիր նամակով մը, զոր գրեթէ-ամբողջութեամբ յառաջ բերի ուսումնասիրութեանս ընթացքում։ Հ. Յ. Տ. գրեց թէ "Ձեր դիտողութեանց մի քանին շատ ճիշդ են, մէկ երկուքն ալ կարօտ նոր քննութեանց։ Սակայն հոս կէտ մը կայ։ Լաւ դիտած էք որ Եղիշէ կը գործածէ "Վկայից Արեւելեայց„ վկայաբանութիւնքն։ . . . Միանձանց խրատուն Փիլոնի հետ կապ ունենալը ճշդիւ դիտած էք. — ահա կէտ մ'ալ ճշդելու գրութեան թուականը, որուն անշուշտ անմտադիր չէք ըլլար„։

Հանդէսի մէջ լոյս տեսած յօդուածներու, — թէ՛ Տէր-Պօղոսեանին, թէ՛ Խալաթեանին — արդիւնքը, այսինքն՝ թէ Եղիշէ Փարպեցիէն վերջը գրած է իր Պատմութիւնը, հետեւաբար չկրնար Եʳᵈ դարու գործ համարուիլ, նպաստաւոր է իմ տեսութեան։

Իմ ուսումնասիրութեան ուղղութիւնը եւ եզրակացութիւնները անկախ կը մնան ուրեմն ցարդ եղածներէն։ Այս տեղ աւելորդ կը նկատեմ բացատրել իմ ընտրած ուղղութիւնը. ընթերցողը ինքնին պիտի տեսնէ զայն։ Գիտել կուտամ միայն թէ Վարդանանց Պատմութեան Փարպեցու հետ ունեցած աղերսին վրայ ծանրացած եմ պատմական դէպքերու բաղդատութեան մէջ։ Մանրամասնու-

թիւնները մէկ դի թողուցի, որք աւելի ծանօթագրելու յարմար են Եղիշէի կամ Փարպեցու նոր հրատարակութեան մը կամ աշխարհաբար թարգմանութեան մը մէջ, որովհետեւ գլխաւոր կէտեր բաւական են բաղդատական եզրներ կազմելու համար։

Ուսումնասիրութիւնս լոկ մատենագրական չէ։ Երեք գրքերը՝ երեք տարբեր՝ բայց միեւնոյն դարու խնդիրներու քննութեան նուիրած եմ։ Եւ հիմնական քննութեան մ'այս առաջին ձեռնարկը Երդ եւ Զրդ դարերու երեք տարբեր կէտերուն վրայ եւ այս Փարպեցու եւ Եղիշէի շրջանակին մէջ, ամբողջ կը նկատեմ։ Որովհետեւ ամէն բան եւ յարաբերական խնդիրներ ջանացի շօշափել եւ նոյն իսկ քիչ մ'աւելի ծանրանալ հոն, ուր խնդիրը բոլորովին կոյս մնացած էր ցարդ. զոր օր. Վարդանի պաշտօնական եւ առանձին կեանքը եւ այլն եւ այլն։ Անոնք թերեւս աւելորդ նկատուին՝ իբր աղերս չունեցող նիւթեր Վարդանանց Պատմութեան բուն մատենագրական ուսումնասիրութեան հետ. բայց այնպէս համոզուած եմ՝ որ Պատմութեան մէջ գործող անձնաւորութիւններուն կամ ոյժերուն բունը հասկնալ կը դիւրացընէ պատմական դէպքերու ուսումնասիրութիւնը. մանաւանդ Երդ դարու դէպքերուն, որոնց երեւոյթը տարբեր է բուն իրողութենէն։ Այսու հանդերձ դեռ շատ մը խնդիրներ, պատմական դէպքեր, իբր մանրամասնութիւններ, հազիւ ակնարկով մը դիտուած են՝ աւելի չբեռնաւորելու համար ուսումնասիրութեանս ծրագիրը, որուն նպատակն է Փարպեցու եւ Եղիշէի պատմութեան դարը ցոլացընել։

---

## ՁԵՌԱԳԻՐՆԵՐ

### Անձեւացեաց օրինակը·

Վարդանանց պատմութեան այս օրինակը շատ հռչակուեցաւ, եւ որչափ գիտեմ, առանց գիտական ուսումնասիրութեան մ'ենթարկուելու։ Ինձ ծանօթ գրուած մը այս մասին՝ Տ. Խորէն Վրդ. Գալֆայեանի (Նոր Պէյ) ներածութիւնն է՝ «ըստ Անձեւացեաց օրինակի» առաջին տպագրութեան առթիւ։ Ոսկի-Գրքոյկին ձեռագիրները բազմաթիւ են. կարծես ամէն կարդալ գիտցողներ, մանաւանդ բարձր դասակարգերէն եւ եկեղեցականներէն շատեր, փափաքած են ատոր «օրացոյց»ն ըլլալ։ Ամէնէն դրական ապացոյցն է ասի այս գրքին վայելած ժողովրդականութեան։ Հրատարակութիւններ եւ թարգմանութիւններ չեշտեցին զայս։ Այս եռանդոտ փարումին մէջ էր՝ որ Անձեւացեաց օրինակը սիրուն ակնածանքով մ'ողջունուեցաւ, եւ շարժառիթ մ'եղաւ քանի մը նոր տպագրութեանց ալ։ Ասոր գաղտնիքը՝ ձեռագրին շլացուցիչ շրջանակի մը մէջ ի լոյս հանուիլն էր քան քննական գնահատում մը։ Անձեւացեաց տիտղոսը կախարդանք մ'ազդեց Եղիշէի սիրահարներուն։ Եւ զարմանալի է մանաւանդ տեսնել՝ որ ո՛չ Տ. Գար. Արքեպ. Այվազեան՝ «ըստ Անձեւացեաց օրինակի»ն երկրորդ հրատարակողը, ո՛չ Գարեգին Սրկ. որ այս տպագրութիւնը իր համեմատութեան եզր ընտրած է, ո՛չ ալ Խ. Ցովհաննիսեան, որ դարձեալ «ըստ Անձեւացեաց օրինակի»ն հրատարակութիւն մ'ըրած է, բառ մ'ալ չեն ըսած այս նկատմամբ։ Իսկ առաջին հրատարակչին գրած ներածութիւնը արժէք մը չունի իբր ուսումնասիրութիւն. քանի որ չբացատրեր մեզ թէ ինչո՞ւ յարգի է այս օրինակը կամ ի՞նչ է անոր առաւելութիւնը ուրիշներուն վրայ։[1]

---

[1] Իսկ եթէ ուրիշ տեղ մ'եղած է այդպիսի քննական ուսումնասիրութիւն մը, մենք չենք տեսած։

Նոր Ծ. Հ. 1905։

Անձեւեալ օրինակը ծանօթ տպագրութիւններու կամ ձեռագիրներու մէջ՝ թէ մատենագրական, թէ բանասիրական՝ հիմնական եղանակաւորում մը յառաջ բերելու հանգամանքէն զուրկ է։ Վարդանանց Պատմութեան մասին շատ մը խնդիրներ կը յուզուին Թովմա Արծրունիէն սկսեալ. գլխաւորաբար Եղ Ցեղանակի մը պակասը, ուրիշ ընդմիջարկութիւններ, ընդհատներ, առոնց վրայ ուրիշ ձեռագիրներէ աւելի լոյս մը չսփռեր Անձեւացեալ օրինակը։ Ուրիշ խնդիր մըն է թէ ասոնք անհաւանական են կամ լոկ ենթադրութեանց արդիւնք։

Ըստ Հ. Գար. Զարբհանելեանի, Անձեւացեալ օրինակը, "թէպէտ ըստ ընթերցուածին մեծ տարբերութիւն մը չունի իրմէն յառաջ հրատարակուածներէն, բայց իր հնութեամբը եւ յիշատակներով պատուական„ (Պատմ. Հայ. Դպր. էջ 328)։ Հնութիւններն ու յիշատակները, սակայն, տարբեր բաներ են։ Կան ձեռագիրներ՝ որոնց ընթերցուածները, առանց սխալներն ալ մոռնալու, աւելի ընտիր են տեղ տեղ. զոր օր. Գարեգին Սարկաւագի համեմատութեան դրած Գ. Սիւնակի ձեռագիրը (Nr. 1641), որուն բուն խորագիրն է "Յիշատակարան Սրբոյն Վարդանա Հայոց Զաւրավարին„։ Այս ձեռագրին ընդհանուր յատկութիւնն է, ըստ հնագոյն գրչութեան, օ ի տեղ աւ։ Եւ յ-երու ջնջումը բառերու վերջը, ինչպէս Վարդանա, Սատանա, Տէրանա, երբեմն բառին մէջն ալ՝ նաելով, հաոց, մերթ գ ի տեղ կ։ Ահա քանի մ'օրինակներ աւելի ընտիր ընթերցուածի՝ իմ դատումով, զոր կը շարենք ըստ Գարեգին Սարկաւագի համեմատութեան.

Անձեւացեալ օրինակ։ Ձեռագիր — Թ. 1641

| | | | | |
|---|---|---|---|---|
| էջ 2 | տող | 13 | զվաստարութիւն | զվաստութիւն |
| | „ | 15—16 | անտեսութեան | անաւրէնութեան |
| | | | զհաստուցմունս | զհաստուցմունս |

| | | | |
|---|---|---|---|
| էջ 2 | տող 24 | յիմաստասիրութիւն | յիմաստութիւն |
| „ 3 | „ 2 | Զուգութիւն | զուգաւորութիւն |
| | „ 9 | անօրութեան | տկարութեան |
| | „ 12 | ընդ Հրամանին | ըստ Հրամանին |
| „ 4 | „ 9—10 | օդոցն | աւդոյն |
| „ 5 | „ 8— 9 | ականատեսք լին... | ականատես եղեալ |
| „ 6 | „ 15—16 | մթերեալ թոյնս թափեաց ի բաց | — զթոյնսն ի նա թափեաց |
| „ 7 | „ 1 | զդառնութիւն թիւնից | զթոյնս դառնութեան |
| | „ 5— 6 | եւ զբազում գաւառս Հռոմոց աւերեաց | եւ զբազում գաւառս Հռոմոց աւարեաց |
| „ 10 | „ 2 | Արդ զբանս զայսոսիկ | Արդ զբանս մեր |
| | „ 17—18 | պնդադեսպանս արձակէր | պնդով դեսպան արձակեաց |

(Հմմտ. էջ 23 տող 5—6 դիտողանս օրինակս արձակէր. ուր ձեռագիրն ունի, օրինակս տառէր. — Հմմտ. Փրպ. էջ 469՝ Ցիրաս դեսպանօք. ընդ կ'ուզենք ձորք չէ բառը. — պնդադեսպան թերեւս բարդուած է պնդագոյն դեսպան էն, — տառի անկումով)։

| | | | |
|---|---|---|---|
| „ 11 | տող 7 | բան զայս | զբանս զայս |
| „ 12 | „ 10 | բազմագոյն | բազմագունդ |
| „ 15 | „ 6— 7 | զմարդկային բնութիւն ընդ վզեալ ապարանէր | զմարդկային բնութիւնս անդր վազեալ ընթանայր |

(Այս երկու ընթերցուածներն ալ կ'ուղղեն ապարթանքը անիմաստ բայը. զոր Տ. Ե. ՔՀյ. Հիւնքեարպէյէնտեան պրսկ. ամբրոփ՝ պատերազմ կը ստուգաբանէ. որ այս տեղ անիմաստ կը մնայ։ Ապարթանէն, որուն տարբեր մէկ ձեւը կը գտնենք Ագաթանգեղոսի քով, Հաւանաբար յառաջ եկած է ապարանքը է՝ Սի Թին Հեր չփոթումով։ — Իսկ Ագաթանգեղոս ունի "ապարասան ապարթանական„ տես Ագթ. տպ. Վենետիկ ՌՄՁԴ. էջ 418. իսկ տպ. ՌՅԺԱ — 1862. էջ 421։)

| | | | |
|---|---|---|---|
| „ 20 | տող 4— 5 | զպաշտօնեան յայտնել | — կատարել |

| | | | |
|---|---|---|---|
| էջ 20 | տող 19 – 20 | թունաւոր | թիւնաւոր |
| » 28 | » 19 | Այսպիսի պատուական գինուորութիւն | այնպիսի ախոյեան զինուորութիւն (Հմմտ. Արարատ էջ 420)։ |
| » 33 | տող 15—16 | գեղեցկութիւնք գիմաց եւ ճարտարութիւնք բանից | գեղեցկութիւն դիմաց եւ ճարտարութիւն խաւսից |
| » 40 | » 6 | ինքնագոյ բնթնաքառն է։ | ինքնագոյ է նոյնպէս բնթն նոյն։ |

Ահա քանի մ'օրինակ միայն. եթէ Գարեգ. Սարկաւագի համեմատութիւնը լման ունենայինք, ասոնց թիւը կարելի էր բազմապատկել։

Ուրիշ ձեռագիրներ ինչ արժէք որ ունին իրենց մէջ գտնուած ընտիր ընթերցուածներով, նոյնքան համեմատական արժէք մ'ունի Անձեւացեացն ալ։

Անձեւացեաց օրինակին գրութեան տարեթիւն ալ չէ նշանակուած։ Գրութեան հանգամանքէն եւ այլեւայլ յիշատակարաններէն կ'եզրակացընէ հրատարակիչը "եթէ յոյժ հնոյ ժամանակաց էր մատեանն. եօթներորդ կամ ութերորդ դարու գործ, եթէ ոչ առաւել եւս հնագոյն։„ Այդչափ հին չթուիր ըլլալ սակայն, եթէ Ատոմ Անձեւացիին համար գրուեցաւ այդ օրինակը։ Ատոմ, զոր հրատարակիչը կը նոյնացընէ Յովհան Պատմաբանի յիշատակածին հետ (Յովհ. Պատմ. էջ 98) Թ^րդ դարու գործ կը համարուի (Ատոմ պատմութեան մէջ կ'երեւի մինչեւ Ժ^րդ դար. տե՛ս Չ. Պատմ. Հայ. Բ. էջ 719, 782, 805, 806) եւ քիչ յետոյ ուրիշ ձեռքեր անցնիլն ալ — ըստ հրատարակչին Խոսրով Անձեւացեաց, Գրիգոր Մագիստրոս, որք Ժ^րդ եւ ԺԱ^րդ դարերում ծաղկեցան — կը ցուցընէ որ այդ օրինակը միշտ բարձր շրջանակներու մէջ մնաց անմիջական փոխանցումով։

Վարդանանց Պատմութեան ձեռագիրներն այնքան շատ եւ այնքան տարբեր են իրարմէ ընթերցուածներով, որ կարելի է Անձեւացեաց անուան ներքեւ խումբ մը կազմել բաղդատական ուսումնասիրութիւնը դիւրացընելու համար։

## ՄԵՐ[1] ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ՁԵՌԱԳԻՐԸ

(ԺԷրդ դար։)

Վարդանանց Պատմութեան այս ձեռագիրը՝ Խորենացու Պատմութեան հետ մէկ գրչէ ելած եւ միեւնոյն հատորին մէջ ամփոփուած է։ Խորենացու Պատմութիւնը հատորին սկիզբը գրուած է սա կարմրադեղ խորագրով. «Մովսէսի Խորենացւոյ Յաղագս Ձերոյս Յիշխանն յայսմ քանից. Սահակայ Բագրատունւոյ խնդրելու։»

Թուղթ՝ 242 (ԻԹ տետրակ)։ Մեծութիւն՝ 28 × 15։ — Գրութիւն՝ 10 × 18։ — Տող՝ 25։ — Նիւթ՝ բամպակ ընդհանրապէս դեղնկեկ. տեղ տեղ սպիտակ. յղկումէն շատ տեղեր բարակցած, մաշած. թերթերէն ոմանք կարկտուած ողորկուած. տեղ տեղ կարկամած՝ կարծես ջուրն ինկած է։ — Կազմ. հին կաշեկազմ փայտեայ. կաշին մոյգ գունով, որուն վրայ խաչանիշ դրոշմածներ. կողակալներով (tranchefile) եւ կապիչներով (անգործածելի) եւ առաջքածածկոյթով. կտրուածքը (tranche) սուսրաներկ։ — Հանգամանք՝ լաւ։ — Գիր՝ միջակ բոլորգիր բաւական կանոնաւոր. տեղ տեղ խոշորցած՝ թուղթի փոփոխութեան պատճառաւ։ — Խորագիրներ եւ Սկզբնատառեր կարմրադեղով։ — Երկու հասարակ խորաններ. մին Խորենացու եւ միւսը Եղիշէի պատմագրութիւններուն սկիզբը մելանով գրուած։

Այս հատորին մէջ Խորենացու Պատմութիւնը կը գրաւէ 104 թուղթ (= էջ 208)։ Գրչու-

---

[1] Այսինքն՝ Դպրեվանքին (Արմաշ)։

թիւնը քիչ մ'անխնամ է. անուշադրութեան արդիւնք ակներեւ սխալագրութիւններ կան երկու մասերուն մէջ ալ։ Թէ՛ գաղափարողը, թէ՛ ստացողները սրբագրութիւններ ըրած են լուսանցքին եւ տողերուն վրայ կամ աւելցնելով կամ ուղղելով. տեղ տեղ ալ քերուածներ կ'երեւին։ Խորենացու Ողբին յաւելուածը՝ "Աստուածպաշտութեան մոռացեալ եւ ատութիւն արմատացեալ, ուր ցամաքեալ„ էն մինչեւ "այլ անտրոհ աղօթիւքն առ մեզ են.՝ կայ այս ձեռագրում. (Հմմտ. Հանդէս 1890 Մայիս, էջ 114—115)։ Այս յաւելուածին անմիջապէս կցուած է յիշատակարանը (անթուական), որ նոյն է Եղիշէի վերջը կցուած յիշատակարանին վերջին մասին հետ։ Յայտնի է որ Խորենացին եւ Եղիշէ միեւնոյն տարին գաղափարուած են եւ թուականը դրուած է վերջին յիշատակարանում։

Վարդանանց Պատմութիւնը կը գրաւէ 135 թուղթ (= էջ 270), եւ երեք թուղթ Թովմայի հատուածներն ու գրքին յիշատակարանը։ Սկսուածն է "Եղիշէի Վարդապետի. Զոր արարեալ է ի խնդրոյ Դաւթի Մամիկոնի. վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմի։ Օգնեա Հոգի սուրբ„։

Ընծայականին գլխատառը (Բ) թռչնագիր մըն է։ Գլխաբաժանումներէն ոմանք Յեղանակ կամ Գլուխ բառերը չունին, այլ պարզապէս ընծայականում գրուած ձեւով։ "Առաջին զժամանակն„՝ կամ մոռցուած է կամ դիտմամբ զանց առնուած։ Ընծայականին վերջին տողին կը կցուի վերջակէտ մը յետոյ՝ "Քանզի ի բառնալ ազգին. եւն։ Բ Յեղանակն խորագրուած է. Գ-րդը սխալմամբ Բ-րդ գրուած է։ Դ-րդը կը խորագրուի, "Չորրորդ յեղանակն վասն երկպառակութեան„ եւայլն, եւ կը սկսի "Զինչ այս վայր ոչ ինչ կարի զանգիտէի„ եւ կը վերջանայ "զբաժակ դառնութեան մահու„, ճիշդ տպագրուածներուն պէս, եւ կ'անցնի ուղղակի

«վեցերորդ կրկին անգամ ընդդէմ գալ Հայոց պատերազմաւ թագաւորին Պարսից»։ Սկսուածն է «Մեծ է սէրն Աստուծոյ» եւայլն, տպագրութեանց ծանօթ Եrդ Ցեղանակն. այսինքն՝ տպագրութեանց Եrդ եւ Զrդ Ցեղանակներն այս ձեռագրին մէջ «վեցերորդ»ը կը կազմեն։ Բովանդակութիւնը նոյն է բոլոր հրատարակութեանց հետ. թէպէտ ոմանք խորագրի այս սխալով ենթադրեցին իբր թէ ամբողջ Ցեղանակ մը պակաս ըլլայ այս տեղէն, ըստ Թովմայի՝ Վահան Արծրունու քաջութիւնները, ըստ Նայմանի՝ Վարդապետական խնդիրներ, ըստ Խալաթեանի՝ Վարդանի, Հմայեկի, Վահանի, Սահակի նահատակութեան պարագաները։ Այս անհիմն զրոյցներու ենթադրութիւնները քննեցինք արդէն (Տե՛ս, վերը, էջ 31—37)։ Մնացած մասերը նոյն են հրատարակութեանց հետ։

Պատմութեան վերջը գրուած է «ի պատմութենէ Թովմայի Վարդապետի», «Բայց իբրեւ եղեւ մեծ պատերազմ սրբոյն Վարդանայ» էն մինչեւ «ցուցանեմ քումդ ուսումնասէր քաջահմտութեանդ» հատուածը եւ «ընդ ժամանակս Պերոզի» — «ի սադրելոյ Բարծումայի ամբարշտի» ծանօթ զրոյցը։ Ասկէ վերջ կու գայ Յիշատակարանը, որուն կարեւոր մասը յառաջ կը բերենք։

«Զհուրն երկնային զոր արկ Տէրն յերկիր բանաւոր զոր բորբոքեալ էր ի հոգի բազմահանճար հեզահոգի Վարժապետին տեառն Աբէտոպէտէ, եւ վառեալ տոչորէր սիրովն աստուածային բաղձմամբ աստուածային գրոց ստացմամբ եւ ընթերցմամբ ի տուէ եւ ի գիշերի անյագ սիրով. որով եւ նոյն աստուածային սիրոյն տենչմամբն ետ գրել զպատմագիրքս Հայկազանց, նուաստի ումեմն եւ քան զնուաս անարհեստի եւ անհմտի. որ քան զամենայն բանականս եմ անպիտան եւ խոտան. որ յայտ իսկ է տեսողացդ ծերոյդ, զանյարմար ձեռդ որ առաջին էր եւ անհմուտ ուղղագրէդ, այլ հրամա-

նաւ եւ հարկիւ վեհափառ հեզահոգի հօրն իմոյ հոգեւորի, Առիստակէս Վարդապետին, որ ըստ իւրում գրաւէր եւ ընթերցաւէր քարուցն, ոչ խոտան համարեցաւ զանպիտանութիւն գրոյս, այլ ետ գրել զսա յիշատակ իւր: Ի թվականութեանս Հայոց ՌՃԻ. երորդի (= 1671) եւ ի հայրապետութեան Հայոց Տեառն Յակոբայ. եւ առաջնորդութեան մերոյս նահանգի Եսայեա եւ Առաքել (գրուածը Առաքեալ) քաջաջան Վարդապետացն: Ի յերկիրս Երնջակոյ ի գիւղաքաղաքս Շոռոթ կոչեցեալ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի եւ Սուրբ Լուսաւորչին, հրամանաւ եւ արդեամբ հեզահոգի հօրըն իմոյ հոգեւորի Առիստակէս Վարդապետին Գլաձեցւոյ, որ ետ գրել զպատմագիրքս (այսինքն՝ զԽորենացւոյն եւ զԵղիշէին) ի վայելումն անձին իւրոյ ... Հռիփսիմին (= Հռիփսիմէ) որ օգնական եղեւ ի բաղացումն գրոյս„:

Ուրիշ ձեռագիրներու բախտակից է այս ձեռագիրն ալ իր թէ՛ ընտիր եւ թէ՛ սխալ ընթերցուածներով: Տպագիր օրինակներու ընծայականին մէջ գտնուած նորձագրել (կարգագրեալ) բային, որ շատ հարազատ չերեւիր ոսկի գրչի մը, մեր ձեռագրին մէջ է՝ գրել. “Յայսմ եօթն գլուխս գրեալ եղեալ„ եւն: Ուրիշ ընթերցուած մ'ալ կը յիշեմ, թէեւ չեմ նշանակած տեղը, որ աւելի ուղիղ կը թուի. այսինքն՝ ոչ թէ նորձագրել, այլ “նորձագրել„: Պենտադեկաղանն ալ, այս ձեռագրին համեմատ Պենտադեկաղան պէտք է ըլլալ (տե՛ս վերը, էջ 43):

Ահա ձեռագիրներու խումբ մ'ալ, զոր կ'անուանենք Մեր Մատենադարանի ձեռագրին խումբը:

Եւ այսպէս երեք խումբ ձեռագիրներու առջեւ կը գտնուինք, որք համեմատութեան լաւագոյն եզրներ կ'ընծայեն, միայն երանի՜ թէ կարելի ըլլար Գ°ՙը գտնել ամբողջովին.

1. Անձեւացեալ խումբը:

2. Մեր Մատենադարանին ձեռագրին խումբը։

3. Կոնիբերի Հատակոտորներուն ներկայացուցած խումբը։

Ձեռագիրներու այս կամ այն եղանակաւ դասաւորումը անհրաժեշտ է ամէն պարագայում Վարդանանց Պատմութեան վրայ բանասիրական բուն ուսումնասիրութիւն մ'ընելու համար։ Այսպիսի ուսումնասիրութեան մը նպատակը պիտի ըլլայ ձեռագիրներու վրայ թափուած աշխատութիւնները (զոր օր. Գր. Սարկաւագի Համեմատու–Նէ–Նը) տիրապէս օգտակար ընել. այսինքն՝ մաքրել Ոսկի-Գրքոյկը անհարազատ ընթերցուածներէն, լուսաբանել անոր մութ կէտերը եւ կեանք տալ ընտիր օրինակի մը։

Այսչափ սիրուած, այսչափ ժողովրդականացած գիրք մը, ներելի չէ՛ իր անճիշդ գիծերուն մէջ թաղուած թողուլ։ Ոսկի-Գրքին փայլն ու փառքն այլ եւս պիտի բողոքէ նաեւ նոր հրատարակութեան դէմ։



# ԵՂԻՇԷ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

## ԱՌԱՋԻՆ ԳԻՐՔ

---

### ԳԼՈՒԽ Ա.

### ԵՂԻՇԷ

#### Ա.

*Հայ մատենագրութեան ոսկի դարուն գրական արտադրութեանց թանկագինն է Վարդանանց Պատմութիւնը. ո՛վ գրեց այն կրակ ու բոց էջերը. ո՞ր գրիչ կեանք տուաւ Հայ լեզուի եւ Հայ զգացումի այն բուռն արտայայտութեան։ — Պատմագիրը ինքզինք չը ծանօթացներ իր գործին մէջ. Վարդանանց Պատմութեան Հնագոյն Համարուած Անձեւացեալ օրինակը չունի Պատմագրին անունը. իսկ վերջին դարերու ձեռագիրներն ու պատմագիրները Վարդանանց Պատմութիւնը կ'ընծայեն Եղիշէ կամ Եղիշա կամ Եղիշայ անուն Վարդապետի մը։*

*Մինչեւ Թովմա Արծրունի, չկայ պատմական յիշատակութիւն մը ցուցընելու համար՝ թէ ո՛վ է Վարդանանց Պատմագիրը։ Սեբէոս, Էրդ դարու Պատմագիր, խօսելով Վարդանանց դէպքերը՝ իբր գլխակարգութիւն, դիտել կու տայ՝ թէ "Այս ամենայն ի ձեռն այլոյ գրեցաւ, որպէս ցուցանէ*

նոյն իսկ Պատմութիւնն, (Սեբէոս էջ 23)։ Յովհան Կաթողիկոս, Թրդ դարու Պատմագիր, որ մեծապէս ազդուած է Վարդանանց Պատմութեան նկարէն ոճէն եւ որ՝ Վարդանի նկատմամբ աւելի պատմածներ ալ ունի, որոնք անծանօթ են թէ Ղազարին եւ թէ Եղիշէին, չը յիշատակեր ոչ միայն իւր նոր պատմածներուն աղբիւրը, այլ մանաւանդ իրեն ներշնչող Պատմագրին անունը։ Իսկ Թովմա, որ հետաքրքրական պատմածներ ունի թէ Վարդանանց Պատմագրի եւ թէ Պատմութեան մասին, առաջին անգամ Եղիշէ (Թովմ. Արծ. Ա. Գ.) կամ Եղիշայ (Դպր. Բ. Բ.) անունով կը ծանօթացընէ ոսկի գրքոյկին հեղինակը։ Եւ յետոյ Ասողիկ, Շնորհալի, Կիրակոս եւ այլն, կը յիշատակեն Եղիշէն իբր Պատմագիր Վարդանանց։

Վարդանանց Պատմութեան ժողովրդականութիւնն այնքան ջերմ, այնքան սրտագին, նուիրագործած է զայս։ Ամէն ոք՝ ռամիկէն մինչեւ բանասէր-մատենագիրը՝ աւելի լաւ կը զգայ Պատմագիրը իւր գործին մէջ՝ քան թէ կը ճանչնայ զայն։ Իւր գործին մէջ ընկլուզուած մատենագիրը ամէնէն աւելի արտայայտիչ ստորոգելիքներով բացատրուած է ամէն դարու մէջ. նոյն իսկ այժմ հիացումով հասկցուած է Եղիշէն։ Այսպէս Երդ դարու մեծ շարժումներուն Պատմագիրը, վերջին դարերէն (Թ—ԺԲ) մինչեւ ցարդ լոյս տեսած յիշատակարաններու եւ պատմութիւններու մէջ մեզ կը ներկայանայ իբր Բիւզանդացի (Պատմ. Հայ. Դպր. էջ 229), Աթենացի (Հնոց Նորոց էջ 58), Երանելի, Սուրբ, Սուրբն Աստուածոյ (Թովմ. Արծ. — Վարդան), Այրն Աստուածոյ սքանչելի (Կիրակոս) ու Մեծն (Չ. Պատմ. Հայ. Բ. էջ 29. — Նոր Հայկ. Բառգր. Յառջբ. էջ 11), Գործակատարն երկնից, Անու-շակն, Քաղցրաբան (Յուշիկք Ա. — Այրարատ էջ 95, 427), Մեղրաշուրթն, Աղու (Մանանայ, Համով Հոտով եւն), Բանաստեղծ-Պատմիչ (Քննկ. Պատմ.

Բ. էջ 40), Ողբերգ Բանաստեղծ, Երգիչ (Րաֆֆի, Կայծեր Ա. էջ 299, 300, Բ. էջ 488), եւ այլն եւ այլն, դեռ ինչ որ կրնայ առեղծել Հայրենասիրի խանդը, բանաստեղծի զգացումը, բանասէրի ճաշակը։ Ասոր համար կ՚ըսենք՝ որ Եղիշէն աւելի ոգեւորուած է՝ քան թէ քննուած։

Բ.

Վարդանանց Պատմագրին վերագրուած կենսագրական մէկ աղբիւր մը կայ, այն ալ բոլորովին վկայաբանական կամ զրուցապատմական։ Այս գրուածը, որ հրատարակուեցաւ Սոփերքներու շարքում "Պատմութիւն Սրբոյն Եղիշէի Վարդապետի" խորագրով (Սոփերք ԺԱ. էջ 39—45), ամէն ձեռագրի մէջ բառ առ բառ նոյն չէ. կամայական սեղմումներ կամ ընդլայնումներ ի գործ դրուած են. նոյն իսկ տարբեր խմբագրութիւն մը կը տեսնուի Սոփերքի եւ ուրիշ ձեռագիրներու մէջ (Հմմտ. Պատմ. Հյ. Դպր. էջ 313, ծնթ.)։ Մեզ անկ չէ այս տարբերութիւնները մի առ մի նշանակել. ինչ ալ ըլլայ ատոնց խմբագրութեան եղանակը եւ որչափ ալ հին՝ գրութեան ժամանակը, սա յայտնի է որ աւանդական յիշատակներու վրայ հիմնուած է այն կենսագրականը, որուն սկսուածը՝ "պատմի վասն երանելույն", ո՛ եւ է կասկածի տեղի չտար։

Վկայաբանական գրուածներ, Վարդանանց Պատմագիրը՝ Եղիշէն՝ մեզ կը ներկայացնեն կենսագրական երեք դիմայեղումներու (phase) մէջ. — Ա. իբր զինուորական գործակից Վարդանին, հետեւաբար եւ ականատես Վարդանանց բոլոր դէպքերուն. — Բ. իբր պատմագիր. — Գ. իբր մենակեաց, այսինքն՝ կը թողու զինուորական ասպարէզը, կ՚ընդգրկէ կրօնաւորութիւնն եւ կը քաշուի Մոկաց եւ Ռշտունեաց լեռները։

կենսագրական այս գլխաւոր կէտերէն Բ.ը Թովմայէն սկսեալ՝ Հայ պատմագիրք կ'ընդունին թէ Եղիշէ մը, լաւ եւս Եղիշէ Վարդապետ մը գրած է Վարդանանց Պատմութիւնը։

Գ. կէտին վերջին մասը, այսինքն՝ մենակեցութիւնը — առանց զինուորական ասպարէզի յիշատակութեան — Թովմա Արծրունին միայն, Սոփերքի պատմածին համաձայն, կը հաստատէ Եղիշէի Մոկաց լեռներու մէջ բնակիլը։

Իսկ Ա. կէտը՝ թէ "Եղիշէ էր զինուորեալ Վարդանայ զօրավարին, եւ էր դպրապետ եւ տեսող լեալ ամենայն անցիցն, որ անցին ընդ զօրսն Հայոց (Պատմ. Հայ. Դպր.) կամ "Պատմի վասն երանելոյն Եղիշէի Վարդապետի թէ էր զինուորեալ սրբոյն Վարդանայ եւ ատենադպրէր նմա, եւ էր հաւատարիմ յամենայն իրս աստուածայինս եւ մարդկայինս. Եւ կեցեալ եւ վարժեալ բարեպաշտութեամբ եւ աստուածանուիրութեամբ, եւ ամենայն անցից անցելոց ընդ Հայս" եւ այլն (Սոփերք), Բոլորովին անհաւանական է։ Այս անհաւանականութեան վրայ պէտք է յաւելուլ՝ Պատմագրին Վարդանի հետ ազգականութեան կեղծիքը (Չմչ. Պատմ. Հայ. Ա. էջ 13, 537. — Պատմ. Հայ. Դպր. էջ 313)։

Վարդանանց Պատմագիրը չի կրնար զինուոր, ատենադպիր կամ ուղեկից եղած ըլլալ Վարդանին։

Նախ՝ զինուորական եւ ատենադպիր ըլլալու խնդիրը պատմականապէս ընդունուած չէ. գէթ Եղիշէի անունը յիշատակող պատմագիրներէն եւ ոչ մէկը այս մասին ակնարկութիւն մ'ունի. միւս կողմէ վկայաբանական պատմածն ալ հակասական է. — եւ էր դպրապետ (ատենադպիր) բացատրութիւնը, որ հետեւանքն է զինուորեալ ըլլալու ենթադրութեան, Սոփերքի մէջ՝ ինչպէս տեսանք, ատենադպրէր է։ Եթէ իսկապէս պատմական կշիռ մ'ունենար այս, անկարելի էր որ անճիշդ եւ

հակառակական կերպով արձանագրուէր ուրիշ գրչի մը տակ, քանի որ ականատեսել բառին ճշգրիտ իմաստովը երբեք չի նշանակեր դիտողներ, տեսանողներ, փորձառուներ։ Իսկ ինչ որ ականատեսին կը վերաբերի այն վկայաբանական հատուածում — «տեսող լեալ» կամ «խելամուտ եղեալ» — ուղղակի առնուած է ուրիշ աղբիւրէ մը, այն է՝ նոյն ինքն Վարդանանց Պատմութեան քանի մը տեղերէն, ուր Պատմագիրը կ'ուզէ ինք զինք ականատես ցուցընել։ Այստեղ աւելորդ չէ՛ դիտել տալ միանգամ ընդ միշտ՝ թէ վկայաբանական գրուածը մասամբ զրոյցներու եւ մասամբ ալ Վարդանանց Պատմութեան վրայ հիմնուելով շինուած է շատ յետոյ, հաւանաբար Թ.րդ դարում։ — Սպարապետին ազգականը կամ ատենադպիրը ուրիշ Եղիշէ մըն է եւ ո՛չ թէ մեր Պատմագիրը։

Երկրորդ՝ Վարդանանց Պատմագիրը, եթէ ստոյգ է որ ընկերակից է Մովսէսի, Դաւթի եւ այլոց, այսինքն՝ Երկրորդ Թարգմանչաց խումբէն, անոնց հետ միեւնոյն կեանքն ապրած պէտք է ըլլայ։ Որովհետեւ ի՞նչպէս կարելի է բացատրել՝ եթէ Եղիշէն զինուոր էր նախապէս եւ թէ պատերազմէն յետոյ եկեղեցական եղաւ ու գրեց իր պատմութիւնը, ե՞րբ Աթէնք կամ Բիւզանդիոն գնաց. ե՞րբ ուսաւ նոյն իսկ այն ոսկեղէնիկ հայերէնը, որով մարգարիտ մը դրաւ Հայ Մատենագրութեան մէջ. կամ թէ քանի՞ տարեկան զինուոր եղաւ եւ յառաջ ինչո՞վ կը զբաղէր, եւ դեռ ուրիշ դժուարին կէտեր, որոնք Թարգմանչաց խումբէն Պատմագիր Եղիշէի ուսումնական եւ գրական կեանքը չեն կապեր այնպիսի ասպարէզի մը, որուն պահանջներն ու հանգամանքը բոլորովին տարբեր են, եւ դէթ այնպիսի եղանակով մը պատուաստուած չեն Պատմագրին վրայ զինուորական կեանքի եւ ազգականութեան պարագաներն՝ որ հաւանականութիւն մ'ունենային։

Պատմագիր Եղիշէի կեանքին ամենէն աւելի ծանրակշիռ հանգամանքն է իւր ուսումնական ընթացքը։ Գիտենք՝ որ Սահակ-Մեսրոպեան Դպրոցին բոլոր հետեւողները յատկապէս ընտրուած մարմին մը կը կազմէին։ Անոնց զբաղումը շատ քիչ կրնան եղաւ հայ դպրութեան այն առաջին զարթումին մէջ, երբ արդէն գրական կեանք մը կ'անցընէին անոնք յոյն կամ ասորի դպրոցներուն (Փըդ. էջ 35—36)։ Մեր Թարգմանիչներէն եւ ոչ մէկը ունեցած է, ըստ ամենայն հաւանութեան, նախապէս ոչ-ուսումնական զբաղում մը. դէթ հակառակը ցուցընող ակնարկութիւն մ'իսկ չենք գտներ Թարգմանչաց մասին գրուածներու մէջ։ Ամէնքն ալ ուսանող էին, եւ երբ Սահակ-Մեսրոպ իրենց դպրոցին հիմերը դրին բնիկ հողին վրայ "ամենայն անձ յորդորելով փափագել յուսումն հայերէն գիտութեան, որպէս ի խաւարէ՝ յաւուրց տանջանացն ղերծեալք ի լոյս՝ խնդային (Փրպ. էջ 42—43)։ Անոնց ամէնքն ալ օտար դպրոցներէ հայրենի դպրոցներ կը վազեն. Պատմագիրը՝ Փոքր Թարգմանիչներու ծանօթ անձնաւորութիւններուն պէս՝ գրական զբաղումներու մէջ մխրճուած պէտք է ենթադրել. ասի պարզ հետեւութիւն մ'է անոնց պատմական կեանքէն։ Մանաւանդ երբ աչքի առջեւ բերենք Պատմագիր Եղիշէի ընծայուած ուրիշ գրուածներու ամէնէն վաւերականներն ալ, որոնց գրութիւնը ընդարձակ ժամանակ մը կը պահանջէ, անկարելի կ'ըլլայ ընդունիլ՝ թէ այնչափ աշխատութիւնը, Պատմութիւնն ալ միասին, զինուորական ասպարէզին հրաժեշտ տալէ յետոյ գրեց նա. այսինքն՝ շատ նեղ ժամանակամիջոցի մը մէջ եւ այն ալ քարանձաւներուն։ Ընդհակառակը պէտք է ենթադրել՝ որ եթէ Պատմագրին միայնակեցիկ կեանքը անվիճելի կը նկատենք, սա իր ընկերներուն պէս Բիւզանդիոնէն կամ Աթէնքէ վերադառնալէ յետոյ, երկրին աւերը տեսնելով, եւ հաւանաբար ազէտ աբեղաներէն

հալածուելով, միայնութիւն ընտրեց։ Եւ արդէն ուրիշ կերպ չկրնար ըլլալ։

Գալով Պատմագրի Սպարապետին հետ ունեցած ազգականութեան, ըստ մեզ, կեղակարծ է բոլորովին։ Թէ՛ ազգականութիւնն եւ թէ՛ ականատեսի խնդիրները ծանր դժուարութեանց կը բախին. արդէն մեր յիշած վկայաբանական աղբիւրէն զատ՝ չկայ այս նկատմամբ նպաստաւոր տող մը, նոյն իսկ Վարդանանց Պատմութեան մէջ։ Պիտի տեսնենք եղածներուն ալ արժէքը։

Գ.

Կենսագրական ոչ նուազ կարեւոր խնդիր մ՚ալ կայ. — Վարդանանց Պատմագիրը, իբր եկեղեցական ի՞նչ դիրք ունէր. Վարդապե՞տ էր նա, թէ քահանայ, ինչպէս կը հասկնանք այժմ։

Թովմա Արծրունի երկիցս կը յիշէ Վարդանանց Պատմագիրը. 1. “Որպէս ցուցանէ քեզ Պատմութիւնք Սրբոց Վարդանանց, զորս գրեաց երանելի քահանայն Եղիշէ. (Դպր. Ա. Գլ. Գ.). 2. “Եւ սրբոյ Վարդապետին մեր Եղիշէի, որ յայնմ ժամանակի ի Մոկաց բնակէր աշխարհին„, կամ “իսկ Վարդապետն Եղիշէ էր ի ժամանակին յայնմիկ բնակեալ ի գաւառին Ռշտունեաց ի ծովեզերին„ (Դպր. Բ. Գլ. Բ.)։

Թովմայի գրչին տակ միեւնոյն առումն ունին երկու բառերն ալ. մեր արդի քահանայ կոչումը՝ նախնեաց Վարդապետն է։ Թովմա թէ՛ ըստ նախնեաց քահանայ եւ թէ՛ վերջին առումով Վարդապետ գործածելով՝ եկեղեցական միեւնոյն վիճակը կը բացատրէ[1]։

---

[1] Նախնիք այս շփոթը չունէին. անոնք Երէցով կը հասկընային ամուսնացեալ եկեղեցականը. իսկ ամուրի եկեղեցականը՝ քահանայով։ Ասկէ զատ՝ Վարդապետ բառը ուսուցանողէ, առաջնորդողէ, քարոզողէ, այսինքն՝ բառին բուն

Արծրունեաց Պատմչին համար ուրեմն՝ Վարդանանց Պատմագիրն Եղիշէ՝ Վարդապետ մ'է, ինչպէս այժմ կը հասկնանք։

---

գիտական իմաստով կը գործածեն. զոր օր. «Վարդապետք էիք առաքելական քարոզութեանցն, արդ աշակերտք լինիցիք մոլար խաբէութեանս մոգաց։ Ուսուցիչք էիք ճշմարտութեանն, արդ ուսուցանէք զպատիր խաբէութիւն մոգուց։ Քարոզք էիք արդարական շնորհացն», եւ այլն (Եղիշէ, էջ 41)։ Ինչպէս կը տեսնուի՝ Վարդապետ բառը գիտական իմաստ մ'ունի, եւ նախնեաց մօտ երբեք չը նշանակեր ամուրի եկեղեցական։ Ղեւոնդ Երէցն ալ Վարդապետ մըն էր. այսինքն՝ ուսուցանող։ Այսպէս թէ ամուրի եւ թէ ամուսնացեալ եկեղեցականներ Վարդապետ կը կոչուէին։ Քահանայ կը նշանակէր ամուրի եկեղեցականը, կրօնաւոր ըսուածները, բուն վանականները. թէեւ կրօնաւորն ալ հետզհետէ ընդարձակ իմաստով մը սկսաւ նշանակել այն ամէն անձը՝ որ վանք կը մնէր առանց ձեռնադրութեան կամ օծման։

Երբ հետզհետէ ուսուցանողին կամ Վարդապետին իրաց բերմունքով եւ զեղծումներով ամուրի եկեղեցականներու համար մենաշնորհի պէս բան մ'եղաւ, Վարդապետ կոչումն ալ անոնց յատկացուեցաւ, իբր իշխանութիւն յայտնող աստիճան մը կամ պաշտօն մը։ Այսու հանդերձ՝ Քահանայն ամուրի եկեղեցական նշանակելէ չդադրեցաւ բոլորովին։ Անկէ չփոթ մը յառաջ պիտի գար, զոր վերցընելու համար՝ յետին դարերու մատենագիրք սկսան ուշադրութիւն դարձնել. որովհետեւ Քահանայն ա'լ սկսած էր մեր արդի առումով գործածուիլ, որ նոյն է իբր օծումով տրուած աստիճան թէ ամուրի եւ թէ ամուսնացեալ եկեղեցականներու համար. չփոթին առջեւը առին՝ ըսելով. — «Գրիգոր Քահանայ յամուսնացելոց». — «Յովհաննէս Քահանայ յամուսնացելոց» (Ասողիկ էջ 164, 173)։ «Եւ ոչ դարձեալ խոնարհի Քահանայքն սպասաւորութիւն առնել սրբութեան տեղւոյն». — «Յովհաննէս կուսակրօն Քահանայ եւ սպասաւոր սուրբ եկեղեցւոյն» (Օրբէլ. Ա. էջ 87) Օրբէլեան աշխարհիկ Երէց (էջ 217) եւ վանաց Երէց (էջ 267) ձեւերն ալ կը գործածէ։ Այս մատենագիրներու համար Քահանայ = վանական է։

Երբ Քահանայ սկսաւ ամուսնացեալ եկեղեցական նշանակել, նախնեաց Երէցն ալ սկսաւ ամփոփել իւր ընդ-

Կայ ուրիշ Եղիշայ մըն ալ, որ նոյն իսկ Վարդանանց Պատմութեան մէջ կը յիշուի։ Արտաշատու ժողովին (450) եպիսկոպոսներու շարքում՝ 16րդ աթոռի վրայ — "Եղիշայ Եպիսկոպոս Ամատունեաց" (Եղիշէ, էջ 22)։

Շահապիվանի Առաջին ժողովին (445) մէջ ալ կը գտնենք Երէց մը՝ Եղիշէ. "Եւ գային ժողովէին եպիսկոպոսունք տասն եւ երիցունք բազումք...... նախարարք ամենայն առաջի Վասակայ Մարզպանին եւ Վահանայ հազարապետի եւ Վրունայ Մաղխազի, եւ առաջի գլխաւոր եպիսկոպոսաց Ղազարայ, Տաճատայ, Արտակայ, Գատայ, Եփրեմի եւ այլոց բազմաց երիցանց գլխաւորաց՝ Յովսեփայ, Յովհանայ, Մեղտեայ, Երեմիայի, Ասպուրակայ, Դանիէլի, Ղեւոնդի սրբոյ, Եղիշէի տրն երիցու եւ այլոց որբասէր քահանայից"....[1]։

---

արձակ իմաստը. այժմ միայն Ասփ-Երէց բացատրութեան մէջ կը գործածուի այդ. այսինքն՝ Երէցներու (տէրտէր) գլխաւորը (նախնեաց՝ Երէցագետը), որուն աւելի ընդհանրացած ձեւն է Ասփ-քահանայ. եւ այս ճիշդ է՝ քանի որ այժմ միւսներուն քահանայ կ'ըսենք եւ ո՛չ Երէց։

Միջին դարուն եւ քիչ մ'ալ յառաջ, Երէց = քահանայի. — "Երէցանք՝ որք են քահանայք" (Օրբէլ. Ա. էջ 152)։ Սա տարբերութեամբ՝ որ Երիցունք գիւղերու, քահանայք քաղաքներու մէջ կը մնային. — "Քահանայք ի քաղաքն լինին, եւ երիցունք ի գեօղս եւ յագարակս, եւ երէցքն գիւղն (Մ. Գօշ. Դատաստանագիրք)։ Այս տարբերութիւնը կը յիշեցընէ Եպիսկոպոսն եւ Քորեպիսկոպոսը. սոնք իրարմէ կախում ունին սակայն։ Երէցի եւ Քահանայի մէջ այս կախումը չերեւիր. որովհետեւ երկուքն ալ կամ Քորեպիսկոպոսէն կամ Եպիսկոպոսէն կախում ունին։ Վարդանանց ժամանակ բոլոր երէցք է գեղջն են. — "ի գեղջէ Հողոցմանց, է գեղջէ Իջեւանից եւ այլն, եւ այլն" (Եղիշէ էջ 139)։ Թերեւս Գօշի դրած տարբերութիւնը այնքան հին չէ։

1 Պատմ. ժող. Հայ. Եկղ. Աբէլ Եպս. (տպ. Վղրշ. 1874) էջ 59. — Չմչ. Պատմ. Հայ. Բ. էջ 16–18։ — Դիտել

Մենք ուրեմն՝ կը գտնուինք եկեղեցական տարբեր վիճակներ ունեցող երեք ժամանակակից-

---

կու տանք. 1. Թէ մեր յառաջ բերած հատուածը Աբէլ եպիսկոպոսի հրատարակութեան մէջ կը գտնուի. մեր մատենադարանի ձեռագիր Կանոնագիրքին մէջ (որու կազմութիւնը Օձնեցւոյն կը վերագրուի), կը պակսի. որչափ ալ ակնյայտնի ընդմիջարկութիւն մ'ըլլայ այս հատուածը՝ ուր կը գտնենք “Եղիշէի գրան երիցու„ անունը, բոլորովին անհարազատ գրուած մը չը թուիր եւ ո՛չ ալ շատ յետին ժամանակի գործ մը։ Հոն յիշատակուած անուններէն ոմանք կը յիշեցնեն 450ի Արտաշատու ժողովականներուն անունները. արդ՝ եթէ ընդմիջարկութեան մէջ յիշուած անունները այս տեղերէն իսկ առնուած նկատենք, այն ատեն դժուար է ենթադրել՝ թէ Եղիշայ Երէց. Ամատունեցը՝ “Եղիշէի գրան երիցու„ ի փոխուած ըլլայ։ Այսպիսի նոյնացում մը աւելորդ կը թուի։ — 2. Բաց ի այս ընդմիջարկութենէն ուրիշ կարեւոր տարբերութիւններ ալ կան Տ. Աբէլ Եպս.ի հրատարակածին եւ մեր Մատենադարանի ձեռագրին մէջ, թէ պատմական, թէ ընթերցուածի։ Տ. Աբէլ Եպս. (երես 56) “Ամք Տեառն 447„ կը նշանակէ Շահապիվանի Առաջին ժողովին տարեթիւը, անշուշտ Չամչեանի հետեւելով, եւ (երես 59) մոռնալով 447ը՝ իւր ձեռագիրը կ'ընդօրինակէ հաւատարմօրէն. “Եւ լինէր այս ի ԻԶ ամի թագաւորութեան Յազկերտի Պարսից արքայի եւ Վասակայ Սիւնւոյ Մարզպանին եւ Վահանայ Ամատունւոյ հազարապետի„ եւն։ Մեր Մատենադարանի ձեռագիրն ունի (էջ 191) “Եւ լինէր այս ի ԺԶ ամի թագաւորութեան Յազկերտի Պարսից արքայի եւ Վասակայ Սիւնեաց մարզպանութեան Հայոց եւ Վահանայ Ամատունոյ հազարապետութեան„ եւն։

Թէ ԻԶ եւ թէ ԺԶ հաւատարապէս սխալ են։ Յազկերտ Բ. գահակալեց 438 Օգոստ. 4ին եւ միայն 19 տարի թագաւորեց. հետեւաբար ո՛չ 26րդ տարին (464), ո՛չ ալ 16րդ տարին (454) ժողով կրնար գումարուիլ. որովհետեւ 457ին մեռաւ Յազկերտ, իսկ Յովսէփեանք 454էն յառաջ նահատակուած էին արդէն։

Շահապիվանի ժողովը (Առաջինը) տեղի ունեցած է 445ին. ահա թէ ինչպէս. — նախ՝ պէտք է գիտել՝ որ ձեռագիրներու տարբերութիւնը ԻԶ եւ ԺԶ տարեթիւերուն՝ ի

անուանակիցներու հանդէպ. մին՝ Երէց, միւսը՝ Եպիսկոպոս եւ ուրիշ մը՝ Վարդապետ:

Վարդանանց Պատմագիրը՝ ասոնց մէջէն՝ ըստ ոմանց, է Արտաշատու ժողովականներէն Ամատունեաց Եպիսկոպոսն Եղիշայ[1]: Այս վարկածը հիմնովին սխալ է. վասն զի ոչ միայն կը հակառակի նոյն իսկ վկայաբանական տեղեկութեան, որուն համեմատ իբր թէ Վարդանանց Պատմագիրը պատերազմէն յետոյ եկեղեցական (կրօնաւոր) եղած է,

---

եւ Ժ տառերուն վրայ է. հետեւաբար երբ թէ Է ին եւ թէ Ժին իբր սխալ ջնջելով մնացած 6ը (Զ) աւելցընենք 438ի վրայ՝ կ'ունենանք 444. եւ որովհետեւ ըստ սովորութեան Պարսից՝ Շահերու գահակալութեան "անմիջապէս հետեւող նոր տարին հաշւում էին իբր իւրեանց թագաւորութեան երկրորդ տարին„ (Հայոց Պէտր., էջ 347, ծնթ. 37), Յազկերտի գահակալութիւնը ճիշդ նոր տարւոյն կ'իյնայ (Օգոս 4.) եւ կ'ունենանք 445: Երկրորդ՝ սոր հաստատութիւն կը համարիմ մեր Մատենադարանի ձեռագրին "Եդեալ միաբանութեամբ Աւագ Հայոց Եպիսկոպոսացն եւ ժողովականելոյն սրբոյն Սահակայ կարգեցան կանոնքս այս„ յիշատակարանը, որ այն ժողովի պատմութեան սկիզբը դրուած է: Արդ՝ Մեծն Սահակ վախճանեցաւ 438 Սեպտ. 7, Գ Շ օր (Նաւասարդ 30), եւ իր մահուան եօթներորդ տարին կ'ըլլայ՝ 445:

Հ. Յ. Գաթրճեան ԺԶը ուղղած է "իրաւամբք Ժ ընթեռնլով„ (Հանդէս 1893 Դեկտ. էջ 381): Չենք գիտեր թէ ինչ է եղած Հ. Յ. Գաթրճեանի հիմը այսպիսի սրբագրութեան մը համար. զոր արդարացուցած է Հ. Յ. Տ. (նոյն անդ). յառաջ բերելով հանդերձ թէ՝ Մեծն Սահակի վախճանումին յիշատակութիւնը եւ թէ՝ Յազկերտի գահակալութեան տարեթիւն է 438:

[1] Տե՛ս Չմչ. Պատմ. Հայ. Ա. էջ 537՝ "Բոռէ„ ով կ'ընդունի, իսկ Փ. Նեվ, էջ 299–300, հաստատապէս կը ճշդէ: Լանգլուա (Coll. էջ 179) ուրիշներուն կը համաձայնի. այսինքն՝ Նայմանի, Կապպելէտտիի եւ Գր. Վրդ. Գալարաճեանի: — Պ. Գր. Խալաթեան եւս (էջ 19 եւ 118) ինչպէս նաեւ Հ. Սոմունճեան (Բզմվպ. 1893. Յունիս. Եզնիկի վրայ գրած յօդուածում) կ'ընդունին Վարդանանց Պատմագիրը՝ իբր Եղիշայ եպս. Ամատունեաց:

Հետեւաբար չէր կրնար 450ին իբր եպիսկոպոս բազմիլ Արտաշատու ժողովում[1]. Թո՛ղ որ Վարդանանց Պատմագիրն երբեք եպիսկոպոս չէ́ եղած։ Մինչդեռ խորագ, այն աշխարհատեցիկ ձեւերը շատ զօրաւոր փաստեր են ցուցընելու համար՝ թէ Պատմագիրը միտում իսկ չէ́ ունեցած վարչական զբաղումներու։

Չը կրնար ըսուիլ նոյնպէս՝ թէ Վարդանանց Պատմագիրը՝ Ղահապիվանի ժողովականներէն Դերան Երէց Եղիշէն եղած ըլլայ, այսինքն՝ ամուսնացեալ քահանայ մը։ Ընդհակառակը՝ վկայաբան-կենսագիրներուն Վարդանանց Պատմագրին նկատմամբ յանդէպս աւանդած ինչ ինչ տեղեկութիւններ՝ Դերան Երէց Եղիշէին կը պատշաճին։ Պէտք է դիտել որ այս տեղ յիշուած Գուտը Մամիկոնեանց դուռն է եւ այն հաչակաւոր Դրան պաշտօնեայն բնականաբար շատ մօտէն կը շփուէր Սպարապետին՝ “Կորովւոյն Վարդանայ”, գերդաստանին հետ։ Դրան երէցը՝ իբր խորհրդական, իբր տեղեակ սպարապետական գործերու, անբաժան ընկերն էր Սպարապետին, եւ անշուշտ անոր պաշտօնական եւ անձնական գրութիւններուն խմբագրողը։ Պաշտօնի բերմունքն է այս։ Տարօրինակ բան մը չէ́ դրան երէցներու այսչափ բարձր դիրքը վարչական շրջանակներում. մանաւանդ երբ դիտենք անոնց գործունէութիւնը, որ շատ անգամ բարձր դաւաճանութիւններու մէջ երեւան կու գայ կամ իբր գործիներ բարձր անձնաւորութիւններու կամ իբր իրենց դիրքէն օգտուելով ինքնիրեն գործողներ։

Արդ՝ անհաւանական չէ́ ենթադրել՝ թէ Վարդանանց Պատմագրին նկատմամբ “պատմի„ն թէ “էր պղրողէր„ կամ թէ “ողաաաաորէր նմա՝ (Վար-

---

1 Հմմտ. Արարատ Ամսագիր Ա. Տարի 1868 էջ 90–91. — Ազգ. Մատեն. ԺԷ էջ 106։ — Արարատի անանուն յօդուածագիրը՝ Եղիշէ Ռշտունեաց եպիսկոպոս կը գրէ փոխանակ Ամատունեցի, անշուշտ անուշադրութեան սխալ մ'է այս եւ ո՛չ յատուկ սրբագրութիւն մը։

դանանց) Եւ էր հաստատէլ յամենայն էրս աստուածայինս Եւ մարդկայինս„ Դրան՝ երէց Եղիշէին համար պատմուած կամ աւանդուած պարագայ մ'ըլլայ, որ յատուկ դիտումով կարկըտուած է Վարդանանց-Պատմագիր Եղիշէի վկայաբանական կենսագրութեան։ Որովհետեւ սպասաւորել, հաւատարիմ ըլլալ "յամենայն իրս աստուածայինս եւ մարդկայինս„ իրաւի Դրան երէցի մը պաշտօնն ու վիճակը կը բացատրեն. եւ հարկաւ Եղիշէ երէցն ալ իբր դրան պաշտօնեայ՝ անգործ չմնաց իւր շրջանակին՝ հետեւաբար եւ ժամանակի շարժումներուն մէջ։

Կը մնայ ուրեմն այն Եղիշէն, զոր առաջին անգամ Թովմա Արծրունին կը յիշատակէ իբր Վարդանանց Պատմագիրը։

Դ.

Վարդանանց Պատմագիրը Վարդապետ մ'է անպատճառ. բայց Եղիշէ կեղծանուն մ'է Պատմագրին համար։ Կանխաւ դիտել տուինք արդէն՝ թէ Վարդանանց Պատմութեան հնագոյն մէկ օրինակը՝ Անձեւացեացը, որու գրութեան տարեթիւը ինչ ալ ըլլայ շատ կը կանխէ Արծրունին կամ գէթ ժամանակակից է անոր, չունի Եղիշէ անունը. միւս կողմէ Սեբէոսը եւ Յովհան Պատմաբանի բացարձակ լռութիւնը քննադատական անվիճելի գետնի մը վրայ կը դնեն խնդիրը. առաւելապէս Յովհ. Պատմաբանը, որ իւր գրած ցեղապատմութեան սկիզբները, որ Հայ պատմութեան քաղուած մ'է, յիշելով զԱգաթանգեղոս եւ զԽորենացի (Յվ. Պտմ. էջ 23. 31), ակնարկութիւն իսկ չըներ Վարդանանց Պատմագրին, երբ դիտենք մանաւանդ՝ որ Պատմաբանը բոլորովին նոր պատմածի մը մէջ կ'ամփոփէ Վարդանին ամբողջ գործողութիւնները։

Արդ՝ քանի որ Թովմա Արծրունին է առաջին անգամ Վարդանանց Պատմագրին անունը ծանօթացընողը, կրնանք ըսել առանց վարանելու

թէ երկար ատեն անանուն մնաց (անանուն հեղինակ) այդ Պատմութիւնը։ Այս վարկածը, ըստ մեզ, հաստատուն կը մնայ ցորչափ մատենագրական եւ պատմական նոր յայտնութիւն մը չունենանք, որ կանխէ Թովմայի յիշատակութեան ժամանակը, այսինքն՝ Թրդ դարը։

Իսկ այն կենսագրական կարկտանքները, զորս յիշեցինք կանխաւ, հիմնովին նպաստաւոր են մեր վարկածին. այսինքն՝ ճառընտիրներու յերիւրած կենսագրական տեղեկութիւններ, ի՛նչչափ ալ հին ըլլան անոնք, ա՛յնչափ ոյժ եւ յարգ ունին, ո՛րչափ Թովմայի պատմածը՝ Վարդանանց Պատմագրին կենաց վերջին տարիներու նկատմամբ։ Այս ամէնը վկայաբանական կշիռ մ՚ունին, եւ իբր կենսագրութիւն չեն կրնար պատկերացընել անձ մը, որ ինքզինք տեսակ մը համեստութեամբ ծածկած՝ թող տուած է որ իւր գրչին արդիւնքով ուրիշ մը փառաւորուի։

Ասկէ զատ վկայաբանական գրուածներու յատուկ կամայական սեղմումներու կամ ընդլայնումներու՝ խոշոր բաժիններ պէտք է հանել՝ Վարդանանց Պատմագիրը ներկայացընող կենսագրականին մէջէն. այսինքն՝ բոլորովին մէկդի դնել զանոնք։ Որովհետեւ եթէ կարեւորութիւն ընծայուի այն տեսակ գրուածներու տեղեկութեանց, գէթ այս պարագային, հարկ է ընդունիլ՝ որ Վարդանանց Պատմագիրը շատ յետին ժամանակի (Թ դար) մատենագիր մը եղած ըլլայ, կամ թէ Թովմա Արծրունին ստուգիւ աշակերտած ըլլայ անոր, ինչպէս ոմանք՝ զարմանալի պատմագիտութեամբ մը ուզեցին կարեւորութիւն տալ այսպիսի արձագանգի մը, որ անշուշտ վկայաբանական գրուածներու կամ աւանդական զրոյցներու ժխորէն կու գայ (Չ. Պատմ. Հայ. Բ. էջ 155. 461։ — Արարատ ամսագիր 1868 էջ 91)։ Ստուգիւ ծիծաղելի է այսպիսի աղբիւրներու վստահիլ, հաւատք ընծայել, մանաւանդ

երբ խնդիրը մեր ուսումնասիրած Պատմագրին վրայ է։ Սակայն այս բոլոր սխալ նոյն իսկ ծիծաղելի տեղեկութիւններ շատ նպաստաւոր են մեզ. եթէ ըստ ոմանց Վարդանանց Պատմագիրը Վարդանին ատենադպիրն է եւ ըստ ոմանց Թովմայի վարժապետը, երկու զրոյցներն ալ հաւասարապէս կը ցուցընեն՝ որ [illegible] գրքոյկին հեղինակը ծանօթ անձ մը չէ։

Վկայաբանական պատմածներու ամէնէն իրական կարծուած մէկ մասն իսկ, այսինքն՝ թէ Վարդանանց Պատմագիրը թաղուած ըլլայ Ոստանայ (Ռշտունեաց երկրին մէջ) Զաղար (Զարահան) Ս. Նշանի Վանքում (Համով Հոտով, էջ 50—51. 90. — Նկր. Ոսկ. Մ. Կ. Միրախորեան Ա. Մաս (1886 էջ 115. — Րաֆֆի Կայծեր Ա. էջ 299. 300. Բ. 488), զուտ աւանդական բան մ'է։ Որովհետեւ ըստ վկայաբանական պատմածին՝ Վարդանանց Պատմագրին մարմինը բաժնուած եւ երկու տեղ թաղուած է. այսինքն՝ Մոկաց իշխանը "[illegible] [illegible]" (Սոփերք)։ Այսպիսի բաժանման մը նպատակն եղած է, ըստ վկայաբան կենսագրին, պատուել Սրբոյն ճգնավայրերը թէ Ռշտունեաց եւ թէ Մոկաց լեռներում. եւ դեռ մինչեւ վկայաբանական գրուածին ժամանակը՝ Մոկաց ճգնավայրը "Սուրբ այր Եղիշէի" կը կոչուէր, իսկ Ռշտունեացն "Սուրբ Եղիշէի այր" (Սոփերք)։

Արդ՝ Զաղար Ս. Նշանին մէջ մինչեւ հիմայ Վարդանանց Պատմագիր Սուրբ Եղիշէի անուամբ պատուուած գերեզմանը պէտք էր իւր մէջ ամփոփած ըլլալ ոչ-ամբողջ կմախք մը. այսինքն՝ գլուխն եւ ձեռք մը պակաս։ Ընդհակառակը՝ Աղթամարի Տ. Խաչատուր Կաթողիկոսը՝ ամբողջ կմախք մը գտաւ այն գերեզմանին մէջ, երբ Ս. Եղիշէն աւելի եւս պատուելու համար՝ Սրբոյն գերեզմանը փոխադրեց Տաճարին աջակողմեան անկիւնը գտնուած Ս. Նիկողայոս Հայրապետին մատուռին մէջ։

Թէ՛ վկայաբանական գրուածներու եւ թէ՛ աւանդութեան զիրար հերքումը միշտ իրողութիւն մը կը շեշտեն․ թէ տարբեր անձ մ՚է այն՝ որ Վարդանանց Պատմութիւնը գրած է․ հետեւաբար ինչ որ կը պատմուի վկայաբանօրէն եւ կ՚աւանդուի ժողովրդեան մէջ՝ կրնայ ստոյգ ըլլալ Եղիշէի մը մասին, բայց թէ այն Եղիշէն՝ է Վարդանանց Պատմագիրը, դժուար է զայն հաստատել։ Այդ ամէնը Սուրբ Եղիշէի մը գոյութեան պատմութիւնն է, եթէ յերիւրուած կամ կարկտանք չնկատենք պատմագիր Եղիշէին համար։ Եւ ստուգիւ անիրաւութիւն մըն է այնպիսի անյարիր եւ անյարմար պարագաներ պատմել գրողի մը մասին, որ չէ՛ ուզած ինքզինք յայտնել․ նա ուզած է իր գործին մէջ յայտնուիլ, ինքզինք հո՛ն ցոլացընել։ Պէտք է խոստովանիլ՝ որ Աւարայրի Բանաստեղծ պատմիչը յաջողած է իր դիտումին մէջ։ Միանձանց խրատողն իր աշխարհատեցիկ ձգտումին զապանակը՝ գրելու արուեստին մէջ ալ լարած է․ նա իր գրուածներով փափաքած է անմահանալ։

Վարդանանց Պատմագիրը ինքնակենսագիր մըն է․ Վարդանանց Պատմութիւնն է իր կենսագրութեան մի կողմը, միւսն է Միանձանց Խրատը։

Ե․

Երկրորդական, բայց կարեւոր կէտ մըն ալ։

Վարդանանց Պատմագրին կենսագրութեան մասին մեր դիտողութիւններն ամբողջացընելու համար պէտք է նկատի առնել, ի միջի այլոց, իրեն ընծայուած «Յայլակերպութիւն Քրիստոսի» Ճառը, լաւ եւս այդ Ճառին քանի մը կէտերը, մասնաւորաբար Թաբոր լեռան նկարագրութիւնը։ Այս գրուածին հեղինակը, որ նոյն կը թուի ըլլալ Միանձանց խրատողին, հետեւաբար եւ Պատմագրին հետ, կարեւոր տեղեկութիւն մը կու տայ

խումբ մ'ուսանողներու նկատմամբ, որոնց մէջ կը գտնուի ինքն ալ. — "Տեսանեմք իսկ զօրէն եւ ի մերում աշխարհիս բազումք վարեցեալք առաքինութեամբ անխախտ հաւատովք ըստ առաքելական կանոնին, յորոց ցնծացեալ բերկրի սուրբ Եկեղեցի հեթանոսաց։ Զայս հաւատ յանձին պահելով դեգերէին յաստուածպաշտութեան ուխտաւոր մանկունք Հայոց Մեծաց, զանձինս պարապեցուցեալ ի վաճառաշահ օգտից" (Եղիշէ, էջ 232. հմմտ. Խոր. Գ. Կ—ԿԱ.)։ Փոքր Թարգմանչաց խումբն է այս, որ ուսումնասիրութեան կը պարապի, եւ ինչպէս կը պատմէ Խորենացին, իրենց ուսումնական ուղեւորութեան միջոցին հանդիպեցան Եդեսիա եւ Պաղեստին — "անցաք ի Սուրբ Տեղիսն երկրպագել, եւ մնալ վայրկեան ի Պաղեստինացւոց հրահանգս" (Խոր. Գ. ԿԲ)։ Թաբոր լեռան նկարագրողը կը հաստատէ զայս. — "Այլ վասն լերինն գեղեցկութեան եւ վայրացն վայելչութեան՝ եթէ կամիք ախորժելով ունկն դնել, սակաւիկ մի երկրորդեցից ձեզ զտեսիլ ցանկալի տեղւոյն։ Լսելով յաւետարանէն գիտէք ամենեքեան զտեղին, քանզի Տէր ե-անյամբ իւր հանեալ եւ այլոց տեսեալ, ոչ յառաջ միայն առանձինն, այլ բազում ընկերակցօք, որոց ե-կամ իւր եղև սմանց ծանուցեալ ի լերինն" (Եղիշէ, էջ 236)։ Յայտնի է անտարակոյս՝ թէ այս տողերը գրողն կամ երկրորդողը Մովսէսի հետ է, մանաւանդ Պաղեստինի մէջ, ուր նա հետիոտն ելած է Թաբոր լեռան վրայ — "Եւ ես տեսանելոյ ձեր զամենայն մարդ, որ հետեւեսցի հետեւոց ընդ տէրունեան շաւիղն ի լեառն անդ, եւ այսօր տեսի պժգալով աքանչելի եղբարց" (նոյն էջ 239)։

Ի՞նչ կը հետեւի այս տեղեկութիւններէն.

1. Վարդանանց Պատմագիրը, հեղինակ միանգամայն Միանձանց Խրատին եւ Թաբոր լեռան նկարագրութեան, կը պատկանի Փոքր Թարգմանիչներու խումբին։

2. Վարդանանց Պատմագիրն իբր ուսումնակից Մովսէսի եւ Դաւթի, ասոնց հետ դեռ Բիւզանդիոն էր 451ին. այսինքն՝ Վարդանանց Պատերազմը վերջանալէն շատ յետոյ վերադարձան ի Հայս, հետեւաբար՝ Պատմագիրը ականատես չէ Վարդանանց դէպքերուն։

3. Այս հետեւութիւնները ճիշդ կը մնան ցորչափ չհաստատուի՝ թէ Միանձանց Խորանը եւ Թաբոր լերին նկարագրութիւնը[1] Փիլոնի թարգմանչին (Խորենացին ընդունուած է առ այժմ) գործն է։ Ինչ ինչ նմանութիւններ սակայն, զորս պիտի տեսնենք ետքը (Գլ. Զ. Ա. 2°), կը ցուցընեն թէ Վարդանանց Պատմագիրն է այն երկու գրածներու հեղինակը։

Կենսագրական ճշգրիտ տեղեկութիւններու չգոյութիւնն եւ նոյն իսկ պակասութիւնը, միշտ մահն եղած է մեր ամէնէն ընտիր եւ ամէնէն նշա-

---

[1] 1868 Արարատ Ամսագրի մէջ (էջ 91) անանուն յօդուածագիր մը, որ Վարդանանց Պատմագրին անձին նկատմամբ մասամբ ուղիղ եւ մասամբ սխալ յօդուած մը գրած է կցելով անոր Թաբոր լերին նկարագրութիւնը, կ'ընդունի՝ թէ "Հայոց իշխանազուն Տիկնանց,, Միանձանց Խորանի եւ Թաբորի նկարագրութեան մէջ աղերս մը կայ. — "Այս ամէն համառօտ տեղեկութեանց մէջ, զոր Եղիշէ Ս. Վարդապետին վրայ կը տան պատմագիրք, չենք գտնել յիշատակութիւն նորա Երուսաղէմ գնալուն վրայ. բայց իրեն Թաբոր լերին ստորագրութեան մէջ կրօնաւորաց խստամբեր կենցաղավարութիւնը այնպէս կը նկարագրէ, որ իր պատմագրութեան Հայոց իշխանազուն Տիկնանց խոտաճարակ կենսագրութեան մէջ փոխ առած կ'երեւի, եւ կարդացողի մտաց յառաջը աչներեւ կերեւի, որ մի եւ նոյն Եղիշէն է, որ առաջինի մէջի խօսքը երկրորդին մէջն եւս կը խօսի իրեն յատկացեալ հայկական եւ անհատական ոճովը ու գրչով։ — Եւ սորանով կը ստուգուի որ Միանձանց Խորան եւս Եղիշէի իր գրածն է. ըստ որում նորա վրա եւս կը տարակուսին ոմանք. եւ նոյն խրատականն էլ յԵրուսաղէմէն յետ դարձած ժամանակը կ'երեւի գրած,, եւ այլն։

նաւոր մատենագիրներուն։ Թերեւս գաղտնիք մը կայ այս երեւութին տակ. — Ագաթանգեղոս, Յաճախապատում, Բուզանդարան, Զգօն, Զենոբ Գլակ, Խորենացի ծնունդ տուած են ա՛յս երեւութին։ Ո՛րչափ ալ հիմայ քննական հետազօտութեանց շնորհիւ աւանդական քօղն պատռուած ըլլայ, ո՛րչափ ալ դարաւոր նախապաշարմունք չկարենան խեղդել այլ եւս իրականութիւնը, սակայն դեռ շատ լոյս եւ ոյժ պէտք է գիտնականապէս ճանչնալու համար հայ մատենագրութեան նոյն իսկ ամենէն սիրուն եւ ամենէն ժողովրդական հեղինակներու անձն ու գործերը։ Այսպէս է Վարդանանց Պատմագիրն եւ իր գործը։ Կարելի չէ այս գերազանցապէս զգայուն գրիչը՝ աւանդական կամ վկայաբանական պատկերներու մէջ գտնելու համոզում մը գոյացընել, քանի որ ասոնք հիմնական դժուարութեանց կը բախին։

Մէկ կողմանէ Պատմագրին լռութիւնն իր անձին նկատմամբ՝ բուն իսկ Պատմութեան մէջ, միւս կողմանէ Վարդանանց Պատմութեան երկար ժամանակ անանուն մնալը խարիսխն են այն տեսութեան, որով կը հերքենք աւանդական կամ վկայաբանական ամէն պատմած իբր կենսագրութիւն մեր Պատմագրին։ Դիտել կու տանք՝ թէ Պատմութենէն դուրս գրուածներու եւ մանաւորաբար գրուածի մը՝ Թաքոր լեւոն նկարագրութեան՝ կարեւոր տեղեկութիւններն, ինչպէս տեսանք, վկայաբանականէն բոլորովին տարբեր կենսագրութիւն մը կը ցայտեցընեն։ Եւ եթէ հակառակ ամէն հաւանականութիւններու՝ այն գրուածը Վարդանանց Պատմագրին չընծայուի, բան մը՝ որ դիւրին չերեւիր, գէթ անոր տեղեկութիւնները ճշմարիտ են այն խումբին համար, որուն մէկ անդամն է Վարդանանց Պատմագիրը։

Պատմագրին կեանքը Թարգմանչաց կեանքն է. այսինքն՝ ո՛րչափ արդիւնաւոր ուսումնական աշ-

խաստութեամբ, այնչափ անծանօթ անձամբ։ Այս ճակատագիրն եղած է Սահակ-Մեսրոպեան դպրոցի գրեթէ-բոլոր հետեւողներուն։ Անոնց մեծագոյն մասը բոլորովին անծանօթ մնացած է, ոմանց անունը միայն հասած է ցանուցիր տեղեկութիւններով. իսկ անոնք՝ որ իբր ծանօթ մեր առջեւ կը դրուին՝ աւանդական զրոյցներու մէջ վիճելի վիճակ մ'առած են։

Իրաց այս վիճակին մէջ սակայն՝ դժուար չէ թարգմանիչներու անհատական կեանքը միեւնոյն մակարդակի վրայ դնել անոնց ամէնէն ծանօթին, զոր օր. Փարպեցու կեանքին հետ. այսինքն՝ ամէնքն ալ նշաւակ տգէտներու հալածանքին։ Եւ արդէն Փարպեցու Թուղթը՝ առ Վահան, եւ Խորենացու Ողբը՝ ամբողջ կենսագրականն են թարգմանիչներուն։

Թարգմանիչներու կեանքին մէկ կողմը՝ պատմականն է այս. պէտք է դիտել իւրաքանչիւրի գործին մէջ իրենց կեանքին միւս կողմը՝ հոգեխօսականը։ Ստուգիւ ամէն գործ իւր հեղինակն ամբողջովին չցոլացներ ֆիզիքապէս եւ հոգեխօսապէս միանգամայն։ Երբ ուշ դնենք Ոսկեբերանի այն առատ խօսածքին եւ գոռացող չեշտերուն, չեմ կարծեր՝ որ ընթերցողն անոնց ետեւ տխեղծ մարմնով հիւանդոտ եկեղեցական մը՝ քարոզիչ մ'երեւակայէ. ո՛չ ալ կարելի է Լամբրոնացին, նոյնպէս առատ եւ հասուն գրուածներուն հեղինակ, երեւակայել 20—25 տարեկան երիտասարդ մը։ Բայց հեղինակներուն հոգին կէտ առ կէտ կը պատասխանէ, կը համաձայնի իրենց խօսուածքին, իրենց չեշտերուն։ Վարդանանց Պատմութիւնն այս գրուածներէն է. հեղինակի հոգին կը տեսնուի անոր մէջ՝ ընտիր, վսեմ բացատրութիւններով շրջանակուած։

“Հայոց պատերազմին„ մատենագրական շինուածքը գերազանցապէս զգայուն հոգի մը, հայե-

ցողական միտք մը մատնանիշ կ'ընեն։ Անոր բոլոր արտայայտութիւնները թէ՛ Պատմութեան, թէ՛ Միանձանց Խրատին, թէ՛ Թաբորի Նկարագրականին մէջ, կը կազմեն կեանք մը՝ առարկայ տգէտներու պարսաւանքին, որ կը մղէ զինքն ժխորէն եւ ընկերութեան աղտոտութիւններէն դուրս, իր յուզումներուն, իր հայեցողականութեան զգուանքին մէջ մխրճելու։ Ո՛չ մէկ գրիչ, յիշատակարան կամ վկայաբանութիւն պիտի կրնային Բանաստեղծ Պատմիչը տպաւորել մեր մտքին վրայ եւ զգացընել մեր սրտին մէջ, եթէ ո՛չ իր «Հրաշապատումը»։

Եւ արդէն զգացումի Պատմիչ է նա։

ԳԼՈՒԽ Բ.

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԽՈՐԱԳԻՐԸ·

Ո՛եւէ գրքի մը անունը կամ խորագիրը՝ գրքին ամէնէն ազնիւ եւ ամէնէն արտայայտիչ մասն է։ Կամայական փոփոխութիւն մը կը սպաննէ ազնիւն ու կը մթացնէ արտայայտութիւնը։ Կ'երեւի՝ թէ այն գործը, որ այսօր Վարդանանց Պատերազմին անուամբ մեր ձեռքը կը գտնուի, ենթարկուած ըլլայ այնպիսի փոփոխութեան մը։ Հաւանական չէ՛ որ մեր Պատմագիրն իր գործն առանց խորագրի թողած ըլլայ։

Խորագրի խանգարումներ արդիւնք են գաղափարողներու անհաւատարմութեան. անոնք շատ անգամ լաւ բան մ'ըրած ըլլալու տենչով բառ մը կ'աւելցընեն կամ կը պակսեցընեն. կամ բոլորովին կը փոխեն։ Ցիրաւի շատ տգէտ պէտք չէ՛ ենթադրել այն գաղափարողները, որոնք ընդհանրապէս ակնածանօք եւ տեսակ մը երկիւղածութեամբ կը կատարէին իրենց պաշտօնը. բայց միանգամ ընդմիշտ պէտք է խոստովանիլ՝ թէ մատենագրական դժուարութիւններու մեծագոյն մասն անոնց կը պարտինք։

Խանգարումներ կամ փոփոխութիւններ ինչչափ ալ մթացընեն, սակայն, գործին արտայայտիչ մասը — անշուշտ խնդիրը մեր նախնեաց գործերուն վրայ է — կարծես ամէնէն ապահով միջոց մ'է գէթ մատենագրական ուսումնասիրութեանց մէջ՝ մէկդի թողուլ ամէն խորագիր եւ հեղինակով արտայայտել գործը։ Ասոր համար է որ Եզնիկ, Կորիւն, Փարպեցի եւայլն անուններն աւելի լաւ կ'արտայայտեն իրենց գործերը քան՝ որեւիցէ խորագիր մը։

Մեր ուսումնասիրած Պատմութեան խորագրին մէջ երկու կարեւոր կէտ կայ դիտելու 1. Բուն խորագիրը. 2. Այն խորագրին մէջ յիշատակուած անձը, որ գրել տուած է Պատմութիւնը։

Անձեւացեաց օրինակը՝ Եղիշէի անուամբ մկրտուած Պատմութիւնը սապէս կը խորագրէ. "Վասն Վարդանայ եւ Հայոց Պատերազմին Դաւթի Երիցու Մամիկոնէի հայցեալ"։ Թէ վերջին դարերու ձեռագիրներ եւ թէ պատմագիրներ նոյն ճշդութեամբ չեն պահած այս խորագիրը, եթէ պահ մը նախնական, այսինքն՝ հեղինակին ձեռքէն ելած համարինք զայն։ Ձեռագիրներու մէջ աւելցուած են՝ Ա.) Վարդանի համար ստորոգելիներ, "Պատմութիւն սրբոյն Վարդանայ քաջի եւ Հայոց սպարապետի" — յետոյ — "եւ Վկայից Քրիստոսի". Բ.) Պատմագրին անունը, "Եղիշէայ սրբոյ", որուն կը կցուի "Դաւթայ Երիցու" (ոմանք Երիցուէ) հայցեալ գրեաց"։ Այս փոփոխութեանց մէջ նշանակելի է ոչ միայն խորագրի ամբողջ խանգարում մը, այլ մանաւանդ "Մամիկոնէ"ի ջնջումը (տե՛ս Գր. Սրկ.)։

Ասողիկ (Ժ. դար) տարբեր կերպով մը կը ներկայացընէ. "Եղիշէ Վարդապետ որ Վասն Վարդանանց եւ սուրբ քահանայիցն Ղեւոնդեանց եւ կատարման". այլուր՝ "Պատմութիւն Եղիշէի Վարդապետի" (Ասողիկ էջ 1[illegible] եւ 79)։ Կիրակոս (ԺԲ. դար) աւելի պարզ խորագրով մը կը յիշէ, որ գրեթէ

սովորական եղած է այժմ. — “Պատմութիւն Սրբոց Վարդանանց„[1]:

Իսկ Թովմա Արծրունին (Թ. դար), առաջին անգամ ծանօթացընողը Եղիշէն, այսպէս կը ներկայացընէ, “Պատմութիւն Սրբոց Վարդանանց„, եւ “Եկեալ առ նա Բարձումայ, խնդրեալ շնորհողական գիրսն Հայոց, զոր գրեալ էր հրամանաւ Սրբոյն Վարդանայ„[2]:

Խորագրի այս զանազան ձեւերը յայտնի կը ցուցընեն՝ թէ Վարդանանց Պատմութիւնը յիշատակողներէն եւ ո՛չ երկուքն իրարու կը համաձայնին: Նպաստաւոր նշան մը չէ՛ այս գրքի մը համար: Ձեռագիրներէն աւելի ճշդութիւն կը պահանջուի քան պատմագիրներէն. վասն զի ատո՛ւք իրաւ է որ արդի խստութեամբ չէին կրնար յիշատակել նախորդ պատմագրի մը գործին բուն խորագիրը. այլ որ եւ իցէ ձեւով մը կըներկայացընեն գործը կամ կը յիշատակեն, բաւական է որ իրենց բացատրութիւնը համապատասխանէ յիշատակուած գործի ոգւոյն: Այսպէս Սեբէոս փոխանակ Վարդանանց Պատմութեան անունը տալու գլխակարգութեան ձեւով նիւթերը կ'ամփոփէ: Կիրակոս (էջ 3) աւելի սեղմ կերպով նոյն ոճին կը հետեւի: Բայց այս ամէնն աւելի կասկած կ'արթընցընեն քան թէ կ'արդարացընեն ըստ կամս յիշատակութեան մը պատճառները: Այսչափ տար-

1 Կիրակոս էջ 17: — Տպագրութիւններ մանաւանդ առաջինները, աւելի նոր խորագիրներով զարդարուեցան (տե՛ս Հայ. Մատենագիտութիւն Հ. Գր. Զարբ.ի էջ 167 եւ հետեւ.): Ահա թէ ինչպէս լաւ բան մ'ըրած ըլլալու տենչով փոփոխութիւններ ի գործ կը դրուին:

2 Թվմ. Արծ. Դպր. Ա. Գլ. Բ. — Դպր. Բ. Գլ. Բ.: — Անշուշտ ուրիշ ձեռագիրէ հանուած խորագիր մ'է սա ալ. “Եղիշէ Վարդապետ, որ է Պատմութիւն Սրբոց Ղեւոնդեանց եւ Վարդանանց„ (Ազգ. Մատն. Թ. Պատմ. Հայ լրագրութեան էջ 206. Ազդարար լրագրէն 1795):

*բերութիւններէն գէթ երկուքը պէտք էր որ իրարու համաձայնէին։*

*Այս անճշդութեանց հիմ պէտք է համարիլ ոչ միայն ըստ կամս գործադրուած խանգարումները, այլ մանաւանդ սկզբնագիր օրինակին վրայ բոլորովին տարբեր խորագրի մը ենթադրութիւնը։ Բաց աստի այն խանգարուած խորագիրներն են որ Վարդանանց Պատմագրին անձին նկատմամբ կրնան այլեւայլ զրոյցներ յօդելու պատճառ եղած ըլլալ։ Այս պարագան կը լուսաբանէ խորագրի վրայ մեր դիտելու երկրորդ կէտը. այսինքն՝ ո՞վ է Վարդանանց Պատմութեան ի գիր առնուելուն շարժառիթը, կամ նախնեաց բացատրութեամբ, Խնդրողը կամ Հայցողը կամ Հրամայողը։*

*Բոլոր ցեղապատմութիւններ, զոր օր. Մամիկոնեանց, Արծրունեաց, Բագրատունեաց, նոյն իսկ ազգայիններէն Խորենացի, Ասողիկ, յատուկ խնդրանօք կամ հրամանով ի գիր առնուած են։ Այսչափ միակողմանի հանգամանքներում կազմուած է մեր պատմական մատենադարանը։ Երդ դարու Մամիկոնեանց յատուկ Պատմագիրն է Փարպեցին, որ Մեծն Վահանի հրամանով գրեց իւր Պատմութիւնը։ Եղիշէի անունով հասած Պատմութիւնը, որ իբր թէ Փարպեցիէն յառաջ պէտք է դասուի — մինչ Փարպեցին իրմէ յառաջ միայն երկու պատմագիր կը ճանչնայ, Ագաթանգեղոս եւ Բուզանդ եւ Երրորդ կը համարի իւրքինը. Եղիշէն բնաւ չճանչնար — որոշ չէ թէ որո՞ւն խնդրանքով գրուած է։ — Ձեռագիրներէն շատեր, Անձեւացեացն ալ միասին, կը հաստատեն՝ թէ Վարդանանց Պատմութիւնը գրուած է Դաւիթ Երէցի մը հայցմամբ, ըստ ոմանց Մամիկոնեանի[1]։*

---

[1] *Ժամանակակից (Ե—Զ դար) պատմութեան մէջ Դաւիթ Երէց Մամիկոնեան անուն անձ մը չենք գտներ. միայն Փարպեցի (էջ 125) Դաւիթ մը կը յիշէ Արտաշատու*

Արծրունին բոլորովին կը տարբերի այս մասին. ըստ այսմ Վարդանանց Պատմագիրն իւր Պատմութիւնը գրած պիտի ըլլայ նոյն իսկ Սպարապետին հրամանով — Գրեալ էր հրամանաւ սրբոյն Վարդանայ —: Վարդանանց պատմագրութեան մասին երկու յայտնութիւն ունի Թովման. մին Բարձունայի խարդաւանքը, միւսը՝ պատմագրութեան շարժառիթը. երկուքն ալ որչափ նոր այնչափ սխալ են սակայն: Գէթ իւր պատմածներէն եւ ոչ մին արձագանգ գտած է յաջորդ դարերու պատմութեանց էջերում, ոչ ալ ինքն կը յանդգնի իւր աղբիւրը մատնանիշ ընել: Եղիշէ, ըստ Թովմայի մտածութեան, նահատակուած Վարդանին՞ն կ'ուղղէր արդեօք "զի հանապազ ընթեռնուցուս, լսելով զաւաքինեացն զքաջութիւն եւ զչեռս կացելոցն զվատթարութիւն" խօսքերը: Պարզապէս Թովմայէն պէտք է ընդունիլ այս սխալները. որովհետեւ հաւանական չէ՛ որ Թովմա բոլորովին տարբեր ձեռագիր մ'ունեցած ըլլայ իւր առջեւ, ուր պակսած ենթադրուի Պատմութեան ընծայականը. գէթ Անձեւացեաց օրինակը, որ ժամանակակից կրնայ համարուիլ Արծրունեաց Պատմչին, թոյլ չտար այդպիսի մեկնութեան մը:
— Յաջորդ գլխում պիտի ըսենք թէ ով կրնայ ըլլալ Հոյթոյ Դաւիթը:

---

ժողովականներու շարքում՝ առանց տոհմանունի: Եղիշէ նոյն ժողովականներու մէջ չյիշեր այն Դաւիթը (էջ 22): Ոմանք յանդէպս նոյնացընել ուզեցին Հոյթոյն Դաւիթ երէց Մամիկոնեանը Փարպեցւոյ յիշատակածին հետ: Հաւանական հիմ մը չկայ այսպիսի ենթադրութեան մը: Որովհետեւ ոչ միայն՝ եթէ միեւնոյն Դաւիթն ըլլար սա՝ Եղիշէ անպատճառ պիտի յիշէր իւր մեկենասն եւ թերեւս ո՛չ առանց շքեղ ներկայացումի, այլ մանաւանդ, ինչպէս պիտի տեսնենք, Վարդանանց Պատմագիրն իբր գրող Զրդ դարու առաջին քառորդին չէր կրնար Արտաշատու ժողովականներէն եւ այն իրեն անծանօթ Դաւթի մը խնդիրը կատարել:

Գալով խորագրի խնդրին՝ մտադիր կ'ընենք ընթերցողը թէ ձեռագիր մը՝ ծանօթ խորագիրներու կից, ուրիշ մ'ալ ունի՝ բոլորովին տարբեր ձեւով, որ գիրքը կը ներկայացընէ լոկ իբր Վարդանի համար գրուած պատմութիւն մը կամ յիշատակարան մը — «Յիշատակարան Սրբոյն Վարդանա զաւրավարին»։ Յիշատակարան՝ իբր պատմական գրուած՝ բաւական հին գործածութիւն մ'ունի (Հմմտ. Եղիշէ էջ 109 «գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա») թէեւ մեր յառաջ բերած խորագրին ձեռագիրը, որ լաւագոյններէն կը թուի, թուական չունի. բայց ըստ ամենայն հաւանութեան հնագոյն օրինակէ մը գաղափարած է։ Գր. Սրկ. երկու տարբեր խորագիրներու նկատմամբ դիտել կու տայ՝ թէ «Այս վերնագիրը (այսինքն՝ առաջինը, որ նոյն է ծանօթներուն հետ) տարբեր գրչով է եւ բուն ձեռագրի համեմատութեամբ նոր ձեռք է։ Նախնի բուն վերնագիրն է կարմիր գունով երկաթագիր գրով. Յիշատակարան Սրբոյն Վարդանա զաւրավարին» (Գր. Սրկ. էջ Ե—Զ եւ 1. — Հմմտ. Պատմ. Հայ Դպր. էջ 325 ծնթ.)։

Աւելի հետաքրքրական է Ոսկի մատենին ՎԱՐԴԱՆԱԳԻՐՔ կոչումը. — «...գրեցաւ Աստուածաշունչ տառս ձեռամբ... ՈՀ. Երիցու... ի թուականին Հայոց ՊԼԻ (?) ի քաղաքիս Վան ընդ հովանեաւ Ս. Վարդանայ... որք հանդիպիք այս աստուածային Գանձուցս Եղիշաի...... Ես Նիկողայոս աբեղայ կամաւն ամենակալին Աստուծոյ ստացայ զՎարդանագիրս եւ ետու զսա ինձ յիշատակ եւ ծնողաց իմոց ի դուռն Ս. Տիրամաւրն լուսոյ. որ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ Ս. Աստուածածնի Խառաբաստայ Վանուց» եւայլն (Թորոս Աղբար, Մասն Բ. էջ 334[1])։

---

[1] Հմմտ. «Թարգմանութիւն Պատմէ Վարդան երգոյ» (Ցուցակ Հայ. Ձեռ. Կայսր. Մատենդ. ի Վիեննա 1891 Հ. Յ. Տ.) — «Այս պատմագրութիւնը, կոչեցեալ Վարդան

Թէ այս տարբեր խորագիրներէն սկզբնագիրը, պատմագրին ձեռքէն ելածը ո՞րն է — դժուար է որոշել։ Բաւական է միայն համոզուիլ՝ որ Վարդանանց Պատմութիւնը խանգարումներ կրած է նոյն իսկ խորագրէն սկսեալ․ որովհետեւ նոյնչափ այլայլութիւններ (քերականական, բառագիտական, հատուածներու, նախադասութիւններու եւայլն) Պատմութեան բունին մէջ՝ Եղիշէ ձեռագիրներուն բարացուցականը կը կազմեն։

Ամփոփելով մեր դիտողութիւնները Վարդանանց Պատմութեան խորագրի նկատմամբ կ'ըսենք։

1. Պատմագիրն անպատճառ խորագիր մը դրաւ իր գործին ճակատը, բայց շատ պարզ խորագիր մը․

2. Այդ պարզ խորագիրը հետզհետէ խանգարումներ կրած է։ Պատմագրին անունը Եղիշէ կամ Եղիշ բոլորովին օտար է սկզբնագիր խորագրէն[1].

3. Նոյնպէս հայցողին կամ հրամայողին տոհմանունն ալ (հաւանաբար եւ պաշտօնն ալ) յետնագոյն ժամանակի ներմուծումն է։

---

Գիրք, շատ գեղազանց եւ վայելուչ շարադրած է ամենայն կերպով քաղցր եւ գեղեցիկ„ (Հ. Մ. Վ. Բժշկեան Հնոց. Նկր. Վարդայ Երեւելի որդւոյ տպ. Վենետ. 1850)։ — Պէտք չէ՛ շփոթել այս “Վարդանգիրք„ը կամ “Վարդանագիրք„ը, Վարդան Վարդապետի (Արեւելցի) “Ոսկեփորիկ„ին հետ, որ իր անունով “Վարդանագիրք„ ալ կոչուած է (Հմմտ. Հայոց Գիրք էջ 364 եւ 376)։

[1] Եղիշէի անունը, ինձ ծանօթ բոլոր տպագրութիւնք, կը դնեն Պատմութեան բուն սկիզբը, այսինքն՝ ընծայականէն անմիջապէս յառաջ “Եղիշէ Վարդապետի վասն Վարդանայ եւ Հայոց Պատերազմին Դաւթի երիցու հայցեալ„։ միայն Թէոդոսիոյ եւ Տփղիսի տպագրութիւնները չեն դրած հոն, հարազատ մնալով ձեռագրին — “Վասն Վարդանայ եւ Հայոց Պատերազմին Դաւթի երիցու Մամիկոնի հայցեալ„ — Տպագրութեանց առջեւ երեսներուն վրայ դրուած խորագիրներ ծանուցումի (réclame) ձեւ ունին բոլորովին։

Այս դիտողութիւններէն յետոյ ալ պիտի չվարանէի Պատմագրի ձեռքէն ելած բուն խորագրի ձեւը դուրս հանել նոյն ինքն ընծայականի երկրորդ տողէն — ՎԱՄՆ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ։ Այնչափ խանգարումներու մէջ միայն այս տողը սկզբնագիր կարելի է համարել ամենայն ապահովութեամբ։

“ՎԱՐԴԱՆԱՑ ԵՒ„ յաւելուածն եթէ խորթ չհամարինք՝ պէտք էր որ յատուկ տողեր գտնուէին Պատմութեան մէջ իբր ոչ միայն սպարապետին քաջութեան նուիրուած դրուագներ, այլ մանաւանդ կենսագրական ծանօթութիւններ Պատմութեան դիւցազնին նկատմամբ. մինչ ընդհակառակն ընդհանուր ոճով գրուած մ'է այն եւ իրաւցնէ Հայոց Պատերազմը կը նկարագրուի հոն բաւական մանրամասնութիւններով կամ ինչպէս Պատմագիրը կը բացատրէ “ծայրաքեր պարապմամբ„։ Վարդանի քաջագործութիւնները միայն կը պատմուին Ոսկի-Գրքոյկին մէջ, հակառակէն Վասակին կեանքն ու բարքն աւելի մանր դիտողութեանց առարկայ եղած է։ Ասի արգելք մը չէ եղած սակայն, ո՛չ միայն “Վարդանայ եւ„ յաւելածն ընելու “Հայոց Պատերազմին„էն յառաջ, այլ նոյն իսկ, ինչպէս տեսանք, “Յիշատակարան Վարդանայ„ կամ “Վարդանագիրք„ անուանելու Ոսկի-Գրքոյկը։

## ԳԼՈՒԽ Գ.

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ

Վարդանանց Պատմութիւնը թէ ըստ ծանօթ ձեռագիրներու մեծագոյն մասին եւ թէ ըստ բոլոր տպագրութեանց կը բաղկանայ 1. Ընծայականէ մը. 2. Եօթն յեղանակներէ կամ գլուխներէ. 3. “Արտաքոյ եօթն յեղանակին՝„ ութերորդ յեղանակէ մը։

§ Ընծայական:

Այս ընտիր գրուածը, զոր կրնանք Պատմութեան Յառաջաբանը նկատել, ուղղուած է Պատմագիրը թելադրող անձին: Իբր Յառաջաբան՝ այս գրուածը բուն մատենագիրներուն յատուկ սկսուած մը ունի, ուր կը ծրագրէ իւր պատմագրելու նիւթերը իրենց ժամանակագրական շարքով: Անմիջապէս յետոյ՝ Պատմագիրը դիտել կու տայ թէ դէպքերը, սկիզբէն մինչեւ վերջը, մանրամասնօրէն նկարագրած է, կամ իւր իսկ բացատրութեամբ՝ "կարգադրեալ եւ եդեալ ծայրալիր պարապմամբ զսկիզբն եւ զմիջոցն եւ զկատարածն": Այսչափ խնամքով մանրամասնուած գործի մը նպատակն եղած է գրգռիչ ընթերցումի նիւթ մը հայթայթել. այսինքն՝ նկարագրել քան պատմագրել Հայոց պատերազմը, Ե. դարուն այդ արիւնոտ շարժումները, ի վեր հանելու համար "զառաքինեացն զքաջութիւն եւ զչարաց կոչելոց զվատթարութիւն": Եւ ստուգիւ քաջեր փառաւորուած են Ոսկի-Գրքոյկին մէջ. եւ այս փառաւորումը՝ մթացուցած է ուրիշ քաջերու փառքը:

Պատմագիրն իւր գործին ծրագիրն ու նպատակը բացատրելով կը սկսի բուն Ընծայականին: Արեւելեան մտքի յատուկ նկարէն երեւակայութեան մը թռիչներով ճոխ դարձուածներու մէջ կ'ընծայուի գործն անձի մը, որ "Վէմ" է "ի գիտութեանն Աստուծոյ". տիրապէս գիտուն մ'է նա. Պատմագրին գրածները ոչինչ են անոր "երկրաւոր գիտութեան" հանդէպ. Նա՝ իրեն՝ Պատմագրին՝ հրամայուածէն աւելի լաւերը, լաւագոյնները կարող է արտադրել. պէտք էր որ ուրիշները դիմէին անոր այս տեսակ լաւագոյն բաներու համար:

Սեղմ եւ կուռ բացատրութիւններ, որք բարձր ըմբռնումներ եւ լայն իմաստներ կը խտացընեն եւ կը ներբողեն դէմք մը, որ հասարակ դիրքի տէր մէկը չէ: Իրաւի դիտելու է որ մեր մա-

տենագիրներ դրուագի մը պահանջէն ալ անդին կ'անցնին երբեմն. Հիացումի թափը չափազանց գովասանքի մը կ'առաջնորդէ։ Փարպեցու, Խորենացու, Ասողիկի ընծայական տողերը կը ցուցնեն որ ներբողուած անձերը իշխանական դիրք մ'ունին. հոն շռայլուած փայլուն ատացուածներ եւ արժանիքի գնահատումը գիրկընդխառնուած են. չափազանցութիւններէն զերծ չեն։ Բայց Վարդանանց Պատմագրին ընծայականը իրական հիացումի մ'արտայայտութիւնն է հաւանաբար եւ ոչ պարզապէս դրուագ մը՝ արեւելեան մեծարանքի ձեւերով զարդարուած։ Ո՞վ կրնայ առարկայ եղած ըլլալ Պատմագրի հիացման. — կը սիրէի մատնանիշ ընել զայն յանձին Գիւթի, բայց ոչ Մամիկոնեան Երէցի, այլ անոր՝ որ [illegible] կը կոչուի։ Նա միայն կրնայ մտածուիլ իբր [illegible] տիրացած անձնաւորութիւն մը։ Հայոց պատերազմին նկարագրութիւնը ընկերաբար խնդրուած մըն է Պատմագրէն՝ քան թէ [illegible] մը անոր։ Հրաման՝ կիրառութեան այս ձեւին մէջ երբեք չունի խիստ իմաստ մը. ընդհակառակն այսպիսի խնդիրք մը "[illegible]„, զոր շատ լաւ գիտեն թէ ինքն Պատմագիրը, թէ խնդրողը եւ թէ անոնք, որ ուսման պարապած են. "[illegible]„։ Վարդանանց Պատմագիրը այսպիսի "մեծգետունի մ'առջեւ միայն պիտի չվարանէր ինքզինք տգէտ համարիլ. եւ պիտի փութար անոր հետ վեր ճախրել, անցնիլ մթնոլորտի մրրկածին խաւերէն. այդ բանաստեղծական բարձրութեան մէջ սկսելու համար իւր պատմական նկարները։

§ "Առաջին ժամանակը։„

Պատմութեան ամենէն սեղմ մասերէն է այս գլուխը։ Պատմագիրն ընդհանուր ակնարկով մը դիտել կու տայ՝ թէ ինչպէս Սասանեանք կ'աշ-

խառնէին իրենց բոլոր հպատակ քրիստոնեայ ազգերը մոգութեան մէջ ի մի ձուլել։ Արշակունեաց հարստութեան բարձումէն յետոյ, Սասանեանց այս քաղաքագիտութիւնը, աւերիչ՝ հպատակ ազգերու համար, Հայոց վրայ ալ սկսաւ ճնշել. այսինքն՝ Արշակայ (Գ) թագաւորութեան սկզբէն մինչեւ Արտաշէսի (Գ) թագաւորութեան վերջը 383—428։ Եթէ Արշակունիք կորուսին թագը, նախարարք զրկեցին զայն. այս պատճառաւ Սասանեանք որչափ ալ սկսան խիստ կերպով գործել, դեռ քրիստոնէութիւնը չէր կորուսած իր փայլը։ Հայաստանի մէջ Քրիստոնէութեան այս “բարձրագլուխ կամակարութեամբ„ փառաւորումը շարունակեց Շապուհի (Գ) թագաւորութեան սկիզբէն մինչեւ երկրորդ տարին Յազկերտ Բ.ի 383—440։ Պատմագիրը Յազկերտ Բ.ի թշնամութիւնը քրիստոնէից դէմ՝ բուռն դարձուածներով կը բացատրէ. սա կը սկսի իր յարձակումները նախ յունական երկիրներու վրայ եւ կը հասնի մինչեւ Մծբին[1]։ Բիւզանդիոնի կայսրը Թէոդոս Բ., թոյլ եւ անարգ, որ ըստ Պատմագրին “խաղաղասէր էր ի Քրիստոս„(՞), հաշտութիւն կը խնդրէ իր արեւելեան երկիրներուն սպարապետ Անատոլի ձեռքով։ Յազկերտ Բ.ի հալածանքներուն այս առաջին բորբոքումը կը հանգչի՝ “վասն քրիստոնէութեան„ ի Բիւզանդիոն ապաստանած պարսիկներու վերադարձումով (440—441)։

Յազկերտ առաջին յաղթութեամբ մը շլացած՝ իր վարանումները բոլորովին փարատեց — “ուստի սակաւ մի կասկածոտն էր, անտի աներկիւղ հաստատեցաւ„ — սկսաւ իր ձեռքին տակ ընկող քրիստոնեաները տանջել կամ հրապուրել։ Յազկերտ հանգիստ դադար չունի. կ'այրի, կը բորբոքի, եւ մոգերը, սատանեան գահուն այս

1 439ի վերջերը եւ 440ի սկիզբը։

*կոյր զսպանակները, ի խորհուրդ կը հրաւիրէ։ Մոգերը առաջին յաղթութիւնը անոր աչքին առջեւ կը դնեն իբր աստուածներուն պարգեւը. եւ Յունաց երկիրներու գրաւումը դիւրացընելու համար կ'առաջարկեն բոլոր հպատակները "ի մի օրէնս" ձուլել. — "բայց միայն զաղանդ քրիստոնէից բարձ ի միջոյ"։*

*Պատմագիրն անմիջապէս հրովարտակի պատճէն մը կը դնէ, որ մոգերու խորհրդով գրուած՝ կ'ուղղուի բոլոր "Արեաց եւ Անարեաց"։ Յունաց վրայ տարուած յաղթութիւնը աւետելով Քուշանաց պատերազմին համար պատրաստութիւն կը հրամայէ. իբր ժամադրավայր կը նշանակուի Ապար աշխարհը։ Հրովարտակը կը հասնի "յաշխարհն Հայոց, ի Վրաց եւ յԱղուանից եւ ի Լփնաց, ի Ծօդէից եւ ի Կորդուաց, յԱղձնեաց եւ բազում այլ տեղեաց հեռաւորաց, որոց ոչ էին օրէնք երթալ զայն ճանապարհ յառաջ ժամանակաւ"[1]։ Հայք, Վիրք, Աղուանք, բոլոր լեռնցիներ՝ "բարբարոս", "որք էին ամենեքեան հաւատացեալք ի մի Կաթողիկէ առաքելական Եկեղեցի", կրօնական եւ զինուորական կատարեալ պատրաստութեամբ ամէն կողմէ կը հաւաքուին նշանակուած վայրը՝ անդիտակ Յազկերտի դիտաւորութեան. ամէնքն ալ "սրտի մտօք եկեալ էին ի վտանգ արքունի"։ Քուշանաց դէմ պատերազմը կը շարունակէ երկու տարի (441ի եւ 442ի ամառները) առանց յաղթութեան։ Բանակը պահեց հոն՝ Պահակի մօտ (Ճորայ) նորաշէն ձմեռոցում՝ կազմ եւ պատրաստ (442—448ի վերջերը)։*

*Վերջապէս Յազկերտ կը յաջողի Հոները (Քուշանք) նեղը ձգել. կը տիրէ անոնց վրայ, աւետաւորներ կը ղրկուին բոլոր ատրուշաններուն, զօ-*

¹ Օրբելեան (Հտր. Ա. էջ 72) կը յիշատակէ թէ Շապուհ Բ (309–379) այսպիսի հաւաքում մ'ըրաւ Անդովկի դէմ։

հեր կը մատուցուին. իսկ մոգեր կը մեծարուին պսակներով եւ պատիւներով: Այս երկրորդ յաջողութիւնն աւելի եւս կը զայրացընէ զՅազկերտ քրիստոնէից դէմ, եւ կը հրամայէ յափշտակել “զինչս եւ զստացուածս (այն քրիստոնէից) որք էին ի մէջ Պարսկաց աշխարհին„: Բանակի մէջ ընդհակառակն կը փառաւորուի Քրիստոսի անունը. Յազկերտ վէճ մը կ'ունենայ “Ճանկ-ֆոյն„ նախարարներէն Գարեգինի (Սրուանձտեանց) հետ, որուն խիստ եւ համարձակ պատասխաններէն վիրաւորուած՝ կը չարչարէ “զերկեամ մի„ դրկելով զոյն իւր տէրութենէն (տանուտէրական կամ նախարարական իշխանութենէն) – 448 – 450 — եւ կը դատապարտէ մահուան:

## § Երկրորդ՝ իրացն պատահումն յիշխանէն Արեւելից:

Այս գլուխը աւածի ձեւով իմաստասիրական տեսութեամբ մը կը սկսի, որով Պատմագիրն կը քննադատէ Յազկերտի սխալ ընթացքը: Պատմագրին նպատակն է ոչ թէ բամբասել, այլ “ճշմարտութեամբ„ ներկայացընել իրաց եղելքը: Եւ կը շեշտէ թէ ինքն “անձամբ անդէն ի տեղւոջն„ պատահած եւ տեսած է այն բոլորը, այսինքն՝ Ճորայ պահակին մէջ: Յազկերտ, որ իբր թէ կրօնները “ընդաճել„ կուտայ, որպէս զի լաւն ընդունին (?), կեղծաւորութեամբ շահելու համար քրիստոնեաները՝ թոյլ կուտայ արձակ համարձակ պաշտօն կատարելու բանակին մէջ: Խոստում, պատիւ, գանձ՝ Յազկերտին զէնքերն են ամէնէն անարգները որսալու. սով բոլոր հպատակ ազգերուն ցեղային ազնուականութեան աստիճաններն անպատուուեցան: Բայց Յազկերտ “առաւել ընդ Հայոց աշխարհին մարտնչէր„, մանաւանդ նախարարներուն դէմ: Հայք ամէնէն աւելի ջերմ քրիստոնեաներ էին. արծաթ, ոսկի,

ագարակ, մեծ մեծ գեղեր, պատիւ, իշխանութիւն, "անոտի յոյս" (թագաւորութիւն) թէ կու տար եւ թէ կը խոստանար. այս ընթացքով կը շարունակէ մինչեւ 448ի վերջերը: Յազկերտ դիտելով որ իր կեղծաւոր թոյլտուութիւնը իրական ծաւալում մը կու տայ քրիստոնէութեան, "որ օր քան զօր յորդեալ տարածանէր ընդ ամենայն կողմանս հեռաւոր ճանապարհին ընդ որ ինքն անցանէր", բոլորովին հակառակ ընթացքի մը հետեւեցաւ. յայտնապէս հրամայեց իր բոլոր հպատակ ազգերուն "ի մեծի կարաւանին" թողուլ "մոլար" օրէնքը՝ (քրիստոնէութիւնը) եւ դառնալ մոգութեան. Նոյն հրամանը դեսպաններ պետութեան ամէն անկիւնը կը հասցնեն:

449ին սկիզբը (ամառ) կը կրկնուի Քուշանաց վրայ յարձակումը. երրորդ յաղթութիւնն է այս Յազկերտին. մոգերը դարձեալ կը քաջալերեն զինքն, ինչպէս յառաջ, եւ իբր աստուածներուն պատգամը խորհուրդ կու տան քրիստոնէութիւնը ջնջելու: Յազկերտ բանակին մէջ կը փակէ սպրուձին (Հայոց Վրաց եւ Աղուանից), կը կտրէ ամէն հաղորդակցութիւն, միայն դուրսէն եկողներ ներս կ'առնուին: Բանակը կը բողոքէ թէ անիրաւութիւն մ'էր այդ, որովհետեւ իրենք բնաւ չեն թերացած "յարքունի վաստակս": Յազկերտ կը խստացրնէ իր հրամանները. սարսափով կ'ուզէ զանոնք ընկճել, տանջանքներ ձեռք կ'առնուին սկսելով "ի բուն աւագացն": Արտասովոր խնճոյք մը կը սարքէ. քրիստոնեայ զինուորականք կը պատուուին գահերով. լաւ ընդունելութիւն մը կեղծելով Յազկերտ կ'ուզէ հրաւիրեալները զոհեալ միս ուտելու հաւանեցրնել. յանձն չեն առներ. սովորական կերակուրներու հրաման կը տրուի. սեղանին խրախճանքը տաքցած էր գինիով: Ընթրիքէն յետոյ հրաւիրեալներէն ոմանք կ'արգելուին հոն շղթաներու եւ խիստ հսկողութեան մը տակ. այն

Երկու օրուան եւ երեք գիշերուան հարուածները այնքան խիստ եւ այնքան "անարժան" են, որ Պատմագիրը զանց կ'ընէ — "զոր եւ ոչ ընդ գրով իսկ արժանի համարեցաք արկանել": Ցազկերտ կը շարունակէ. գունդեր կը ղրկէ հեռի եւ անապատ վայրեր պատերազմի համար. հոն շատեր կը մեռնին, զինուորական թոշակներ կը նուազին, քաղց ու ծարաւ կը տանջեն զանոնք եւ ձմերոց կը նշանակուին դժնեայ տեղեր: Քրիստոնեայք չեն վհատիր. որչափ խիստ կերպով կ'անարգուին, այնքան կը քաջալերուին "եւ աշխարայ զպաշտօնն ունէին եւ բազմացուցանէին". հեթանոսք իսկ կը զգածուին այս պատկերին հանդէպ:

Բայց անտանելի եղած էր ալ Հայոց զինուորական վիճակը. "Այնպիսի պատուական զինուորութիւն հասեալ էր ի չարաչուք անարգութիւն եւ Հայրենի ազատութիւնն՝ չարաչար կայր ի ծառայութեան մարդախոշոշ բռնաւորին": Ցազկերտ ամէն բան, ամէն "վաստակ" մոռցած է. իրեն ազգականի չափ մօտ եղողներն իսկ ամէնէն աւելի կը "դատէր": Ատոնցմով գոհ չեղաւ Ցազկերտ. Դենշապուհ անուն գործակալ մը կը ղրկէ ի Հայս (449). սա իբր թէ այրուձիոյ եւ հարկերու նկատմամբ բարեկարգութիւններ գործադրելու կու գայ Շահին կողմէն: Դենշապուհ կը սկսի բարեկարգութիւններու. Եկեղեցին, վանքերը իրենց պաշտօնէութեամբ հարկի կ'ենթարկէ. հարկերը (մուտք, սակ, բաժ, հասք) կը շատցընէ. լեռներու, դաշտերու, անտառներու տուրքերը կը ծանրացընէ. Նախարարները իրարու դէմ կը գրգռէ. երկրի հայ հազարապետին (= վերակացու) տեղ, պարսիկ մը կը հաստատէ. Հայ դատարանը մոգպետի մը կը յանձնէ (այսինքն՝ կը ջնջէ եպիսկոպոսարաններու դատարանը): Պատմագիրն արտայայտիչ գրչով մը կը նկարագրէ այս բոլոր խժդժութիւնները: Ցազկերտ այս միջոցին ալ ձախողումովը զայրացած՝ կը հրամայէ "մոգաց

եւ մոգպետաց նամակ մի գրել»: Պատմագիրը պատճէն մ'ալ հոս կը դնէ, ուր կը բացատրուի դենիմազդեցի սկզբունքները, կը ջատագովուի մոգերու վարդապետութիւնը. քրիստոնէութիւնը կը պախարակուի իբր անյարմար ապրելու պայմաններուն՝ իրենց ըմբռնումով. մանաւանդ եկեղեցականներու դէմ անարգանք մը, որոնք իբր թէ կը մոլորեցընեն ժողովուրդը: Դիտելու արժանի է պատճէնին սա հատուածը. «Այլ ես ոչ կամեցայ զամենայն բատ մասանց ընդ գրով արկանել առ ձեզ». պատճէնը կը վերջանայ սապէս «Արդ երկու իրք կան առաջի ձեր. կամ արարէք բան առ բան նամակիդ պատասխանի եւ կամ արիք ի դուռն եկայք, յանդիման լերուք մեծի հրապարակին» — պատճէնը կեղծ է. տե՛ս գլ. Ը.:

Հայք անմիջապէս կը պատասխանեն ժողով մը գումարելով Արտաշատում, Այրարատի Յովսէփ եպիսկոպոսի — Կաթողիկոս — նախագահութեամբ (450 ձմերան վերջերը). ժողովին կը մասնակցին մեծամեծ նախարարք, երիցունք, եպիսկոպոսք, քորեպիսկոպոսք, որոց 17ը յականէ յանուանէ կը յիշուին: Խիստ գրուած մըն է Միհր Ներսեհին ուղղուած նամակը. մանրամասնաբար կը քննադատուի հոն դենիմազդեզը. քրիստոնէութիւնը վարդապետական ոճով կը ջատագովուի նոյնչափ մանրամասնութեամբ կամ «բան առ բան»: — Այնպիսի կէտեր կան սակայն, որոնք թէեւ ճիշդ, բայց «բան առ բան» պատասխանը չեն իրենց ղրկուած պատճէնին —: Նամակին եզրակացութիւնն է. «Ի քէն տանջանք եւ ի մէնջ յանձնառութիւնք. սուր քո եւ պարանոցք մեր»: Ժողովականները կ'երդնուն հաստատուն մնալ «ի սէրն մեծի հաւանութեան»:

Նամակին ընթերցումը «յարքունիս, ի մեծի խոնաստանին յանդիման ամենայն բազմութեան կարաւանին», զայրոյթ եւ զարմացում կը դրդէ. նամակին [illegible] աւելի համարձակ

լեզուն է որ կը զարմացընէ։ Մեծ հազարապետն՝ Միհր Ներսեհ՝ (ձեռն տուողեալ) եւ մոգպետը կը գրգռեն Յազկերտը, որ "տիրաբար հրաման տայ ի ներքս„ հրովարտակ մ'ալ գրելու Հայոց, անմիջապէս Դուռը կանչելու համար։ — Պէտք է դիտել՝ որ այս հրովարտակին պատճէնը չդներ պատմագիրը. միայն դիտել կու տայ՝ թէ սովորականէն դուրս ղու-րաքին խօսքերով զինուած էր այդ —։ Յականէ յանուանէ Դուռը կը կանչուին Սիւնեաց, Արծրունեաց, Ռշտունեաց, Խորխոռունեաց, Մամիկոնէից, Մոկաց, Ապահունեաց, Վահեւունեաց, Անձեւացեաց նախարարները. "համագունդ„ չեն երթար, այլ "ի ձեռն Յովսեփու եպիսկոպոսի նովին ուխտիւ հաստատեալ՝ խաղալին գնային յիւրաքանչիւր տեղեաց ի դուռն արքունի„։

450ի Աւագ շաբթուն մէջ (Ապրիլ 15 ծրագալոյց) կը ներկայանան "մեծի թագաւորին„։ Յազկերտ այս անգամ ընդունելութեան պաշտօնական ձեւակերպութիւնները զանց կ'ընէ, կը մանչէ, կ'երդնու "յարեգակն ի մեծ աստուածն„, որ թող պիտի չտայ առանց իր հրամանները կատարել տալու։ Նախարարք ի զուր կը բողոքեն ու կը բացատրեն թէ Շապուհի (Գ) ժամանակ (383 – 388), իրենց հարց վայելած ազատութեան օրէնօք է՝ որ իրենք ալ կը շարժին. ի՞նչ է իրենց յանցանքը. ապահարկութեան ջնջումով արքունի գանձն աւելի ճոխացած էր. զինուորական քաջութիւն աւելի լաւ կը ցուցընեն Յազկերտին — "բայց թերեւս քեզ լաւագոյն քան զառաջնոցն — ի՞նչ է իրենց յանցանքը. "Եթէ օրէնքն մեր (քրիստոնէութիւն) [illegible]„։ Յազկերտ զայրոյթով կը պատասխանէ. Հայոց աշխարհին հարկերը [illegible] կը համարի իր գանձին, քանի որ մոլորած են "ի ճշմարիտ օրինաց„, եւ Դենիմազդեզի պատուէրները չեն կատարեր։ Յազկերտ կը բռնադատէ. Նախարարք կը պնդատին. Նա իր եր-

դումները կը կրկնէ, կը սպառնայ "չարաչար կապանօք ի Սակաստան" աքսորել զանոնք, կործանել Հայոց աշխարհը, իսկ անոնց զաւակները Խուժաստան նետել: Անարգելով դուրս կը վռնտէ զանոնք իր ներկայութենէն: Նախարարք յուսահատ վիճակ մ'ունին. Յազկերտի ներքին խորհրդակիցներէն մին, որ գաղտնապէս մկրտուած էր, տեսնելով թէ յիրաւի աքսորի պատրաստութիւններ կը տեսնուին, խորհուրդ կու տայ "սակաւուց ի նոցանէ" առ երեսս յանձնառու ըլլալ: Այս միջոցին է որ Քուշանաց յարձակումներուն լուրը կը հասնի Յազկերտին. Նախարարք իբր յարմար առիթէ մը զօրացած՝ կը յայտնեն իրենց պատրաստակամութիւնը ուրացութեան: Յազկերտի ուրախութեան չափ չկայ. առատ առատ պարգեւներով կը քաջալերէ զանոնք. շքեղ յուղարկում մը կը սարքէ անմիջապէս. կարաւանին կ'ընկերանան բազում այրուձի եւ եօթն հարիւրէ աւելի վարդապետներ (Destour). Յազկերտ կը պատուիրէ՝ որ մինչեւ իր Քուշանաց պատերազմէն վերադարձը, ամէն ինչ իր ուզածին պէս գործադրուած ըլլայ: Յազկերտ իր յաջողութիւնը կ'աւետէ ամէն կողմ: Իսկ "խոհերականք" (մոգեր) կը կարծեն հանգիստ գտնել թէ Հայոց աշխարհին եւ թէ բոլոր քրիստոնեայ երկիրներու մէջ: Հայաստանն աւելի եւս կը հրապուրէ սակայն, անոնց ընչաքաղցութիւնը: Վեցերորդ ամիսը (Շաթվայրով) կամ "ի Նաւասարդէ Նաւասարդ" (450 Օգոստոս 6էն մինչեւ 451 Օգոստոս 5) ժամանակ կ'որոշեն դենիմազդէզը հաստատելու Հայաստանի մէջ. ամէն կողմ խիստ հրամաններ կ'արձակուին մազդեզական հրահանգներով:

§ Երրորդ՝ Միաբանութիւն ուխտին Եկեղեցւոյ:

Պատմագիրը փոքրիկ յառաջաբանով մը կը սկսի այս գլուխը. իր խօսքերը կ'ուղղէ անոր, որուն խնդրանքով ձեռնարկած էր պատմագրելու: Հայ

գունդին գլխէն անցած բոլոր չարիքը չը կրնար գրել. “փոքր ի շատէ„ պիտի գրէ. Հոս ալ Պատմագիրը իբր ականատես կը ներկայացընէ ինք զինք։

Հայոց Նախարարներուն ուրացումը գէշ կ'ազդէ բանակին մէջ գտնուած ուրիշ քրիստոնեայ ազգերու. Ջերմեռանդ Հայուն այս կերպով նուաճումը լքում կը բերէ անոնց վրայ, այնպէս որ բացարձակ յանդիմանութիւններ իսկ ընելու կը յանդգնին. Նախարարք կը յուզուին. չեն կրնար սակայն իրենց գաղտնիքը հրապարակել. Հեղձամղձուկ վիճակի մը կը մատնուին։ Բանակի մէջ գտնուող “քահանայք„ “առ չժուժալ սրտին բարկութեան„ կը բաժնուին Նախարարներէն եւ շուտով գուժկան կը ղրկեն Հայոց աշխարհը։ Եպիսկոպոսք կ'ողբան այս վիճակը. անմիջապէս քորեպիսկոպոսներ հանելով երկրին ամէն կողմը կը զինեն ժողովուրդը. Նոյն իսկ կանայք եւ միայնակեացք իսկ կը մտնեն այն պատրաստութեան մէջ՝ երբ Հայոց գունդը մոգերով միասին չորրորդ ամսին մէջ (Տիր ամիսը Պարսից. — մերձաւորաբար Մայիս 29ին) կը հասնի Անգղ գիւղաքաղաքը. եւ 25 օր յետոյ մոգպետն՝ Կիրակի օր մը (450 Յունիս 25) Անգղի եկեղեցին գրաւելու համար կը յարձակի. Ղեւոնդ Երէց հոն պատրաստ իւր խումբով՝ վիրգերով կը ջարդեն մոգերու գլուխը. մոգպետն հազիւ կը պրծի՝ իւր ձեռնարկին մէջ յուսահատ։ Պատմագիրն հոս՝ պատմական խորհրդածութիւն մը կը դնէ մոգպետին բերանը՝ քրիստոնէութեան ծաւալումին եւ Շապուհի (Բ) հալածանքներուն նկատմամբ։ Մոգպետ՝ իւր խօսքը Մարզպանին (Վասակ) ուղղելով խստիւ կը մեղադրէ զանի իբր մեղսակից իւր կրած վնասին։ Վասակ կը յորդորէ Մոգպետը որ համբերէ եւ իւր խորհրդովը շարժի. նա Սիւնեաց գունդերով կ'օգնէ Մոգպետին։ Ա՛լ մարզպանն է որ իւր բոլոր հնարամտութիւնը կը թափէ. հին

Հեթանոսական բարքերու վերազարթում կու տայ. կաշառ, պատիւ իր զէնքերն են։ Եպիսկոպոսք Վասակին վիճակը կշռելով բանակը երկուքի կը բաժնեն եւ Հրամանատարութիւնը կը յանձնեն Սպարապետին (Վարդան Մամիկոնեանի)։ Վասակ՝ մոգերու ամէն դիւրութիւն կու տայ. “պղծագործ խառնակութիւնը„ կը շատնայ երկրին մէջ. եկեղեցիներ իսկ կը բռնաբարուին։ Եպիսկոպոսք՝ Սպարապետին հետ միացած կը պատրաստուին նոր յարձակումի։ Նախարար մը (Զանդաղան) կը քարկոծուի հոն՝ Սպարապետի ապարանքում՝ (Շահապիվան) իբր անհաւան։ Գունդն երեք մասի վերածելով ամէն կողմէ յանկարծահաս ջարդ մը կու տան արքունի բանակին. Մարզպանը կը ձերբակալուի. բայց երդումով ազատ կը թողուի։ Այս յաջողութիւնը կը զօրացնէ Հայերը, եւ կը վճռեն Քրիստոսի պէս “արեամբ նորոգել զնոյնս„։ Քանզի հայր մեր՝ զմեր Աւետարանն գիտեմք. եւ մայր՝ զառաքելական եկեղեցւոյ կաթողիկէ. մի՛ ոք չար անջրպետ ի մէջ անկեալ՝ զմեզ քակեսցէ ի միմեանց„։ Այն ուխտը՝ հաւասարութիւն մը, զօրաւոր միաբանութիւն մը կը հաստատէ ժողովրդեան մէջ. խուռն յարձակումով մը անմիջապէս կը գրաւեն Պարսից ձեռք անցած բերդերն ու աւանները. ատրուշաններ եւ մոգերու բնակարաններ կը քանդուին. երկիրը ոգեւորուած է. Ատրպատական ծանր յարձակում մը կը կրէ սահմանակից Հայերէն “առանց հրամանի ի զօրացն Հայոց„. ամէն կողմ յաջող շարժում մը կայ. “Եւ այլ մեծամեծ աջողութիւնք կատարէին ի ձեռն զօրականին„... “Եւ ամենայն ողայք աշխարհին իբրեւ զարս պատերազմողս խիզախէին„։ Հայք այս կրակոտ վիճակին մէջ էին երբ Աղուանք իրենց օգնութեան կը դիմեն. Հոն ալ մնած էր երեք հարիւր մոգերու գունդ մը. Հայք կը քաջալերեն իրենց դրացին եւ օգնութիւն կը խոստանան։

Հայք օգնելու համար օգնութեան կը կարօտին. կը դիմեն Թէոդոսին (Բ) պաշտօնական նամակով եւ պատգամաւորութեամբ։ Պատմագիրը՝ իբր պատճէն — ոգէտ գրչի արդիւնք — գրուած մը դրած է. նամակը կը տանի Ատոմ՝ Գնունեաց նախարարը. իբր թէ Հայք այն նամակով իրենց վիճակը կը բացատրեն եւ նախկին դաշնակցական ձեռնտուութիւնները յիշեցնելով՝ օգնութիւն կը խնդրեն։

Թէոդոս երկար քննութիւններէ յետոյ կը հաւանի, բայց մահը վրայ կը հասնի (450 Յուլիս 29)։ Իւր յաջորդը Մարկիանոս՝ Անատոլի եւ Եփլալիոսի եւ "վասն մարմնական խաղաղութեան" (Յազկերտ Բ.ի եւ Թէոդոս Բ.ի դաշինքին կ'ակնարկուի, որ հաստատուեցաւ նոյն ինքն Անատոլի ձեռքով) չուզեր օգնել քրիստոնէից, այլ՝ կը միանայ Պարսից հետ։

Եպիսկոպոսք չեն յուսահատիր. կը ժողվեն իրենց ոյժը, կը քաջալերեն. բանակին երեք գունդի վերածելով՝ կարող ձեռքերու կը յանձնեն. մին Ներշապուհի հրամանատարութեամբ կը ղրկուի Ատրպատականի սահմանները. երկրորդ գունդով Վարդան Աղուանից օգնութեան կը հասնի. երրորդը Վասակին ձեռքը կը մնայ, որ իւր կողմը կը շահի ուրիշ նախարարութիւններ ալ եւ փոխանակ "ընդ ճապուկ" Վարդանին հետ միանալու՝ կը քաշուի իւր երկիրը (Սիւնիք) եւ անկից Սեբուխտին (Ճորայ մարզպանին) կը մատնէ Վարդանը եւ նախապէս կարգադրուած զինուորական ծրագիրները։ Սեբուխտ կը հասնի Վարդանին ետեւէն մինչեւ Աղուանից ձմերոցը (Խաղխաղի մէջ). յարձակումը Վարդան կ'ընէ առաջին անգամ եւ Արշաւիրի օգնութեամբ կը հալածէ Պարսից գունդը։ Վարդանանք թեթեւ կոտորածով մը կ'ազատեն Աղուանից երկիրը — "Սրբէին զտեղիս յամենայն պղծագործ զօհիցն, եւ փրկեալ ազատէին զեկեղեցիսն յանհնա-

րին նեղութենէն„։ Այս յաղթութենէն անմիջապէս յետոյ՝ Աղուանից փախստականները կու գան կը միանան Հայոց, կը յարձակին Հոնաց պահակին (Ճորայ) վրայ, կը գրաւեն ու կը քանդեն զայն, եւ յատուկ դեսպաններ ղրկելով բոլոր "բարբարոս„ ազգերը (լեռնցիները) դաշինքով ի մի կը ձուլեն։

Վարդան Աղուանից մէջ այդ կարգադրութիւնները կ'ընէր երբ Վասակի դրժումին եւ աւերածներուն գոյժն առաւ. երեսուն օր յետոյ (450 Նոյ.՝ ձմռ՝) ողջ առողջ հայրենի աշխարհին սահմանները կը հասնի Վարդան։ Վասակ երբ կը լսէ Վարդանի քաջութիւնները Աղուանից մէջ եւ կնքած դաշնակցութիւնը, կը փախչի՝ թողլով իւր գերած գերփած կողոպուտները։

Ձմեռ տիրած է այլ. Վարդան կը ցրուէ բանակը. միայն գործակիցներ պահելով իւր մօտ Աւագ Նախարարներէն, որոնց օգնութեամբ կը յարձակի վասակեանց վրայ՝ Սիւնեաց երկրին մէջ. "Եւ այսպէս է ինձ արկանել զնա եւ զամենայն զօրսն որ ընդ նմա էր. զի չէր եւ ոչինչ ծառայութիւն առ ոմայն վտանգի անխտիր տարէին„։ Շատ ծանր է Սիւնեաց կրած հարուածը։

Մէկ կողմէ եպիսկոպոսունք առ հասարակ այս յաջողութիւնը տօնելու համար կը հրամայեն "զողջոյն Քաղոց ամիսն„ (450 Դեկտ. 4էն մինչեւ 451 Յուն. 2) կրօնական պատրաստութեամբ անցնել, "եւ զտօն պատերազմողացն յաղթութեան խառնել ի սուրբ Տօն Յայտնութեան Քրիստոսի„ (451 Յուն. 6. Արաց 4. ՇՒ), Բիւզանդիոնի եկեղեցիներուն ալ կը գրեն անոնց աղօթքը խնդրելով։ Միւս կողմէ Նախարարք կ'ուզեն իրաց վիճակը տեղեկացընել Դրան. Պարսիկ կապեալներէն մէկուն կը ցուցընեն "զամենայն վնասն որ եղեւ, կամ աշխարհաց աւերելն, կամ զօրացն արքունի հարկանելն, եւ կամ որ այլ իրք առաջի լինելոց էին„. ամէն կողմէ ամբաստանութիւն կը ծանրացընեն

Վասակի վրայ՝ թէ "որպէս Հայոց բանիւ խաբեաց զԹագաւորն, յանձն առնուլ զմոգութիւն, իբրեւ չէր ուրուք ընդ նմա բանս եդեալ, նա յանձնէ սուտակապաս լինէր„ ։ Պարսիկը կը ղրկէն Դուռը, բայց "Վասակայ գուժկանքն յառաջագոյն հասեալ էին„ արդէն ։ Պարսկի տեղեկութիւններն սակայն աւելի ծանրակշիռ են. Յազկերտ ամէն ինչ սուգելէ յետոյ, "զամենայն վնաս զիւր գործոյն զխորհրդակցօքն արկանէր„, "մանաւանդ զի յարեւելից (Քուշանաց) պատերազմէն կորակոր՝ եւ ոչ բարձրագլուխ էր դարձեալ„ ։ Յազկերտ կը զղջայ, կը դադրի "յանդուգն յարձակմանէն„ եւ կը լռեցնէ "զմոլեգնաբար գոչումն„ ։ Կը սկսի դրուատել քրիստոնէութիւնն ու քրիստոնեաները՝ թէ "որպէս յարգեալ իսկ էին նոքա առ նախնեօքն մերովք, զոր եւ ինքն իսկ յիշեմ առաջին իմով որ նստէր ի մեծ գահոյս յայսմ (Վռամ-Գոռ Ե), թէ ինչ ազատութիւն կը վայելէին հայ քրիստոնեայք եւ եպիսկոպոսունք՝ արքունեաց մէջ ։ Աւագանին կ'ամչնայ, մանաւանդ մոգերն ու մոգպետը չեն համարձակիր Յազկերտին բան մ'ըսել. միայն "սակաւք ի նոցանէ զմիտս հաճելով„, այսինքն՝ արդարացնելով Յազկերտին զղջումը, խորհուրդ կու տան համբերել. "Թողացո մարդկանդ անդրէն զքրիստոնէութիւն եւ դրօք զապստամբսն ածցես ի հնազանդութիւն„ ։ Յազկերտ կը հաճի, ապա կը հռչակէ քրիստոնէութիւնը. Նոյն իսկ ուրացեալներուն համար "հրամայէր թագաւորն՝ զի որոյն կալցին եւ պաշտեսցին յեկեղեցին իւրեանց„ ։ Նախարարք աւելի կը պատուուին արքունիքում, գահերը նորէն կը շնորհուին եւ դադրած ռոճիկները կը ստանան, բանտարկեալներ ազատ կ'արձակուին. այս ամէնը "գրէր եւ ցուցանէր յերկրին Հայոց եւ ի բազում յայլ աշխարհս„ ։ Յազկերտ՝ երբ մէկ կողմէ այսպէս ընդհանուր ներրում կը շնորհէ քրիստոնեայ հպատակ ազգերու,

միւս կողմէ հասկանալով՝ թէ Մարկիանոս պիտի չօգնէ Հայոց «դարձեալ անդրէն ի նոյն յառաջին կարծիս մոլորութեան շրջեցաւ»։

Բայց Հայք արդէն չէին ուզեր հաւատալ Յազկերտի երկդիմի արարքներուն. «երկիցս եւ երիցս» փորձած էին զայն. ինչպէս կրնային հաւատալ՝ քանի որ Պարսկաստանի եկեղեցիներու մասին ոեւէ «բարեգործութիւն» իսկ չէին տեսած։ Հայք դարձեալ կ'երդնուն հաստատուն մնալ իրենց դիմադրութեան մէջ։

Յազկերտ անճարացած իր բովանդակ ձեռնարկներուն մէջ՝ նոր յարձակումի հրաման կու տայ Միհրներսեհին։ Պատմագիրն այս Մոգպետ-Հազարապետին նկարագիրը բացատրելու համար իր ամէնէն զօրեղ բացատրութիւններն ու դարձուածները կը գործածէ ամէն անգամ երբ կը ստիպուի անոր անունը կամ գործերը յիշատակել։ Միհրներսեհ, որուն «ոչ միայն մեծամեծք եւ փոքունք, այլեւ ինքն թագաւորն հրամանի նորա անսայր», կու գայ ի Փայտակարան եւ կը սկսի իր պատրաստութիւններուն։

## § Չորրորդ՝ Երկպառակութիւն ոմանց յամանե-ղոց ի նմին ուխտէ:

Պատմագիրը դարձեալ ականատեսի դիրքով մը կը սկսի նկարագրել ներքին երկպառակութեան պատճառած աղէտքը. բայց վիշտ մ'ունի. իր գրիչը յառաջ չերթար. ակամայ կը յառաջէ։

Միհրներսեհ իր մօտ կը կանչէ Հայոց Մարզպանը, թէեւ «ի ներքոյ յոյժ դարովէր զնա, այլ արտաքին դիմօք մեծարեաց զնա»։ Վասակ կ'աշխատի իր մասին Դուռը բողոքուած ամբաստանութիւններէն ինք զինք արդարացնել։ Միհրներսեհ կ'ուրախանայ մարզպանին ուխտանենգութեան հա-

մար. անոր իւր ձեռնհասութենէն վեր խոստումներ կ՚ընէ (այսինքն՝ թագաւորական թագ). միայն թէ «հնարս իրացն խնդրեսցէ թէ որպէս քակտեսցի միաբանութիւն ուխտին Հայոց»:

Պատմագիրը Վասակին վիճակն ու ընթացքը կը նկարագրէ թէ ինչպէս կրցաւ զօրաւոր խումբ մը կազմել՝ թէ եկեղեցականներէն, եւ «զիւր բոլոր աշխարհն (Սիւնիք) ապստամբեցոյց յուրացութիւն»: Մարզպանին հնարքը, խորագիտութիւնը, սպառնալիքը, ողոքումը ճարտարօրէն կը պատկերացնէ: Վասակ Հայոց արտաքին օգնութեան բոլոր դռներն կը փակէ հնարամիտ խաբէութիւններով: Նոյն իսկ կը յաջողի Յոյները ձեռնթափ ընել՝ Ստորին Հայոց սպարապետ Մամիկոնեան Վասակի մը ձեռքով: — «Եգիտ այս Վասակ զայն Վասակն իւր գործակից ի մեծամեծ չարիսն, զոր միաբանեցին երկոքեանն»: — «Մինչեւ սուրբ եպիսկոպոսացն (Յունաց) զմիտսն եւս ուծացոյց ի նոցանէ, եւ զամենայն զօրսն Յունաց յերկբայս արար յուխտէն»: Բաց ի Հոներէն, որք դաշնակցած չէին Վարդանի հետ (Եղիշէ էջ 60) բոլոր լեռնցի եւ դաշտեցի ազգերն իւր կողմը կը գրաւէ: Վասակ իւր բոլոր պատրաստութիւններուն տեղեկագիրը օրը օրին կը հասցնէ Միհրներսեհին, «որ զօղեալ եւ թաքուցեալ էր ի քաղաքն Փայտակարան». Վասակ ի Փայտակարան կը հրաւիրուի իւր խումբով եւ կը վարձատրուի խոստումներով: Վասակ քաջալերուած կը բազմապատկէ իւր գործունէութեան եռանդը. նոյն իսկ չխղճար իւր երկու եղբօրորդիները (Բաբգէն եւ Բաբիկ), որք Վարդանի կուսակից էին, մատնել. «գրեաց եւ եցոյց վասն նոցա յարքունիս, եւ էառ իշխանութիւն ի վերայ կենաց նոցա, մերժեաց եւ եհան զնոսա յաշխարհէն զի մի՛ այլ դարձցին անդրէն»: Միայնակեացներն ալ հանգիստ չթողուց. ըրաւ ինչ որ կրնար. երկրին բոլոր գաղտնիքը պարզեց Պարսից առջեւ — «Եւ զոր

ինչ ոչ գիտէին անօրէն հեթանոսքն՝ իմացուցանէր նոցա„ ։

Միհրներսեհի բոլոր յոյսը Մարզպանի վրայ կեդրոնացած էր, երբ վճռական վայրկեանը կը մօտենար։ Հայք՝ Վարդանի հրամանատարութեամբ պատրաստուած էին. Միհրներսեհ՝ սոսկումով կը լսէ թէ “[illegible]„ հայեր զինուած են իրեն դէմ. Վարդանի բանակին եւ ռազմագիտական ամէն հնարքներուն, ամէն շարժումներուն կը հետաքրքրուի Միհրներսեհ, եւ իր բանակը յանձնելով Մուշկան Նիւսալաւուրտին կը վերադառնայ “յերկիրն արեւելից„ (ի Տիզբոն), պատմելու համար Յազկերտին “զիւր հնարաւոր իմաստութիւնն եւ զՎասակայ խաբեբայ պատրանսըն հայթայթանացն„ եւայլն։ Յազկերտ զայրոյթով կը լսէ հազարապետին պատմութիւնը Վասակի նկատմամբ, եւ կ՚երդնու “եթէ ապրեսցի անօրէնն այն ի մեծ պատերազմէն, մեծաւ անարգանօք տամ ընկել նմա զբաժակն դառնութեան մահու„ ։

§ Հինգերորդ՝ Յարձակում Արեւելեայց:

Ըքեղ դրուագով մը կը սկսի Պատմագիրն, որ գրեթէ ամփոփումն է այս գլխին ։ կարծես կասկածող մը կայ իր դիմաց՝ որ Պատմագիրն ամէն եղանակին սկիզբն ուղղակի կամ անուղղակի դետեղ կու տայ թէ [illegible] է ինքն իր պատմածներուն ։

Պատմագիրը մեծն Վարդանի պատրաստութեան մասին այս տեղը մանրամասն տեղեկութիւն կու տայ ։ Սպարապետը՝ Արտաշատը կը նշանակէ իբր վայր զօրաժողովի. դասալիքներուն տեղը իւրայիններով կը լրացրնէ ։ Արծրունիք, Խորխոռունիք, Մամիկոնեանք, Պալունիք, Ամատունիք, Վահեւունիք, Դիմաքսեանք, Արշարունիք, Անձեւացիք, Գնթունիք, Գնունիք, Գաբեղեանք, Քաջբերունիք, Մանդակունիք, Ընձայեցիք, Սլկունիք,

Տաշրացիք, Սրուանձտեանք, Շահ խոռապետը, Քողեանք, Ակէացիք, Տպրատունիք, Ռշտունիք, “եւ ամենայն գործակալքն արքունի իւրաքանչիւր զօրօքն հանդերձ„՝ կը հասնին “ի դաշտն Արտազու, եւ լինէր հանդէս համարուն վաթսուն եւ վեց հազար այր՝ ընդ հեծեալ եւ ընդ հետեւակ„։ Հոն էր նաեւ Հայ եկեղեցականութիւնը, Յովսէփ Կաթողիկոսի եւ Ղեւոնդ Երէցի գլխաւորութեամբ։

Պատմագիրն այստեղ երկար ճառի պատճէն մը կը դնէ. Սպարապետն իւր բանակը ոգեւորելու համար ոչ միայն կը խօսի իւր եւ իւր ընկերակիցներուն յաջող փորձերը յիշեցնելով, այլ “եւ ըստ պատերազմական կարգին զքաջ արանց զյիշատակարանս երկրորդէր առաջի նոցա ... զքաջ նկարագիրն Մակաբայեցւոց ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն„։

Հայք պատրաստուած են արդէն, երբ Պարսից բանակը կը հասնի “ի Հեր եւ ի Զարեւանդ գաւառ„, որուն դէմ առաջին յարձակումը կը յանձնուի Ամատունեաց Առանձար Սեպուհին, որ “հազարօք երկու„, յանկարծական կոտորածով մը կը ցրուէ զայն։ Վասակ սարսափած Հայոց առաջին յաղթութենէն՝ դարձեալ կեղծաւորութեան հնարքին կը դիմէ շահելու համար։ Հայք չեն խաբուիր. Վասակի պատգամաւորներուն ներկայութեամբ Ղեւոնդ Երէց կը յորդորէ բանակը։ Սքանչելի Երէցին յորդորականը միանգամայն պատասխան պէտք է նկատել Վասակի պատգամաւորներուն, որչափ ալ Պատմագրին շարագրածն ըլլայ այն։ Ղեւոնդ գիշերուան մէջ կը խօսի եւ անմիջապէս Մկրտութեան եւ Հաղորդութեան խորհուրդները կը մատակարարուին։ Ամէն ոք խրախուսուած պատրաստ կը սպասէ կարմիր օրուան արշալոյսին։

§ Վեցերորդ՝ Ընդդիմանալն Հայոց պատերազմաւ:

Սովորական կերպով չսկսիր Պատմագիրն այս գլուխը. ոչ խորհրդածութիւն, ոչ ալ դրուագ մ'ունի։ Պատգամաւորութիւնք կը դադրին երկու բանակներու միջեւ. Վասակի հնարքներն ի դերեւ կ'ելլեն։ Մուշկան Նիւսալաւուրտ կը սկսի ճակատ յարդարել. բազմաթիւ փիղերով կ'ամրացընէ բանակին յառաջխաղաց մասը. նա ալ կը յորդորէ, կը խրախուսէ իր զօրքերը։ Պարսից Մատեան գունդը բերդի պէս ամրացած փիղերու մէջտեղ, ուրիշ ընտիր գունդերու հետ պատրաստուած է "ընդդէմ Հայոց զօրավարին„։

Արին Վարդան եւս ադին իր բանակը չորս գունդի վերածած՝ կարող եւ նշանաւոր ձեռքերու կը յանձնէ նիզակակից օգնականներով. Ճակատը կը յարդարուի "ընդ ամենայն եզերս դաշտին դէմ յանդիման Արեաց գնդին, առ ափն Տղմուտ գետոյն„։

Երկու բանակներ սաստկապէս կը բախին. Պատմագրին նկարագրութիւնը աքանչելի արտայայտութիւն մ'ունի։ Հայ այրուձիին անցքը Տղմուտի վրայէն եւ Վարդանի յարձակումը Մատեան գունդին վրայ՝ պատերազմի ամէնէն չէկ պարագան է։ Զօրավարին այսչափ յառաջացումը՝ Մուշկանին ընտիր առիթ մը կ'ընծայէ Հայոց բանակն ի մէջ փակելու իր յառաջամարտիկ գունդերով։ Վարդան "ոչ սակաւ նախճիրս„ կը գործէ այն վայրկեանին. իր արիական անշնչացումն աւելի եւս կը բորբոքէ իր գունդը. այնպէս որ "մինչեւ ի մուտս արեգականն անդադար լինէր գործ դառնութեանն„։

Գարնան ծաղկալից դաշտերուն վրայ ինկած վիրաւորներու, դիակներու պատկերները յատակ ցոլացումն են Պատմագրի գրչին։ Հայոց կորուստը մանրամասնաբար կը յիշուի, որ "միահամուռ լինի ամենայն հազար եւ երեսուն վեց այր„։ Մուշկան

Նիւսալաւուրտի կորուստն աւելի ծանր է, “Երբեք [illegible]„։ Այդ մեծ օրուան (451 Մայիս 26. Շբ.) պատերազմին ելքը յայտնի չէ. “Քանզի ոչ եթէ կողմ էր՝ որ յաղթեաց, եւ կողմ էր՝ որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս ելեալ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան„։ Հայք պատերազմէն յետոյ իրենց բերդերը կ'ապաստանին։ Պարսից զօրավարին վիշտը անթարգմանելի է՝ ոչ միայն իւր կրած “եօթն-պատիկ„ հարուածին, այլ մանաւանդ՝ պատերազմի մէջ ինկած ինն “մեծ պատուաւորներուն„ համար, “զորս յանուանէ գիտէր թագաւորն„։

Իսկ Վասակ, “որ զանձն իւր ի մէջ դազանացն թաքուցեալ ապրեցուցանէր„, լքուած իւր բոլոր ճարպիկութիւններուն մէջ, ալ չկրնար երդումներով կամ խոստումներով յուսադրել թէ իւր գործակից հայ նախարարներն եւ թէ ընդդիմադիր գունդերը։

§ Եօթներորդ՝ Երկարումն իրացն խռովութեան:

Մուշկան Նիւսալաւուրտ ա՛լ բերդերուն վրայ կը յարձակի. անմատչելի ամրութիւններ կը փճացրնեն իւր մնասելու ջանքը. Վասակի խորհրդով Հայոց երդումի ձեւերուն կ'ապաստանի. բերդին մէջ գտնուած քահանայք կը հաւանին. զօրականք չեն վստահիր Նիւսալաւուրտի։ Բայց անուն քաջ զօրական մը, բերդի պարսպին վրայէն, խիստ թշնամանքներ կը նետէ Վասակի երեսին, կ'ամբաստանէ զանի իբր պատասխանատու բոլոր մնասներուն։ Բայց, որուն թշնամանքը կ'արդարացրնեն երկու կողմէն ալ, գիշերուան մէջ կը թողու բերդն եւ ուրիշ տեղ մը կը քաշուի։ Ներս մնացողները բանի անձնատուր կ'ըլլան, որոնցմէ 212ը անմիջապէս կը նահատակուին։ Յովսէփ եւ Ղեւոնդ, որք հօն անձնատուրներուն մէջ էին “բազում ընկերակցօք իւրեանց„, կ'ամբաստանեն զՎասակ եւ Դրան կը բողոքեն.

Նիւսալաւուրտ կը հրամայէ զանոնք պահել “զգուշութեամբ, քանզի բողոք ի Դուռն կարդացին„: Իսկ զայլ քահանայսն արձակեցին յիւրաքանչիւր տեղիս, հրաման տուեալ վասն շինութեան եւ խաղաղութեան աշխարհին„:

“Այլ մարդիկն Հայոց„, անվստահ Յազկերտի յեղյեղուկ հրամաններուն, աւելի լաւ կը համարին լեռներու խոտաբուտ կեանքը՝ քան նկարուած պատշկամներու բնակութիւնը: Իսկ Խաղտեաց անլոյս երկիրը, Տմորեաց անմատչելի ամուրներն ու Արձախի թանձրախիտ անտառները՝ ապաստան կ'ընծայեն նախարարական գերդաստաններուն:

Վասակ դադար չունի. կը ստիպէ Նիւսալաւուրտը Պարսկաստանէն զօրք բերելու՝ ընկածներուն տեղը լեցընելու համար. Պարսից գունդը կը կազմուի “իբրեւ զառաջինն„ ու կը սկսին յառաջ խաղալ “ի միջոց աշխարհին„: Կապոյտ լեռնը անմատչելի է. դարձեալ ողոքանք եւ խոստում: Արշէն երեց վար կ'իջնէ “վասն երդմանցն„ քանի մ'ընկերներով. ասոնք շղթայի կը զարնուին եւ Մուշկան Վասակի խորհրդով ամէն կողմ կ'ապատակէ. Տմորեաց ամրականները քաջութեամբ կը դիմադրեն. Նոյնպէս Խաղտեաց քաջերը բուռն յարձակումով մը կը վտանգեն Պարսից դիրքը Տայոց ձորագաւառին մէջ. Վարդանի եղբայրն՝ Հմայեակ, որ այս յարձակումին կ'առաջնորդէր, կ'իյնայ հոն: Մուշկան կը մեղմացընէ իր ծայրայեղ ընթացքն եւ Դրան հրահանգներուն կը սպասէ, երբ սադին Արձախի ամրականները դաշնակից Հոներու օգնութեամբ կ'արշաւեն Պարսից սահմաններուն վրայ: Մուշկան այս դառն անակնկալին համար Վասակը կ'ամբաստանէ եւ իր գունդերը կը դարձընէ դէպ ի Տիզբոն, ուր “գրէր ցուցանէր յարքունիս զամենայն ստուգութեամբ, եւ զվնաս գործոյն արկանէր զուրացելովն„:

Յազկերտ լքուած իր ձեռնարկներուն մէջ՝ “յուզէր եւ քննէր զվրիպումն անհանճար գործոյն„.

Միհրներսեհ, տեղեակ ամէն բանի, խորհուրդ կու տայ ստոյգը բուն Հայոց գլխաւորներէն իմանալ։ Ցազկերտ կը հաւանի. Հայոց Մարզպանութիւնը կը յանձնուի Ատրորմիզդ պարսկին, "որոյ իշխանութիւնն խառն էր ընդ Հայոց աշխարհին եւ գործակից էր զօրավարին (Նիւսալաւուրտ) ի Նմին պատերազմի„։ — Մուշկան կը ղրկուի Հոներու վրայ, որք իբր դաշնակից Հայոց՝ երկիրներ աւերած էին. Ճորայ Պահակին կործանումն աւելի եւս կը տրտմեցընէ Ցազկերտը։ — Իսկ Վասակ "հանդերձ գլխաւոր քրիստոնէիւքն„ Դուռը կը կանչուին։

Ատրորմիզդ Հայաստան կու գայ, Հայ եկեղեցականներէն, մանաւանդ Ռշտունեաց Սահակ Եպիսկոպոսէն (իբր քաջ պարսկագէտ) կը տեղեկանայ իրաց վիճակին եւ ըստ այնմ կը տեղեկագրէ Դրան։

Վասակ շատ կանուխ կը հասնի ի Տիզբոն (451 Ամառ՝ Յուլիս-Օգոստոս 4) ինքզինք արդարացընելու, բայց ատեանը կը յետաձգուի մինչեւ եպիսկոպոսաց ժամանումը, որք հազիւ կը հասնին "յետ երկուց ամսոց եւ տասն աւուր„ (451ի վերջերը) "վասն զի կալանօք տանէին„։ Միհրներսեհ կը կազմէ ատեանը, բայց կը զգուշանայ մնաւել անոնց, "քանզի բազումք ի նախարարացն Հայոց դեռ եւս բռնացեալ ունէին զամուրս աշխարհին, եւ դեռեւս մարզպանն (Ատրորմիզդ) յերկիւղի էր„։ Ամէն ազատութիւն կը շնորհուի եպիսկոպոսներուն, "եւ առ ժամանակ մի„ Հայաստանի անդորրութիւնը կը պահպանուի։ Ատրորմիզդ արքունի հրամանը ճշդութեամբ կը գործադրէ, նոյն իսկ բռնի մոգացածները կը համոզէ "անդրէն ունել զքրիստոնէութիւն„ (Եղիշ. էջ 102. հմմտ. էջ 65)։ Նախարարք Դռնէն կրկին վստահութիւն պահանջելով Ատրորմիզդի ձեռքով՝ թէեւ կասկածոտ՝ կ'իջնեն ամուրներէն, ամէն ինչ կը յանձնեն մարզպանին, եւ իրենք կը դիմեն շուտով "ի ձմերոցն արքունի„։ Ատեանը

կը կազմուի հոն ձմերոցին մէջ (մինչեւ 452ի սկիզբը). դաւաճանութեան եղանակը մանրամասնաբար կը նկարագրէ Պատմագիրը. գլխաւոր ամբաստանողներն են Ատոմ Գնունի եւ Սահակ եպս. Ռշտունեաց: "[illegible]" կ'երկարի դաւաճանութիւնը. Վասակեանք կը դատապարտուին. Վասակ մասնաւորաբար կ'ամբաստանուի իր իսկ ազգականներէն իբր դաւաճան իր հօրեղբօր Վաղինակին: 12 օր դադարումէ մը վերջ եւ փառաւոր ընթրիքի մը ժամանակ, ուր ներկայ էր Վասակ իր նախարարական ճոխութեամբ, այնչափ ճոխ որ "շքեղ եւ երեւելի քան զամենեսեան երեւէր բազմութեանն", արքունի սենեկապան մը կը մերկացնէ զանի իր փառքերէն, որուն մէջ թագը միայն կը պակսէր: Արեւելեան խայտառակութեամբ կը նետուի "յայն գնդան, ուր կային մահապարտք ամենայն":

Նախարարք եւ հայ եկեղեցականութիւնը, թէեւ կապանքի մէջ, ուրախ են դատաստանի ելքին համար: Վասակի բանտի կեանքը շատ դառն է. արքունի բոլոր պաշտօնները իրմէ կը պահանջուին. ունեցածը յարքունիս գրաւուեցան. "Եւ յայն տեղի հասուցին, մինչեւ հարցանել նմա եթէ կայցէ՞ ինչ գանձ ի գերեզմանս նախնեացն մերոց, եւ եթէ գտեալ էր նորա, հանէր եւ տայր ընդ իր եւ ընդ ընտանեացն տուգանս, որպէս զի բազում մարդիկ իսկ չոգան ի տուժին":

Պատմագիրն իր պատմութեան այս եղանակը կը կնքէ Վասակի մահուան քստմնելի նկարագրութեամբ, եւ դիտել կու տայ թէ "Գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա, զի է կշտամբանաց յանդիմանութեան մեղաց նորա. զի ամենայն որ լուայ լուեալ գիտասցէ, նզովս ի վերայ արկցէ եւ մի՛ լիցի ցանկացող գործոց նորա":

§ Արտաքոյ Եռնն յեղանակին Ոսկերորդ:

Պատմագիրն իր պատմութեան թելը կտրած էր 452ին Վասակի դատապարտութեամբ, 454էն կը սկսի այս գլուխը: Երկու տարուան ընդհատն ա-ռանց դէպքի՞ անցաւ — հարկաւ ոչ, թէեւ կը լռէ պատմագիրը:

Յազկերտ "ի վեշտասաներորդ ամի տէրու-թեան„ (454) Քուշանաց դէմ նորէն պատերազմ կը բանայ. Վրկանէն Ապար աշխարհը կ'անցնի. հոն 'Նիւշապուհ քաղաքի դղեկին մէջ կը բանտարկէ նախարարները շղթայակապ: Միայն "զերկուս յե-րանելի կապելոցն (Սամուէլ եւ Աբրահամ) ընդ իւր խաղացոյց„: Յազկերտ այս անգամ ալ կը յաղ-թուի Հոնաց պատերազմին մէջ. Միհրներսեհ, որ "էր պատճառք ամենայն չարեացն„, Յազկերտի մղձկումը ամոքելու համար կը գրգռէ զանի բան-տարկեալներուն դէմ՝ թէ "որպէս նոքա ի բանտի անդ անիծանէին զքեզ„: Յազկերտ կը սկսի արիւն թափել, Սամուէլն ու Աբրահամը գաղտնապէս մեռցընելու հրաման կու տայ (Յուլիս 7 Գշ). իսկ Նիւշապուհի բանտարկեալները կը չարչարուին Ապար աշխարհի դենպետին եւ ծանօթ Դենշա-պուհի ձեռամբ: Դենպետ քառասուն օր խստիւ կը տանջէ բանտարկեալները. սոնց հաստատամտու-թիւնը հրաշալի երեւոյթներու մէջ՝ դենպետը հաւատքի կը բերէ. այս դէպքը (?) Պատմագրին ուզածին պէս ընդլայնելու նիւթ մ'է եղած: Դենշապուհ, որուն յանձնուած էր Նիւշապուհի բանտարկեալներուն չարչարանքը, այժմ կը սկսի վէճի մտնել քրիստոնէացած դենպետին հետ եւ Յազկերտի հրամանին համեմատ աքսորով կը պատժէ անոր հաստատամտութիւնը: Դենշապուհ ալ ա-րիւնոտ գործի կը սկսի. բանտարկեալները արդէն հեռացընել տուած էր Նիւշապահի բերդէն "երկո-տասան պարսիկ հրասախաւ„. գիշեր մը նոյնչափ

ալ հեռի եւ դժնդակ տեղ մը կը փոխադրուին։ Դենշապուհ իր երկու ընկերակիցներով կը հասնին այնտեղ, սաստիկ զգուշութիւն կ'ընեն սակայն որ իրենց հետքը չգիտուի։ Տանջանքի ժամանակ դահիճներէն մին՝ Խուժիկ՝ (= Խուժաստանցի) “ի զօրացն արքունի, որ ի ծածուկ ունէր զքրիստոնէութիւնն.,” գիշերանց նախարարներուն մէջ կը խառնուի. ոչ ոք կը հետաքրքրուի թէ ո՞վ է այն նորեկը։

Սարսափելի են ի գործ դրուած խժդժութիւնները։ Դենշապուհ պահ մը կը փորձէ անուշ լեզուով եկեղեցականներն որսալ. որովհետեւ երկրին շինութիւնը կամ կործանումը, նախարարներուն արձակումն անոնցմէ կախուած է։ Անոնք ո՛չ խոստումներուն կը վստահին եւ ո՛չ ալ սպառնալիքէն կը վախնան։ Սահակ եպս. Ռշտունեաց իբր թարգման (?) Ղեւոնդ Երէցի, կը խօսի վարդապետօրէն. Դենշապուհի ընկերակիցներէն Մովան՝ համոզել կը ջանայ նոյն ոճով. Սահակ պատճառաբանութեամբ կը պատասխանէ աշխարհածնական խնդիրներ շօշափելով (՞) եւ կը պնդէ իրենց հաստատամտութեան վրայ։ Դենշապուհ զայրացած՝ տանջանքի կը մատնէ Արշէն Երէցը՝ միւսները սարսափեցնելու համար, յետոյ գլխատել կու տայ։ Վիճաբանական ձեւով համոզելու դրութիւնը բաւական երկար կը տեւէ. գլխաւոր խօսողներն են Սահակ եւ Ղեւոնդ։ — Երբ Ղեւոնդ երէցին բերանը երկար ճառեր կը դնէ Պատմագիրն այս տեղ, կը մոռնայ՝ թէ յառաջ թարգմանով խօսել տուաւ։ Սահակ եպիսկոպոսին պարսկագիտութիւնը քանիցս շեշտուած է։

Դենշապուհ՝ ահաբեկած Սահակի ծանր բացատրութիւններէն՝ իր իսկ սուրով գետին կը ձգէ մեծ եպիսկոպոսին աջ թեւը, որ իր ընկերներուն ուղղած քաջալերական խօսքերուն հետ կը փչէ վերջին շունչը։ Դենշապուհ ալ կը դադրի համո-

գելէ, հրաման կը տրուի դահիճներուն. յիշուած է Յովսեփեանց կամ Ղեւոնդեանց Նահատակութիւնը (Աստղիկի ճիշդ հաշուով 453 Յուլիս 26 Կիր. իսկ Եղիշէի եւ Փարպեցու հաշուով 454 Յուլիս 25 Կիր.)։

Դենշապուհ եւ իր ընկերները՝ պահապաններ կը դնեն հոն անապատին մէջ, "ցաւուրս տասն կամ եւս աւելի մինչեւ կարաւանն արքունի անցեալ գնասցէ. զի մի՛ այլադենքն (՝քրիստոնեայք) եկեալ բառնայցեն զոսկերս դոցա„։ Բայց այն Խուժիկը, որ նախապէս նախարարաց խումբին մէջ մտաւ, պահապաններուն հետ հոն կը մնայ (?). պահապանք հրաշալի երեւոյթներէ սահմռկած կը փախչին. Խուժիկը կը սպասէ եւ անմիջապէս կը գտնէ "տասն այր, որոնց զչափ գիտէր զքրիստոնէութեանն„, կու գայ եւ սրբոց մարմինները քիչ մ'աւելի հեռու փոխադրելով կը մաքրեն ոսկրները, կը բերեն բանակն ու յետոյ "առ սակաւ սակաւ„ յայտնելով՝ կը նուիրեն կալուած նախարարներուն։

Այս դէպքերէն յետոյ նախարարք կ'արձակուին, եւ "հրովարտակք Թողութեան„ կը ղրկուին "յաշխարհն Հայոց„։ Պատմագիրն ականատեսի դեր մը կու տայ իրեն այս դէպքերում։

Պատմագիրը մասնաւոր գլուխ մ'ալ կը նուիրէ՝ "Գործեալ վասն խոստովանող աշակերտաց նոցանց„։ Խորէն եւ Աբրահամ դեռ "ի կապանս կային ի ներքս քաղաքին„ (Նիւշապուհ). ասոնք ուրիշ հինգ քրիստոնեաներու հետ կը տանջուին. Ղեւոնդի եւ Սահակի պէս երկար վիճաբանութիւններու կը մտնեն Դենշապուհի հետ։ Անյողդողդ աշակերտները կը պատժուին վայրագ եղանակաւ մը — "կտրեաց զնոցա ունչս եւ զականջս, եւ ետ տանել յԱսորեստան, զի կայցեն ի մշակութեան արքունի„։ Ասորեստանի մէջ ազատ կը թողուին։ "Հայոց խոս-

փոխանորդ, կը հանէին Շահուղ գաւառը (ի Բաբելոն). այն տաք կլիմային տակ կ'աշխատին իբր արքունի մշակ եւ զանազան քաղաքներէն տուրք ժողվելով կը հասցրնեն Ասորեստանի եւ Խուժաստանի քրիստոնեաներուն, կապուած Նախարարներուն. Խորէն խորշակահար կը վախճանի այն տաժանելի աշխատութեան մէջ:

Աբրահամ ալ մինակ կը շարունակէ այս մարդասիրական գործը մինչեւ 464[1]. սաստիկ համակրութիւնը կը վայելէ թէ՛ Նախարարներուն եւ թէ՛ տեղացի քրիստոնեաներուն, այնպէս որ Նախարարք դժուարաւ կը հաւանեցրնեն զինքն Հայաստան ղրկել. "զի ընդ մտանել նորա առ նոսա, ի նմա տեսցեն եւ զքաջ նահատակսն՝ որք կատարեցան սրով, ի նմա տեսցեն եւ զսուրբ կապանս չարչարանացն":

Աբրահամ կու գայ ի Հայս, յուզումով կ'ողջունուի համաշխարհիկ ցոյցերու մէջ: Պատմագրին նկարագրութիւնը էն սքանչելի էջերէն է իր գործին: Աբրահամի անձն ու ազդեցութիւնը հանդիսաւոր կերպով ցոլացուած է, թէեւ Պատմագիրն դիտել կու տայ թէ "Զոր եթէ կամիցի ոք ի կարգ արկանել, դժուարաւ կարասցէ ասել զվարս առաքինութեան նորա": Նոյն իսկ "Ցոյնք երանի եսուն վասն նորա աշխարհին Հայոց, եւ բազում բարբարոսք փութացան տեսանել զնա մարմնով":

Պատմագիրն նոր գլուխ մ'ալ կը բանայ՝ "Անուանք Նախարարացն, որք կամօք յօժարութեամբ վասն սիրոյն Քրիստոսի եդին զանձինս ի կապանս որքանէ" խորագրով:

Երեսուն հինգ նահատակուած Նախարարներու անունները կ'արձանագրէ յականէ յանուանէ, եւ կը հիանայ անոնց հաստատամտութեան վրայ, թէ ինչպէս Արեւելեան բոցակէզ աշխարհներում շղթայի

[1] Այսինքն մինչեւ Նախարարաց վերադարձը. Տես քիչ ետքը այս Գլխին վերջը:

տակ անսասան մնացին, "Հաց նեղութեան եւ ջուր կարօտանաց, խաւարարգել ի տուէ եւ անլոյս ի գիշերի, անվերարկուք եւ անանկողինք, գազանաբար գետնախշտիք լինէին ըլլան ամ է- ըլլց ամ-. (452—462)։

Միհրներսեհ վերջին առաջարկ մ'ալ կ'ընէ Հայ նախարարներուն, որոնց պատասխանը կ'ըլլայ՝ "Զինչ եղեւ է ի մտի յերամ վասն մեր կորուսեալ„։ Միհրներսեհ լեզուն կը փոխէ ալ. փոխանակ սպաննալու՝ կը գովէ անոնց հաստատամտութիւնը եւ կը սկսի "սէր արկանել ընդ նոսա", նոյն իսկ կը հաւանեցընէ Յազկերտը "զի թողութիւն արասցէ նոցա ի կապանացն իւրեանց„։ — Պատմագիրն իբր միջանկեալ կարեւոր տեղեկութիւն մը կու տայ Միհրներսեհի քաղաքական կեանքի վերջին տարիներու մասին. "Զի թէպէտ եւ փոխեցաւ նա ի գործոյ հազարապետութեան արքունի, եւ ի բազում իրս գտաւ մնասակար, ինքն իսկ յանձն իւր կրթէր զաւեր աշխարհին Հայոց, վասն որոյ եւ մեծաւ անարգանօք յուղարկեցաւ ի տուն իւր, սակայն զկապելոցն ոչ երբեք չարախօս կամէր լինել մինչեւ ցօր վախճանի կենաց իւրոց„։ —

Նախարարաց աքսորի վերջին շրջանը, ըստ Պատմագրին, շատ ազատ կ'անցնի. անոնք իրենց եկեղեցական պաշտամունքը համարձակ կը կատարեն, դահիճք սիրով կը վարուին. նոյն իսկ Շապուհ, Հրեւի իշխանը, որուն յանձնուած էին "ամենայն պատժաւորքն, մեծապէս գութ սիրոյ էարկ առ ամենեսեան„. Շապուհ կը միջնորդէ, ազատութեան հրաման կը հանէ, ռոճիկ կարգել կու տայ, "զի ընդ զօրս արքունի երթիցեն ի գործ պատերազմի„։ Նախարարք ամէն տեղ քաջութեան հռչակ կը ստանան, "մինչեւ գովութեան հրովարտակ վասն նոցա ի Դուռն տային„։

Թագաւորն, (ըստ Պատմագրին՝ Յազկերտ. նոյն իսկ ըստ Պատմագրի ժամանակագրութեան՝

Պերոզ 457) ուրախ իրեն հասած բարի վկայութիւններուն համար, անձամբ կը քաջալերէ եւ կը խոստանայ վերահաստատել զանոնք իրենց իշխանութեան եւ պատուին մէջ եւ ընդհանուր ներում շնորհել քրիստոնեայ Հայաստանին։

Պերոզի կռիւն իր եղբօր Որմզդի հետ միահեծան իշխանութիւնը ձեռք անցընելու համար (Պերոզ միահեծան 459 Յուլիս), դարձեալ Աղուանից եւ լեռնցի ազգերուն ապստամբութիւնները, որոնց մասին կարեւոր տեղեկութիւններ կու տայ Պատմագիրը, արգելք կ՚ըլլան Նախարարներու անմիջապէս արձակումին մինչեւ "յամս վեցերորդ" (463ի վերջերը եւ 464ի սկիզբը)։

Պատմագիրն հոս կը կտրէ իր պատմութեան թելը, գրեթէ քառորդ դարու դէպքեր նկարագրելէ յետոյ (439 կամ 440—464)։ Նախարարաց դարձը կը թողու, խոստանալով թէ "ի տեղի այսր ինչ գործեցաւ գոլ ոչէր.. բայց մ՚ւ ի զուր կը սպասենք, թէեւ Պատմագիրը "Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին" յուզիչ նկարագրութեան մէջ, որով կը կնքէ իր պատմութիւնը, բանաստեղծօրէն կը պատմէ թէ նախարարք չդարձան. — "Բազում ձմերոց հալեցան սառնամանիք, եհաս գարուն եւ եկին նորեկ ծիծեռունք, տեսին եւ խնդացին կենցաղասէր մարդիկ, եւ նոքա ոչ երբէք կարացին տեսանել զանձկալիսն իւրեանց։ Ծաղիկք գարնանայինք յիշատակեցին զպսակասէր ամուսինս նոցա, եւ աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի գեղ երեսաց նոցա"։

ԳԼՈՒԽ Դ.

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՑԵՂԱՆԱԿՆԵՐՈՒ ԲԱԺԱՆՈՒՄԸ

Հայ մատենագիրներու ամբողջ շարքին մէջ Վարդանանց Պատմագիրն է միայն, որ Ցեղանակ կամ Եղանակ բաժանումներուն տակ պատմական

նիւթեր կը դասաւորէ[1]։ Պատմագրիս համար Եղանակ նոյն է Գլուխի հետ եւ միեւնոյն էջին մէջ այս երկու բառերն ալ կը գործածէ. «յայսմ եօթն յեղանակին», կամ «յայսմ յեօթն Գլուխս»։ Արդ՝ Պատմագիրը կ'ըսէ թէ այսպիսի եօթն եղանակներու մէջ նշանագրած է Հայոց պատերազմը «ծայրալիր պարապմամբ», մինչ՝ ինչպէս տեսանք, այս եօթնէն դուրս («արտաքոյ») Ութերորդ մ'ալ կայ իր գործին մէջ ուրիշ ստորաբաժանումներով։

Կարեւոր է գիտնալ՝ թէ Պատմագրին իր ձեռքով ըրած բաժանումները ճիշտ պահուա՞ծ են բոլոր ձեռագիրներու մէջ ալ։ — Տարակուսական է այս, քանի որ բոլոր ձեռագիրք միեւնոյն գլխաբաժանումները չունին։ Տարապարտ աշխատանք մը պիտի ըլլար ասոր համար քննութիւն մ'ընել։ Ծանօթ ձեռագիրներէն տարբեր եւ հնագոյն ձեռագիր մը միայն կարող է կռուան մ'ընծայել հաստատական պատասխանի մը։

Խնդիրն այնպէս է՝ որ Վարդանանց Պատմութեան Բովանդակութեան շուրջը կը դառնայ։ Եւ զանազան ձեւով բաժանումներ ներկայացընող ձեռագիրները միեւնոյն բովանդակութիւնն ունին։ Գլուխներու բաժանումը միշտ գրքի մ'իւրաքանչիւր էջի մէջ պատմուած, մանրամասնուած դէպքերուն լման արտայայտիչը չկրնար համարուիլ մանաւանդ երբ այն բաժանումները ընդհանուր ձեւ մ'ունին եւ ընդարձակ դէպքեր, նկարագրութիւններ կրնան ընդգրկել։ Այսպէս են Վարդանանց Պատմութեան բաժանումները։ Ըսել կ'ուզենք թէ Ութերորդ եղանակը, իր ստորաբաժանումներով, որչափ ալ «արտաքոյ» ստորոգելիով դրոշմուի, իրապէս եօթներու մէջն է։ Թէ՛ լեզուն, թէ՛ պատ-

[1] Եղանակ բառին Պատմագրիս գրչին տակ կիրառութեան մասնաւոր կերպէն առնելով է որ Նոր. Հայկ. այսպէս կը սահմանէ զայն. «Զանազանեալ վիճակ իրաց կամ անցից անցելոց, ըստ Նմին եւ Գլուխ Բանից»։

մութեան թելը հզօր ապացոյցներ են։ Անոնք որ պատմութեան ընծայականին մէջ նշանագրուած եօթը գլուխներուն ճշդութիւնը պահանջեցին յընթացս պատմութեան, բնական էր որ ութերորդը յետսամուտ կամ նոյն իսկ անվաւեր համարէին։ Այսպիսի կարծիք մը հիմ չունի սակայն. որովհետեւ Ըրդ եղանակը որչափ ալ թերի, քանի որ նախարարաց դարձը չէ գրած Պատմագիրը հակառակ իր խոստումին — "բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի„ —, բայց ըստ ամենայնի կ'արդարացընէ "[illegible]„։ Ութերորդ Գլուխը ճիշդ "Կատարածն„ է Պատմութեան (Հմմտ. Ներծ. էջ 6—8)։

Ձեռագիրներ կան, որոնք եօթն գլուխ ունին, որոնց մէկ խումբը, ինչպէս մեր Մատենադարանի ձեռագիրը, ճշդիւ միեւնոյն բովանդակութիւնն ունի՝ ութ եղանակ ունեցողներուն հետ. ոմանք քիչ մը կը տարբերին։ Փր. Կ. Կոնիբեր այդպիսի ձեռագրի մը հատակոտորները գտաւ Լինի Մատենադարանին թիւ 15 ձեռագրի կազմին մէջ (տես Ներծ. էջ 31—34)։ Մեր դիտողութիւններն ըրինք արդէն այս հատակոտորներու մասին (նոյն անդ)։ Այս տեղ կ'ուզենք միայն դիտել 4 հատակոտորը, ուր տպագրութեանց Եօթներորդ եղանակը կցուած է Զրդ ին։ Բայց դժբախտաբար չենք գիտեր կցուածի կամ ձուլումի կերպը. այսինքն՝ տպագրութեանց Զրդ եղանակին վերջին եւ Էրդ ին առաջին մասերը, որոնք հատակոտորի համար "անհեթեթ մեծութեամբ ընդմիջարկութիւն„ են, իբր թէ տեղի տուած ըլլան արդի ծանօթ բաժանումին. որովհետեւ հատակոտորի մէջ այդ [illegible] երեք տողով միայն իրարու կը կցէ երկու եղանակները։ Հատակոտորի ներկայացուցած կցումի հետեւանքով՝ Ութերորդ եղանակը Եօթներորդ պէտք է ըլլայ, ընծայականի մէջ նշանագրուածին համաձայն։ Հայագէտս կը հաւանի սոր՝ երբ

կ՚եզրակացնէ՝ թէ "Հատակոտորը նիւթոց այս բաժանումը չընդունիր, որ թերեւս համեմատ է այն ծրագրին՝ զոր Եղիշէ իւր պատմութեան սկիզբը կը նախագծէ ըսելով թէ իւր բոլոր պատմելիքը պիտի աւանդէ "յէ–ՐՆ գլ–խ–"։ Բաւական է մեզ համար դիտել՝ թէ ոեւէ կերպով այս հատակոտորք Վարդանանց Պատմութեան եօթը բաժանումները կը հաստատեն։

Իսկ մեր Մատենադարանի ձեռագիրը, զոր ծանօթացուցինք Ներածութեան մէջ (էջ 45—49), Դրդ եղանակէն ուղղակի Զրդ ին կ՚անցնի. այսինքն՝ տպագրութեանց Երդ եւ Զրդ եղանակներն այս ձեռագրին մէջ իրարու կցուած են՝ առանց փոխանլու բովանդակութեան։ Այս խումբէն ձեռագրի մը մասին՝ իմ բարեկամ Տ. Խ. Վրդ. Ստեփանէ (այժմ Եպիսկոպոս եւ †) ինձ սա տեղեկութիւնը հաղորդած, յայտնելով միանգամայն իւր կարծիքը — "Ե. եղանակը երկու է բաժանված, եւ Վենետիկում բաժանել են մօտ 100 տարի առաջ։ Եղիշէի մի բուն եղանակ պակասումէ, ինչպէս երեւում է զանազան ձեռագիրներից, որ տեղ գրված է թէ "Ես այս եղանակը չգրեցի, որովհետեւ իմ արտագրած ձեռագրի մէջ նա չկայ,,. Դ. ից ուղղակի անցնում է Զ. եղանակին,,։

Արդէն դիտեցինք՝ որ այս բաժանումը Տ. Աբրահամ Վարդապետի ձեռքով եղած է (Ներծ. էջ 9—12). իսկ մի քո–ն եղան–կ ղ–կ––ը՝ Բարձումայի կարծեցեալ սրբապղծութեան վրայ հիմնուած է (Հմմտ. Ներծ. էջ 6—8, 22—24, 47. տես եւ Գլ. Ե)։ Մեր Մատենադարանի ձեռագրին մէջ գաղափարողն այդպիսի ծանօթութիւն մը չունի։

Ըստ ամենայն հաւանութեան՝ այս խումբը կազմող ձեռագիրներուն առաջին օրինակին մէջ գաղափարողին ի գործ դրած անուշադրութեան մը կամ սխալի մ՚արդիւնք է այս, որ հետզհետէ վերջիններէն նոյնութեամբ ընդօրինակուած է։ Եթէ

գլուխներու այս ձեւ բաժանումը բացարձակ ճշդութիւն մ'ունենար, ի՞նչպէս կարելի պիտի ըլլայ ընդունիլ Կոնիբէրի հատուածներուն ներկայացուցած կցումը, որ՝ ինչպէս տեսանք, բոլորովին տարբեր կէտի մը վրայ երկու եղանակները (տպագրութեանց Զրդ ը եւ Էրդ ը) մէկի կը վերածէ։ Տարբեր ձեռագիրներու իրարմէ անկախաբար եւ պատմութեան տարբեր կէտերուն վրայ սեւէ երկու եղանակներ ի մի վերածելու երեւոյթն միայն բան մը կը հաստատեն. այսինքն՝ թէ Վարդանանց Պատմութիւնը "յեւթն գլուխս" գրուած մ'է ընծայականի մէջ նշանագրուած գլխաբաժանումներու թուին համեմատ։ Ըստ այսմ՝ կամ տպագրութեանց Երդ ը Զրդին հետ կցուի կամ Զրդ ը Էրդին հետ, երկու պարագային մէջ ալ "արտաքոյ" ըսուած Ութերորդ եղանակը Էրդ պիտի ըլլայ։

Քանի որ այս խնդիրը Վարդանանց Պատմութեան բովանդակութեան տեսակէտով կարեւորութիւն մ'ունի, պէտք է դիտել՝ որ այս գործն իր արդի ձեւին մէջ բաւական հին ժամանակի ալ ծանօթ էր։ Զայս կը հաստատէ Սեբէոսի Պատմութեան Նախերգանքը։ Սեբէոս, Էրդ դարու Պատմագիր, որ Վարդանանց Պատմութիւնը, ըստ ամենայն հաւանութեան առանց Եղիշէ անուան, դեռ իր թարմ վիճակին մէջ տեսած կրնայ ըլլալ, սապէս կը դասաւորէ Վարդանանց դէպքերը, որոնք քիչ մ'աւելի ընդլայնուած գրեթէ նոյնութեամբ կը համապատասխանեն Եղիշէի ընծայականին։ Դիւրութեան համար ընծայականի հետ դէմ առ դէմ կը դնենք զայն։

| Սեբէոս: | Ընծայական: |
| --- | --- |
| Արդ՝ զժամանակս թագաւորութեանն չարագործին Յազկերտի. | Առաջին՝ զժամանակն. |

*Եւ եթէ որպէս նա կամէր զաստուածայինն եղծանել զկարգս։*

*Եւ կամ որպէս քաջ նախարարացն Հայոց եւ նախանձաւորն Աստուծոյ Նահապետն Մամիկոնէից Տանն՝ Կարմիրն կոչեցեալ Վարդան, հանդերձ միազունդ սպառազէն նիզակակից ընկերաւքն եւ զաւրաւքն իւրեանց կազմեալ զինեցան ի պատերազմ, առեալ ի ձեռն զվահանն հաւատոյ, եւ զգեցեալ իբրեւ զզրահ ամրութեան զնախանձն աստուածային բանին, գոգցես թէ առաջի աչաց իսկ ականատես դէմ յանդիման տեսանելով զ'ի վերուստ առաքեալ նոցա զպսակն։ Վասն որոյ արհամարհեալ զմահ, եւ առաւել լաւ համարեալ մեռանել ի վերայ աստուածային պողոտային։*

*Եթէ որպէս ի վերայ նոցա էին զաւրքն պարսիկ՝ սաստիկ բռնութեամբ,*

*Եւ կամ որպէս ի դիմի հարեալ զիւրեանց կատարեցին զնահատակութիւն։*

*Եւ կամ՝ որպէս ի ձեռս հեթանոսաց ըմբռնեալ սուրբ վկայք Քրիստոսի՝ կատարեցին զնահատակութիւն իւրեանց յԱպր Շահր մերձ ի Նիւշապուհ քաղաքի, ի տեղւոջն՝ որ կոչի Թեարքունի։*

*Երկրորդ՝ զիրացն պատահումըն յիշխանէն յարեւելից.*

*Երրորդ զփառաւորութիւն ուխտին եկեղեցւոյ.*

[*Չորրորդ՝ «Զերկպառակութիւն ոմանց բաժանելոց ի նմին ուխտէն». — այս նկատմամբ Սեբէոս մասնաւոր ակնարկութիւն մը չունի։ Նա ալ ընդհանուր եղանակաւ մը կ'ամփոփէ Վարդանանց դէպքերը։ Կարմիր Վարդանը այնքան բարձրացընելով, անշուշտ ըստ արժանեաց, չէ՛ ուզած Վասակին անունն իսկ յիշել, այլ թողած է Պարսից խումբին մէջ երեւալ։*]

*Հինգերորդ՝ զյարձակումն արեւելեայց.*

*Վեցերորդ՝ զընդդիմանալն Հայոց պատերազմաւ.*

*Եօթներորդ զյերկարումն իրացն խռովութեան։*

Այս բաղդատութիւնը կը ցուցընէ որ Երդ դարում Վարդանանց պատմութիւնը նոյն բովանդակութիւնը[1] ունէր արդի տպագրութեանց հետ։ Ամբողջ Եղանակի մը (Երդ) ջնջումը անհնար է։ Նոյնչափ եւ աւելի անհնար է շատ վերջին ժամանակներու վերագրել այդ ջնջումը փոխարինելու կամ ընդհատը լեցընելու ջանքը, ձեռագիրներու (որոշ խումբ մը կը կազմեն անոնք) Զրդ եղանակի մի մասէն Երդ մը բաժնելով։ Որովհետեւ այն ատեն մէկդի պէտք էր դնել ուրիշ խումբ մը ձեռագիրներ ալ, որոնք շատ հին ժամանակէն ունին տպագրութեանց հետեւած գլխաբաժանումները. այս խումբն է Անձեւացեացն, ինչպէս քանիցս յիշեցինք, որուն գրութեան թուականը որչափ ալ չէ ճշդուած, բայց այնքան հին է՝ որ ամէն պարագայի մէջ կրնայ հերքել ընդհատ մը լեցընելու համար ի գործ դրուած բաժանման ենթադրութիւնը՝ վերջին ժամանակներու մէջ։

---

1 Համմտ. Նաեւ Փրպ. էջ 3–4. «Եւ ի վիճակէ բաժանոյ անօրինացն՝ (Պարսից) արանց քաջաց ի տոհմէ նախարարացն Հայոց՝ տալ զանձինս անհամարս ի նահատակութիւնս ի վերայ ուխտին սուրբ եկեղեցւոյ. եւ կիսոց համբերել կապանաց եւ բանդից վասն երկնաւոր յուսոյն բազմաժամանակ անեւողութեամբ. — Հեղուլ եւ քահանայից ընտրելոց Աստուծոյ եւ ճշմարտապէս հովուաց՝ զարիւն ի պարանոցաց իւրեանց, ի վերայ ընտրեալ բանաւոր հօտին Քրիստոսի — եւ ոմանց յընկերաց նախարարացն եւ յայլ ազատ մարդկանէ՝ դառնալ յետս ուխտէ սրբութեանն եւ անշէջ յաւիտենից հրոյն լինել լուցկի, պատրաստեցելոցն սատանայի եւ նորին արբանեկացն»։ — Թովմ. Արծրունի Պտմ. Բ. Գլ. Ա. «Եւ սկսաւ ոգորել ընդ իշխանս Հայոց մեծաց խորախանօք, որպէս ցուցանեն յիշատակարանքն առաջնոց պատմագրաց. զաւերումն Հայոց եւ զյաճախել նեղութեանցն եւ զանթիւ բազմութիւն վկայից, որք վասն Քրիստոսի նահատակեցան, եւ զքաջապէս արիանալ սրբոց քահանայիցն, եւ անդ զբաւուք պատերա՛զմն պատերազմեալ ի մեծ անապատին յԱւարայր աշխարհին. եւ որ այլ ինչ ամենայն»....։

Միայն դիտելու է որ, ստուգիւ, Վարդանանց Պատմութեան Ցեղանակներն անհաւասար կերպով ստուար են կամ հակառակը։ Համաչափութիւն չկայ[1]։ Երեք Ցեղանակներ (Ա. Դ. Զ.) գրեթէ հաւասար չափով ընդարձակ են։ Անշուշտ իրաւունք չունինք պահանջելու՝ թէ բոլոր Ցեղանակներն ալ միեւնոյն ծաւալն ունենային։ Ամէն նիւթ՝ ընդլայնումի յատուկ սահման մ'ունի. ընդլայնումը նիւթի կարեւորութեան հետ ուղիղ կը համեմատի։ Այսպէս՝ Վարդանանց Պատմագիրն աւելի ընդլայնում մը չէր կրնար տալ իւր Պատմութեան առաջին Ցեղանակին քան զոր տուած է. այսինքն՝ պատմական ընդհանուր տեսութիւն մ'իւր պատմագրելու բուն դէպքերը կանխող ժամանակամիջոցին վրայ։ Բայց այս համաչափական ճշդութիւնը միւս Ցեղանակներուն մէջ պահուած է պատմական դէպքերու եւ իրողութիւններու նկատմամբ։ Ո՛ւր որ գրուածքին վկայաբանական ձեւեր կը տրուին կամ ընդարձակ պատճեններ կը յերիւրէ (նամակ, ճառ) Պատմագիրը, հոն պէտք չէ փնտռնել այս ճշդութիւնը։ Այսպէս՝ Բ՟րդ Ցեղանակը յանչափս ստուարացած է. որովհետեւ երկու ընդարձակ նամակի պատճեններ (?) ամբողջ 12 էջ կը գրաւեն։ Գ՟րդ ին նիւթն արդէն առատ է, բայց մոգպետի շահատակութիւնը եւ Յունաց նամակին

---

1 Ահա այդ Ցեղանակներուն գրաւած էջերը Վենետիկի 1859ի տպագրութեան մէջ։

| | | էջ | | |
|---|---|---|---|---|
| Ա | Ցեղ. | 6— 12 | 6 էջ | |
| Բ | » | 13— 40 | 28 » | |
| Գ | » | 41— 68 | 27 » | եւ քիչ մ'աւելի |
| Դ | » | 69— 75 | 6 » | » » » |
| Ե | » | 76— 88 | 13 » | » » մը պակաս |
| Զ | » | 89— 94 | 6 » | » » » » |
| Է | » | 95—109 | 15 » | » » » » |
| Ը | » | 110—158 | 49 » | » » » » |

յերիւրուած պատճէնը 3 — 4 էջ կը գրաւեն: Երդը բոլորովին յերիւրուածն է Վարդանի եւ Ղեւոնդի ճառերուն: Այդ Ցեղանակին բուն պատմական մասերը (սկիզբն ու վերջը) եթէ կցուին Վեցերորդին սկիզբը՝ շատ կոկիկ գլուխ մը կը կազմուի: Ըրդ ի անհամեմատ ընդարձակութիւնը վերագրելի է ոչ միայն նիւթի ճոխութեան, որ պահանջելի էջեր արտադրել կու տայ Պատմագրին, ինչպէս Աբրահամ Խոստովանողի դրուագն եւ “Տիկնայք փափկասունք.ը, այլ մանաւանդ թէ Ապար աշխարհի դենպետին դարձի զրոյցին՝ 113 – 124 էջերու մէջ նկարագրուած, թէ վկայաբանական այն ոճին, որով Պատմագիրը վիճաբանական խօսակցութեանց աւելորդ ընդլայնում կու տայ, կամ լաւ եւս, կը յերիւրէ:

Փարպեցու պատմածները կը հաստատեն մեր դիտողութեանց ճշդութիւնը: Փարպեցի միեւնոյն նիւթերը պատմագրելով՝ երբեք չհրապուրուիր գրելու այն ձեւերէն, որոնք ասդին Վարդանանց Պատմութեան ինչ ինչ Ցեղանակները կը ստուարացընեն: Նամակներու, ճառերու պատճէններ հազիւ կը զբաղեցընեն Ճարտասան Պատմագիրը. իսկ դենպետի դարձը բոլորովին օտար է անոր:

Մեր ցարդ ըսածներէն կը հետեւի՝ որ Վարդանանց Պատմութեան բովանդակութիւնը չէ վնասուած ո՛ւ եւ է ընդհատով մը. բայց՝ Ցեղանակներուն գլխահամարները կրնան սխալմամբ խախտուած ըլլալ: Եւ զանոնք ճշգրտելու համար պէտք է մեր Մատենադարանի ձեռագրին պատկանող խումբին գլխահամարները միայն ուղղել. այսինքն՝ տպագրութեանց Զրդ Ցեղանակը կոչել Երդին եւ ըսել “Հինգերորդ Ցեղանակ„: Իսկ Էրդն ուղղել՝ “Վեցերորդ Ցեղանակ„, եւ Ըրդը՝ Եօթներորդ Ցեղանակ„: Այսպէս ուղղելը համաձայն է նաեւ Կոնիբերի հատակոտորներու ներկայացուցած ձեռագրի ոգւոյն:

Այսպիսի ճշգրտութեան մը դէմ Անձեւացեաց օրինակը միայն կրնայ դժուարութիւն յարուցանել, որուն գրութեան թուականը, բաւական հին ժամանակի մը կը վերանայ (Համտ. Ներծ. էջ 41—45)։ — Մեր տեսութեան արժէքն այս ձեռագրին վերագրուած հնութենէն կախուած է. այսինքն՝ եթէ այնպիսի թուական ունենայ ան, զոր կանխէ մեր Մատենադարանի ձեռագրի խումբին մէկ հնագոյն օրինակը, յայտնի է որ Անձեւացեաց գլխաբաժանումները վերջին ժամանակի մը գործ կը նկատուի ալ. որովհետեւ կրնայ ենթադրուիլ որ հնութեան նշանները, նոյն իսկ Թրդ դարուն (Ատոմ, Շմաւոն եւն) ուրիշ ձեռագրի մը մագաղաթներն եղած ըլլան որեւէ կերպով (մանաւանդ կազմի համար) Անձեւացեաց օրինակին մէջ փոխադրուած։ — Անկէ զատ, այս խումբին ծանօթ բաժանումներն եւ գլխահամարներն եթէ մէկ կողմէ կը հերքեն շատ վերջին ժամանակներում տպագրութեանց առթիւ գործադրուած բաժանումի մ'ենթադրութիւնը (Համտ. Ներծ. էջ 7—11), միւս կողմէ կը հերքուին բուն եղանակ մը պակասի ենթադրութեամբ, որուն հիմ կ'ընդունուի Բարծումայի զրոյցը։ Եթէ Անձեւացեաց օրինակին գլխաբաժանումները սկզբնագրի յատուկ ենթադրուին, այսինքն՝ ութ Յեղանակ, եւ եթէ նմանապէս ենթադրուի՝ թէ բուն եղանակ մ'ոչնչացուցած ըլլայ Բարծումա, այն ատեն ինն Յեղանակներէ բաղկացած պիտի ըլլար Վարդանանց Պատմութիւնը։ Անշուշտ անտեղի են այսպիսի վարկածներ։ Յաջորդ գլխի մէջ պիտի տեսնենք թէ Բարծումայի խնդիրը կեղակարծ գիւտ մըն է։ Գալով Անձեւացեաց օրինակի գլխաբաժանումներուն՝ չենք կրնար երաշխաւորել իբր հարազատ իր սկզբնագրին։ Չեշտելով բովանդակութեան անխախտ պահպանութիւնը, գլխաբաժանումները մասնաւոր հանգամանք մը կը նկատենք խումբ մը

ձեռագիրներու (Ընձեւայեաց)։ Այս վիճակին մէջ անկարելի է սկզբնագիր օրինակին գլխաբաժանումները ճշդրտել. այն ատեն երեք խումբ ձեռագիրներու համաձայն երեք տարբեր ձեւերով գլխաբաժանումներ պիտի ունենանք։ Կարելի չէ՛ ճշդրտել՝ թէ այս երեք խումբերէն որո՞ւն գլխաբաժանումները հարազատ են Վարդանանց Պատմութեան սկզբնագիր օրինակին։

## ԳԼՈՒԽ Ե.

## ՆՈՐ ՊԱՏՄԱԾՆԵՐ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՎԵՐԱԲԵՐՄԱՄԲ

Մատենագրական երեւոյթներով շրջապատուած է Վարդանանց Պատմութիւնը։ Կա՛ն պատմական իրողութիւններ, որոնք չեն պատմուած բուն պատմութեանց մէջ (Փրպ. Եղիշէ), ծագում կու տան այս երեւոյթներուն։ Քաջն Վարդանի քաջագործութիւններուն առաջին պատկերները Հայոց պատերազմի մուտքին մէջ չե՛ն արձանագրուած. ատոնք սակայն՝ շատ կարեւոր պարագաներ են եւ պատմական արժէք մ՚ունին։

Յովհան Պատմաբան եւ Թովմա Արծրունին պահած են զանոնք։ Պատմաբանը՝ Վարդանանց Պատերազմի բոլոր իրողութիւններուն իբր խտացումը յառաջ կը բերէ զանոնք. հազիւ ակնարկելով՝ թէ Վարդան եւ Վարդանանք ուրիշ քաջութիւններ ալ ի գործ դրին։ Վարդանանց Պատմագիրներուն յիշատակութիւնն իսկ չըներ։ Թովմա՝ Պատմաբանէն աւելի մանրամասնութիւններ ունի, որոնք երկրորդական չեն, եւ մասնաւոր տեղեկութիւն մը Վարդանի մասին՝ Մոկաց կողմերը Ջողայլ ամրոցը (Ջերմաձոր) ապաստանիլը (Թվմ. Արծ. Դպր. Ա. Գլ. ԺԱ)։ Արծրունին՝ իր այս նոր պատմածներուն իբր աղբիւր ցոյց կու տայ Աբրահամ Խոստովանողի Համառօտութիւնը. իսկ Վար-

*դանանց միւս դէպքերուն համար, որո՛նք ծանօթ են մեզ, առաջին պատմագիրներու յիշատակարանները մատնանիշ կ'ընէ։*

*Այս բոլոր նոր պատմածները, թէ պատմաբանէն եւ թէ Արծրունիէն, որ Հայոց պատերազմին նախերգանքը կը յօրինեն, աւելորդ չենք համարիր դէմընդդիմել իրարու հետ, ոչ միայն մեր ուսումնասիրութեան ընթացքին մէջ Վարդանանց նկատմամբ կարեւոր պարագայ մ'ալ ի վեր հանելու դիտումով, այլ որովհետեւ այս բաղդատութեան տարբերութիւններն անծանօթ են Յովհան Պատմաբանին։ Թովմա ճոռոմ ընդլայնումներ ունի կամ քերթողօրէն գրելու տենչ մը, նախնեաց բացատրութեամբ, եւ միշտ հմտութիւն ցուցընելու յաւակնութեամբ կը գեղծանի։ Իւր սխալներն ասոնց կը պարտի։*

| Յովհան Պատմաբան (էջ 35): | Թովմա Արծրունի (Դպր. Բ. Գլ. Ա.): |
| --- | --- |
| *Եւ ապա ոմանք ի մերոց նախարարաց դաւաճանեալք ի չարէն՝ ուրացան զհաւատս քրիստոնէութեան՝ հեթանոսական օրինաց հնազանդեալք։ Իսկ աւագագոյնք ի նոցանէ Շաւասպ Արծրունի եւ* | *Ընդ նոյն ժամանակս խորհուրդ ի մէջ առեալ Շաւասպ Արծրունի եղբայր Վասակայ հօր Աշանայ Արծրունւոյ, եւ խորհեցաւ զտիրելն Հայոց, եւ ելեալ գնաց զհետ անհանճար իմացմանց առ Պերոզ արքայ Պարսից, եւ յանձն առեալ ինքնակամ մոլորութեամբ զօրէնս մազդեզանց մոխրապաշտ յամառութեանց, եւ խնդրեալ յարքայէ զիշխանութիւն Հայոց։* |
| | *Եւ նորա ըստ ցանկութեան անոտի փառամոլութեանն կատարեալ զխնդիրն, եւ դարձեալ դառնայ ի Հայս* |
| *Վնդոյ ի Դվին քաղաքէ* | *ընդ իւր ածելով զՎնդոյ* |

Պարսից մոգպետ։ Եւ ընդ մտանելն նոցա յաշխարհս՝ վրդովեցին զուխտ քրիստոնէութեան, եւ փոյթ ընդ փոյթ ձեռնամուխ եղեն աւերել քանդել զեկեղեցիս, զտունս աղօթից կործանել, զսեղանս խորհրդականս փրկագործութեանն յատակել, հիմն ի վերայ տապալել զաւազանն մաքրափայլ լուսաւորութեանն Հոգւոյն Սրբոյ, դառնապէս չարալլուկ չարչարել զքահանայս զպաշտօնեայս Նորոց Կտակարանաց, զարս եւ զկանայս մատնել ի բանդս ի խոշտանգանս ծանրաբեռն հարկապահանջութեամբ, զի այսու կարասցեն հերքել մերժել ի բաց կալ ի սուրբ հաւատոյ պարկեշտ կրօնից քրիստոնէութեան։ Եւ բազում այն էր որ մարտիրոսական ճգնութեամբ վկայեցին, քան որք գրդուեցան, առ ոչինչ համարելով զյափշտակութիւն ընչիցն եւ ստացուածոց եւ զմահս դառնապոյնս։ Եւ հասեալ Շաւասպայ Արծրունւոյ ամբարշտի յԱրտաշատ հանդերձ մարզպանաւն շինեն ի դուռն քաղաքին զորմզդական մեհեանն, եւ զկրակապաշտութեան մոլութիւն բորբոքեն ի նմա, եւ կոյր աշխարհս ի մեծ վտանգաւոր աղէտս։

Հրամայեն շինել զմեհեանն Որմզդական եւ զտուն հրապաշտութեան։ Եւ քրմապետ կարգէր Վնդոյս զորդի իւր Շիրոյ եւ դնէր օրէնս ի պարսիկ մատենէ բազում եւ անհնարին բարս չարեաց գործոց՝ եւ լի մթացուցիչ եւ նսեմական պիղծ ուսմամբ։

| | |
|---|---|
| Լուեալ ապա զայս քաջին Վարդանայ՝ թոռին մեծին Սահակայ, թէ չիջաւ բարեկարգութիւնն եկեղեցւոյ եւ տօնք տարեկանաց ակարացան, | Այս լուր դառնութեան եհաս առ մեծն Վարդան, որ էր ամրացեալ ի Տորոսական Ջռայլ։ Եւ առ չհանդուրժել այնքան եկեալ հասեալ վտանգաւոր նեղութեանցն, եւ գազանեղէն զայրացմամբ մրմռեալ յոգի իւր ի վերայ կորստեան սուրբ հաւատոյս եւ կործանման աշխարհիս Հայոց՝ փութացոյց գիր պաղատանաց առ Տաճատ Ռշտունեաց Տէր եւ առ Վախրիճ Ընձաւացեաց Տէր, զեկուցանել նոցա զեղեալսն։ Եւ |
| յանկարծակի ապա զօր գումարեալ եւ | նոքա թափառնակիւ անյապաղ հանդերձ իւրաքանչիւր զօրու եկին հասին առ մեծն Վարդան, եւ զզօրս լեռնակողմանն ընդ իւրեանս առեալ, ոչինչ աւելի քան զհազար եւ երկերիւր այր, եւ |
| յանդուգն արձակմամբ ի վերայ հասեալ | յանկարծօրէն յեղակարծ երագութեամբ հասին ի վերայ Շաւասպայ եւ մարզպանին Վնդոյի։<br>Եւ քանզի էին բանակեալ ի խառնուրդս Երասխայ եւ Մաւրին Մեծի՝ պատահի յառաջ Շաւասպ Արծրունի, յորոյ վերայ կալեալ եւ կանչեալ քաջն Վարդան իբրեւ զառիւծ, իբրեւ կորիւն առիւ- |
| զանօրէնն Շաւասպ փայլակնահար իմն սրով սատակէր, | ծու, եւ առ ուժոյ եւ երագութեան ձեռինն ի վերայ ձգեալ զմիողնին՝ յերկուս կարէ զՇաւասպն։ |
| եւ զմարզպանն Մշկան փախստական առնէր. եւ զպիղծն | Իսկ Տաճատ եւ Վախրիճ ի մէջ փակեալ զմարզպանն եւ |

1 Արդեօք ծիշդ չըլլա՞ր ուղղագրել փո-Թոնայն։

Անդոյ ձերբակալ արարեալ յատրուշանի կրակին, զոր շինեաց ինքն իսկ ի Դվին՝ այրեր, եւ զորդի նորա Շիրոյ ի վերայ բագնին զփայտէ կախեր:

զորդի նորա զՇիրոյ՝ ձերբակալ արարեալ ածին ի Դուին, եւ հուր կրակարանին բորբոքեալ՝ աստուածակեզ արարին զնա յՈրմզդական մեհենին, եւ զՇիրոյ կախեն զփայտէ ի վերայ կրակարանին. եւ զարսն գետավէժս եւ սրախողխող արարեալ վատնեն, եւ զփախստեայսն տանին անցուցանեն յանկոյս քան զքաղաքն Նախճուան, եւ ինքեանք դառնան մեծաւ յաղթութեամբ:

Եւ ի տեղի բագնին շինէ եկեղեցի մեծ անուանակոչութեամբ Սրբոյն Գրիգորի, անդ փոխադրելով զաթոռ Հայրապետութեանն, եւ հաստատեալ կացուցանէ ի նմա զմեծ Հայրապետն Գիւտ: Վասն զի սուրբ Հայրապետն Յովսէփ ի մետաղս բանդից ըմբռնեալ էր ընդ սրբոց Ղեւոնդեանցն, որ թէպէտ դեռ եւս կայր կենդանի, սակայն ոչ պարտ վարկան նախարարքն Հայոց առանց հովուի զհօտն Քրիստոսի թողուլ. կի մի վարատեսցին ի հեթանոսական գայլոցն, կամ թէ ի հրամանէ սրբոյն իսկ Յովսեփայ այն իրագործէր: Եւ այսպէս վերստին նորոգէր գեղեցիկ կարգ եկեղեցւոյ սրբոյ:

Եւ քանդեն աւերեն զմեհեանն եւ յատակեալ զտեղին՝ շինեն նորին քարամբք զմեծ եկեղեցին զսուրբ Գրիգորն ի Բլուր տեղւոջն, եւ փոխեն անդ զկաթողիկոսն Հայոց զԳիւտ.

եւ շինեն նախարարքն Հայոց իւրաքանչիւր պալատս արքունականս եւ դաստակերտս յականաւորս, եւ զքաղաքն

որմափակօք պարսպեն, եւ խաղաղեցուցանեն զերկիր։ Իսկ զԹագաւորական տեղին մեծին Տրդատայ տան ի ձեռս Վահանայ Արծրունւոյ՝ շինել նմա տուն Թագաւորաց, արարս պատրաստութեամբ. քանզի խորհեցան Թագաւորեցուցանել զնա ի վերայ Հայոց, զի էր այր սրտեայ եւ ուժեղ, քաջախորհուրդ եւ իմաստնախորհ, խոնարհ, առատաձեռն եւ զուարթամիտ։

Բայց յետոյ անմիաբան գտեալք նախարարքն Հայոց՝ Թողին զոր խորհեցանն վասն Թագաւորելոյ Վահանայ, եւ անցին գնացին առ մեծն Վարդան. գնաց եւ Վահան զհետ նախարարացն առ Վարդան յառաջագոյն, տալ նմա զվերակացութիւն Հայոց, եւ եղեն հնազանդեալ նմա զամենայն աւուրս Վարդանայ։

Եւ յայմհետէ ապա հնազանդէին Հայք առաջնորդութեան քաջին Վարդանայ մինչեւ յօր մահուան նորա, որ բազում պատերազմունս քաջութեան վասն առ ի Քրիստոս հաւատոցն կատարեալ՝ արժանի գտանի առնուլ բազում եւ այլ եւ ընկերօքն զպսակն անԹառամ յանմահ արքայէն Քրիստոսէ։

Արծրունեաց պատմիչը ալ բոլորովին կը հեռանայ Պատմաբանէն եւ կը շարունակէ.

“Բայց արքայն Պարսից հեռացեալ պատերազմաւ ի Քուշան ի դուռն Ճորայ եւ երկիրս Հայոց յապահովանայր ի հինիցն Պարսից. եւ անդ սպանանի արքայն ի Քուշանաց, եւ Թագաւորէ ընդ նորա Յազկերտ։ Եւ սկսաւ ոգորել ընդ

*իշխանս Հայոց մեծաց խրոխտանօք, որպէս ցուցանեն յիշատակարանքն առաջնոց պատմագրաց, զաւերսն Հայոց եւ զյաճախել նեղութեանցն եւ զանթիւ բազմաթիւն վկայից, որք վասն Քրիստոսի նահատակեցան, եւ զքաջապէս արիանալ սրբոց քահանայիցն, եւ անդ զքարիոք պատերազմն պատերազմեալ ի մեծ անապատին յԱպար Աշխարհին, եւ որ ինչ այլն ամենայն, զոր աւելորդ համարիմ երկրորդել զմիանգամայն ասացեալսն։*

*Բայց իբրեւ եղեւ մեծ պատերազմն սրբոյն Վարդանայ ընդ Միշկանին եւ ընդ զօրս Պարսից ի յԱւարայրեան դաշտին, յԱրտազական գաւառին, եւ անդ յԱստուած խրախուսեալ սուրբ աստուածաբնակ զօրացն Հայոց՝ կատարեցան ի Քրիստոս։ Եւ անդ Վահան Արծրունի խոյակալ եւ յականաւոր քաջամարտութեամբ ընդ սրբոյն Վարդանայ ճակատ առ ճակատ վառեալ զպատերազմն, իբրեւ հուր ընդ եղէգն ճեմելով ի մէջ քաջ ախոյեանցն Պարսից։*

*Եւ իբրեւ ռազմ երկոցունց կողմանցն խառնեցաւ, եւ ձախոյ կողման թեւն Հայոց պարտել սկսաւ եւ սրբոյն Վարդանայ մօրակեալ զերիվարն ի փախուստ զախոյեանսն Պարսից դարձուցեալ եւ զկողմն իւրոյ ձեռին գնդին զօրացուցեալ՝ անդ Վահան Արծրունի ընդմիջեալ զգունդն Պարսից դարձուցանէ ընդդէմ Վարդանայ եւ անյապաղ մինչ այս մինչ այն՝ նոցա հարեալ ընկեցեալ ի զօրացն Պարսից գունդ մի հարուստ արք իբրեւ ՃԽ* (140)։ *Ի վեր կառուցեալ զաչս սրբոյն Վարդանայ տեսանէ զանօրէնն Վասակ Սիւնեաց տէր, եւ զհետ նորա աճապարեալ արկանեն զնա ի յամրափակ գինեալ վաշտն ի մէջ փղացն. եւ քաջն Վահան Արծրունի ընդ նմա նիզակակցեալ՝ մեռանին ի միասին քաջքն եւ ընտիրքն, մեծ նահատակք Վարդան եւ Վահան, եւ զվկայիցն անուն ժառանգեալ կատարեցան ի Քրիստոս սուրբ գունդն Հայոց, ՈՂԶ* (696) *ոգիք։»*

*Այս բոլոր պատմածները, որոնք նոր են, մեր մատենագրութեան հետ զբաղողներէն ոմանք, կ'ենթադրեն՝ որ Վարդանանց պատմութեան մէջ յատուկ էջեր գրուած ըլլան նախապէս։ Ասոր ապացոյց կը համարուի խումբ մը ձեռագիրներու Դրդ Ցծղանակէն Զրդ անցնիլը. անշուշտ այսպիսի ենթադրութեան մ'այժ պիտի տար Թովմայի Բար-*

ծումս տարի եպիսկոպոսին վերագրած սրբապղծութիւնը։ Արծրունեաց Պատմիչը սակայն՝ Վահանը (Արծրունի) Վարդանանց Պատերազմին մէջ շահատակել տալու տեղ տենդէն բռնուած, միայն իրեն ծանօթ՝ Բարծումայի պատմած մը կը պաշտպանէ. լաւ եւս այս նկատմամբ զրոյց մը կը յերիւրէ, ասոր նուիրելով իր գործին Բ. Դպրութեան Բ. Գլխին առաջին մասերը։ Թովմայի պատմածը բաւական հին ժամանակներու մէջ ալ իբր առոյգ ընդունուած, նոյն իսկ ձեռագիրներու (ինչպէս մեր Մատենադարանինը) եւ տպագիրներու (Կ. Պոլիս 1823) իբր յաւելուած կցուեր է։

Թէ ինչ արժէք ունի Թովմայի պատմածը Բարծումայի նկատմամբ, որ իբր թէ «ի բաց եհան ի ձեռաց դատաւորութենէ՝ որ ինչ վասն տանն Արծրունեաց էր գործոց հանգամանք, եւ որ ինչ օրինակ մարտիրոսութեան Վահանայ Արծրունւոյ», — ըստ ամենայն հաւանութեան՝ ոչինչ։ Զայդ շատ լաւ ապացուցած է իմ հմուտ եւ բանասէր Վարդապետս՝ Տ. Եղիշէ Դուրեան, զուտ մատենագրական տեսակէտով քննելով խնդիրը[1]։

Առանց երկարօրէն զբաղելու Բարծումայի զրոյցին հետ, ինձ կը մնայ քանի մը դիտողութիւն աւելցնել։

Ա. Այն դէպքը, զոր Թովմայի հետ Պատմարանն ալ կը պատմէ, երկուքն ալ միեւնոյն աղ-

[1] Երկրագունդ Զրդ. տարի (1888) էջ 14–26։ — Իսկ Հ. Յ. Տաշեան, Հանդէսի տաղանդաւոր խմբագիրը, ինձ գրած նամակին մէջ կը կասկածի Թովմայի պատմածի մասին — «Իւս առաւել կասկածելի է Թովմայի պատմածը Բարծումայի մասին, որ իբր թէ օրինակած ըլլայ զԵղիշէ եւն։ Եթէ լոկ զրոյց չէ (— ինչպէս Բարդեծան՝ կրնար նաեւ ծանօթ Բարծումայ Հայոց մատենագրութեան հետ կապակցութեան բերուած ըլլալ միեւնոյն պատճառաւ —) ուրիշ իրողութիւն մը ծածկուած ըլլալու է այս պատմածին տակ. վերջնական եզրակացութեան մը տակաւին չեմ կրցած հանիլ հոս ալ»

բիւրէ կը քաղեն։ Թովմա անփոփոխ յաւելուածներ ունի, միայն Վահան Արծրունին ընդարձակօրէն փառաւորելու համար։ Արդ՝ Վահանի մասին Թովմայի պատմածները պահ մը մէկդի թողլով՝ մնացածներուն համար աղբիւր կ'ընդունինք Թովմայի յուշածն — "Եւ գտի այս ի ՀԱՄԱՌՕՏՈՒԹԵԱՆ Աբրահամու Խոստովանողի„, լաւ եւս ուրիշ պատմական գործեր կամ գրուածներ, որոնց վրայ Աբրահամի անունը կը տեսնուի։

Բ. Հետեւաբար, այն ենթադրութիւնը թէ Յովհան Պատմաբանի եւ Թովմա Արծրունւոյ Վարդանայ եւ Վարդանանց մասին նոր պատմածները, Վարդանանց Պատմութեան մէջ եղած պիտի ըլլային նախապէս, սխալ է բոլորովին։

Գ.. Անկէ զատ, քանի որ Յովհն. Պատմաբանին եւ Արծրունւոյն նոր պատմածները, ինչպէս ըսինք, նախերգանքն է Հայոց Պատերազմին, եթէ երբեք Վարդանանց Պատմութեան մէջ գրուած ըլլային նախապէս ժամանակագրութիւնը կը բռնադատէր Վարդանանց Պատմագիրը գրել զայն անմիջապէս Առաջին Յեղանակին մէջ, "Քանզի ի բառնալ ազգին Արշակունեաց էն յետոյ, ինչպէս նոյն ինքն Թովմա, որ իւր ամբողջ Պատմութեան մէջ Վարդանանց Պատմագրին պատմելու ոճին եւ ձեւերուն կը հետեւի՝ կ'ընդօրինակէ զանոնք, "Յետ բառնալոյ թագաւորութեանն Հայոց ի տանէն Արշակունեաց„ եւ այլեւ սկսուածէն յետոյ կը պատմէ նորութիւնները։ Յովհն. Պատմաբանի ձեւն ալ, լաւ եւս, տեղն ալ նոյն է։ Արդ՝ սխալ է ենթադրել թէ այն նախերգանքը, Վարդանանց Պատմութեան բաւական յառաջացած մասերուն մէջ, այսինքն՝ Գ<sup></sup>րդ էն Զ<sup></sup>րդ յեղանակ կարծեցեալ ընդհատ էջերը գրուած պիտի ըլլայ նախապէս։

Դ. Եթէ Վահան Արծրունի գտնուած է, ըստ Թովմայի, "Մեծ պատերազմին„ մէջ, "այնչափ խոյակապ եւ յաղթանակ քաջամարտութեամբ„

Վարդանի հետ արիութիւն գործողի մ'անուն գէթ "Անուանքնախարարաց" ցանկին մէջ պիտի յիշուէր։ Արդեօք Թարծունմս պարզ անուններ ալ ջնջեց վախճանած մարդուն․ եթէ այսպէս, ինչո՞ւ մնացած է հո՛ն "յազգէն Արծրունեաց Ներշապուհ եւ Շաւասպ եւ Շընգին եւ Մեհրուժան եւ Պարգեւ եւ Տաճատ" անունները։ Ասոնք Արծրունի չէի՞ն։ Թարծունմս Վահանի անձին ի՞նչ առելութիւն ունէր։

Ե․ Եթէ Վարդանանց Պատմութենէն "Եղիշէի", ինչ որ Արծրունեաց տան եւ մանաւանդ Վահան Արծրունիին կը վերաբերէր, ինչո՞ւ Փարպեցու պատմութեան մէջ չկայ այս մասին, եթէ ոչ "գործոց հանգամանք"ի փայլուն դրուագ մը, գէթ յիշատակութիւն մը պարզ։ Փարպեցի՞ն ալ արդեօք Թարծունմսի մը ցասման զոհ տուաւ։

Եթէ Վահան Պատերազմի մէջ զանուած է ինչո՞ւ գէթ իբր քաջամարտիկ՝ գունդերէն մէկուն վարիչը, կամ գէթ իբր նիզակակից՝ չյիշուիր Փարպեցու մէջ, ինչո՞ւ Ներ-Շապուհ Արծրունին հո՛ն գունդի մը կ'առաջնորդէ, ո՞ւր է Վահան այդ ժամանակ․ Վահան Արծրունին նուա՞զ կարող գինուորական մ'է․ եթէ այո կամ ոչ, ինչո՞ւ Թովման Փարպեցու Մեծն Վահանի (Մամիկոնեան) նկարագրած յատուկ գծերով կը նկարագրէ իր Վահանը (հմմտ․ Փրպ․ էջ 338—339․ Թվմ․ Արծ․ էջ 79)։

Զ․ Քանի որ Վահանի մասին Թովմայի պատմածները քաղուած են Աբրահամ Խոստովանողի համառօտութենէն կամ պատմական ըսուած գրուածներէն, եւ Պատմաբան, որ միեւնոյն աղբիւրէ կը քաղէ միեւնոյն դէպքերը (Շաւասպի եւ Վնդոյի), ինչո՞ւ համար Վահանի նկատմամբ կ'լռէ․ մանաւանդ հո՛ն՝ ուր երկու պատմագիրներն ալ (Յվհն․ եւ Թվմ․) կը համաձայնին՝ որ Վարդանի հնազանդած ըլլան նախարարները եւ իբր թէ, ըստ Թովմայի, Վարդանի զօրավարութիւն (') յանձնելէ յառաջ, նախարարք Վահանը Թագաւորեցընել (') ուզած ըլլան։

Է. Ի՞նչ հարկ կայ ջանալու՝ որ Վահան Արծրունին Վարդանանց Պատերազմին մէջ գտնուած ըլլայ։ Ամէն նախարարութիւններու ներկայացուցիչները պատրաստ չէին եւ պէտք ալ չունէին հոն Աւարայրի դաշտին վրայ ներկայ գտնուելու։ Մենք պիտի տեսնենք՝ որ Վարդանանց Պատերազմը Հայաստանի նախարարական համայնքի կողմէն չմղուեցաւ։ Պարսկական բաժնի շարժում մ՚էր այդ։ Բայց Արծրունիք հոն էին իրենց նախարար՝ Ներշապուհ Ռմբոսեանով (Արծրունի) որ հինգ անգամ յականէ յանուանէ կը յիշատակուի Վարդանանց Պատմութեան մէջ, եւ քանիցս Փարպեցու մէջ, Դուռն ալ զայն կը ճանչէ իբր ներկայացուցիչ Արծրունեաց։ Ներշապուհ առաջնակարգ դեր մ՚ունի Վարդանանց մէն մի շարժումներում։ Թովմայի՝ Վահանին վերագրած դերը շատ կարեւոր է եթէ ստոյգ ըլլար պիտի չմոռցուէր, գէթ Փարպեցու մէջ, թող Եղիշէն եւ Յովհն. Պատմաբանը։

Դեռ այսպիսի ուրիշ դժուարութիւններ բնական կերպով կը հետաքրքրեն զմեզ եւ ո՛չ թէ գոհացուցիչ, գէթ հաւանականութեան նշոյլ մ՚իսկ ցոլացընող լուծում մը չենք կարող գտնել մատենագրական ո՛ եւ է անկիւնէ։ Թովմայի պատմածն կեղակարծ է բոլորովին։ Վարդանանց պատմութենէն ի բաց հանուած էջեր կամ տողեր չկան. ընդհակառակն, ինչպէս տեսանք նախորդ գլուխներու մէջ, շատ յաւելուածներ կան՝ եթէ հաւատ ընծայենք Կոնիբերի հաստատուածներուն։

Եթէ խնդիրը Վարդանանց Պատմութեան ձեռագրի ամէն խումբի օրինակներուն իրարմէ ունեցած՝ [illegible], [illegible], [illegible] [illegible] աչքի զարնող խոշոր խոշոր տարբերութիւններու շուրջ դառնար, հասկնալի էր այդպիսի բան մը։ Այդ տեսակ տարբերութիւններ շատ ու շատ են ձեռագիրներու մէջ։

Վարդանանց Պատմութեան մէջ ընդհատ կամ թերի մ'ենթադրելէ աւելի դժուար էր ընդունիլ Բուզանդարանի ամբողջութիւնը. մանաւանդ Փաւստոսի Պատմութեան աներեւոյթ դժուարութիւններն աւելի յոգնեցուցիչ կը թուէին ըլլալ, այդ գործին Դպրութիւններուն խնդիրը լուծելու համար։ Բաւական էր սակայն ուշադիր քննութիւն մը՝ ցուցընելու համար Դպրութիւններուն ամբողջութիւնը (Հմմտ. Գաղտնիք էջ 273-274. — Քննկ. Պատմ. Բ. էջ 66—78)։ Վարդանանց Պատմութիւնն ալ ուրիշ եղանակով չկրնար դուրս գալ ուշադիր քննութեան մը բովէն. միայն սա տարբերութեամբ՝ որ Բուզանդարանի Դպրութիւններուն թիւն ուղիղ շարունակութիւնն է նախորդ երկու պատմական ուրիշ գրուածներու, իսկ Վարդանանց Պատմութիւնն ինքն իր մէջ կ'ամբողջանայ։ 1. Փարպեցու Պատմականնիւթերու ամբողջութիւնը Վարդանանց պատերազմի պարագաներու մասին, նոյն իսկ տեղ տեղ Եղիշէին աւելի, 2. Սեբէոսի ամփոփումը, 3. Ղաւասպի եւ Վնդոյի դէպքը, ուր Ցվհ. Պատմաբան կ'լուէ Վահանի մասին, 4. ուրիշ քննադատական դժուարութիւններ չեն հաստատեր Թովմայի պատմածը "Վահան արիւնահեղին Բարծումայի"։ Ասորի եպիսկոպոսին վերագրուած սրբապղծութեան անհաւանականութիւնը չեշտելու համար խօսք մ'ալ եթէ ուզէի աւելցընել, պիտի երկբայեալ սա հատուածին վրայ. "բայց թէ ո՞ր աղագաւ Պատմութիւն վկայութեան Վահանայ ոչ է գրեալ ի գիրս Պատմագրի (Եղիշէի), առուգապէս առանց յերկբայելոյ ցուցանեմ քում ուսումնասէր քաջահմտութեան":

Թովմա Ղաւասպի եւ Վնդոյի նկատմամբ Պատմաբանէն աւելի ճոռոմ գրչով պատմելէ յետոյ, Վարդանանց դէպքերն ալ ամփոփելով՝ անմիջապէս կը վերջացընէ իւր խօսքը. "Աւելորդ համարիմ երկրորդել զմանրամասն ասացեալսն"։ Բայց ահա նոր

հատուած մը, գրուագ մը Վահան Արծրունւոյ մասին։ Ի՞նչ հարկ կայ նոր գլուխ մը բանալ ըսելու համար թէ ինչո՛ւ Վահանի նահատակութիւնը չէ գրուած, "միանգամայն ասացեալ"ներու մէջ անշուշտ, եւ պնդել թէ "ոփո-փողէ առանց յերկուանալոյ" պիտի ցուցընէ, "ոփո-փողէ յերկուանալու" պարագայ մ'է ասի մեզ համար. այս պնդումը բացայայտ կերպով կը մատնէ թէ Արծրունեաց Պատմիչը "առանց յերկուանալոյ" իր կողմանէ ենթադրութիւններ պիտի ընէ, մեկնութիւններ պիտի տայ։ Եւ Թովմայի ցուցմունքը այնչափ տրամաբանական է, որչափ "առանց յերկուանալոյ" գիտենք թէ մոլեռանդ Ասորի մը, այն աստիճան ոսկեղէնիկ հայերէն գիտէր որ ինչ ինչ պատմածներ ի բաց հանելէ յետոյ՝ երբ գիրքը — հրաշք մ'է բոլորովին չփճացումը — կը վերադառնայ Մոկաց աշխարհը, Մոկացիք հոգ իսկ չէին ըներ կուրծելով թէ "Վորդո-ղեոին ղոյո ոյողէո կանանէ ալ", Վարդապետին գրչէն ելածին պէս մնացեր է գիրքը Վարդանանց Պատմագրին գրիչն ունենալ Աստուծոյ մը համար, կարծել տալու չափ թէ իր խորդո-անը ոսկի գրչի մը որբոգրոծն է, յիրաւի "ստուգապէս առանց յերկուանալոյ" զարմանալի է, եւ "ղոր" այս զարմանալի բանը՝ Արծրունեաց Պատմիչը, "յոյլո-մ տէղո-Ձ" պիտի ցուցընէ։ Բայց ո՞ւր. — Արդեօք Բարծուսմա մ'ալ իր՝ Թովմայի՝ Պատմութեան մէջ խղդե՞ց այդպիսի սրբապղծութեան յայտնութիւնը։

## ԹՈՎՄԱՑԻ ՍԽԱԼՆԵՐԸ

Նոր պատմածներու մասին խօսելու ժամանակ անկարելի է մտադիր չըլլալ Արծրունեաց Պատմչին այն սխալներուն, որոնք կը բողոքեն պատմական ճշմարտութիւններու դէմ։

1. Իբր թէ, ինչպէս տեսանք վերեւ, Բլուրի (= Դվին, Հմմտ. Խոր. Գ, Ը) դէպքէն յետոյ՝ Նախարարք Տրդատի թագաւորական պալատներուն

կամ հովանոցներուն տեղը Վահանին (Արծրունի) կու տան, որպէս զի «տուն թագաւորաց» չինէ հոն. որովհետեւ նախարարք խորհած են «թագաւորացուցանել զնա ի կերպ Հայոց» (sic!)։ Թովմա այս յերիւրուածը հաւանական ընծայելու համար՝ Վահանի բնախօսական եւ հոգեխօսական նկարագիրը կը գծէ իր կողմէն — «զի էր այր որսող եւ ուժեղ, քաջախորհուրդ եւ իմաստնախորհ, խոնարհ, առատաձեռն եւ զուարճամիտ»։ Ստուգիւ թագաւորի վայել նկարագիր մը։ Յետոյ՝ երբ թէ նախարարք չեն համաձայնիր — «ինչո՞ւն» չըսեր — կ՚երթան «առ մեծն Վարդան»։ Վահան ալ կ՚երթայ «յառաջագոյն տալ նմա զվերակացութիւնն Հայոց» (sic!)։

Նախարարք թագաւոր մ՚ընտրելու մտածութիւնն անկարելի էր որ ունենային։ Նախարարութիւնը հակառակ էր թագաւորութեան. ամէն նախարութիւն ինքզինք կը համարէր թագաւոր։ Նախարարք եթէ ուզէին՝ Արշակունեաց գահը կը պահէին։ Անոնք պիտի չհանդուրժէին, — թող միաբան խորհէին այդ մասին — որ Արծրունի մը տիրէր կամ տիրելու յաւակնութիւնն ունենար իրենց վրայ։ Բաց աստի՝ եթէ Վահանի վրայ չհամաձայնեցան, ինչո՞ւ Վարդանը թագաւոր չըրին, այլ վերակացու. կամ թէ վերակացու եւ թագաւոր նոյնիմաստ են արդեօք Թովմայի համար[1]։ Վահան Արծրունին խորապէս վիրաւորուած պէտք էր ըլլալ մեծ նախատինքով մը. այս շատ բնական էր, մանաւանդ նախարարական բարքերու մէջ, ինչպէս ուրեմն «յառաջագոյն» կը վազէ Վարդանի մօտ. — բայց «յառաջագոյն» ըսաւ Թովման՝ թէ «խոնարհ եւ զուարթամիտ» էր Վահան։

---

[1] Այլուր (Բ. Գիրք. Գլ. Թ) ցոյց պիտի տանք՝ թէ Թովմա «սպարապետ, հազարապետ, վերակացու» կը մեկնէ կամ կը գործածէ իր ճաշակին համեմատ. երբեք այս բառերու տեխնիկ իմաստին ուշադրութիւն չըներ։ Իր գրիչը ճոռոմ ընելու ամէն ջանք կը թափէ։

*Այսպիսի երեւոյթ մը՝ անհասկնալի է նախարարական կամ աւատական պատմութեան մէջ։*

*Արծրունիք՝ Պատմութեան ամէն դարու մէջ թագի խնդրացողներ ունին, որոնք հաւատքն ալ կը զոհեն անոր համար։ Մեհրուժանը ծանօթ է. Ճաւասպի նկատմամբ ինքն Թովման կը պատմէ թէ ինչպէս "խորհեցաւ զտիրելն Հայոց„ եւ մազդէական կրօնը ընդգրկեց։ Արդեօք Վահա՞նն ալ այսպիսի տիկ-ր--նի-ն մ'ունեցաւ, որ Թովմա ամէն ճիգ ի գործ կը դնէ, կարծես մեղքը քաւելու համար զայն Վարդանանց մէջ իբր նահատակ ցուցընելու։ Թովման թերեւս մոռցած էր քիչ մը յառաջ իւր Պատմութեան մէջ Մեհրուժանի համար ըսածն. "Ա— — ինչ է ճ—ն ելանէ քերթողական առասպելն որ ասէ. Բ—ղ—մ —ղ—է—+ Ն—է——րէլ խորհեցան, Բ—յց շ—ն+ —ղ —ոլն յ—նյն„ (էջ 66)։*

2\. *Արշակունեաց թագաւորութեան բարձումէն յետոյ, իբր թէ "զտեղի թագաւորութեանն Հայոց հրամանաւ Յազկերտի ունի Մշկան զօրավար պարսից„. — ըստ Վարդանանց Պատմագրին՝ Արտաշէս Գ.ի մերժումէն յետոյ "ի նախարարսն անկանէր թագաւորութիւնն„։ Եւ միայն 449ին էր որ Դենշապուհ եկաւ ի Հայս, մերժել տուաւ աշխարհին հայ հ-ղ-ր-ղեր (= վերակացու) Վահան Ամատունին, եւ անոր տեղ "Պարսիկ ած„, զՄշկան (Նիւսալաւուրտ), որ յետոյ Պարսից բանակը վարեց Վարդանի դէմ իբր զօրավար։ Վահան Ամատունին զինուորական հազարապետ մը չէր. Հայք ունէին իրենց սպարապետը։ Մշկանի գրաւած "տեղի թագաւորութեանն„ ի՞նչ է։ Հայաստան Մ-րզ-ն-երով կառավարուեցաւ. առաջին մարզպանն է Վեհ-Միհր-Շապուհ, երկրորդը Վասակ Սիւնի, ո՞ւր է Մշկան՝ եթէ քաղաքական պաշտօնեայ մըն էր։*

*— Թովման ուրիշ տեղ մ'ալ (էջ 73) Մշկանը իբր Մարզպան կը ներկայացընէ. նոյն սխալը*

կը գործէ Պատմաբանը. (տես վերագոյն)։ Մշկան երբեք մարզպան չէ եղած Հայոց. Նախորդ պատմագիրներու անծանօթ է այս։ — Վնդոյն ալ Թովմայի համար թէ "պարսից մոգպետ„ է եւ թէ Մարզպան (նոյն անդ)։

3. Թովմայի ուրիշ մի սխալը մեր բաղդատած հատուածին սկիզբը, է Պերոզի շփոթումը Յազկերտի հետ (Հմմտ. Զ. Պատմ. Հայ. Բ. էջ 45, 53). — Բրոսէ (Brosset Coll. t. I S.-Petersb. 1871 p. 69, not 1.) աւելի կը կանխէ եւ կ'ուղղէ շփոթը Վռամ-Գորի հետ փոխելով։ Ղաւասպի ուրացումն անպատճառ Յազկերտի (Բ.) օրով է[1]։

## ԳԼՈՒԽ Զ.

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԳՐՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿՆ ՈՒ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ[2]

Վարդանանց Պատմութեան մէջ քանի մը վկայութիւններ կան, ուր Պատմագիրն իբր ականատես կը ներկայանայ։ Այս վկայութիւններն եր-

[1] Թովմայի սխալներն անշուշտ այսչափ չեն իւր պատմութեան մէջ. ուրիշներ ալ կան. մենք միայն նշանակեցինք զանոնք, որոնք Վարդանի կամ Վարդանանց հետ աղերս ունեցող հատուածներու մէջ աչքի կը զարնեն։

[2] Դիտել կու տանք՝ որ այս խորագրի ներքեւ պիտի քննենք այնպիսի աղբիւրներ, որք կրնան Վարդանանց Պատմագրութեան ժամանակամիջոցը մերձաւորապէս նշանակելու կռուան մ'ընծայել։ Այս տեսակէտով անշուշտ մեր ծրագրէն դուրս կը մնան 1. Ս. Գրոց հետ ունեցած նմանութիւնները։ Արդէն Վարդանանց Պատմագրին սկսուածն իսկ նմանութիւն մ'է գործք Առաքելոցի Ա. գլխի 1 համարին. "Բանն վասն որոյ պատուիրեցեր՝ արարի ո՛վ քաջ.„ — "Զբանն առաջին զոր արարի՝ վասն ամենայնի ո՛ Թէոփիլէ„։ Իսկ Սաղմոսի հատուածներ, նմանութիւններ լի են Վարդանանց Պատմութեան մէջ։ Այսպէս նաեւ այն ընդհանուր կարծիքն՝ թէ Վարդանանց Պատմագիրն օգտուած ըլլայ Մակաբայեցւոց նկարագրութենէն (Հմմտ.

կու խումբ կը կազմեն. ուղղակի եւ անուղղակի։ — Ա. ուղղակի վկայութիւններով Պատմագիրն իւր անձը կը շեշտէ. 1. Ընծայականին վերջը (եջ 6)

---

Աշխ. Մովս. Խ. եջ 59—60) ճիշդ է։ Մեր բոլոր մատենագիրք կը հետեւին Ս. Գրոց մէն մի էջին. նոյն իսկ քանի մ'էջ պատմութիւն գրող մը իւր գործին կէսը կը նուիրէ Ս. Գրքի հետեւողութեամբ ազգաբանութիւն մը շինելու Ադամէն կամ Նոյէն սկսեալ։ — Բայց թէ Մակաբայեցւոց թարգմանիչը մեր ուսումնասիրած Պատմագիրն է, հաւանականութիւն չունի. սա յայտնի է որ Վարդանանց պատերազմի ժամանակ (451) Մակաբայեցւոց գիրքը արդէն թարգմանուած էր. որովհետեւ ըստ Պատմագրին, "Վարդան ի յետոյ տուեալ [illegible] Նկարագիրն Մակաբայեցւոց ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն" (Եղիշէ եջ 81)։ Յայտնի է որ Վարդանանց Պատմագիրը, ինչպէս պիտի տեսնենք, իբր գրող Զրդ դարու առաջին քառորդին, չէր կրնար թարգմանիչն ըլլալ Մակաբայեցւոց գրքին. հակառակ պարագային պէտք է ընդունիլ՝ որ Պատմագիրն ականատես էր Վարդանանց Պատերազմին, որ չէր եղած։ Ասկէ զատ Մակաբայեցւոց թարգմանիչը միայն հոգի մը չէ (Հմմտ. Գաղափար եջ 140) որ ի զո՛ր Պատմագրին վրայ բեռցընենք անոնց թարգմանութիւնը։ Այս ենթադրութեան հիմն է անշուշտ Պատմագրին հետեւողութիւնը կամ նմանութիւնները. արդ՝ Վարդանանց Պատմագիրը շատ մը գրուածներու եւ թարգմանութիւններու կը հետեւի, հա՞րկ է ըսել թէ ինքն Պատմագիրն է անոնց հեղինակը կամ թարգմանիչը։ — 2. Եզնիկի հետ ունեցած նմանութիւնները. քանի որ այս գործն ալ մեր Պատմագրին ժամանակամիջոցը նշանակելու չծառայեր. — 3. Ասոնց կարգէն պէտք է համարիլ Սուտ-Կալլիսթենէսի հետ ունեցած նմանութիւններն ալ. — "Վերջապէս այս ամէն խնդրոց ոչ դոյզն կռուան կ'ըլլար եւ այն՝ եթէ ցուցուէր հաւաստեաւ թէ Եղիշէ գործածած է Սուտ-Կալլիսթենէս։ Նկարագրութեանց մէջ նմանութիւնք կան աստ անդ. նաեւ մանր նոյնաբանութիւնք (այսպէս "մեղէն բլուր", "համհարզ". Եղիշէ Պամ. Խ. եջ 84. 17. եւ Պամ. Աղեք. ՄԺԹ. եջ 134. 14։) Բայց այսպիսիք նշանակութիւն չունին. վասն զի ցանցառ չեն այնպիսի դէպքեր, յորում ո՛չ նոյն՝ բայց նման բացատրութիւններ կամ ասութեան եղա-

"Ահա ոչ ըստ կամաց արտօսրալիր ողբովք ճառագրեմք զբազում հարուածս, յորոց պատահեցաւ եւ մեզ իսկ ականատեսք լինելով". 2. Երկրորդ Յեղանակին խորհրդածութեան վերջը (էջ 13—14) "Այլ զանգս իւրեանց պատմեմ, որ ի նմանէ ընդ սուրբ եկեղեցին էանց, եւ ոչ դանդաղիմ. ոչ բամբասեր մտօք, այլ ճշմարտութեամբ զելս իւրեանց ասելով ոչ լռեցից. ոչ ի կարծ ընդդատողացեալ, եւ ոչ ի լուր շփոթացեալ, այլ եւ ինքնին անձամբ անդէն ի տեղւոջն պատահեցի եւ տեսի, եւ լուայ զձայն բարբառոյ յանդգնաբար խօսելով. եւն. 3. Ըստ Յեղանակին խորհրդածութեան վերջը (էջ 76) "Որպէս յայսմ ժամանակի տեսաք աչօք մերովք, զի զնոյն նահատակութիւն նահատակեցաւ եւ աշխարհս Հայոց". 4. Ըստ Յեղանակին առաջին մասին վերջերը (էջ 142). "Սա (Խուժիկ) երկրորդեաց մեզ զամենայն կերպարան". 5. "Տիկնայք փափկասունք, իսկիզը (էջ 155) "զի բազում այն են՝ զոր ոչ գիտեմ, քան թէ գիտիցեմ։ Զի հինգ հարիւրով չափ յոլովք յանուանէ ճանաչեմ, ոչ որ միայն Աւագագոյնքն էին այլ զքաղցուս ի Արեւելոգանոցն անդի". 6. ուղղակի վկայութիւն մ'ալ Միանձանց խրատին մէջ կայ (էջ 163). "վասն այսորիկ եւ ամենայն շարիք եկին հասին յաշխարհս մեր. կենդանեաւ մերով տեսաք զշինականս անձանց

---

նակներ կը գտնենք իրարմէ անկախ հեղինակաց քով։ Այսպիսի մանր նմանութեանց աղբիւրը շատ անգամ նման տեսութիւնք եւ կարծիք եւ երբեմն արտաքին պարագայից նոյնութիւնն է, որ շատ կրնայ պատահիլ մանաւանդ նկարագրութեանց մէջ։ Զունենալով հաստատուն կռուան՝ Եղիշէի քանի մը նոյնաբանութիւնքն զանց ըրինք յիշել հոս, իսկ կարեւոր եւ մեծ կտորներ եւ փոխառութիւն չեղան հնար գտնել" (Հ. Յ. Տ. Աղք. Մոնդ. Ե. էջ 84)։ — 4. Վարդանանց Պատմագրին նմանութիւնները Բուզանդի հետ, որ աւելի հոն կը նմանին իրարու հետ, ուր Մակաբայեցւոց նկարագրութիւնը կը ցոլայ երկուքին մէջ ալ. եւ մանաւանդ տեղ մը։ Հաւանական է, որ Վարդանանց Պատմագիրը գործածած ըլլայ Բուզանդարանը։

մերոյ. եւն։ — Բ. Անուղղակի, լաւ եւս, ընդհանուր ձեւով եղած ակնարկութիւններով՝ Պատմագիրն ինքզինք մատնանիշ կ'ընէ. 1. Գրդ Ցեղանակին սկիզբը (էջ 41) "Թէպէտ եւ ոչ իցեմք բաւական տալ զամենայն զբոլորն, որ անցք անցին անդէն ի կորստեանն ընդ գունդն Հայոց, սակայն եւ ոչ լռել կամիմք ծածկելով զվիշտս նեղութեանն. այլ ասասցուք փոքր ի շատէ, զի ձայնակից լիցուք այնոցիկ, որք պատահեցան նմին ողբոյին„. 2. Դրդ Ցեղանակին սկիզբը (էջ 69), "մինչեւ ցայս վայր ոչ ինչ կարի զանգիտէի պատմել զհարուածս ազգիս մերոյ, որ յարտաքին թշնամեաց ճշմարտութեանն չարաչար յարեան ի վերայ մեր. որք սակաւագոյնք հարին զմեզ, եւ յոլովագոյնք հարեալ գտան ի մենջ, քանզի դեռ եւս միաբանք եւ հաւասարք էաք„։

Պատմութեան ներքին (intrinseque) հանգամանքներուն այս մասը ամէն տարակոյս պիտի փարատէր, Պատմագիրն իբր ականատես, նոյն իսկ իբր մասնակից ներկայացընելով նկարագրուած դէպքերուն, այսինքն՝ բուն աղբիւրի մէջ, եթէ ներքին հանգամանքներուն միւս մասը, այսինքն՝ ուրիշ հեղինակներու հետ նմանութիւններ եւ պատմութեան արտաքին (extrinseque) հանգամանքները, զոր օր. Վարդանանց Պատմագրին անծանօթ մնալը մինչեւ Թովմա Արծրունի, մեր տարակոյսը համոզում չփոխէին ականատեսի խնդրին նկատմամբ։ Այս խնդիրը մասամբ մը շեշտեցինք նախապէս՝ երբ պնդեցինք թէ Վարդանանց Պատմագիրը չկրնար ծանօթ Եղիշէի կամ Եղիշէներու հետ նոյնացուիլ, ոչ միայն պարզ տրամաբանութեամբ մը, այլ մանաւանդ այն զօրաւոր պատճառներով, որոնք կը բռնադատեն զմեզ ականէ բաներ պահանջելու ականատես Պատմագրէ մը։ Այս խնդիրը հօս աւելի ծանր կերպարանք մը կը զգենու։

Ամէնէն նուրբ՝ բայց իրական կասկածի մը շարժառիթն՝ նոյն ինքն Պատմագրին ականատեսի

շեշտերն են։ Ի՞նչ հարկ կայ՝ գրեթէ ամէնն Ցեղանակի մէջ՝ թէ ուղղակի, թէ անուղղակի կերպով մը շեշտել թէ ինքն ականատես է իւր պատմագրած դէպքերուն։ Կարծես դիմացը կասկածող մը կայ, զոր աներկմիտ ընելու ամէն ճիգ կը թափէ։ Փոխանակ այնչափ կրկնութիւններու՝ եթէ Պատմագիրն անգամ մ'իւր անունը դրոշմէր իւր գործին որ եւ իցէ մի անկիւնը, բաւական էր ամէն կասկած եւ ամէն ենթադրութիւն հերքելու։ Բայց թողունք այս ամէնն եւ աւելի լայն շրջանակի մը մէջ քննենք խնդիրը։

Երկու եղանակ կայ ականատեսի առեղծուածը լուծելու, Ա. — որոշել գրութեան ժամանակը, այսինքն՝ գիտել Վարդանանց Պատմութեան նմանութիւններն այն գործերու հետ, որոնց ժամանակը կրնանք մերձաւորաբար ճշդել. ասոնք են. 1. Աբրահամ Խոստովանողի Մարութայ գործերուն թարգմանութիւնը. 2. Փիլոնի գործերուն թարգմանութիւնը։ — Բ. Պատմական դէպքերու աղբիւրները նշանակել. մանաւորաբար Ղազար Փարպեցու Պատմութիւնը։ Փարպեցի ամբողջովին կը պատմէ ինչ որ Վարդանանց Պատմագիրը (Եղիշէ) կը նկարագրէ։

Ա.

1. § Աբրահամ Խոստովանող եւ իւր թարգմանութիւնը։

Նոյն ինքն Վարդանանց Պատմագիրը կը ծանօթացընէ մեզ այն մեծ անձնաւորութիւնը, որ խոստովանողն եղաւ Հայութեան։ Փարպեցին ալ հիացումով կը խօսի Աբրահամու նկատմամբ։ Այս երկու Պատմագիրներէն զատ՝ չկայ ուրիշ մը, գէթ ինձ ծանօթ չէ, որ Խոստովանողին գրական գործունէութեան մասին ծանօթութիւններ տայ. բան մը՝ որուն հանդէպ կը լռեն թէ Փարպեցի, թէ

*Եղիշէ։ Շատ հաւանական է որ Խոստովանողի թարգմանութեանց հրապարակութեան կամ ուսումնասիրութեան առթիւ աւելի մօտէն ծանօթանանք իրին։*

*Աբրահամ երէց, կ՚ըսէ Փարպեցին, "էր ի գաւառէն Տայոց, ի գեղջէն որում անուն էր Զենակս" (Փրպ. էջ 282)։ Սա անշուշտ երիցագոյն թարգմանչաց խումբէն՝ մասնակցած էր Սահակ-Մեսրոպեան դպրոցի գրական աշխատութիւններուն։ Մեզի ծանօթ է աւելի իր կեանքին վերջին մասը, որուն մէջ ի գլուխ հանեց այն ընդարձակ թարգմանութիւնները, որոնցմէ օգտուած է Վարդանանց Պատմագիրը։ Աբրահամ եւ Խորէն դեռ 454ին (Յուլիս) "ի կապանս կային ի Ներքս ի քաղաքին" (Նիւշապուհ)։ Յովսէփի եւ Ղեւոնդի հետեւած էին մինչեւ Նիւշապուհ, երբ Դենշապուհ կամ Վեհդենշապուհ՝ քաղաքէն դուրս անապատ վայրեր տարաւ զանոնք նահատակելու համար մթին եւ ամայի վայրագութեան մէջ։ Խորէն եւ Աբրահամ չուզեցին բաժնուիլ իրենց Վարդապետներէն։[1] — Դենշապուհ բանտեց զանոնք հոն։ Կարգը եկած էր տանջանքի լլկումներն փորձելու այս երկու "համեստագոյն"ներուն վրայ։ Վարդանանց Պատմագիրը յատուկ գլուխի մը մէջ կ՚ընդլայնէ այս անյողդողդ տիպարներուն նկարագիրը (Եղիշէ էջ 142—149. — Հմմտ. վերեւ էջ 106—7)։ Դենշապուհի գազանութենէն հնարուած մահառիթ հարուածներուն տակ անոնք կորուսին իրենց ականջները — "Եւ այնպէս քերեցին, որպէս թէ չէր լեալ ի տեղւոջն" (Եղիշէ), — եւ երբ ապստամբներ արքունի հրամանին դէմ՝ "խեղութեան պատուհասով" աքսորուեցան Ասորեստան՝ "կալ անդ նոցա ի*

---

*1 Փրպ. 282 "Եւ հարցեալ եթէ դուք յո՞ կամիք. եւ լուեալ ի նոցանէ թէ ուր զհօգեւոր տեարսդ մեր եւ զՎարդապետսս տանիք, ընդ նոսա պատրաստ եմք երթալ ի կեանս կամ ի մահ"։*

Հարկի եւ առնել միակութիւն արքունի„ (Փրպ.)։ Ասորեստանցի քրիստոնեայք խանդավառութեամբ ողջունեցին զանոնք "եւ պատուեցին զնոսա որպէս զնշխարս նահատակելոցն սրբոց„ (Փրպ.)։ Հոն խանդով աշխատեցան քրիստոնէից համար, իրենց ժողովրդականութիւնն ընկերական հաւասարութեան ծնունդ տուաւ այն դաժան կլիմային տակ եւ դաժան քաղքերուն մէջ։ Իբր թէ անգութ վայրկեան մ'իր ջլատիչ հեւքը թողած չըլլար իրենց վրայ, զոհողութեան մ'ամէնէն մեծ գաղափարէն մղուած, ծառայեցին հոն երկրի քրիստոնեաներուն եւ Նիւշապուհի մէջ կապուած նախարարներուն՝ Ասորեստանէն օգնութիւն հասցընելով անոնց։ Խորէն՝ խորշակահար կը կնքէ իր անձնանուէրի կեանքը։ Աբրահամ կը շարունակէ շրջիլ իր աքսորավայրի ամէն կողմերը, ուր "ինքն մատակարարէր ըստ իւրաքանչիւր կարօտութեան... Մինչև յերկ[illegible] (Եղիշէ)․ այսինքն՝ 451 վերջերը եւ 452ի սկիզբէն մինչեւ 464, երբ Նախարարաց երաշխաւորութեամբ վերադարձաւ ի Հայս․ անոր ազդեցութիւնը ժողովրդեան վրայ յուզիչ կերպով մը կ'արտայայտէն պատմագիրք։ Եւ ինչպէս կ'ըսէ Փարպեցին, "որոյ տեսն իսկ իւր առանց ամենայն երկբայութեան զկերպարանս հրեշտակի ցուցեալ ծանուցանէր ամենայն տեսողաց զայրն, եւ ձեռնադրեալ յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Բզնունեաց, բազում ուղղութեանց աշխարհին մարդկան լինէր ուսուցիչ, եւ վախճանէր ի նմին կարգի ի բարւոք ծերութեան„[1]։

---

[1] Փրպ․ էջ 317—322․ — Ըստ Վարդանանց Պատմագրին, "ընտրեաց իւր տեղի մի զատ յամենայն բազմամբոխ ժողովրդոց, եւ առաքինի եղբարբք իւրովք կատարեաց զկեանս իւր մեծաւ ճգնութեամբ„ (Եղիշէ, էջ 148)․ Նոյնպէս կը յաւելու "որպէս ոչ խառնեցաւ ի կարգս սուրբ ամուսնութեան աշխարհիս, այսպէս չեմուտ ընդ մարմնաւոր պիտոյիւք ամենայն ապականացու իրաց աշխարհիս

Աբրահամ Խոստովանող իւր աքսորի աղիտաւոր ժամերը ոչ միայն մարդասիրական զոհողութիւններով մեղմացուցած է, այլ մանաւանդ գրական կեանք մը կրցած է շինել անոնցմով։ Աբրահամ Ասորեստանի մէջ կը թարգմանէ ասորերէնէ՝ Նփրկերտի (Մարտիրոսաց քաղաք) Մարութա կամ Մարութաս եպիսկոպոսի վկայաբանական-պատմութիւնը։ Շապուհի (Բ) հալածանքը քրիստոնէութեան դէմ՝ արիւնոտ էջեր գրաւած էր քրիստոնէական տարեգրութեանց մէջ. այս հալածանքներէն անմասն չմնացին Հայք (հմմտ. Բուզ. Դ. ԺԶ. -- Խոր. Գ. ԼԵ), թէեւ սարսափը Պարսկաստանի եւ Ասորեստանի քրիստոնէից մէջ կը սաստկանար։ Մարութաս այս հալածանքի պատկերները կենդանի պահած էր վկայաբանական ընդարձակ շրջանակի մը մէջ։

Հոգեխօսական տագնապներ, մանաւանդ նման ազդակներու տակ, միշտ նոյն կերպով կ'արտայայտուին եւ նոյն կերպով կը յուզեն։ Աբրահամ այս վիճակի մէջ հանդիպեցաւ անշուշտ Մարութասի գրուածներուն. հոն՝ հայ նահատակներուն ճգնաժամերը տեսաւ անշուշտ արիւնոտ պատկերներու մէջ, եւ ինքն արդէն կենդանի-նահատակ մը, խանդաղատանքով եւ պաշտումով փարեցաւ այն գրուածները հայացընելու գործին։ Աբրահամի ձեռնարկը պահանջ մ'էր. արի դէմքեր, անյողդողդ կամքի տիպարներ պէտք էին զօրացընելու, քաջալերելու համար համայնք մը, որ միշտ նահատակ կեանք մը սկսած էր ապրիլ։ Խոստովանողի թարգմանութեան նպատակը տարբեր բան մը չէր կարող

---

(անդ էջ 149)։ Փարպեցու պատմածն աւելի առոյգ կ'երեւի. նա երէց մ'էր, ամուսնացեալ մը։ Վարդանանց Պատմագիրն անոր սուրբ կենցաղն աւելի եւս բարձրացընելու համար՝ կարծես իւր գրչով կը բեկանէ անոր յարաբերութիւնը աշխարհի հետ։ Բզնունեաց Եպիսկոպոսութիւնը իրողութիւն մ'է սակայն։

ըլլալ։ Թո՛ղ որ, ինչպէս պիտի տեսնենք, այս թարգմանութիւնները յափշտակիչ հետեւողութիւն մ'ալ ունեցած են մեր մատենագիրներու ամենէն յափշտակիչէն։

Այս ոսկեղենիկ թարգմանութիւնը՝ այնքան նուիրական թարգմանչին տուած աշխատութեամբ՝ հայկական մատենադարանին չքնաղ հատորներէն մէկը կը կազմէ Արեւելից անունով[1]։ Մեզ հասած պատմական տեղեկութիւններէն յայտնի է որ Աբրահամ՝ 464ին արդէն թարգմանած պիտի ըլլայ Մարութասի գործերը. քանի որ աքսորէ վերդառնալէն յետոյ եպիսկոպոս եղաւ Բզնունեաց եւ խոր ծերութեան մէջ վախճանեցաւ, եւ այս զբաղեցուցիչ պաշտօնին բերմամբ, մանաւանդ ծեր եւ խոնջ, չէր կրնար թարգմանութեան տալ ինքզինք[2]։

Խոստովանողի թարգմանութենէն ձեւեր, դարձուածներ, պատկերներ, նոյն իսկ բառեր, բառական նախադասութիւններ, հանգունատիպ պարագաներու մէջ, փոխադրուած են մեր պատմագրութեանց, զոր օր. Բուզանդարանի եւ Վարդանանց Պատմութեան մէջ։ Քննասէր նշանակած է Բուզանդարանի նմանութիւնները (Քնն. 1887 Ա. Պրակ. էջ 50—57)։

---

1 Թովմ. Արծր. էջ 65. — Թովմա կը սխալի "ի գեղջէ Արածոյ", նշանակելով Խոստովանողին ծննդավայրը կամ պաշտօնավայրը։ Արածեցին ուրիշ Աբրահամ մ'է, որ շատ կանուխ նահատակուեցաւ Սամուէլ Արածեցիին հետ։ Փարպեցին արդէն տեղն ի տեղ կը նշանակէ Խոստովանողին գաւառն ու գիւղը (Փրպ. էջ 282. Հմմտ. Բրոսէ էջ 57, Ծնթ. 1)։ Բրոսէ ուղղելով Թովմայի սխալը, կը յարէ Խոստովանողին համար՝ թէ pour celui-là, on ne sait de quel pays il était; անշուշտ ուշ չէ դրած Փարպեցու տեղեկութեան (Փրպ. նոյն անդ)։

2 Թէեւ աւելի նպաստաւոր է մեզ այս՝ հերքելու համար Վարդանանց Պատմագրին ականատեսի վկայութիւնները եւ Պատմագիրը փնտռելու յետնագոյն ժամանակի մը մէջ։

Գալով Վարդանանց Պատմագրին՝ թէ որչափ օգտուած է Խոստովանողի թարգմանութիւններէն, վճռական բան մ'ըսելու համար, Արեւելեայն ամբողջովին լոյս տեսած պէտք էր ըլլալ։ Այս թարգմանութեանց ամբողջական հրատարակութիւնը միայն կրնայ ցոյց տալ Վարդանանց Պատմագրին նմանողութեան չափն ու եղանակը։ Բայց Արեւելեային լոյս տեսած փոքր մի մասը, կամ "Համառօտութիւն,ը, Թովմայի բացատրութեամբ, այսինքն՝ Շմաւոնի եւ Գոշթազդի վարքը, որ Սոփերք Ի. հատորիկը կը կազմէ, բաւական է գաղափար մը տալու Վարդանանց Պատմագրին նմանելու եղանակին նկատմամբ։

Բաղդատելով Վարդանանց պատմութիւնը Արեւելեայի այս մասին հետ՝ կը գտնենք նմանողութիւն մը, որ չէ՛ տողով ընդօրինակութեան պարագայական տեղերու, այլ՝ մեքենական ասացուածներու, ձեւերու փոխառութիւններ։ Հետեւելու այս ուղղութիւնը կարելի է զգալ Վարդանանց ամբողջ պատմութեան մէջ՝ երկու գործերու անմիջական ընթերցումով։ Բնական է որ այսպիսի հետեւողութեան մ'ընթացքին միեւնոյն բառեր իսկ ընդօրինակուէին առատօրէն։ Շապուհին գազանացումը՝ Յազկերտին վրայ, Մոգերու չնթելու եղանակները՝ Յազկերտի մոգերուն վրայ ձեւուած են աւելի բուռն արտայայտութեամբ մը. Շմաւոնի պատասխանները տանջանքի տագնապներու մէջ, մերթ ողոքիչ մերթ արհամարհոտ ընդլայնումով դրուած են միեւնոյն վիճակի մատնուած հայ եկեղեցականներու բերնին մէջ. իսկ Գոշթազդի դերը՝ Վարդանանց պատմութեան մէջ Մոգպետն է որ կը կատարէ, թէեւ տարբեր տեսարանի մը վրայ. եւն։

Արեւելեայի եւ Վարդանանց Պատմութեան իրարու հետ ունեցած աղերսը նոյն է գրեթէ Արծրունեաց Պատմութեան Վարդանանց Պատմութեան հետ տեղ տեղ ունեցած աղերսին. սա տար-

բերութեամբ՝ որ Թովմա ուղղակի հրապուրուած ոսկի գրքոյկի նկարագրական էջերէն ընդօրինակել կը ջանայ իր նմանութիւնները չմատնելու սին տենչով մը։ Արծրունին կը ջլատուի անկումով մը Վարդանանց Պատմագրին շքեղ բարձրութեան առջեւ. մինչ սա իւրացուցած Արեւելեայի պատկերները՝ զանոնք աւելի եւս կենդանի գոյներով եւ փառաւոր շրջանակներու մէջ կը ցոլացընէ։ Կամ թէ ինչպէս կ'ըսէ Հ. Ց. Տաշեան իր նամակով՝ Վարդանանց Պատմութեան եւ Արեւելիայի մէջ “այն կապակցութիւնը կայ, զոր կը գտնենք Խորենացւոյ եւ Կալլիսթենեայ մէջ, որով ուղղակի Հայոց Պատմութեան մասերուն աղբիւր չէ”։

Եւ յիրաւի, կը կրկնենք, մեր մատնանիշ ըրած նմանութիւններն Արեւելեայի մէջ, ոչ թէ Վարդանանց պատմական դէպքերուն մէկ աղբիւրն ի վեր կը հանէ, այլ՝ մերձաւորաբար կը ցուցընէ այն ժամանակը, ուր Պատմագիրն իր առջեւ ունեցած կրնայ ըլլալ Վկայաբանութիւնը (Արեւելեայն)։ Սխալ է ուրեմն կարծել՝ թէ Արեւելեայն գրեթէ դար մը յետոյ պատահած դէպքերու աղբիւրն եղած ըլլայ։ “Եղիշէի Պատմութեան աղբիւր” խորագրով յօդուածի մը մէջ՝ Պ. Գ. Տէր-Պօղոսեան այսպէս կը կարծէ, երբ կ'ըսէ. “Մենք ոչ մի հիմք չունինք ասելու, թէ այդ խօսքերը որոնք ականատես հեղինակի ժամանակին են վերաբերում, կեղծ են. ընդ հակառակն մեզ յայտնի է որ պատերազմից յետոյ Պարսկաստանի խորքերում եւ 442 թուերին[1] Քուշանաց արշաւանքի ժամանակ կազմած բանակի մէջ կային

---

1 Պատերազմէն յետոյ “442 թուերը” անշուշտ սխալ մ'է պատմական, եթէ տպագրական չէ։ Չենք գիտեր թէ յօդուածագիրն ինչ թիւ կ'ուզէր նշանակել։ Ըստ Եղիշէի “ի վեշտասաներորդ ամի տէրութեան ... խաղայր գնայր յաշխարհն Քուշանաց մեծաւ սրտմտութեամբ ի գործ պատերազմի”։ Յազկերտ Բ. գահակալեց 438 օգոստ. 4ին. 15րդ տարին կ'ըլլայ 453–454։

քահանայներ, որոնցից մէկի մասին յիշուում է, որ "Համառօտութիւն. է գրել. դա Աբրահամ Խոսրովանոցն է քահանայ աստիճանով„ (Հանդէս 1895 Ապրիլ, էջ 113)։ Պէտք է գիտել որ Խոսրովանոց "Համառօտութիւն„ չգրեց։ Առաջին անգամ Թովման է որ կը սխալի երբ կ'ըսէ Խոսրովանոցին համար "շարագրեաց„ կամ "գրեաց„։ Մենք գիտենք՝ որ Խոսրովանոց ոչ թէ գրեց կամ շարագրեց, այլ Նորփմանեց եւ այն թարգմանութիւնը, որ "Համառօտութիւն„ կը կոչուի նոյն ինքն Արծրունիէն, է ծանօթ Արեւելեայէն Շմաւոնի եւ Գոշթազդի վարքը. ինչպէս ինքն Թովմա կը բացատրէ (էջ 80)։ "Համառօտութիւն„ն ուրեմն՝ չէ տարբեր գործ մը, այսինքն՝ Քուշանայ դէմ կազմուած բանակի մէջ գտնուող ականատես քահանայի մը գրուածը՝ հոն տեղի ունեցած դէպքերու նկատմամբ, այլ շատ փոքր մի մասն թարգմանութեան Մարութասի գործերուն։ Եւ եթէ Թովման "շարագրեաց„ կամ "գրեաց„էն յետոյ բացատրած չըլլար թէ ինչ էր Խոսրովանոցի աշխատութիւնը, (էջ 65) կարելի էր պահ մը վարանիլ։ Քանի որ ծանօթ է գործն իր պարունակութեամբ՝ սխալ է հոն ականատեսէ մ'արձանագրուած դէպքերու աղբիւր մ'ենթադրել։

Դիտ. — Արեւելեայ անունով ուրիշ գործ մ'ալ կայ, որմէ Մեսրոպ Երէց (967) ծաղկաքաղ մը կ'ընէ. "Մեծ ցանկութեամբ ծաղկաքաղ արարի զգիրքս զայս ի Հայոց Թագաւորաց յԱրեւելից Գրոց զյաղթութիւն եւ զվատթարութիւն թագաւորացն Հայոց եւ Վրաց, եւ զառաքինութիւն եւ զքանչելիս Հայրապետաց տոհմից սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, եւ զտեսիլ եւ զկտակ սրբոյն Ներսիսի, ի Պատմութենէ եւ յաղթութենէ արքային Մաքինեից։ ... Եւ արդ զայս հաւաքեալ յԱրեւելից Գրոց ի Հայոց Մատենագրացն Պատմութեանց„ եւայլն (Սոփերք Զ. էջ 138–139)։

Թէ ի՞նչ է այս գիրքը, ուր Մամիկոնեանց քաջութիւնը պատմուած է,ստոյգ բան մը չեմ կարող

ըսել, ոչ ձեռագիր, ոչ ալ որ եւ իցէ տեղեկութիւն ունիմ առձեռն։ Պահ մ'ենթադրեցի՝ որ Յվհ. Պատմաբանի եւ Թովմայի նոր պատմածներուն աղբիւրն ըլլայ այն, ուր կրնար Մամիկոնեանց յաջորդական քաջագործութիւններն արձանագրուած ըլլալ. նոյն իսկ իբր հասարակաց աղբիւր մը Փարպեցու եւ Եղիշէին համար։ Սօֆէրէի ծանօթագրողը (անդ, էջ 137) կերպով մը Խոստովանողին կ'ընծայէ այս Արեւելից գիրքն եւ կը նոյնացնէ ծանօթ Արեւելեայն հետ։

Մեսրոպ Երէցի ծաղկաքաղին աղբիւրը ամէն ենթադրութիւն կամ վարկած պիտի հերքէր. բայց կ'երեւի թէ հայ. մատենագրութեան կորուստներուն մէջն է անոր տեղը։ Այս մասին Հ. Յ. Տաշեան գրել կու տայ ինձ թէ — "Միտ դրուի միայն որ այս "Արեւելեան վկայից" պատմութիւնը (այսինքն՝ Խոստովանողինը) գործ չի կրնար ուղղակի ունենալ "Մեսրոպ երիցու" Արեւելեայ պատմութեան հետ, եւ ո՛չ ալ Մամիկոնէից պատմութիւնը կրնար ասկէ քաղուիլ, եթէ այս էր այն "Արեւելից գիրքը" որ աւելի կապ ունի Բուզանդայ հետ։ Թէ ինչ էր ճշդիւ այն "գիրք Արեւելից", տակաւին վերջնականապէս չեմ կրնար ըսել, բայց Մարութաս չէ ապահովապէս եւ ոչ Աբրահամու Նչֆրէփ Բարֆմանօ–Բէ–Նը. միայն թէ Աբրահամու անունն ուրիշ պատմութեանց վրայ ալ կը տեսնուի, ի միջի այլոց Պատմութեանց հաւաքման մը վրայ, որուն վրայ չեմ կրնար աւելի գրել առ այժմ՝ ըստ բաղձանաց ստացչին (— այս ալ տակաւին քննելի է։ —)"։ Իմ ենթադրութիւնս ալ կը խախտէր այս յայտնութեան հանդէպ. բայց ո՛չ թէ սկզբունքով, այսինքն՝ այնպիսի աղբիւրի մը մասին ուսկից օգտուած են Պատմաբանն ու Թովման, որ հաւանաբար Հ. Յ. Տաշեանի ակնարկած "պատմութեանց հաւաքումն" է, այլ՝ Մեսրոպ Երէցի Արեւելից գրքի մասին[1]։

[1] Ուսումնասիրութեան նոր նիւթ մըն ալ կը հայթայթեն Մեծն Ներսէսի Պատմութեան կամ Վարքին տարբեր օրինակները: ՍՈՓԵՐՔ (Ի.) եւ Պատմ. երջանիկ վարուց եւ մահուան... Սրբոյն Մեծին Ներսէսի եռայցյն (տպ. Կ. Պոլիս ՌՃՁԶ = 1737) մէջ խոշոր է տարբերութիւնը: — Ես նոր օրինակ մը գտած եմ Մեծն

## Արեւելեայի եւ Վարդանանց Պատմութեան նմանութիւններէն քանի մը բաղդատութիւններ։

| *Սոփերք (Ի):* | *Պատմ. Վարդանանց (1859):* |
| --- | --- |
| Էջ 9. Մեռցուք միամիտ սրտիւ վասն հարցն օրինաց. | Էջ 51. Պատրաստ եմք ի հալածել եւ ի մեռանել, (եւ էջ 56) վասն սուրբ Եկեղեցւոյ, զոր աւանդեցին հարքն մեր առաջինք. |
| Էջ 9. Ունիմք վկայ զերկինս եւ զերկիր, զի առանց յանցանաց եւ տառապանաց կորուսանէք զմեզ. | Էջ 17. Վկայ են մեզ երկինք եւ երկիր, ո՛չ երբեք հեղգացեալ եմք յարքունի վաստակս.<br>Էջ 67. Վկայ են մեզ երկինք երկնաւորօք եւ երկիր երկրաւորօք, եթէ չեմք ինչ մեղուցեալ ի միտս մեր միանգամ. |
| Էջ 17. Սոքա են քահանայապետք . . . որ քաջալերս տային եւ ի մահ աներկիւղ կոչէին, խրախոյս բառնային եւ ի սպանումն առանց զանգիտելոյ հրաւիրէին, որ ընդ առաջ սրոյ ընթացուցանէին առնաբար, եւ զտէգս նիզակաց առ ոչինչ համարեալ յօժարեցուցանէին. | Էջ 43. Յայնմ ժամանակի սփռեցան եպիսկոպոսքն . . . գրգռեցին ժողովեցին զբազմութիւն արանց եւ կանանց, շինականաց եւ ազատից, զքահանայից եւ զմենակեցաց. խրատ եդին. պնդեցին եւ արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի. |
| Էջ 20. Իբրեւ լուաւ զայս պատգամ արքայն՝ լի եղեւ բարկութեամբ մեծաւ եւ անհնարին ցասմամբ խռովեալ խոցեցաւ. | Էջ 36. Յայնժամ դառնացեալ քան զլեղի թագաւորն, փլուզանէր անդէն ի փորին զծով կամաւոր մաղձոյն իւրոյ. |

*Ներսէսի վարքէն՝ Եղիշէի ցարդ ծանօթ ամէնէն հին մէկ ձեռագրին ետեւը, Բաղէշ Ամրտօլու ձեռագիրներուն մէջ: Մեծն Ներսէսի վարքին այս օրինակն ալ հետաքրքրական է: – Եղիշէի այս հնագոյն ձեռագրին վրայ պզտիկ տեղեկութիւն մը տուած եւ Յիշատակարանն ալ նոյնութեամբ հրատարակած եմ իմ ԺՈՎՔին մէջ (Ազգ. Մատենդր. ԽԵ. էր. 48-50): Ն. Ծ. Հ. 1906:*

*Էջ 21. Զի՞ պիտոյ են ինձ այն կեանք, եթէ մեղօք հասանէ ինձ կեալ. զի ազատքն տեառն իմոյ ի նեղութիւնս անկանիցին, եւ ես ի հանգիստ եւ ի պատիւ.*

*96. Զի՞ պիտոյ է մեզ բնաւ կեանք անցաւոր աշխարհիս, եւ կամ ընդէ՞ր տեսանեմք զարեւ յետ մերոց սիրելեաց.*

*Էջ 22. Յայնժամ առիւծն գազանացեալ եւ ապականիչ մարդախանձ արիւնարբու ծանրագին արեան մարդկան, ցասումն անհնարին նիւթեաց ի սրտին, եւ զգեցաւ իբրեւ զզէն զամենայն մարմնովն, սրել սկսաւ զժանիսն եւ կրճտել զատամունսն յօժարեալ ի սպանանել եւ յարձակեալ ի բեկանել.*

*Էջ 14. Մերթ շանթէր գալարէր իբրեւ զօձ, մերթ պարզէր գոչէր իբրեւ զառիւծ զայրացեալ, գեղոյր, գլորէր, տապալէր երկդիմի մօք, եւն.*

*Էջ 23. Քանզի ցանկացեալ փափաքէր ըմպել զարիւն արդար եւ ուտել անյագ զմարմինս անարատից. գոչէր մեծաձայն բարբառով եւ դողացուցանէր առ հասարակ զամենայն տիեզերս ահեղ պատգամօքն եւ սաստիկ սպառնալեօքն.*

*Էջ 111. Քանզի յոյժ սիրելի էր նմա խռովութիւն արիւնահեղութեան.*

*Էջ 34. Վիշապաձայն որոտալով, գազանաբար գոչելով առ հասարակ դողացուցանէր զտիեզերական իշխանութիւնն.*

*Էջ 63. Եւ որ մեծաձայն բարբառով որոտայր եւ եւս ահագին հրամանօքն զհեռաւորս եւ զմերձաւորս դողացուցանէր.*

*Էջ 26. Զոր ինչ ես քեզ խրատ տամ՝ զայն վաղվաղակի արա. երկիր պագ այսօր ընդ իս արեգական աստուծոյ, եւ կեաս դու եւ ամենայն ժողովուրդ քո.*

*Էջ 126. Այլ արդ եթէ կամիք ինձ լսել ասեմ ձեզ՝ որպէս եղերուք պատճառք ամենայն չարչարանաց մահուն, այսօր լերուք պատճառք կենաց ձերոց . . . երկիրպագանիցէք արեգական . . . արձակիք ի կապանացն եւ ապրիք ի մահուանէ. եւն.*

Էջ 27․ Ո՛չ պարտիմ իբրեւ զմանուկ, այլ իբրեւ զայր կատարեալ արժանաւոր արդեամբք զգործն ցուցանեմ․ ոչ անսամ վնասակար խրատուդ, զի ես քաջ իմանամ քան զքեզ․

Էջ 66․ Ո՛չ պարտիմք իբրեւ զաղայս, եւ ոչ մոլորիմք իբրեւ զանտեղեակս, եւ ոչ խաբիմք իբրեւ զտգէտս, (եւ էջ 127) Մի՛ խօսիր ընդ մեզ իբրեւ զաղայս, զի հասակաւ կատարեալ եմք, եւ գիտութեան ոչ եմք անտեղեակ․

Էջ 27․ Ընսա՛ ինձ արդ եւ պարզ երկիր արեգական, որոյ կենդանի ճառագայթիւքն կեան ամենայն արարածք․

Էջ 34, 128․ Որ ճառագայթիւք իւրով լուսաւորէ զամենայն տիեզերս եւ ջերմութեամբ հասուցանէ զկերակուր մարդկան եւ անասնոց․ — (կամ) ջերմութեամբ իւրով կենդանածնէ զամենայն գոյացեալսն։

Էջ 30․ Ո՞ւր է զի աստուած է արեգակն․ զի ահա քեզ որ մարդ ես եւ նմա (արեգական) հասարակ ետուր զերկրպագութիւն․

Էջ 136–137․ Ահա զերկրպագութիւն նախ ետուր արեգական, եւ զկատարումն երկրպագութեան ի կամս թագաւորին ձգեցեր․

Էջ 36․ Թէ նա աղի ձայն արար խաշինն, զի դառյթ տայցեն եւ դրդեսցին զկնի սպանողացն․

Էջ 46․ Եթէ գոռոզ տուեալ դիմեցին ի մահ իբրեւ խաշինք սուրբ յաղն երկնաւոր․

Էջ 39–40․ Այլ ես որ կոչեցայս ի սմին՝ հաստատուն կացից, եւ յոր հրաւիրեցայս՝ զնոյն եւ կատարեցից արդեամբք․

Էջ 67․ Եւ անդադար խնդրեմք ի բազում ողորմութենէ նորա, զի յորում սկսաք, ի նմին եւ կատարեսցուք քաջութեամբ եւ ո՛չ վատութեամբ, (եւ էջ 158) եթէ որպէս սկսանն քաջութեամբ ի նմին կատարեսցին լի երկնաւոր սիրովն։

Էջ 42․ Գիտասջի՛ր Շմաւոն զի սիրեմ զքեզ, վասն այնորիկ կամեցայ երկայնամիտ լինել եւ տալ խրատ, եւ ոչ կամեցար լսել․

Էջ 125․ Ասէ ցսուրբ եպիսկոպոսն․ պովլութիւն զոր ետու քեզ յառաջ ոչ իմացար զպատիւ անձին քո․

Էջ 50–51․ Նման ցնծան ապաւորք ...
. . . Նման քահանայք լուացան ջրով
. . . Նման աշխատեալք եւ մաշեալք լուեցին
. . . Նման աղաւնք դադարեցին յընչից համարոյ
. . . Նման աղատ կանայք ապրեցան
. . . Նման ծառայք նըրջեցին եւ հանգեան
. . . Նման աղախնեայք բուժեցան
. . . Նման ճգնեալք մխիթարեցան.

Էջ 146–147․ Նման օրհնի աշխարհն ամենայն
Նման օրհնին տղայք նորա յաճումն
Նման զգաստանան երիտասարդք ...
Նման համեստանան ծերք ...
Նման ուսանին իշխանք ...
Նման անկանի խաղաղութիւնն ...
Նման եկեղեցիք պարծին ... եւն
Նման եւ դաշտն Աւարայրի պայծառացեալ ծաղկալից լինի։

Այս բաղդատութիւնը շատ լաւ կը ցուցնէ թէ ինչ է Վարդանանց Պատմագրին Աբրահամու յուղիչ թարգմանութեան նմանելու եղանակը։ Ո՛րչափ կը բարձրանան Պատմագրի գրչին տակ այն գրագիտական ձեւերը, որոնք անդին տափակ մնացած են շատ անգամ. մանաւանդ սա վերջին «Նման, թուումը՝ համակ զգացում, համակ ջիղ եղած է նոյն ինքն Աբրահամու նուիրուած գրուագին մէջ։

«Տիկնայք փափկասունքդի շքեղ ընդլայնումին մէջ կը ցոլան ոչ նուազ շքեղ նկարագրականի մը գոյները (Հմմտ. Սոփերքի 121—122 էջերուն հետ)։

Ապար աշխարհի գենսպետին (մոգպետ) դարձը ճիշդ ձեւուած շինուած է Գողթացի դարձի պարագաներուն վրայ[1]. այնքան ճիշդ են գծերն որ այս

---

1 Ա. Մ. Գարագաշ այս դարձը կը նոյնացընէ Գործք Առաքելոցի (Գլ. ԺԶ) բանտապետի դարձին հետ՝ իբր ստեղծում. «որպէս էր մոգպետն որում յանձնուեցան Ղեւոնդեանք եւ որ, ըստ պատմութեան Եղիշէի, տեսնելով զՂեւոնդեանս բանտին մէջ համակ լուսեղէն՝ հաւա-

հանդիտութիւնը միայն բաւական է ի վեր հանելու այն շփումը Վարդանանց Պատմագրի եւ Խոստովանողի թարգմանութիւններուն, որ գերազանցապէս իւրացումով մը կ'արտափայլի Պատմագրի գրչէն։

Միանձանց խրատին գրեթէ կէսը՝ "Արդ զայս ամենայն գիտելով„ էն, մա՛նաւանդ "վասն այսորիկ եւ ամենայն„ հատուածէն մինչեւ վերջը, կաղապարուած է Սոփերքի ԺԲ յօդուածին վրայ։ Աննմա՛ն նմանութիւն մը։

Հաւանական է որ Արեւելեայի անտիպ մասերուն հետ եւս նմանութեան միեւնոյն եղանակն ունենայ Վարդանանց Պատմագիրը։ Խոստովանողի թարգմանութիւններն եւ ուրիշ գործեր, որոնք նոյն թարգմանչի անունը կը կրեն, աւելի եւս պիտի ընդարձակեն բաղդատութեանց եզրները, երբ ձեռնարկուի անոնց ուսումնասիրութեան[1]։

---

տաց եւ մկրտեցաւ. պատմութիւնն զոր կը ստեղծէ Եղիշէ գործոց առաքելոց բանսապետին պատմութեան նոյնութեամբ„ (քննէ. Պտմ. Բ. էջ 98)։

[1] Այս ուսումնասիրութիւնը մտադիր է ընել Հ. Յ. Տաշեան, որ հակիրճ, բայց կարեւոր տեղեկութիւն մը տալ հաճեցաւ ինձ — "Լաւ գիտած էք որ Եղիշէ կը գործածէ "Վկայից Արեւելեայց„ վկայաբանութիւնքն։ Շմաւոնի, Գոլթագցի վարքերը ձեզ [illegible] մօտ են ամբողջին, որ երկհատոր մեծածաւալ գործք մըն է Մարութայ ասորի եպիսկոպոսին։ Ասորի բնագիրը նոր հրատարակուած է ամբողջովին (մէկ մասը տակաւին թերի)։ Հայերէն ալ ամբողջական թարգմանութեամբ կայ եւ թարգմանիչն է Աբրահամ Խոստովանող. բայց ինչ ինչ մասերը շատ հին ժամանակ կորսուած ըլլալու են, որ Բագրատունեաց ժամանակները քանի մը կտոր նոր թարգմանուած են։ Հայերէնն ամբողջովին կայ ի Փարիզ (որմէ նաեւ ի Վենետիկ) եւ Էջմիածին։ Այս կէտին վրայ առ այժմ այսքան. մանրամասնութիւնքն Հանդէսի մէջ կը դնեմ, երբ կարենամ հրատարակել քննութիւնն։ (— Մտադրս առաջարկ մ'եղաւ՝ ի լոյս հանելու ամբողջը՝ քննութեամբ. այս ալ մէկ երկու տարիէն յառաջ դժուարաւ ի գլուխ կրնայ ելլել։) —„

Ինչ որ ըրինք սակայն մենք այս նկատմամբ՝ բաւական է ցուցընելու թէ Վարդանանց Պատմագիրն առ ձեռն ունեցած է Խոստովանողի թարգմանութիւններն իւր պատմագրութեան ժամանակ, այսինքն՝ թարգմանչին աքսորէ վերադառնալէն յետոյ։ Աքսորէն դարձը կ'իյնայ 464ին սկիզբը։

## 2. § Փիլոնի գործերուն թարգմանութիւնը:

Այս խորագրին ներքեւ նախ կը փութանք երեւոյթ մը դիտել, որ՝ թէեւ մինչեւ հիմայ ուշադրութենէ վրիպած՝ էապէս աղերս մ'ունի սակայն Հայ մատենագրութեան ամէնէն կնճռոտ հարցերուն հետ։ Անկարելի է մոռադիր ըլլալ այս երեւոյթին՝ երբ օտար գրականութենէ փոխառութիւններ կամ նմանութիւններ կը գտնենք մեր մատենագրութեան մէջ։ Ըսել կ'ուզենք՝ երբ այս նմանութիւններու աղբիւրներուն հայացումի ժամանակն որոշուի, ա՛լ դիւրին է հոյլ մը մատենագրական խնդիրներ, ցարդ խնդրական, հաստատուն գետնի մը վրայ դնել։

Ենթադրութիւնը շատ անգամ գաղտնի միտք մը (arrière pensée) պաշտպանելու համար ստեղծուած միջոց մ'է։ Իրականութիւնը կարօտ չէ՛ այս պաշտպանութեան։ Ընդհանրապէս կը կարծուի որ հելլենական մշակութիւնը, մանաւանդ հելլենաբանութիւնը հայերէնի մէջ, քաղկեդոնիկ խնդիրներու անմիջական արդիւքն եղած ըլլայ. այսինքն՝ Հայք այն ժամանակ միայն սկսան հելլենաբանութեամբ լեցուն հայերէն մը գրել, յունարէն գործեր հայացընել յունական կաղապարներու մէջ, երբ

— Ցաւալի է որ անկից ի վեր տասնեակ տարիներ անցան եւ հայ մատենագրութիւնը դեռ բախտը չունեցաւ տեսնելու Խոստովանողի գործին հրատարակութիւնը ո՛ եւ է ձեւի ներքեւ, կամ գէթ ուսումնասիրութիւն մը այս մասին: — Ն. Ծ. Հ. 1906:

*Քաղկեդոնի ժողովին առթիւ աստուածաբանական-փիլիսոփայական հարցեր ստիպուեցան ուսումնասիրել։ Անշուշտ ճշմարիտ չէ այս Քաղկեդոնի ժողովը կանխող ժամանակամիջոցին համար, ուր որչափ ալ յունարէնը տիրապէս մշակուած, տիրապէս բեղմնաւոր, սակայն բարացուցականը չեղաւ յատուկ դպրոցի մը։ Ո՛չ միայն հելլէն, այլ եւ ասորի մշակութիւնը մեծ եւ կարեւոր դեր մ'ունին մեր մատենագրութեան ոսկեդէնիկ դարուն բարգաւաճման մէջ։ Այս օտար մշակութիւնը մնաց միշտ իբր բարգաւաճումի միջոց մը։ Սահակ-Մեսրոպեան դպրոցին վերաբերեալ հոյլ մը թարգմանութիւններ, թէ՛ յունարէնէ, թէ՛ ասորերէնէ, իսկապէս հայերէն են. ո՛չ միայն Հին եւ Նոր Կտակարանը ապացոյց են ասոր, այլ մանաւանդ Եւսեբիոսի Պատմութեան առաջին թարգմանութիւնը, որ ասորերէնէ եղած է Մաշթոցի յատուկ յանձնարարութեամբ (Խոր. Բ. Ժ)։ Իսկ Եզնիկի գրուածն, որուն յոյն աղբիւրներն ալ գտնուեցան, հելլէնաբանութեան նշոյլ մ'իսկ չունի, ինքնատիպ հայերէնի տիպար մ'է այն։ Սահակ-Մեսրոպեան դպրոցի հայական կնիքն անեղծ մնաց քաղկեդոնիկ ժամանակամիջոցի մէջ ալ. եւ այնչափ անեղծ՝ հայական՝ որ հելլէնաբանութեան ներկայացուցիչներէն մին "անգէտ„ կը համարի այս դպրոցն իրենց "որո-ձեւոյն„ (Խոր. Գ. կա)։*

*Հելլէնաբանութիւնը Սիւնեաց դպրոցին յատուկ է, եւ այս դպրոցին կեանքը Քաղկեդոնի ժողովէն շատ յետոյ կը սկսի։ Աստուածաբանական-փիլիսոփայական խնդիրներ այս ժամանակ միայն սկսան գետին մը շինել մեր հողին վրայ՝ երբ Բիւզանդիոնի վերանցական եռացումին միջոցին Հայք չփուեցան անոր հետ։ Ասի Քաղկեդոնի ժողովին ազդեցութիւնն ու արդիւնքն է, բայց Բիւզանդիոնի համար միայն։ Հայք աւելի կենսական, աւելի իրական խնդիրներով զբաղած էին, երբ յոյն պա-*

լատն ու եկեղեցին իրարու գլուխ կը պատուէին։ Երկաբնակներու եւ երկակամեայներու մասւոր յուզումները Զենոնի եւ Անաստասի տիրապետութեան տակ դժուար կրնային ծաւալիլ։ Հերակլի ժամանակ այսպիսի խնդիրներ կրցան ընդլայն եւ ընդերկայն ծեծուիլ, քաշքշուիլ։ Բայց այնքան չհեռանանք։ Սիւնեաց դպրոցը շատոնց հաշակ հանած էր, իւր վարդապետական կամ ռաբունական ամբիոնով. եւ “արտաքին փիլիսոփայական արհեստն„ անծանօթ էր իրեն (Օրբէլ. Ա. ԼԱ)։ Հայ ասպետ մը՝ Սմբատ Բագրատունի՝ աւելի ծանօթ էր Բիւզանդիոնի խնդիրներուն, արտաքին փիլիսոփայական արհեստին, քան յիշեալ դպրոցի նշանաւոր ներկայացուցիչներէն Ստեփաննոս եպիսկոպոսն, որ ապատին աղջեւ տկարացած — “զի ոչ էր հմուտ արտաքին փիլիսոփայական արհեստին„ — հոն՝ Բիւզ.՝ կը նստէր ինքզինք ուսանելու համար “զգիր եւ զլեզու հելլեն եւ լատին ազգին„ (Օրբէլ. նոյն, անդ)։

Սիւնեաց դպրոցին հելլենական մշակութիւնն ուրեմն՝ շատ յետոյ Հայ մատենագրութեան մէջ սկսաւ յատուկ տեղ մը գրաւել։ Հայ մատենագրութիւնը այս դպրոցին կը պարտի ինչ որ փիլիսոփայական թարգմանութիւններ կամ գրուածներ ունի։ Խորենացւոյ մէջ գտնուած այն բազմաթիւ փոխառութիւններու՝ [illegible] աշ[illegible] գոնէ Փիլոնը յետին ժամանակի՝ այսինքն Սիւնեաց դպրոցի թարգմանութիւններէն է։ Նոյն ինքն Խորենացւոյ մատենագրական քննութեան արդիւնքն է որ այս ժամանակը կ՚որոշէ։ Կարրիէր իբր արդիւնք իւր հետազօտութիւններուն Երդ դարու գործ նկատելով Խորենացին, անվիճելի կ՚ընէ հելլենականութիւնը իբր սեփականութիւն՝ Զրդէն Էրդ դար՝ Հայ մատենագիրներու գրական արտադրութիւններուն (Հանդ. Ամս. 1895 Ապրիլ, էջ 115)։

Կոնիբեր՝ Դաւիթ Անյաղթի գործերու քննութեան մէջ հակառակ կարծիքը կը պաշտպանէ, նոյն

իսկ Արիստոտէլի ճառերուն սորկական թարգմանութիւնը Դրդ դարու գործ համարելով — «Քանի մը հայազգի քննադատք կ'առարկեն թէ թարգմանութեան այս յունամոլ ոճն իրենց հելլենական կրթութեան յետնագոյն ժամանակի արգասիքն է. ուստի եւ Արիստոտէլի թարգմանութեանց ժամանակն այս պատճառաւ կը դնեն Ե դարու բուն վերջերն կամ Զ դարու սկիզբն։ Սակայն ես այս ցուցման մէջ ստիպիչ ապացոյց մը չեմ տեսներ։ Ընդհակառակը պէտք ենք նկատել որ անկախ ոճն աւելի ուշ ժամանակի զարգացումն ըլլալու է այս երկու ոճերու մէջ. զուտ գրական պատճառներով աւելի միտեալ պիտի ըլլայի այս թարգմանութիւնքս վերագրել Պրոյերեսիոսի ժամանակին„ (sic) — Աշխ. Մատ. Ժ. § 3 —։ Գրական պատճառներ երբեք չեն ստիպեր միտիլ հնագոյն ժամանակի մը վերագրնելու այս թարգմանութիւնները. որովհետեւ միեւնոյն գրական պատճառներ Ս. Գրքի եւ այլ հնագոյն թարգմանութեանց նկատմամբ ալ ստոյգ պէտք է ըլլային։ Այս չըլլար։ Անկախ ոճն աւելի հին է. ճշդութիւնը՝ թարգմանող լեզուի օրէնքներուն հետ օժտուած է։ Օտար բնագրի մը նախադասութեան ձեւերը պահել, հեղինակին խօսուածքին շեշտերը զգացընել թարգմանող լեզուին մէջ եւ նոր բառեր դարբնել այս նպատակին համար, յետին ժամանակի մտածում մ'է այս։ Նախնիք աւելի մեկնող են թարգմանութեան մէջ. իսկ մեկնութիւնն անկախ ոճ կը պահանջէ։ Հելլենաբանութեամբ լեզուն գրուածներու նպատակն է կարծես հայերէնը հարստացընել, ո՛չ միայն նոր բառերու դարբնումով՝ այլ մանաւանդ գաղափար բացատրելու յատուկ դարձուածներու իւրացումով։

Ասոնցմէ են՝ իբր ներկայացուցիչ հելլենաբանութեան՝ Անյաղթի թարգմանութիւնները, որոնց ժամանակը մօտաւորապէս կրնանք շօշափել, միան-

*գամ ընդ միշտ ընդունելով թէ Էակաց Գիրքը (= Գիրք Սահմանաց) թարգմանուեցաւ 578ին*[1]*։ Թէ Էակաց Գիրքը նոյն է Սահմանաց Գրքին հետ, այս տեղ հարկ չկայ երկարօրէն ապացոյցներու*[2]*. բայց ամէն պարագայի մէջ չէ այն ողորմելի գրուածը, որուն իբր Էակաց Գիրք՝ կարեւորութիւն տուած է Կոնիբեր, եւ այն՝ «յանախան ողբերգէ մը թարգմանուած»* (sic) — *Աղթ. Մտդ. Ժ.* § 12 —*։ «Բայց զարմանալի է», ինչպէս իրաւամբ կը հասկա-*

---

1 *Հնոց եւ Նորոց էջ* 86—87· *«Իբրեւ Աստուած հաստոյց զմեզ ի ժամանակս այս, յորում Հ. եւ Ջ.* (627 *կամ* 629) *էր թուականն Հայոց։ Եւ (ես?) Փուրգէն քարտուղարս Հայոց մեծաց եւ սուրբ թագաւորացն Պալյապաթար ստացող եղէ գրոցս այսմ։ Բայց զարմանալի է ի նախնի յիշատակի գրոցս այսմիկ. Ի/թէ գրեցաւ Գիրք այս Էակաց հրամանաւ թարգմանեալ ի Յունաց ի Հայս Տեառն Յովհաննէսի Հայոց կաթուղիկոսի Գաբեղինեցւոյ ի ԻԷ* (578) *թուականին Հայոց։ Վկայէ այսմիկ Սարգիս Արշարացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբ»։ — Հմմտ. Աղթ. Մտնտ. Ժ. էջ* 10–17. — *եւ* 55–57 *եւ հետեւ.։*

2 *Հմմտ. «Դաւիթ Անյաղթ Փիլիսոփայի Ներգինացւոյ Գիրք Էակաց։ Որոց բանք են հարցմունք եւ պատասխանիք ի վերայ Տրամաբանական ուսմանց» գլխին հետ՝ Ջուղայեցի Սիմէոն Վարդապետի Տրամաբանութեան (Տպ. Կ. Պոլսի ՌՄԽԳ* (= 1794)*, որ համառօտագրութիւնն է Սահմանաց գրքին, եւ կը գրուէ Տրամաբանութեան* 206–221 *էջերը։ — Այս կը ցուցնէ որ նոյն իսկ հարիւր տարի յառաջ Էակաց Գիրք ըսելով Սահմանաց Գիրքը կը հասկընային։ — Այս համառօտութեան կը յաջորդէ «Ներածութիւն Պորփիւրի», յետոյ «Պէրիարմէնիաս» (= Յաղագս մեկնութեան) գրքերը։ Այս կարգն ալ, որ ճշդիւ կը համաձայնի տպագրութեանց կարգին, կը ցուցնէ թէ Էակաց Գիրք ըսուածն է Սահմանաց Գիրքը։ — Հաւանաբար Սահմանաց Գրքին մէջ գործածուած Էակ բառերն է որ այն անունով փոխանակուած է. արդէն Սահման ալ գրքին բնութենէն առնուած է։ Հմմտ. Վարդան էջ* 17 *«Եւ Դաւիթ Փիլիսոփայ զգիրսն Սահմանաց եւ Էակաց», իբր միեւնոյն գործ յիշած է։*

ծէր Գուրգէն քարտուղար՝ գրքիս սատացողը՝ թէ ինչպէս այս խեղճ գրուածը, որ զուտ Հայ գաղափարողի մը յիշատակարանն է, կրնայ յունարէնէ թարգմանուած ըլլալ կամ էակաց գիրք համարուիլ։ Աւելորդ է սխալի կամ շփոթի վրայ կանգառնուլ։ Անուշադրութեան գիտերը մատենագրական դաշտին միօրեայ ծաղիկներն են. անպատարելու բնութիւն մ'ունին լոկ։

Գալով բուն խնդրին՝ Հելլենաբանութեան՝ ալ ապահովապէս կրնանք 578ին շուրջ դառնալ։ Եր^{րդ} դարու վերջերն ու Զ^{րդ}ին սկիզբներն են որ կը սկսին բուն հելլենաբանութեամբ բարացուցուած թարգմանութիւններ։ Առնցմէ կարելի է համարիլ Փիլոնի թարգմանութիւնները։

Փիլոնի այլաբանական ճաշակը, նրբամտութիւններն արեւելեան մտքերու աւելի կը ժպտէր։ Այս առատ գրողին բոլոր գործերը՝ սկսեալ Բ^{րդ} եւ Գ^{րդ} դարերէն, լափուեցան Արեւելեան եւ Արեւմտեան եկեղեցիներու հայրերէն[1]։ Իւր ազդեցութիւնը, կամ գէթ իւր՝ իրեններուն հանգէտ գաղափարներուն ազդեցութիւնը զգալի է Պօղոսի վաւերական թուղթերուն մէջ...։ Այն ատենէն

---

[1] Եւսեբիոս Պպ. Բ. գլ. ԺԷ. կը խոստովանի թէ ինքը քաղուածներ կ'ընէ Փիլոնի գործերէն, եւ դիտել կուտայ թէ իւր քաղուածներն նման "Վարուց վարդապետութեան առաքելոցն" են -- "Եւ բազում ինչ այլ գնոցանէ ի յիշատակեալ գիրս իւր աւանդէ (Փիլոն). [illegible] ։ Այս եթէ ումեք ոչ երեւեսցի ասացեալս նման վարուց վարդապետութեան առաքելոցն, այլովք քան զորս դայժմ ասացի՝ մարթասցէ ով կշռել, եւ հաւանեսցի այնպիսին ի բանից անտի նորա որ զհետն գայ, եթէ [illegible] (Փիլոն)։ եւ առանց երկմտութեան ընդունիցի զառ ի նմանէ վկայութիւնս"։ Ինչուշս Եւսեբիոսի պէս բոլոր եկեղեցւոյ հայրերէն անոնք, որ Փիլոնէն յափշտակուեցան։

Փիլոն քրիստոնէական դպրոցին մէջ պատիւ գտաւ. օրինակեցին իւր գործերն իբր եկեղեցւոյ Հայր մը. նոյն իսկ պաշտպանուեցաւ թէ նա քրիստոնեայ մ'եղած ըլլար. Հարց եղանակով շինուած ճառի (homélie) տիպարը, Աստուածաշունչի հատուած մ'իբր բնաբան առնուլ եւ բարոյական ընդլայնումներ ընել, մինչեւ Փիլոն կը վերանայ։ Քրիստոնէական աստուածաբանութիւնը՝ հելլենական աստուածաբանութեան ժառանգորդն ու շարունակողը՝ անոր շատ բան կը պարտի, մասնաւորաբար այլաբանութեան համար իւր ունեցած անկարգ ճաշակը» (Պոմ. Իսրայլ. Ե. էջ 363–364)։

«Փիլոն համոզուած թէ Ս. Գիրքը կը պարունակէ ամէնէն բարձր ճշմարտութիւնը, նկարագրական իմաստին ետեւ (զգալի կողմը) կը տեսնէ միշտ հոգեւոր իմաստ (իմանալի կողմը)։ Խորանն ու տապանակը հայեցողականութեան մտաւոր եւ անտեսանելի առարկաները կը նշանակեն. Եդեմ՝ Աստուծոյ իմաստութիւնն է, չորս գետերը՝ չորս առաքինութիւններն են, որոնք այն իմաստութենէն կը բխին։ Երկինքի անձրեւը՝ որ երկիրը կը բեղմնաւորէ՝ իմացականութիւնն է, որ՝ իբր աղբիւր մը կ'ոռոգէ զգայարանները, եւն» ....։

«Սիրտը Փիլոնի քով միտքէ աւելի կ'արժէր։ Բարւոյն սէրը կը զեղու անոր մէջ. իւր հրէականութիւնը բաց է եւ տիեզերական։ Իւր փիլիսոփայական լեզուն յորդ է եւ հնչուն։ Առաջին անգամ ինքն եղաւ որ, միանգամայն Յոյն եւ Հրեայ, հիանալի բառեր խօսեցաւ՝ շատ գեղեցիկ բաներ բացատրող, եւ որոնք մնացած են մարդկութեան կրօնական աւանդութիւններուն մէջ» (Պոմ. Իսրայլ. Ե. էջ 351—352)։

Ահա այն գաղտնիքը, որով անկարելի կը թուէր ցարդ հասկնալ թէ ինչո՞ւ նախնիք Փիլոնի գործերը թարգմանեցին։ Եւ ամէնն այս չէ։ Այլաբանութիւնն արեւելեան երեւակայութեան հիմն է.

Փիլոնի այլաբանութիւնները շատ պիտի սիրուէին հօն, եւ անոր այլաբանական նրբամտութիւններն աւելի եւս պիտի բոցավառէին, պիտի փայլեցընէին արեւելեան մատենագիրներու երեւակայութիւնը։

Հայ մատենագիրներու գրչին տակ Փիլոնի այլաբանութիւնները կամ նկարագրական նմանութիւններն ուրիշ բարձրութեան մը հասած են[1]։ Հիացումը դէպ ի այն հզօր միտքը, անոր արտադրութիւնները հայացընելու մղում մ'եղաւ անշուշտ եւ ծնունդ տուաւ այնքան դասական կերպով թարգմանութեան մը։ Ուրիշ խօսքով, Հելլենականութիւնը բնագիրներն իրենց հարազատութեան մէջ ցոլացընելու տենչին արդիւնքն է։ Այս տենչը նոր բառերու ընդարձակ դարբնոց մը ստեղծեց։ Անյաղթի գործերուն թարգմանութիւններն եթէ Կոնիբերի նշանակած հնութեան վերանային՝ յաջորդ թարգմանութիւններն այս դարբնոցի ազդեցութենէն զերծ պէտք է մնային։ Այս ստոյգ պիտի ըլլար եթէ Հ. Մ. Աւգերի հետ (Փիլոնի Յռջ. յօդ. Թ.) “Բաղձայի մանաւանդ թէ յանդգնէի ըսել թէ ինքն Ս. Ղեւոնդ, որ Խորենացւոյն երիցագոյն ընկերակիցներէն մին էր, եւ զորս թարգմանչաց տիտղոսով կը յիշատակէ նա, բովանդակ Փիլոնեան գործերուն բուն թարգմանիչն եղած ըլլայ. այլ զայս եւ այսպիսիները ժամանակը պիտի

---

[1] Հ. Մ. Աւգեր (Փիլոնի. Յռջ. Յօդուած Ժ. տպ. 1829) այս երեւոյթը կը վերագրէ հայկական սկզբնագիր (բուն նախնական) օրինակի մը հետեւողութեան — primigenio exemplari Armeniaco adhaerentes — իբր թէ ոչ-սկզբնագիր օրինակներ զգալի աղաւաղումներով աղեղծուցած ըլլային բառերը։ Ընդհակառակը բաղդատութիւնները կը ցուցընեն՝ որ Հայ մատենագիրք իրենց փոխառութիւնները, նոյն իսկ ամենէն յունամոլ թարգմանութիւններու մէջ, թէ բառ, թէ՛ ասացուած կը գեղեցկացընեն, կ'ազնուացընեն, ինչպէս արդէն ինքն՝ Հ. Աւգերն ալ գրած է այս, բայց այս ենթադրութիւնն ընելէ անմիջապէս յառաջ։

յայտնէ»։ (Հմմտ. անդ Յօդ. Դ. եւ Զ. — Նոր Հայկ. Բառ. էջ 20)։ Ս. Ղեւոնդ շատ հեռի կը մնայ այսպիսի գործերէն։ Եթէ արդի հետազօտութիւնները՝ Խորենացու նկատմամբ՝ Հ. Աւգերի ժամանակ եղած ըլլային, տարբեր պիտի մտածէր նա։ Բայց իւր գուշակութիւնը եղած է, ժամանակը յայտնած է զայս եւ դեռ պիտի յայտնէ։ Միայն դիտելու է որ, ստուգիւ, Փիլոնի թարգմանութեանց ամբողջը միեւնոյն հելլենաբանութիւնը չունի։ Անկէ կը հետեւի որ կամ տարբեր գրիչներէ կամ տարբեր ժամանակներու մէջ թարգմանուեցան անոնք։ Հաւանաբար ոչ այս՝ ոչ այն։ Փիլոնի հայ թարգմանութեան լոյս տեսած վերջին խումբը (1892 տպ. Վենետիկ) բաւական կը տարբերի առաջիններէն (1822 եւ 1826)։ Ասի նիւթի պահանջն է միայն։ Տեսական կեանքի եւ այլ գրութեանց ոճն էապէս կը տարբերի միւսներէն. հելլենականութեան ծնունդ տուող տենչը հոն աւելի եւս երեւան կու գայ[1]։

Ա՛լ չենք կենար այս կէտին վրայ, որ թերեւս աւելորդ կը համարուի, բայց սերտ աղերս մ՚ունի մեր խնդրին հետ։ Վարդանանց Պատմութեան մէջ ընդելուզուած Փիլոնեան խորհրդածութիւններ, մանաւանդ Միանձանց խրատին մէջ եղած բառական ընդօրինակութիւններ եւ Փիլոնէն փոխառութիւններ ներկայացընող ժամանակակից ուրիշ գործեր, ինչպէս Խորենացին, Փիլոնի թարգմանութեան ժամանակին հետ կը կապուին առաւել կամ նուազ հեռաւորութեամբ, հետեւաբար եւ Սիւնեաց Դպրոցին հետ, որուն բուն ծաղկումը կամ

---

1 Այս տեսութեամբ կարելի է մեկնել նաեւ Դաւթի անունով հասած գործերուն նուազ կամ բուն հելլենականութիւն ներկայացընող մասերը, եւ ո՛չ թէ մի մասը Ե՛րդ եւ միւսը Է՛րդ դարու գործ համարիլ. այսինքն՝ պէտք է թարգմանութեանց սկիզբը Զ՛րդ դարը նշանակել. Հմմտ. Աղք. Մտնք. Ե. § 30։

բարգաւաճումը Երդ դարն է։ Փիլոնի գործերուն թարգմանութիւնը սակայն ճիշդ այն դարուն մէջ պիտի չնշանակենք. բայց ոչ ալ կրնանք 578ի, այսինքն՝ Եոդ դարու վերջերէն եւ Զրդի սկիզբներէն առաջ կամ ետեւ անցնիլ. գէթ Փարպեցու աղերսը (Փարպեցի՝ որուն մէջ ալ կան Փիլոնեան ձեւեր) Վարդանանց Պատմութեան հետ, ինչպէս պիտի տեսնենք, հաստատուն կռուան մը կ'ընծայեն ասոր։

Վարդանանց Պատմութեան մէջ Փիլոնէն առնուած նմանութիւններ կան[1]. այս շատոնց դիտուած է։ Առաջին դիտողն է Հ. Մ. Աւգեր, որ Փիլոնի հայ թարգմանութիւնը լատիներէնի վերածելով Եւրոպայի ծանօթացուց (Հմմտ. Պտմ. Խորոյլ. Ն. էջ 57. ծնթ. 1)։ Հ. Աւգեր՝ բաց ի Վարդանանց Պատմագրի նմանութիւններէն (Ցոյց. յօդ. Թ), նշանակած է նաեւ Խորենացւու (յդ. Է), Մամբրէի (յդ. Ը) նմանութիւններն ալ, զանց ընելով (յդ. Ժ) Անանիա Շիրակացին, Օձնեցին,

---

1 Մեր Մատենադարանի ձեռագիրներու մէջ համառօտ ճառընտիր մը կայ. ընտիր հաւաքածոյ մը քրիստոնեայ եկեղեցւոյ Հայրերէն. մէջը Հայոց Զաքարիա կաթողիկոսի գրուածքներն ալ կան, ինչպէս նաեւ "Եղիշէի Հայոց Վարդապետի" ընծայուած խաչելութեան եւ Թաղման ծանօթ գրուածներէն երկու համառօտուած գլուխ։ Այս ձեռագրին սկիզբը քանի մը պարապ թուղթ թողուած է, որոնց մէկ մասին վրայ տարբեր գրչէ մը ճառընտրական գրուած մ'ընդօրինակուած է՝ կիսատ մնացած։ Այս գրուածին լուսանցքին վրայ երեք տեղ Եղէշ. նշանակուած է իբր կոչում այս մատենագրի գործերէն։ Վերջին կոչումը, "Ու դողան քան զնապաստակ, զոր զօղակ կոչեն քերթողքն. որպէս ասէ Փիլոն "ոչ վայրապար այլ վասն զօղելոյն եւ վասն առաւել զարհուական (զարհուրական) եւ երկչոտ բնութեանն", եւ այլն։ Հաւանաբար "Արարածոց մեկնութիւն" կոչուած գործէն է այս կոչումը։ Անշուշտ կարեւոր նշան մ'է այս Եղիշէի Փիլոնի հետ ունեցած սերտ կապը ցուցընելու, զոր հիներն ալ ճանչցած են,

Թովմա Արծրունին, Անձեւացեաց Խոսրով եպիսկոպոսն, Գ. Մագիստրոսն, Ն. Շնորհալին, Լամբրոնացին, Ս. Շնորհալին, եւն, որոնք օգտուած են Փիլոնէն։

Մեր Պատմագրին նկատմամբ շատ իրաւամբ կ'ըսէ, "իբր ամենայատուկ կը նկատեմ ես, որ Ս. Եղիշէ Փիլոնի խօսելու ոճով լցուած էր, միանգամայն անոր գործածած սկզբունքներով„. իւր դիտած նմանութիւններն են.

| Փիլոն. | Պատմ. Վարդանանց. |
| --- | --- |
| "Որք միանգամ զմեծ թագաւորն ոչ տեսին, նախարարքն՝ եւ որ ընդ նովաւ՝ դնեն զառաջնոյ թագաւորին զարժանաւորութիւն„ (Լէհ. Թ. 34). | "Որոյ ո՛չ է տեսեալ զմեծ թագաւորն, պատուաւորացն մատուցանէ զերկրպագութիւն„. |
| "Ջուգութիւն արդարութիւն ծնաւ ... Անզոյգն աղբիւր է չարեաց„ (Լէհ. Գ. 49 եւ ՔՀն. ԺԱ. եւն). | Ջուգաւորութիւն է մայր բարեաց, անզուգութիւն ծնող չարեաց„ (էջ 6). |
| Բնութիւն մեր ղօղել եւ թաքչել սիրէ (Լէհ. Դ. 1). | Բնութիւնն մեր ղաւ ղակ է սիրէ ծածկել զփրկութիւն (էջ 159. Խրատ. Միանձանց). |
| "Ինքն իւր է տեղի եւ ինքն ինքեամբ լի եւ բաւական, Աստուած„, եւն (Այլոց.)[1] | Ո՛չ սկիզբն առեալ յումեքէ լինել Աստուած, այլ ինքն ինքեամբ մշտնջենաւոր, ո՛չ ի տեղի ուրեք, այլ ինքն ինքեան տեղի (էջ 23). |

---

[1] Հ. Աւգերի նշանակած շատ ընդարձակ հատուած մը, բժշկի նկարագրութիւնը, Ղեւոնդի բերանը դրուած, չենք ընդօրինակեր. Հմմտ. Ցղփ. Նախ. էջ 39 եւ Եղիշէ էջ 134։ — Հ. Գար. Զ. Ճշդութեամբ դրած է այս նմանութիւններն կամ փոխառութիւններն իւր Թարգ. Նախ. գործին "Փիլոն Հեբրայեցի„ գլխուն մէջ. եւ էջ 743 "իմաստի հետեւողութիւն մը„ կը նշանակէ Եղիշէի մէջ. — Փիլոն կ'ըսէ. "ո՞չ էր բաւական արեգական ծանուցանել զկառավարն, յորժամ չափաւոր ունելով զընութիւն՝ յա-

Հ. Աւգեր կը յարէ ասոնց՝ "Այս ամէնը աւելի լաւ կը հասկնան անոնք, որ Փիլոնի հայերէնը կ'ընթեռնուն„ (յդ. Թ.): Եւ յիրաւի ընդարձակելով այս բաղդատութեան եզրները, ոչ միայն կը հասկնանք թէ ինչ կերպով Վարդանանց Պատմագիրը կ'օգտուի Փիլոնէն, այլ մանաւանդ կը տեսնենք թէ այս եզրներուն մէջ կը մտնեն 1. Պատմութեան ուրիշ մասերը, 2. Միանձանց խրատը եւ 3. Թաբոր լերին նկարագրական մասերուն (որ մեր գործածած տպագրութեան 236—239 էջերը կը գրաւէ) ինչ ինչ կէտերը:

Մարութասի բացատրութիւններն եթէ իրենց վկայաբանական շեշտերու յորդումով հրապուրած են մեր Պատմագրին սիրտը, Փիլոնի այլաբանական վերանցումները, հայեցողական կեանքի մը զմայլումին մէջ թաթխած են անոր սիրտն ու միտքը միանգամայն: Այս յափշտակութեան մէջ ալ իր գրական բարձրութեան վրայ ամուր կանգնած է Բանաստեղծ պատմիչը:

"Տիկնայք Փափկասունք„ նկարագրականին մէջ Մարութասէն յետոյ (տ. վերը, էջ 146—49) Փիլոնի ազդեցութիւնն ալ շօշափելի է: Քանի մը բացատրութիւններ ուղղակի կը մտնեն Եբրայեցի հայեցողականը: — "Ամենեքեան (հայ կանայք) միահամուռ զերկնաւոր Նախանձն բերելով, ոչինչ ընդհատ

ներեւոյթ ուրումն յաջոյ տեսեալ տարածանի յամենայն աշխարհ: Ցայն որ կիզուն բնութիւն՝ ի ներքս ի սկուտեղն արգել փակ, եւ զայն որ չեռուցանէն՝ զպէտսն ի ճառագայթիցն ոռոգանէ: Իսկ սակայն ճառագայթքն արուեստագիտին Աստուծոյ՝ անբոլորելի սկուտեղն լցեալ բոլորեն՝ շուրջ զաշխարհաւ զճառագայթսն ձգելով„: Իսկ սրբոյն Սահակայ խօսքերն են. "Մասն է (արեգական) աշխարհիս արարածոց... ի ձեռն օդոց հրամանաւ Աստուծոյ տարածանէ զճառագայթս իւր, եւ հրային մասամբ ջեռուցանէ զամենայն գոյացեալս իւրոյ կայանին... քանզի իբրեւ յաման արկեալ է զլոյս ի գունդ նորա, եւ ի վայր կոյս հեղուբերանացեալ ի պէտս ներքնոցն վայելչութեան„:

երեւեցան յայնցանէ՝ որ ոչ ճաշակեցին զաշխարհս„ (Եղիշէ էջ 155), գերազանցապէս իւրացումն է Փիլոնի աս հատուածին. "Քանզի եւ կանայք ըստ սովորութեան լսեն ընդ նոսա եւ նախանձին զնոյն նախանձ, եւ զնոյն կամս յինքեան բերեն„ (Փիլ. Ց. Տես. էջ 14)։ Պատմագրին ակնարկած կանայք, "որ ոչ ճաշակեցին զաշխարհս„, Փիլոնի նկարագրած Թերապեւտներն են։ Ցետոյ՝ "Շաբաթամուտն ըստ կարգի միայնակեցաց որ յանապատս բնակեալ են„ (Եղիշէ, էջ 156), ուղղակի ակնարկութիւն մ'է Թերապեւտ անապատականներու. իսկ Շաբաթամուտն անոնց Եօթներեակն (շաբթու վերջին օրն) է, համախմբութեան օրը. — "իսկ յեւթներորդումն ի մի վայր գան ի հասարակ ժողովարան„ եւն. (Փիլ. նոյն անդ)։

*Փիլոն.*

Էջ 15 "ընդելեալք ասեն զճպռանցդ ազգք, աւդով կերակրիլ, երգոյն՝ որպէս կարծեմ, զկարաւտութիւն դիւրաւ անցուցեալ„.

Էջ 25—96 "Եւ մեկուսի զատ՝ կանանցն յաճեակ կողմն, զոր կարծեցէ ոք անկողինս... եւ պարեխք են դուզնաքեայ նիւթոց, յորոց կարի գձուձ գետնաստորս ի զաւաբին պրուսյն„.

"Եւ սպաս պաշտաման կրեն ոչ ի ծառայից եւ յաղախնեաց„ [այս տողը շատ պե-վեցիկ կ'ընդլայնէ Վարդանանց պատմագիրը].

*Պատմ. Վարդանանց.*

Էջ 157. "Անարիւն ճգնութեանց նմանեցին, որ երգոցն քաղցրութեամբ առանց կերակրանաց կեան, եւ կենդանի են միայն զօդն ծծելով, զանմարմնոցն բերեն զնմանութիւն„.

Էջ 155. "Եւ միապէսզգեստ նախշունք, երկոքեան, ոչ ոք ումեք անկողնարկ լինէր, քանզի եւ չճանաչէին իսկ զխոտեղէնսն ընտրել ի միմեանց, մի գոյն թխութեան փորսյիցն„.

"Զի թէպէտ եւ ունէին զիւրաքանչիւր ձեռնասուն սպասաւորս, ոչ ոք երեւէր ի նոցանէ՝ թէ ո՛ր տիկինն իցէ կամ ո՛ր նաժիշտն„ եւ էջ 156. "ո՛չ ոք ումեք ջուր ի ձեռս արկանէր եւ ո՛չ կրտսերք աւագաց պատուական մատուցանէին„։

Միանձանց խրատը եւ Թաբոր լեռան նկարագրական մասին ինչ ինչ կէտերը, ուղղակի առնուած են՝ “Փիլոնի Յաղագս վարուց կենաց տեսականի„ — De la vie contemplative — ճառէն։

Միանձանց խրատը ընդհանրապէս Վարդանանց Պատմագրին կը տրուի. նոյն իսկ քանի մը տպագրութիւններու (Վրդնց. Պատմութեան) կցուած է այս. իսկ Եղիշէի մատենագրութեանց մէջ Պատմութենէն յետոյ՝ երկրորդ տեղը կը գրաւէ։ Թէ Պատմութեան (էջ 121) եւ թէ Միանձանց խրատի մէջ (էջ 161) գտնուած Աղօթքը՝ “Փառք քեզ Տէր, փառք քեզ թագաւոր„, կ'երաշխաւորէ միեւնոյն գրչի արդիւնքը։ Տարբեր գրիչ մը նոյն կերպով պիտի չվարուէր [1]։

Թաբոր լեռան նկարագրութիւնը ցարդ խընդրական մնացած է. եւ մեր գործածած 1859ի տպագրութիւնը (Եղիշէի Մատենագրութեան) այս նկարագրականը կը դնէ այն ճառերուն մէջ, որ “գտանին յանուն Եղիշէի Վարդապետի, այլ հաւատարմութեանն է ի ձեռաց ոչ երաշխաւորեալ„ (Եղիշէ էջ 206)։ Ստուգիւ այս ճառն “Եղիշէ քահանայ„ի մը (Նոր. Հայկ. Յոգ. էջ 11) կամ “Եղիշէ Երիցու„ մը (Սամուէլ Անեցի Տպ. Էջմիած. Արշ. Տէր-Միքէլ. յոշ. ԺԱ եւ ԺԳ) կ'ընծայուի։ Ամէն պարագայի մէջ գրական պատճառներ թոյլ կու տան Վարդանանց Պատմագրին տալ, եթէ ոչ ամբողջ ճառը, որ Մատենագրութեան 213—239 էջերը կը գրաւէ, գոնէ նկարագրական մասը (էջ 236—239)։ Հաւանաբար

---

1 Այս աղօթքն, որ յատկապէս Խորհրդեան համար յինուած ընտիր պատառիկ մ'է, բաւական հին ըլլալ կը թուի։ Քրիստոնէական անկեղծ մտածութեամբ ներշնչուած գոհաբանական մը, որ յետոյ քիչ մ'ընդլայնուելով իբր հանգիստ կցուած է այն աղօթքին, — “Օրհնեալ ես Տէր Աստուած մեր, որ կերակրես զմեզ ի մանկութենէ„ եւն —, զոր Ժամագրքի “Օրհնութեան Սեղանոյ„ կանոնին մէջ կը գտնենք։

այս նկարագրական մասը յետոյ կցուած է Քրիստոսի Այլակերպութեան նուիրած ճառի մը՝ իբր ճոխութիւն. որովհետեւ միայն այս մասն իբր առանձին գրուած Եղիշէի անունը կը կրէ — «Սրբոյն Եղիշէի Վարդապետի ասացեալ յաղագս Թաբօր լերին» (տե՛ս Արարատ 1868 էջ 123—126), որ ընթերցուածի բաւական տարբերութիւններ ունի ծանօթներէն: Բայց միանգամ ընդ միշտ համոզուելով՝ թէ կարելի չէ պատմութեան ոճը նոյնութեամբ գտնել պատմագրին ընծայուած ուրիշ գրուածներու մէջ, ա՛լ ամբողջն ալ կրնայ միեւնոյն գրչի գործ համարուիլ: Ամէն նիւթ իւր ոճն ունի: Միանձանց խրատին ոճը կարծուածին պէս նոյն չէ Պատմութեան ոճին հետ. բայց ներքին պատճառներ բաւական են զայն իբր Պատմագրին գործը հաստատելու համար: Միեւնոյն պատճառներ Թաբօր լեռան նկարագրութիւնն ալ միեւնոյն գրչի տակ կը դնեն[1]: Այս երկու գրուածներուն ոճը գրեթէ նոյն է. իսկ նոյնութիւնը կը բղխի երկու գրուածներուն հասարակ աղբիւրէ մը, Փիլոնի Տեառնականէն:

---

1 Արդի ճառընտիրներուն մէջ Եղիշէի անուամբ Այլակերպութեան ճառ մը կայ: Այս գրուածը կասկածեցուց զիս: Բարսղի վերագրուած այս տեսակ գրուածներուն շեշտը կը գտնէի ասոնց մէջ. կասկածս հաստատուեցաւ՝ երբ մեր Մատենադարանի գրքերը քրքրելու ժամանակ՝ 1714ին «Ի լու— խո— յընտիր օրինակէ տպագրեալ» ճաշոցին մէջ աս խորագիրը գտայ այն գրուածին ճակատը. «Աղօթք սրբոյն Բարսղի՝ Արտաբերեալ վասն այլակերպութեան Քրիստոսի» էջ ՊԽԸ (= 848): — Եղիշէ՝ եթէ իբր Վարդանանց Պատմագիրը նկատուած է հոն, հաւատարիմ ըլլալու համար՝ այս ճառը պէտք է դնել անոր անուան տակը:

| Փիլոն. | Խորատ Մովսեսեանց. | Ներզ. Թափորի. |
| --- | --- | --- |
| Էջ 5 "Որք զգործնական նախանձն ատեն, եւ գործեցին զկենցաղս ամենայնիւ, կամ զգժոխումներագոյնն ասել, յոլով մասամբքն զանցուցին սատէնդ. Էջ 11 "..., փախչին առանց յետս դառնալոյ, լքեալ թողեալ.. զգաւառս յորում ծնեալ եղեն եւ սնան,, (անդ) "գաղթեալ փոխի ոչ յայլ քաղաք,... քանզի ամենայն քաղաք... չէ ին [illegible] [illegible] | Էջ 159 "Մարդիկ որ են ի մարմնի եւ կամօք եառեն զանձինս յաստուածպաշտութիւն, անդստին ի տղայութենէ խոկան՝ կրթին յաստուածպաշտութիւնդ. (անդ) հեռանան ի հայրենի բնակութենէն, եւ | |
| Այլ արտաքոյ ուրեմն քան զպարիսպն արարեալ՝ սոցա զշրջանան,..., եւ կայ մի միայն եւ յապահով վայր զհանդարտութեան եւ զդադարման զհետ անցեալք, ոչ զմիայնութիւնն ախորժեցին վասն մարդատեցութեանն, այլ զայն որ յաննմանից սովորութիւնն ընդ Նոսա միաբանութեանն խառնմանն էր, անաւգուտ եւ վնասակար գիտացեալք,,. | վարին յանապատ երկիր, ոչ իբրեւ չարակնելով Նախանձու փախուցեալք ի բազմամարդոյ աղքատաց (քաղաքաց (?), այլ զի փոփոխեն ղոչխարհս չէ ամենայն չարեօք, խոյս տան ի խորշս եւ ի սարոտս անապատ վայրեացդ. | Էջ 238 "Ա՛չ նթէ ինքեանք մարդատեացք են, այլ մարտ եղեալ կռուին ընդ ապստամբ մարմնոյսդ. |
| "Քանզի բազում ուրեք աշխարհիս է ապգս,..., իսկ որք ամենայն ուստեք առաքինիք են,... զբնակափոխութիւն առնեն.. Էջ 12 "Իսկ առնք ի մի վայր եկեղոցն յոյժ պձուձք են, առ երկուս իրս հարկաւո- | "Զոր տեսանեմք իսկ յաճախ ի կողմանս հարաւոյ բազմութիւն արանց՝... յազգաց եւ ի լեզուաց զմիով վայրօք հասեալք, ժողովեալք իբրեւ ի հայրենի գաւառս՝ առնեն բնակութիւնս երկու ընդ երկուս, եւ կամ | Էջ 236 "Քանզի բնակեալ են անդ բազմութիւն սքանչելի եղբարց, որք հոգւով յաճախագոյն վարին՝ քան թէ մարմնով ... |

րագոյնք, ձեղուն ի վերոյ ունելով, զյարեգականէն խորշումն եւ զաւգոյն ցրտութիւն„.

Էջ 13 "Իսկ զյառաւօտէ մինչեւ ցերեկոյ զերկայնութիւն տուընջեանն՝ առ հասարակ ամենայն է նոցա վարժանք տեսութեան„...

"Ապա ոչ տեսանեն միայն, այլ եւ առնեն երգս եւ աւրհնութիւնս յասառւած ի ձեռն ամենազան չափոց եւ նուագաց„.

Էջ 14 "Եւ ըստ հասակի անցեալ նստին, հանդերձ վայելչական ձեւով, ի ներքս զձեռսն ունելով, զաջն ի մէջ կրծիցն եւ ծնաւտին, իսկ զահեակն զալեալ եւ ամփոփեալ առ կշտին„.

"Եւ ի մէջ անցեալ ծերունի ոք եւ որ աւրինացն հմտագոյն, խաւսի համեստ հայեցուածովք„.

Էջ 15 "Բայց կերակուր կամ ըմպելի ոչ ոք ի նոցանէ ընկալցի յառաջ քան զմուտս արեգական. վասն զի զիմաստասիրելն արժանի լուսոյ համարին, եւ խաւարին՝ զմարմնոյն հարկաւորս. վասն որոյ միումն զտիւն, իսկ

երեք ընդ երիս, եւ չինեն խցկունս.... որք գուգնաքեալք առ ցրտոյն պահպանութիւն, եւ զոյգ նմին ձեղուն՝ առ արեգական պահպանել„.

Էջ 160 "Զտիւն ամենայն պարապեն երգոցն քաղցրութեան, յագեալք եւ զմայլեալք ի կերակուրսն երկնայինս՝ աւլցեալք հասանեն ի ժամ երեկոյին„.

Էջ 159 "Մանաւանդ ի պարս շրջագայ անդադար պաշտամանն՝ երգս հոգեւորս հօրն բոլորեցուն մատուցանեն զուարթ հոգւով„.

"Կան ընդդէմ միմեանց զաչս ի վայր արկեալ՝ զծայր ոտից մատունսն նկատելով, իբր թէ մի կէտ տեսակի ամենեքեան հայեսցին, զաջ ձեռն ի վերայ ծնօտին եդեալ եւ զահեակն ի վերայ կրծիցն, [օրգեօ կործեմ տաօեռլ է բնոլոն հորցն]„.

Էջ 161 "Իսկ որք ունին զշնորհս վարդապետութեան, առնեն մեկնութիւնս ի մխիթարութիւն լսողացն„ (Հմմտ. Եղիշէ էջ 57).

Էջ 160 "Սակայն եւ զայս (զկերակուրս) ոչ երբեք ի տուընջեան մատուցանեն ի դարմանս պիտոյից մարմնոց. այլ միայն պահելով զերկայնութիւն աւուրն, տեղի տան արեգական մտանելոյ. ձգեն երկայնեն զերե-

Փիլոն.

Հարկաւորացն՝ զգիշերոյն զգոյգն ինչ մասն եառուն...„

“Բայց ոմանք յերիս աւուրս յուշ արկանեն կերակուրս, յորս աւելի հանճարոյ փափագումն հիմնացեալ եւ հաստատեալ է։... մինչ զի երկպատիկ ժամանակ քան զայս ժուժալ, եւ հազիւ հազ յետ վեց աւուր ճաշակել կերակուր հարկաւոր,

[Այս տեղ է ‘Ճպռանց„ նմանութիւնը զանանց, զոր տեսանք “Ցիկնայք փափկասունք„ի մէջ (տես վերը, էջ 163)].

“Եւ կերակրին ոչ բազմապատիկ ինչ խահիւք, այլ հաց անպաճոյճ, եւ աղ խորտիկ, զորս խաշամոքն համեմեն զոպայիւ եւ է ըմպելի նոցա ճրագոյն ջրոյ ինքնաբուղխ„

“Քանզի զորս բնութիւնս կացոյց ի վերայ մահկանացու ազգիս տիկնայս՝ զծարաւ եւ զքաղց, ողոքեն եւ դադարեցուցանեն, յայնցանէ որ առ ի յողոքանս ինչ է՝ մատուցանելով եւ ոչինչ. այլ զնոյն ինքն պիտանացուն, առանց որոյ կեալն ոչ գոյ հնար։ Վասն այսորիկ ուտեն զի մի՛ քաղցիցին, ըմպեն զի մի՛ ծարաւիցին.

Խորատ Մխանձանց.

կունն, մինչեւ աստեղք յիւրաքանչիւր կայանս պայծառանան, եւն.

“Արդ դու իբրեւ լսեցես զուտելն, մի՛ առ մերս ընթանայցես. զի հաց է նոցա անպաճոյճ եւ բանջար վայրենի՝ զոր համով աղին համեմեն, եւ ջուր յորդ՝ զոր յամպոց բերմանց է գոգոյ ծովուն„.

“Եւ քանզի մարմին ունին ըստ բնութեանս մերում զգայութեանս,

ուտեն՝ զի մի՛ քաղցիցին, եւ ըմպեն՝ զի մի՛ ծարաւեսցին„.

Նկրզ. Թաքորի.

Էջ 238 “Վասն որոյ եւ ոչ կամին հանապազ ճաշակել, այլ սովորութիւն է նոցա բնական ամսրանի ագանելով, եւ ձմերանի հաւաքելով զաւուրս շաբաթուն, իսկ որ հզօրագոյնքն են ի նոսա՝ զողջոյն շաբաթն ձգեալ ի գլուխ տանին„։

Էջ 236 Եւ շուրջ զիւրեւ ունի ինքնաբուխ գոգոյ ջրոյ„.

Էջ 16 “Եւ զգեստ նոյնպէս դուզնաքեայ եւ առանց պաճուճանաց, առ ի յապրանս ի ցրտոյ եւ ի տաւթոյ, քանզի վերարկու փոխանակ թաւ մորթոյ՝ ձմերայնի, եւ թիկնանոց ամարայնի կտաւի„։

Էջ 27 “Գինի յաւուրսն յայնոսիկ ամենեւին ոչ տանին ի ներքս, այլ ջուր ականակիտ, յոլովոց ի նոցանէ Հով, բայց ջերմ՝ ծերունեացն փափկակեցացն, եւ սեղան մաքուր յարինաւորաց, յորոյ ի վերայ Հաց կերակուր եւ խորտիկ աղ, որոց էր երբեք զի եւ զոպա Համեմով ամփոփեալ լինէր, վասն փափկավարացն„ 1.

Էջ 29 “Եւ ապա աւագն յոտն կացեալ՝ երգաւորհնութեան երգէ արարեալ Աստուծոյ, զոր նորոգ իւր արարեալ, եւ սկզբնաւն իմն Հնոց քերթողացն. քանզի չափս եւ նուագս բազումս թողին տաղից, խոոչափոց, առձանապարհական երգոց, փրկաւեաաց, նուիրականաց, յարքականաց . . . եւն եւն.

Բայց յորժամ զծայրայանգսն եւ զ'ի վերայս աւրհնութեանն երգել պիտեացի, քանզի

Էջ 159 “առնեն եւ նոքա Հանդերձս անպաճոյճս եւ յոյժ պձուձս, կողորս ամարանի եւ թեզանաւորս ձմերանի, արկանեն եւ աղաբոնս մեկնաւորս.

Էջ 160 “Եւ որպէս ասացաքն՝ ուտեն Հաց եւ զոպա, եւ ըմպեն ջուր ցուրտ։ Քանզի դոն ի նոսա ծերք փափկավարք, մատուցանեն ջուր ջերմ, զոր եւ բարեխառն անուանեն. այլ գինի եւ կամ այլ ինչ զանազանեալ եւ ոչ գտանի ի սուրբ միայնոցս նոցա„.

Էջ 160 “Եւ իբրեւ այսպէս կարգեալք եւ յօրինեալք, ամենքեան ի նմանութիւն վեցթեւեան սերովբէից շուրջ պարփակեալք, ձայնս անՀատս ի վեր Հնչեցուցանեն, եւ օրՀնութիւն խոոչափս ի խորՀուրդ միարանութեան արարչին իւրեանց բոլորեն„.

Էջ 257 “Եւ դարմանին Հացիւ եւ ջրով լոկով, եւ աղիւ Համեմելով, զոր եւ խորտիկն անուանեն. Առնեն եւ այլ յաւելուած յանուշաՀոտութիւն կերակրոց. ի ձմեռային ժամանակի քաղեն զնիւ լերինն եւ թթուեցուցանեն աղիւ եւ ջրով եւ զոպայիւ, եւ որպէս ինքեանք իսկ ասեն կարի օգտակար է ի տապ աւուրս խորշակի„, եւ էջ 239. “են ի նոսա ծերագոյնք որք ոչ Հարկին զպէտս անձանց վճարել միաբան, վասն այն-

1 Համա. Ոսկիր. Մեկն. Ա. Տիմ. էջ 123—128 “ոչ խորտիկ յօրինեալք առաջի մատնեն, ոչ Հոտ ճենճերոյ, եւ Համադամք կերակրոց, այլ ոմն Հացիկ եւ աղիկ, եւ ոմանք իւղիկ եւս յաւելուն, եւ որ եւս տկարագոյնք իցեն՝ բանջարիկ եւս խառնեն, եւ դեղաՀունգս եւ սոպնեայս„։

*Փիլոն.*

յայնժամ ամենեքին հնչեն արք եւ կանայք„.

Էջ 30 "Եւ յետ ընթրեացն՝ զսուրբ եւ զքաղցրալին առնեն զգիշերապաշտամն զայս աւրինակ. յոտն կան առ հասարակ ամենեքին, եւ ի միջոցի ընթրակերոցին, նախ զառաջինն երկուք լինին պարք, մին արանց եւ մին կանանց, եւ իշխան եւ առաջնորդ յերկոսին կողմանսն ընտրեալ լինի ըստ երկաքանչիւրոցն պատուականագոյն, եւ նուագաւորագոյնն.

Էջ 31. "Սոցա յաւէտ նմանութիւն արարեալ պաշտօնէիցս այսոցիկ պար, նուագաւք զուգահնչմամբք եւ զուգաբարբառովք, առ ծանր հնչիւն արանցն, կանանցն սուրն խառնեալ, յարմարական եւ նուագաւոր բաղաձայնութիւն կատարէր, եւ արդարեւ երաժշտական.

[քանի մը տող յառաջ]

"Զայս տեսեալ եւ կրեալ նոցա, որ քան զբան եւ քան զմիտ, եւ քան զլոյս ի վեր եւ մեծ գործ, եւ աստուածազգեցաք եղեալք՝ զգոհացողականն աւրհնութիւն ի Փրկիչն աստուած երգէին„:

*Խորատ Միանձանց.*

Էջ 161 "Եւ զարթուցեալք առ հասարակ անդէն ի շրջանս պարուց բոլորեն, ոչ հակառակք եւ ոչ ընդդիմացեալք, քաղցր հաւանութեամբ եւ հեզ հանդարտութեամբ:

Առաջնորդք դասուցն հնչումն ձայնի արձակեն, երգս հոգեւորական քաղցրանուագս փոփոխելով, իսկ այլ կրսերագոյնքն ձայնիցն միա դնելով խառնեն զերաքանչիւր բարբառն յարմարելով եւ կազմեալ զմիաբանութիւն հնչմանն, զի իբրեւ ի միոջէ բերանոյ ամենայն բազմութեան ձայնիցն հնչիցէ„.

"Եւ այսպէս յերկարելով զձայնաւոր պաշտօնն, ծունր դնեն ամենքեան, յաղօթս կան լռութեամբ եւ ի ձեռն առաջնորդի աղօթիցն կանգնեալք ամենքեան զփառատրութիւն կատարեն„:

*Նիլոզ. Թաքորի.*

պխեացն առաւել հոգւոյն քան անձանց„:

Աւելորդ չէ այս տեղ նորէն դիտել տալ՝ թէ Վարդանանց Պատմագիրն որչափ բարձր կը բռնէ իւր գրիչը։ Այս բարձր հետեւողութեան մէջ պէտք է դիտել նաեւ որ նա լոկ Փիլոնի Տեսականէն (Հայեցողական կեանք) չէ օգտուած։ Եսսեանց ճառին հետքերը յայտնի են, ոչ միայն Միանձանց խրատին, այլ մանաւանդ "Տիկնայք փափկասունք, ի քանի մը կէտերուն մէջ։ Տեսական կեանքի հետեւողներ (Թերապեւտք) եւ Եսսեանք տարբեր են իրարմէ[1]։ Բայց պատմագիրն իւր նպատակին յարմար հատուածիկներ քաղած է երկուքէն ալ։

Անկարելի է չհետաքրքրուիլ՝ թէ Միանձանց խրատն ինչո՞ւ յօրինուած է։ Այս կեանքը (հայեցողական) ոչ Փիլոնի նկարագրածին պէս, ոչ ալ Պատմագրին փոխած ձեւով Հայոց մէջ հետեւող ունեցաւ։ Փիլոնի Տեսականը՝ հռչակաւոր քննադատի մը համեմատ՝ երեւոյթ մըն է, եւ ոչ այնպիսի իրական կեանքի մը հանգամանքներուն նկարագրութիւնք[2]։ Շատ ճիշդ դիտողութիւն մ'է այս։

---

1 Պրմ. Խորյլ. Հա. Ե. էջ 55–66 եւ 366–380. գիտական ուսումնասիրութիւն մը, ուր կը ցուցընէ նշանաւոր խորհողն Եսսեանց եւ Հայեցողականաց կեանքը։ — Եսսեանց համար տես նաեւ Յովսեպոս (տպ. Էջմծ. 1787) Դպր. Բ. Գլ. Թ։

2 Եւսեբիոսի նախկին թարգմանիչը՝ բնագրին θε-ραπευτ բառը ψυχῆς թարգմանած է (Եւսեբ. էջ 109), որ ճիշդ չէ. որուն հետեւութիւնն է անշուշտ Խրատ Մէնան-յանց, ψυχῆν՝ բառին ընտրութիւնը։ Կեանքին ψυχῆνοյωն կողմը դիտուած է միայն, որ իրապէս չէր այդպէս։ Անոնք աւելի ընկերական էին. մինչ մեր մէջ ψυχῆνοօβյան, բոլորովին առանձին կենցաղավարութիւն կը նշանակէ եւ խրատ ψυχյանց կոչումը այս իմաստով միայն յաջող է։ Թէ–րաւթեւ բառին բուն իմաստը, ինչպէս որ արդէն թարգմանուած է Փիլոնի մէջ (էջ 6), է "Բժշկել,,. եւ այս է բուն իսկ Վարդապետութիւնն Թերապեւտներու. „La doctrine de ces philosophes apparait tout d'abord en leur nom. On les appelle t h é r a p e u t e s, soit par ce qu'ils font profession

*Փիլոնի նկարագրած կեանքը՝ դժուար է համոզուիլ՝ որ այն գաղափարական սրբութեամբ ապրած ըլլան այն մարդիկ, այր եւ կանայք, որոնց կազմած միջավայրը զուտ աշխարհիկ երեւոյթ մ'ունի։ Նոյնը պէտք է ըսել թերեւս Միանձանց խրատին նկատմամբ։ Խրատողը քաղելով զայն, ըստ ամենայն հաւանութեան, միանձնական կեանքի էջեր մը շինել ուզած է՝ տարբեր Փիլոնէն։ Փիլոն՝ այր եւ կանայք միասին կ'ապրեցընէ իւր երեւակայած սրբութեամբ. Միանձանց խրատողը կիները կը հեռացընէ այս կեանքէն։ Արդէն նկարագրելու ձեւն ալ կը մատնէ զայն։ "Ի կողմանս Հարաւոյ„ թէ Եգիպտոսի կ'ակնարկէ թէ Պաղեստինի։ Եւ ատոնց*

---

d'une médecine supérieure, ne guérissant pas seulement les maladies du corps, mais encore celles de l'âme; soit par ce qu'ils ont appris par l'étude de la nature et des saintes lois à servir l'Eternel." Գրմ. Իսրյլ. անդ էջ 367։

— *Փիլոնի հայ թարգմանիչը թերապեւտներու ճառին խորագիրը թարգմանած է "Յաղագս վարուց կենաց տեսաւորնէից„։ Այս հատորին հրատարակիչը բաւական խոշոր անուշադրութեամբ գրքին սկիզբը դրած է "Յաղագս Հեսսէոնեց„։ Այս սխալին տեղի տուած է հաւանաբար, ճառին սկզբնաւորութիւնը "Հեսսեայցն սակս խաւսեցեալ„ — զոր պէտք է հասկնալ "Հեսսեանց վրայ կամ մասին խօսելէ յետոյ (Փիլոն Հեսսեանց ճառը յառաջ գրած է ուրեմն քան Տեսականը) "եւ յաղագս այնոցիկ, որք զտեսաւորէնն խնդութեամբ ընկալան, կարգաւ պատմութեան զհետ անցանելով զարժանաւորսն ասացից„։ — Պէտք է ուղղել այս սխալը "Յաղագս տեսաւորնէից„ դնելով անոր տեղ։ — Հ. Գար. Զ. երկրորդ խորագիր մը յառաջ կը բերէ "Յաղագս Վարուց տեսաւորնէին կամ Տեսաեանց„ (Թրգմ. Նախն., էջ 745), եւ այլուր (անդ էջ 740) "ի Տեսաւորն կենաց„, անշուշտ ճիշդն այս վերջինն է։ — Փիլոնի "Յաղագս Տեսականի" ճառին վաւերականութիւնը վիճելի գետնի մը վրայ դրուած է այժմ* (Տես Revue de l'hist. des Religions; seizieme année. tome XXXII, Nr. 2 Sept.-Oct 1895, p. 207–208)։

նկարագրութիւնն է ըրածը։ Իսկ սա յորդորը “Արդ գայս ամենայն գիտելով, եղբարք, պարտիմք թեւակոխել, եւ զնոյն նախանձ սրբութեան յանձին բերելով, նմանողք լիցուք այնպիսեաց բազմագունդ միայնացելոց յաշխարհէ„ (Եղիշէ էջ 162) կը հաստատէն զայս։ Միանձնական կեանքի պատկեր մը կը գծէ խրատողը եւ անոր յարիլ կը յորդորէ զանոնք, որ միանձնական կենցաղի կը բաղձան։ Կամ թէ ժամանակին ըմբռնումով, աշխարհին աւերներուն եւ երկրին (Հայաստանի) կրած խժդժութեանց հանդէպ անճարացած ժողովուրդի մը յորդոր կը կարդայ՝ իր գծած կեանքն ապրիլ։

Թաքոր լեռան միայնակեացներուն կեանքն աւելի Հեսսեանց հետեւողութիւն մ'է, թէեւ ոչ ամէն գծերով։ Հեսսեանք Պաղեստինի մէջ էին. Թաքորի միայնակեացները կրնան նոյն իսկ անոնց հետեւողներէն ըլլալ։ Երկրագործական աշխատութիւնը, որ պարտաւորիչ էր Հեսսեանց, Թաքորականներն ալ ունին։ Ասի ապացոյց մ'է։ Հեսսեանց ճառէն մանր մունր բառական նմանութիւններ աւելորդ համարեցինք յառաջ բերել։

Մեր Պատմագիրն ուրեմն՝ Հեսսեանց կեանքը թէ Թաքորականներու վրայ, թէ Փիլոնի նկարագրութեան մէջ ուսումնասիրած, եւ թէ մանաւանդ Տեառնական կեանքի մաքրութենէն հրապուրուելով՝ իրեն համար ամբողջ մը կը շինէ։ Շատ լաւ յաջողած է Պատմագիրն իր կաղապարումին մէջ, ինչպէս կը ցուցնեն մեր ըրած բաղդատութիւնները։ Պատմագրին ըրած փոփոխութիւններու մէջ նշանակելի է կանանց դերին ջնջումը։ Մինչ Փիլոնի ասոնց նկատմամբ գրածներն ինքն արանց վրայ ձեւած եւ միայն թեւրափետ կիներու ճպուռներու հետ նմանութիւնը, փափուկ տիկիններու նմանցուցած է ճշդութեամբ։

Ոչ-քրիստոնեայ մենակեցութեան բարքերը կը չափէ ու կը ձեւէ քրիստոնեայ միանձններու

բարքերուն վրայ, իր մտածումով զանոնք քրիստոնէացընելէ վերջը. կամ ինչպէս Եւսեբիոս ըսաւ (տե՛ս էջ 156, ծն. 1) “ըստ վարուց վարդապետութեան աւետարանին„ կը քաղէ Փիլոնէն ինչ որ կը ծառայէ իր նպատակին։ Շատ վարպետութեամբ կը փոխէ ինչ որ Փիլոնի ժամանակին յատուկ գաղափար մ'է կամ իր մը. զոր օր. (տե՛ս վերեւ էջ 169) Փիլոն տաղաչափական զանազան գրածներու տեսակները կը յիշէ, որոնց մէջ է Եռաչափն ալ, Միանձանց խրատողը շատ լաւ կը յարմարցընէ զայն եռաչափ օրհնաբանեան՝ “Սուրբ Աստուած„ին։

Ընթերցողին կը թողունք այսպիսի դիտողութիւնները՝ նմանութեանց կամ փոխառութեանց ուրիշ կէտերուն վրայ։ Բաւական մանրամասնաբար բաղդատեցինք նմանութիւնները։ Դեռ կարելի է Փիլոնէն առնուած հոյլ մը բառեր եւ բացատրութիւններ գտնել Պատմագրին գործերուն մէջ։

Բաւական է ըսել, սակայն, թէ Փիլոն խորապէս ազդած է մեր Հեղինակին վրայ։ Եթէ կարելի է ըսել՝ Պատմագիրն իր աջ ձեռքով Փիլոնը սեղմած է, իսկ ձախով Մարութան[1]։ Ս. Գիրքն իր կուրծքին վրայ է արդէն։

---

1 Փիլոնի կեանքի մասին շատ քիչ տեղեկութիւն ունինք. նա “շուրջ 40 թվին պատգամաւոր գնաց առ Կալիգուլա՝ Աղեքսանդրիոյ Սինակոկային գործերուն համար։ Այն ատեն ծեր էր. բան մը որ ենթադրել կու տայ թէ ծնած ըլլայ Քրիստոսէն 15 կամ 20 տարի յառաջ։ Ըստ այսմ Քրիստոսի անդրանիկն եւ յետամնացն եղաւ։ Անտարակոյս Քրիստոսի երիտասարդութեան ժամանակ գրեց նա իր անթիւ գրքերը„. Պր՛ Խոսյլ. Ե. Գլ. ԺԳ։

— Մարութա Չորրորդ դարու Եկեղեցւոյ Հայրերէն եւ եպիսկոպոս Նփրկերտի կամ Մարտիրոսաց քաղաքին (Միջագետքում), նշանաւոր իբր մշակ Աւետարանի քարոզութեան հեռաւոր երկիրներու մէջ։ Խոստովանողի թարգմանած Արեւելեան վկաներու ընտիր վկայաբանութենէն զատ՝ իրեն կ'ընծայուի նաեւ Ասորա-Քաղդէական Պատարագամատոյց մը, Մատթէոսի Աւետարանին մեկ-

## ԳԼՈՒԽ Է.

### Բ.

### *Ղազար Փարպեցի:*

***Փարպեցին՝ իր Վարդանանց նուիրած էջերով՝ քննադատական ամենէն հաստատուն գետինը կը պարզէ մեր ուսումնասիրութեան համար։ Եթէ Բանաստեղծ-պատմիչը՝ Մարութասի եւ Փիլոնի թարգմանութիւններէն նկարագրական պատառիկներ կ'ընդելուզէ իր տողերուն մէջ՝ տարբեր փայլ մը տալով անոնց, նոյն իսկ երբեմն լայն յատակներ կը գտնէ անոնց մէջ իր յանկուցիչ վրձինին համար, իր պատմական դէպքերու ստոյգ նկարագրութիւնն ալ՝ կը բարձրացընէ ուղղակի Ճարտասան-Պատմագրի հիմերուն վրայ, որոնք ոչ նուազ չքնաղ շինուածք մ'ունին։***

***Երկու Պատմագիրներու միեւնոյն նիւթին վրայ, գրեթէ նոյն ուղղութեամբ գրելը, անտարակոյս, պատահական իրողութիւն մը չէ։ Երկուքին մէջ ալ տիրող նկարագրական*** (littéral) ***ընդհանուր համաձայնութիւնն անժխտելի աղերս մը կը դնեն երկու գրիչներու միջեւ. յետոյ՝ կարեւոր տարբերութիւններն իսկ նոյն իրողութիւնը կը չեշտեն։ Մենք կը պնդենք՝ թէ նկարագրական համաձայնութիւնը կամ նոյնութիւնն երկու Պատմագիրներու գրչին տակ, նիւթի նոյնութեան արդիւնք չի կրնար ըլլալ բացարձակապէս։ Այսպիսի թէզ մը կարելի էր պաշտպանել՝ եթէ խնդիրն իմաստա-***

---

*նութիւն մը, եւն։ Մարութաս վախճանեցաւ Ե՞ դարու կէսէն յառաջ եւ թաղուեցաւ իր քաղաքին՝ Նփրկերտի եկեղեցւոյն մէջ։ — Ս. Մարութաս Նփրկերտը լեցուց մարտիրոսաց նշխարքներով (մասունք), որ ծագում տուաւ "Մարտիրոսաց քաղաք„ կոչումին։ — Ասսեմանի հրատարակեց առաջին անգամ Մարութասի գործերը (Տես* Migne*ի հատորներէն* Patrologie*ի* XXII *էջ* 1283–1285. — *Քննասէր Պրակ. Ա.* 1887, *էջ* 52–53)։

սիրական ծանօթ նիւթ մ'ընդլայնելու վրայ ըլլար․ կամ թէ միեւնոյն նիւթը մըցումի դրուեր երկու գրիչներու առջեւ։

Այս նկատմամբ ցարդ երկու իրարու հակառակ մեկնութիւն տրուեցաւ․ մին՝ երկու Պատմագիրներուն իրարմէ անկախութիւնը, այսինքն՝ երկու պատմագիրներ իրարու գործերը չեն տեսած, նոյն իսկ Եղիշէն ժամանակագրապէս Փարպեցիէն յառաջ դնելով։ Այս կարծիքը պաշտպանեց Չամչեան եւ այս սկզբունքով երկու Պատմագիրներու տարաձայնութիւնը հաշտեցնելու գլուխ մ'ալ նուիրեց (տես Չամչ․ Պատմ․ Հայ․ Բ․ էջ 120 եւ 456)։ Միւսն է երկու Պատմագիրներու իրարմէ ունեցած կախումը․ ըստ այսմ՝ Փարպեցին “զամենայն մանրամանութիւնս պատերազմին Վարդանանց ուղղակի յԵղիշեայ քաղէ եւ թէպէտ անծանօթ ջանայ ցուցանել զինքն պատմագրիդ, սակայն յաճախ առնու ի պատմութենէ նորին բազում բանս եւ դարձուածս, անգամ եւ ամբողջ պարբերութիւնս՝ ընդ այսմ զնոյն եւ մի պահելով զօդ եւ զհետեւողութիւն անցից եւ իրաց, զորս առ Եղիշեայ գոյ տեսանել„։ Պ․ Գ․ Խալաթեան ջերմ կերպով կարծեց պաշտպանել այս կարծիքն իւր “Ղազար Փարպեցի եւ գործք նորին„ ուսումնասիրութեան 117—120 էջերու մէջ։ Այս կարծիքն անշուշտ յառաջ կու գար այն ժամանակագրական սխալ դատաւորումէն, որով՝ սովորաբար եւ աւանդաբար Փարպեցին՝ Եղիշէէն յետոյ կը դրուի։ Բարեբախտ ենք՝ որ այս սխալի հերքումով պիտի չզբաղինք։ Պ․ Խալաթեան իւր իսկ գրչով՝ յետս կոչում ըրաւ իւր վճիռներուն (Հանդէս 1895 Ապրիլ, հմմտ․ վերագոյն, եր․ 38—39)։

Կը մնայ Չամչեանի կարծիքը, այսինքն թէ Փարպեցին չէ տեսած Եղիշէն՝ Վարդանանց միւս Պատմագիրը։ Ասոր պէտք է կցել Հ․ Ց․ Գաթըրճեանի սա դիտողութիւնն ալ, որ երկու Պատմա-

գիրներն իրարմէ անկախ նկատելու հիմով կը համաձայնի Չամչեանին հետ. — “Չի կրնար նոյնպէս ցուցուիլ թէ (Եղիշէ) Փարպեցւոյն Պատմութիւնը կարդացած ըլլայ, բայց եթէ գուցէ այն խօսքէն, որ կ'ըսէ “առ մեծ սպարապետն Անտիոքոս„, գուցէ նաեւ կապեալ նախարարաց ցանկէն„։ Գաթրճեանի այս նկատմամբ ըրած ուսումնասիրութիւնը թերի մնացած է եւ հատակոտորներ միայն կը ձեւացընեն իր գրածները (Հանդէս 1887, Յունուար)։ Յիրաւի ցանկալի էր բազմահմուտ գիտնականին կարծիքն ապացուցուած տեսնել, որ ծանրակշիռ հանգամանք մը պիտի ունենար այսպիսի խնդիրներու մէջ։ Սակայն իւր թողած հատակոտորներուն մէջ վճռական ըլլալ չի թուիր “Քոյց ԵԲԷ Քո—ցէ„ներով, թէեւ չորս Պատմագիրներու (Կորիւն, Եղիշէ, Խորենացի, Փարպեցի) գրուածներուն ժամանակագրական շղթան հիւսած ժամանակ բոլորովին կը կղզիացընէ Վարդանանց Պատմագիրը — “Միայն Եղիշէն է որ իրմէ առջի Պատմագրութիւն մ'առջեւ ունեցած ըլլալը տեղ մը բացայայտ չի ցուցըներ, եւ ոչ ալ ուրիշները զինքն առջեւնին ունին. ըստ այսմ Եղիշէի Պատմագրութիւնը կղզիացեալ է„ (նոյն անդ)։ Պէտք է դիտել որ Գաթրճեանի հիւսած շղթան՝ գէթ Խորենացւու եւ Փարպեցւու միջեւ, վիճելի է. Խորենացւու վրայ եղած քննութիւնք բոլորովին տարբեր արդիւնք մը տուած են արդէն։

Ամէն պարագայի մէջ Վարդանանց անանուն Պատմագիրը չի կրնար ժամանակագրօրէն Ղազարէն նախադասուիլ։ Ամէնէն պարզ՝ բայց հաստատուն ապացոյց կը համարիմ նոյն ինքն Փարպեցին։ Այս Պատմագիրը Վարդանանց եւ Վահանեանց մանրամասն Պատմութիւնը գրելով (այսինքն՝ Եդդ դարու Մամիկոնեանց) երբեք ակնարկութիւն մ'ալ չըներ թէ իւր գրածներն Վարդանանց նկատմամբ՝ ուրիշ մ'արդէն գրած ըլլայ նախապէս։ Այս տե-

ութեամբ նա՝ Խորենացին ալ չի ճանչնար։ Փարպեցի Հայ Պատմագիրներու հոյլը կրնայ համարուիլ. իր գիտական ուղղութիւնը, իր ծանօթ անձնաւորութիւնը՝ մեր եւ ոչ մէկ Պատմագիրներուն վրայ կարելի է տեսնել Երդ կամ Զրդ դարու մէջ։ Փարպեցի երկու Պատմագիր միայն կը ճանչնայ իրմէ յառաջ 1. Ագաթանգեղոս, 2. Բուզանդ։ Երրորդ կը համարի իր Պատմութիւնը, զոր գրեց Մեծն Վահանի յանձնարարութեամբ ՝ի մնացեալ տեղւոյ Պատմութեան Երկրորդ Գրոցն (Բուզանդ)՝ աճեցուցանել յառաջ, եւ գրել յայնմ հետէ զեղեալս յաշխարհին Հայոց„ (էջ 8)։ Եւ իր անձին նկատմամբ շատ կարեւոր տեղեկութիւն մը տալէ (էջ 15) վերջ՝ կը յարէ (էջ 17). “Զի ոչ փոքր ինչ կասկած է՝ աներկիւղ այսպէս ումեք տալ զանձն յայսպիսի վաստակս, որք պէտս են յարմարութեան բանից, որպէս կարգաւորութեան բար հրամանի կանոնեալ գիտութեան, բերել զարկաւելով ստուգագրութիւն անպարտ յականջս իմաստասէր լսողաց. նյաւելուլ զանեղծելոյն՝ յընթացանայն առմանն բանից. չնաստացուցանել զեղծելոյն կարճակտուր զօրուձել բանիւք անփութութեամբ. այլ զբնաւն ողջախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն„ եւ այլն։ Այս ուղղութեամբ Պատմագրութեան ձեռնարկող մը, այսինքն՝ իրապէս գիտակ իւր առաջադրած գործի պահանջներուն՝ ամէն կեղծիք ի բաց պիտի թողուր։ Փարպեցին ըրած է զայս։

Եղիշէ կամ ուրիշ մը՝ եթէ գոյութիւն ունեցած ըլլար, Փարպեցիէն յառաջ՝ իբր Պատմագիր Մամիկոնեանց, Փարպեցին անպատճառ զայն պիտի ունենար իւր ձեռքն եւ պիտի յիշէր՝ ինչպէս որ յիշած է Ագաթանգեղոսն ու Բուզանդը։ Եւ որովհետեւ Եղիշէն չէ յիշուած ոչ միայն Փարպեցիէն, այլ մինչեւանդ յաջորդ դարերու Պատմագիրներէն մինչեւ Թովմա Արծրունի — չմոռնալով նոյն իսկ Սեբէոսի “ի յետ այլոց գրեցաւ„ը — եւ

նկատելով ներքին պատճառներն ալ՝ Հ. Յ. Գաթըրճեան իրաւունք ունէր զայն դուրս հանելու իր կազմած ժամանակագրական շղթայէն։ Բայց զայն բացարձակապէս կղզիացընել անհնար է։ Իրաւ է որ Փարպեցին չէր կրնար Վարդանանց Պատմութիւնն իր ձեռքն ունենալ. բայց սա կրնար իր ձեռքն ունենալ Փարպեցու Պատմութիւնը։ Արդէն ոչ միայն նախորդ գլուխներուն մէջ մեր՝ ուսումնասիրած նիւթերը շատ հաւանական կ'ընեն այս կէտը, այլ մանաւանդ Հ. Յ. Գաթըրճեանի դիտած կռուանը, ինչպէս որ տեսանք վերեւ, ինչ ալ ըլլայ իր պատճառաբանութեան եղանակը, բաւական զօրաւոր են ո՛ եւ է կերպով ի վեր հանելու երկու Պատմագիրներու յարաբերութիւնը։ Եւ որովհետեւ Եղիշէն է որ Փարպեցիէն կախում կ'ունենայ եթէ Մարութասի եւ Փիլոնի թարգմանութեանց ժամանակն իսկ անհնար ըլլար մեզ նշանակել մերձաւորաբար՝ Վարդանանց Պատմութեան գրութեան ժամանակամիջոցը ճշդելու, Փարպեցին միայն բաւական էր հաստատելու այս ժամանակամիջոցը։ Պէտք էր սակայն ինչպէս ծանրանալ այն երկու թարգմանութեանց Վարդանանց Պատմութեան հետ ունեցած աղերսին վրայ, մատնանիշ ընելու համար Պատմութեան գրագիտական, եւ եթէ կ'ուզէք, գեղարուեստական կողմին ուրուագիծը։ Այժմ Փարպեցիով պիտի ցուցընենք Պատմական դէպքերու հիմերը, բուն Պատմութեան աղբիւրը։

Անուրանալի է՝ որ շատ ընդարձակ նմանութիւններ կան երկու Պատմութիւններու մէջ. նմանապէս կան կարեւոր տարբերութիւններ, որոնք մատենագրական այսպիսի խնդիրներու մէջ՝ քննադատը կը միտեցընեն Երրորդ աղբիւրի մը հաւանականութեամբ լուծելու կնճիռը։ Ասի ամենէն ապահով միջոց մը նկատուած է այժմ նմանօրինակ դժուարութիւններու հանդէպ, որ սակայն դժուար կրնայ ի գործ դրուիլ, կը կարծենք, մեր Պատմա-

գիրներու (Ղազարու եւ Եղիշէի) տարբերութիւնները կամ նմանութիւնները մեկնելու համար։ Առանց երրորդ աղբիւրի մ'ենթադրութեան, անհնար չի թուիր եզրակացութեան մը յանգիլ։

Երկու Պատմագիրներու նմանութիւններն ուսումնասիրելու համար՝ հարկ չենք տեսներ քաղել զանոնք ծայրէ ի ծայր եւ բաղդատական սիւնակներ կազմել։ Այսպիսի աշխատութիւն մը՝ 111 էջերէ բաղկացած հետաքրքրական ձեռագիր հատորիկ մը տուաւ ինձ։ Այս տեղ կրկին ընդօրինակութիւն մը ոչ միայն պիտի բազմապատկէր այս էջերը, այլ մանաւանդ բաւական է երեսահամարներով ալ կազմել բաղդատական ընդհանուր ցուցակ մը[1]։

---

| [1] Փարպեցի | Պտմ. Վարդանանց |
|---|---|
| Էջ 118 եւ 119 | Էջ 9 եւ 16 |
| " 118 եւ 136 | " 10 |
| " 117 եւ 122 | " 21 |
| " 124 եւ 126 | " 22 |
| " 127 | " 11 եւ 22 |
| " 125 եւ 131—134 | " 32—33 |
| " 110 | " 34 |
| " 139 | " 35—36 |
| " 154—155 | " 38—39 |
| " 173—174 | " 44 |
| " 175 | " 49 |
| " 176 | " 50 |
| " 184 | " 54 |
| " 217 | " 56 |
| " 185—186 | " 56 |
| " 186—188 | " 56—58 |
| " 190—191 | " 58—59 |
| " 192—193— | " 59—60 |
| " 196 | " 60 |
| " 198 | " 71 |
| " 199—200 | " 77 |
| " 199—201 | " 81 |

Երկու Պատմագիրներու նմանութիւնները միօրինակ չեն։ Նմանելու փոփոխ (alternative) եղանակ մը բացայայտօրէն դուրս կը ցայտէ Վարդանանց Պատմութեան մէջ։ — Փութանք դիտել տալ այս տեղ եւս՝ թէ ինչպէս Մարութասի եւ Փիլոնի թարգմանութեանց նմանութիւններու մէջ, Բանաստեղծ-պատմիչն իւր քաղած հատուածներուն իւր գրչէն յատուկ հրապոյր մը կու տայ, թէեւ սուզիւ՝ Փարպեցին ալ զուրկ չէ այս շնորհքէն։ — Այն հատուածները՝ որոնք ընդարձակ են

---

| Փարպեցի | Պատմ. Վարդանանց |
|---|---|
| Եջ 210—211 | Եջ 90—91 |
| „ 213—214 | „ 93 |
| „ 216 | „ 97 |
| „ 219 | „ 98—99 |
| „ 222 | „ 100—101 |
| „ 217 եւ 245 եւ 249—250 | „ 103 |
| „ 243 եւ 252 եւ 253 | „ 106 |
| „ 252 | „ 108 |
| „ 243 եւ 254 | „ 108 |
| „ 256 | „ 110 |
| „ 257—259 | „ 111—112 |
| „ 260—261 եւ 262 | „ 111 եւ 124 |
| „ 279 | „ 121 |
| „ 290 | „ 125 |
| „ 291 | „ 126 |
| „ 207 | „ 136 |
| „ 302 | „ 138 |
| „ 304— | „ 139 եւ 142 |
| „ 306— | „ 139 |
| „ 307 եւ 308 եւ 309 | „ 140 |
| „ 310 եւ 312 | „ 141 |
| „ 289 եւ 314 | „ 141 |
| „ 319 եւ 320 եւ հետեւ. | „ 145 եւ 146 եւ հետեւ. |
| „ 329 | „ 151 |
| „ 325, 328, 327, 330, 331, | „ 153, 150—152, 125 |
| „ 332 | „ 155—156, |

Փարպեցու քով, զանոնք կը սեղմէ Վարդանանց Պատմագիրը, եւ փոխադարձաբար, Վարդանանց Պատմութեան այս երեւոյթն աղբիւր մը կը մատնէ։ Անկախ կամ կցկցուած գրուածի մը մէջ անհնար է այսպիսի երեւոյթի մը հանդիպիլ կամ պատահական համարել զայն։ Այնպէս որ եթէ նոյն իսկ երրորդ աղբիւր մը յերեւան գայ, որ անհաւանական չէ, դեռ պիտի ըսեմ՝ որ Վարդանանց Պատմագիրը Փարպեցին ալ առձեռն ունեցած է իր առջեւ։

Տեսնենք այն ընդարձակ կամ սեղմ նմանութիւնները.

| Փարպեցի: | Պատմ. Վարդանանց: |
| --- | --- |
| Էջ 117. "Աստուածք զոգւոցն գիւտս ջերմագոյնս եւս գրեն եւ կամին տեսանել... | |
| Էջ 122. եւս առաւել պարտիմք եւ ընդ գիւտ ամենեցուն հոգւոց հոգալ եւ գտանել. եւ եթէ յանկարծ ծուլացեալ գտանիմք յայսպիսի մեծ հոգողութենէ, տեղեկացեալք յօրինաց մերոց թէ ծանր պատուհաս կրելոց եմք յաստուածոցն„։ | Էջ 21. "Մանաւանդ զի եւ առաջի Աստուծոյ վասն ձեր համարս ունիմք տալ„։ |
| Էջ 193. "Եւ զնոյն արձակէին դեսպան ի Հոնս՝ եւ առ այլ ամրականս տեղեացն, զորս հաւանեցուցէ միաբանել ընդ նոցա գնդաւ, որոց եւ կամաւ եւ յօժարութեամբ զօգնելն յանձն առեալ՝ հաստատէին երդմամբ„։ | Էջ 60. "Եւ անդէն ի նմին տեղւոջ զայրն՝ որում զդուռնն յանձն արարին, զնոյն դեսպանս արձակեցին յաշխարհն Հոնաց, եւ ի բազում յայլ ազգս բարբարոսաց, որ համագործք էին Հոնաց աշխարհին, բանս դնել ընդ նոսա եւ ուխտ հաստատել՝ անքակութեամբ ունել զմիաբանութիւնն։ Իսկ նոքա իբրեւ զայն ամենայն լուան, |

փութապէս վազվաղակի Հասանէին ի տեղին, եւ ականատեսք լինէին գործոյն յաղթութեան։ Եւ ոչինչ յապաղեցին երդմամբ յուխտ մնանել ըստ կարգի իւրեանց օրինաց, յանձն առին զերդումն քրիստոնէից, պահել ընդ նոսա Հաստատութեամբ զմիաբանութիւն„։

Էջ 199. "Եւ յետ սակաւ ինչ աւուրց անցելոց լուան եթէ զօր եհաս բազում ի Հեր եւ ի Զարեւանդ գաւառ„.

Էջ 201 "Առաքէր երանելի սպարապետն Հայոց Վարդան միաբանութեամբ աւագանոյն որ ընդ նմայն էին՝ Սեպուհ մի յազգէն Ամատունեաց, որում անուն էր Առանձար, իբրեւ Իշխ+ Հոշխ—ր հեծելով, երթալ լրտեսել զբազմութիւն զօրացն Պարսից. [Եւ տալ գրգիռս եթէ Հնար իցէ, արի փութապէս, ասէ, գալ բերել մեզ զպսակս արքայութեան, զոր ի ձեռն նորա պարգեւէ մեզ Փրկիչն Քրիստոս՝ յաւիտենից բարութեանցն տուիչ։] Եւ երթեալ Առանձար եւ գունդն որ ընդ նմա, այնպէս շնորհեցաւ նմա յԱստուծոյ, որպէս զի տեսին զբանակն Պարսից. եւ զհզօր վերջապահ թեւով միով անկեալ, զբազումս Հանէին ընդ սուր, եւ

Էջ 81. "Իսկ յետ ոչ բազում աւուրց զօրագլուխն Պարսից խաղայր գնայր ամենայն Հեթանոսական բազմութեամբն, եւ եկեալ յաշխարհն Հայոց ի Հեր եւ ի Զարեւանդ գաւառ„.

"Զայն իբրեւ լուան զօրքն Հայոց Սեպուհ մի յազգէն Ամատունեաց Առանձար անուն ընտրեցին յամենայն զօրականէն՝ լի իմաստութեամբ եւ քաջութեամբ։ Եւ ընդ առաջ նորա հաղո- ըօ+ Իշխ—, Հար սատակեաց զբազմութիւն գնդին եւ զմնացեալսն ի նոցանէ անդրէն փախստական ի բանակն արկանէր։ Եւ ինքն ողջանդամ այսրէն դառնայր, եւ լինէր առն ուրախութեան մեծ յաւուրն յոյնմիկ զօրացն Հայոց„։

*զայլս փախստականս արարեալ արկանէին ի զօրն Պարսից, եւ ինքեանք դարձեալ ողջանդամք հասանէին ուրախութեամբ ի գունդն Հայոց, եւ պատմէին նոցա զԱստուծոյ զօրութիւնն, զոր յաջողեաց նոցա Փրկիչն„։*

Էջ 210 *եւ* 211. “*Եւ արին Վարդան Տէրն Մամիկոնէից բաժանեալ զիւր գունդն յերիս առաջս„.*

Էջ 90. “*Իսկ արին Վարդան յառաջ մատուցեալ եւ զաւագանին հարցանէր եւ միաբան ամենեցուն խրատու զզօրագլուխսն կարգէր այսպէս„.*

Էջ 214. “*Իսկ ի զօրացն Պարսից որք անկան ի պատերազմին յաւուրն յայնմիկ, զոր ստոյգ համարեալ պատմեցին մեզ տեղեկացեալք ի զօրավարացն Պարսից, երեք Հազարք հինգ հարիւր քառասուն եւ չորս այր„.*

Էջ 93. “*Իսկ ի կողմանէ ուրացելոյն անկանէր յայնմ աւուր երեք հազար հինգ հարիւր քառասուն եւ չորք այր„.*

Էջ 243. “*Իսկ ուխտանենգ իշխանն Սիւնեաց Վասակ արկեալ զիւրեաւ զամենայն պատիւ զոր ունէր ի թագաւորէն, զայր մտանէր ի խորանսն արքունի մեծաւ շքեղութեամբ, քանզի բաց ի պատուոյ թագաւորացն որ նուազէր նմա, այլ ոչինչ ի պատուոյ արքունի պկասոյ էր՝ զոր ոչ ունէր. եւ կարծէր այնուհետեւ առնուլ զթագաւորութիւնն մեծ աշխարհին Հայոց„.*

Էջ 106. “*Եւ եղեւ յաւուր միջօրէի զամենայն երեւելի եւ զպատուականսն հրամայէր յընթրիսն կոչել։ Կոչեցին եւ զուրացեալն. եւ նա ըստ առաջին կարգի օրինացն արքունի արկանէր զպատուական հանդերձն զոր ունէր ի թագաւորէն. կապէր եւ զպատիւ վարսին եւ զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ, եւ զկռանակուռ ծոյլ ոսկի կամարն ընդելուզեալ մարգարտով եւ ակամբք պատուականօք ընդ մէջ իւր ածէր եւ զգինդսն յականջսն, եւ զլումարտակն ի պարանոցին,*

զսամոյրն զԹիկամրն, եւ զամենայն օրէնս պատուոյն զանձամբ արկեալ՝ երԹայր յարքունիսն, չքեղ եւ երեւելի քան զամենեսեան երեւէր բազմուԹեանն„։

Էջ 260. “Վաղվաղակի հրաման տայր՝ նախ զնոսա որ ընդ իւր քահանայքն էին զսուրբ երէցն Սամուէլ եւ զսուրբ սարկաւագն Աբրահամ յանդերեւոյԹ տեղի ինչ տանել շատ ի կարաւանէն հեռի, եւ անդ գլխատել, յաղագս չզտանելոյ ուրուք ի քրիստոնէից եւ պատուելոյ զոսկերս նոցա„.

Էջ 111. “Նա հրաման վասն երկուցն՝ որ անդէն ի կարաւանին առ իւրն էին Սամուէլ եւ Աբրահամ, զի գաղտ կորուսցեն զնոսա„։

Էջ 280. “Նոյնպէս եւ սուրբ քահանայքն Աստուծոյ բերկրեալք սրտիւք եւ զուարԹալից երեսօք ընկալեալք զամենեսեան ի գիրկս իւրեանց ասէին„.

Էջ 121. “Իսկ երանելիքն միաբան քաջալերէին զնոսա եւ ասէին„.

Էջ 304. “Տէր Յիսուս, ընկալ զոգիս մեր„.

Էջ 139. “Տէր Յիսուս, ընկալ զոգիս մեր ամենեցուն եւ խառնեա զմեզ ի դունդս սրբոց քոց„.

Էջ 309. “Եւ հասեալ պահապանացն առ իշխանն յաւուր վեցերորդի, պատմէին զամենայն անցս աղէտիցն՝ որ անցին ընդ նոսա զտիւն մի եւ զգիշերս երկուս. զորոց զգոյն երեւացն տեսեալ Դենշապհոյ եւ ընկերացն նորա եւ զանցս ահագին իրացն մի ըստ միոջէ լուեալ՝ զարհուրէին։ Եւ ապշեալք ի բազում ժամս հիանային„։

Էջ 140. “Եւ եկեալ պատմէին մեծաւ զարմացմամբ զամենայն անցս չարչարանացն զոր կրեցին„։

Ահա՛ քանի մ'օրինակ միայն այն խումբէն, որ փոփոխօրէն ընդլայնուած կամ սեղմուած է Վարդանանց Պատմագրի գրչին տակ։ Այս խումբի նմանութիւններն ամբողջովին բաղդատել աւելորդ աշխատութիւն մ'է. մանաւանդ համեմատաբար շատ երկար հատուածներ յառաջ պէտք է բերել, որոնք ոչ միայն ի զուր էջեր պիտի գրաւէին, այլ՝ արդէն մեր ընտրած օրինակներն ալ բաւական են մեր նպատակին համար։

Փոփոխօրէն ընդօրինակուած նմանութիւններու ուրիշ խումբ մ'ալ կայ, աւելի հետաքրքրական։ Այս տեղ ալ հակիրճ հատուածներով կը բաւականանանք։

| Փարպեցի: | Պատմ. Վարդանանց: |
|---|---|
| Էջ 118. "Արդ՝ քանի՞ աշխարհք են որում դուք իշխէք աստուածաբար, եւ զոր սպանանել կամիք յիշէք եւ զորս կեցուցանել,,։ | Էջ 10. "Աշխարհն Հայոց Վրաց եւ Աղուանից եւ Լփնաց, Ծաւդէից եւ Կորդուաց, Աղձնեաց,, եւայլն. (Հմմտ. Եղիշ. էջ 38, 73, 100)։ |
| Էջ 125. "Այսորիկ ամենեքեան եպիսկոպոսս, եւ ի պատուական երիցանց՝ սուրբն Ղեւոնդ, եւ Խորէն ի Մրենոյ, եւ Դաւիթ, եւ այլ պատուական երիցունք եւ աւագ վանականք բազումք, հանդերձ սքանչելի եւ հրեշտակակրօն տերամբն Աղանաւ, որ էր յազգէն Արծրունեաց... | Էջ 22. "Այս ամենայն եպիսկոպոսք եւ քորեպիսկոպոսք եւ պատուական երիցունք ի տեղեաց տեղեաց հանդերձ սուրբ ուխտիւ եկեղեցւոյ՝ միաբանք եւ միահաւանք, միահամուռ ժողովեալք ի Թագաւորանիստ քաղաքին յԱրտաշատ, համանութեամբ մեծամեծ նախարարացն եւ ամենայն բազմութեամբ աշխարհին արարին նամակին պատասխանի,,։ |
| Էջ 126. Այսորիկ ամենեքեան աւագ տանուտեարք, հանդերձ աւագ սեպհօք եւ բարեպաշտ եպիսկոպոսօք եւ աւագ քահանայիւք եւ վանականօք, պատասխանի հրովարտակին գրէին,,. | |
| Էջ 176. "Մի ոմն յՈստանեայ տանէն, որում անուն | Էջ 50. "Իսկ մի ոմն ի նախարարացն որ անդր դիպե- |

էր Զանգաղան, սերմնաժանգ, որդի անօրէնութեան, որ բարգում եւ անապաշխար գոր գործեալ էր ի կեանսն իւրում, լսէր յոմանց զխորհեալսն Հայոց եւ երթեալ վաղվաղակի պատմէր նմանւոյն իւրում Վասակայ։ Որոյ բանից իմացեալ եղեալ ննենգաւոր քսուին՝ աւագ նախարարքն Հայոց կալեալ զ՚նա ի դեօղն որ կոչի Արծակ, տարեալ կապեցին ի միւսում եւս ի գեօղ յանուանեալ Բերդկունս, ի նմին Բագրեւանդ գաւառի. զոր եւ ոչ յետ բազում աւուրց՝ ըստ արժանի գործոց իւրոց անօրէնութեանց՝ քարկոծեալ սատակեցին,,։

Էջ 185. "Եւ սպարապետն Հայոց Տէրն Մամիկոնէից Երանելին Վարդան՝ առեալ ընդ իւր ի տանուտեարցն Հայոց, որք ջերմեռանդ սիրով ճեպէին մարտիրոսութեան ժամուն պատահել, որք էին այսոքիկ. Խորէն Խորխոռունի, Արշաւիր Կամսարական եւ Թաթուլ Դիմաքսեան, եւ Արտակ Պալունի եւ Գիւտն Վահեւունեաց եւ Համայեակ Դիմաքսեան եւ այլ տանուտեարք եւ Սեպուհք, եւ բազումք ի զօրացն Հայոց. եւ այլ գունդք ի զօրացն Մարդպետական այրուձիոյ, փոյթ ք ի գործ պատերազմի առաքինութեան,,։

ցաւ, էր ի նոցա խորհրդի. եւ ոչ միաբանեաց ընդ նոսա ի մեծ վկայութիւնն. եւ անդէն առ ժամայն ի նոցունց ի տեղւոյն քարկոծեցաւ, եւ աՀ մեծ անկաւ ի վերայ ամենեցունց,,։

Էջ 56. "Թէպէտ եւ ոչ ունէին թագաւոր առաջնորդ. եւ ոչ արտաքուստ օգնական վոք յօտարաց, սակայն անձանց առաքինութեամբ եւ սուրբ Վարդապետացն միխթարութեամբ՝ համագունդ ամենայն նախարարքն զօրօքն իւրեանց յԵրասխաձոր տանէ ի մի վայր գային հասանէին վաղվաղակի, բազում եւ այլ այրուձի՝ որ յարքունանէ տանէ անդէ էր,,։

Եղ 186. “Եւ զորոց գիտէր պհոլովումն ի վատթար կողմն եւ ոչ ուղղակի ի խորհուրդ ուխտապահութեանն՝ ի տանուտեարցն Հայոց եւ ի Սեպհացն, որք էին երեւելագոյնք, եւ յայլ ռամիկ բազմութենէ, զայնս արգելեալ առ իւր պահէր„:

Եղ 57. “Ընտրեաց եւ մա ընդ իւր զորոց գիտէր զթուլութիւն հաւատոց նոցա, զիշխանն Խորխոռունեաց զորօք իւրովք, զիշխանն Ապահունեաց զորօք իւրովք, զիշխանն Վահեւունեաց զորօք իւրովք, զիշխանն Պալունեաց զորօք իւրովք. զիշխանն Գաբեղենից զորօք իւրովք, զիշխանն Ուրծայ զօրօքն իւրովք: Եւ զայլս բազում զօրս յարքունի տանէն էարկ յինքն, եւ զսեպուհս ոմանս յայլմէ տոհմէ„:

Եղ 186 “Եւ հրաժարեալ երանելի զօրավարն Հայոց Յերն Մամիկոնէից Վարդան, հանդերձ ընկերակցօքն իւրովք եւ այլ զօրուն արամբք, որ էին ընդ նմա, յիշխանէն Սիւնեաց Վասակայ եւ յայլ միացելոցն ընդ նմա աւագանոյն, ողջախորհուրդ միտօք գնային ի գործ պատերազմին„.

Եղ 57. “Եւ զգունդն երկրորդ տային ի ձեռն Վարդանայ զօրավարին Հայոց՝ անցանել ընդ սահմանս Վրաց ի վերայ Մարզպանին Ճորայ, որ եկեալ էր աւերել զեկեղեցիսն Աղուանից„:

Եղ 187. “Եւ իշխանն Սիւնեաց Վասակ փաղփաղակի գաղտ դեսպանս առնէր առ Միհրներսեհ հազարապետն Արեաց, եւ զիւր նենգաւոր խորհուրդն նամակաւ ծանուցանէր նմա„:

Եղ 57. “Իսկ նա յամբարձածուկ հաւալոցէն ճեպով դեսպանս առաքէր առ գունդն պարսից. ‘Ահա աւադիկ քակեցի զմիաբանութիւն ուխտին Հայոց, եւ այլն [նամակ մը կը յօրինէ Պատմագիրը]„.

Եղ 190–191. “Եւ այսպէս յօրինեալ զճակատն, եւ յԱստուծոյ խնամոն ապաւինեալք՝ յարձակեցան ի վերայ թշնամեացն: Յորս նախագոյն յառաջեալ ի տեղի մարտին Կամ-

Եղ 58–59. “Եւ զայս ասելով՝ խումբ արարեալ յարձակէին, եւ զաջ թեւն բեկեալ՝ զձախոյ կողմանն արկեալ, եւ սրոյ ճարակ զամենեսեան տային ընդ երեսս

սարականն Արշաւիր եւ Մուշ Սեպուհն Դիմաքսենից, որք յանդիմանութենէ տեղեացն դիպեցան թանձրախոր սաստիկ մօրից. կամսարականն Արշաւիր եւ Մուշ ի յառաւելապէս դիմեցմանէն երիվարացն, անկեալք ի տիղմ հանդերձ երիվարօքն խրէին. անդ կատարեալ պսակէր երանելի սեպուհն Դիմաքսենից Մուշն՝ ի որսականայ։

Իսկ Կամսարականն Արշաւիր իջեալ յերիվարէն ի հետիոտս՝ սպանանէր զՎուրկն՝ զեղբայր Լփնաց թագաւորին, եւ ի բաց ձգեալ զերիվարն ի սաստիկ խոր տղմոյն, ուր եւ մոյկ մի զերծեալ յոտանէն՝ թաղեալ մնայր անդէն ի մօրին, եւ ինքն կամսարականն միամոյկ տղմաթաթաւ հանդերձ ամենայն զինուն հանեալ զերիվարն ի ցամաք, անվեհեր քաջարար նման թռչնոց յերիվարն հեծանէր, եւ զարհուրեցուցեալ զթեւ իւրոյ կողման թշնամեացն՝ փախստական առնէր„։

Էջ 193. "Եւ հասանէին ի պահակ որմոյն„.

"զնոյն արձակէին դեսպան ի Հոնս, եւ առ այլ ամբականս տեղեացն, զորս հաւանեցուցէ միաբանել նոցա գնդաւ.

Էջ 194–195. "Թէ որդ ող-տեաց անօրէնն Վասակ ուխտին Աստուծոյ... եւ գէէր-

դաշտին, եւ փախստական առնէին մինչեւ յամուր տեղին մայրեացն առ խորագոյն դարիւքն Լոփնաս գետոյ։ Ուր ընդդէմ դարձեալ թագաւորազանց ոմանց Բաղասական արքայի, ընկեցին զումն ի ձիոյ ի նախարարաց Հայոց, ի գնդէն Դիմաքսենեց զՄուշ ապանին, եւ զԳազրիկ վիրաւորեցին„.

Յայնմ տեղւոջ դէտ ալն ի վեր ամբանայր Արշաւիր Արշարունի, գոչէր առիւծաբար եւ յարձակէր վարազաբար, հարկանէր եւ սատակէր զՎուրկն քաջ զեղբայր թագաւորին Լփնաց, եւ զբազում համհարզս նորին ընդ նմին սատակէր„։

59. "Խաղային գնային այնուհետեւ ի վերայ Պահակին Հոնաց„

"զնոյն դեսպան արձակեցին յաշխարհն Հոնաց եւ ի բազում այլ ազգս Բարբարոսաց որ համագործք էին Հոնաց աշխարհին, եւն. (տես վերեւ)։

Էջ 60. "Գուժկան հասանէր... վասն ապստամբին Վասակայ, յետս կացեալ

դեանն ամրոցացն Հայոց է քաջ կալեալ, եւ զիւրեանցն բերդակալս արարեալ՝ ըզգուշացուցին եւ զորդիս տոհմին Մամիկոնէից եւ Կամսարականաց եւ զայլոց տանուտեարցն ժողովեալ յիւրաքանչիւր դայեկաց, յամուրս բերդից իշխանութեանն Սիւնեաց ետ անցուցանել, եւ հրամայեաց պահել զամուրսն զգուշութեամբ եւ ապա նենգաւորն Վասակ տայ տանել զոր-դայսն առ Թագաւորն Պարսից։

յուխտէն քրիստոնէութեան եւ աւերեալ զբազում տե-ղիս Հայոց աշխարհին, մա-նաւանդ զծմերոցս արքունի, որ կայեանք զօրացն էին, զԳառնին եւ զԿերամօնս եւ զԴրոշանակերտն՝ զմեծ դաս-տակերտն, զՎարդանաշատն եւ զամուրն Օշական, զՓառա-խոտն, զԱրգեւանն, զՋողա-կերտն տուն եւ զԵրերդն Ար-մաւիրի, զկատաղն տուն, զՄ-րանծն, զՄշնախն եւ զամենայն տուն Արտաշատու եւ զնահանգն Արտաշատու եւ զԱրտաշատն բնակին գիւղին, եւ զամենայն գեօղս եւ տունս, որ շուրջ զնովաւ էին, առեալ աւե-րեալ եւ հրձիգ արարեալ եւ զամենեցուն ձեր զընտանիս փախուցեալ մերժեալ յիւ-րաքանչիւր բնակութենէ։...

Եւ որք խոտորեցան զկնի սատանայի ընդ ուխտանենգին Վասակայ՝ են այսոքիկ. իշխանն Բագրատունեաց Տիրոց, իշխանն Խորխոռունեաց Գադիշոյ, իշխանն Ապահունեաց Մանէճ, իշխանն Վահեւունեաց Գիւտ, իշխանն Պալունեաց Վարազշապուհն, իշխանն Արեղինեց Արտէն, իշխանն Ուրծայ Ներսեհ, եւ այլ յՈստանկաց, եւ սեպուհք ոմանք յիւրաքանչիւր տոհմէ„։

Բայց որ ընդ նմայն էին՝ են ոմանք որ փախեան յիւրա-քանչիւր տեղիս, եւ բազումք այն են որ զհետ մոլորեցան նորա ամբարշտութեան [Նա-խարարաց անուան տեղը կը խախտէ Վարդանաց Պատ-մագիրը, տե՛ս Եղիշէ էջ 57, տարբերութեամբ մը եւ կը յարէ] “բազում եւ այլ ա-զատ մարդիկ, որ ստանիկան անուանին՝ յարքունի տանէ„։

Էջ 198. “որոց անուանքն են չքաւհանայից այս. Զան-գակ ոմն, Սահակ Զոյնող, եւ միւս ոմն Պետրոս երկաթի„։

Էջ 71. “մանաւանդ սուտ երիցամբքն, որով գործէր զչարիսն. Էրէց մի Զանգակ անուն, էրէց մի Պետրոս ա-

Եղ 216. “Քանզի բազմութիւն փախստէիցն Հայոց, նախարարք եւ Սեպուհք ոստանիկք եւ ռամիկք դիմեալ յերկիրն Տայոց, ժողովին առ Հմայեակ եղբօր որդւոյ Վարդանայ.....

Եղ 219. “առ վայր մի առ լերամբ որ կոչի Պարխար՝ մերձ առ սահմանակցութեանն խաղտեաց՝ ամրապոյն տեղի մի գտեալ դադարեցին„:

նուն, [illegible] ի Սահակ անունն„.

Եղ 97. “Քանզի բազումք յազգէ ի մեծ նախարարաց էին, եւ եղբարք եւ որդիք. հանդերձ ամենայն սիրելեօք իւրեանց ի մէջ ամրական վայրացն. ոմանք յանկոյս երկիրն խաղտեացն„:

Ահա՛ խումբ մը նմանութիւններ ալ, որոնք Նոյնա–բի–ններ են իրապէս: Վարդանանց Պատմագիրն իւր առջեւն ունի աղբիւր մը, կը հետեւի անոր ընթացքին եւ կարծես իւր հեղքերը խոտորցնելու արուեստական միջոցներ ի գործ կը դնէ: Ինչ որ իւր աղբիւրին մէջ որոշ է, զայն ընդհանուր բացատրութեամբ մը կը փոխանակէ. յականէ յանուանէ եղած յիշատակութիւնները, ըլլա՛յ նախարար կամ իշխան, ըլլա՛յ եկեղեցական, պաշտօնի տիտղոսներով կը բացատրէ եւ փոխադարձաբար: Երբ Փարպեցի Բերդէան կ'ըսէ, ինքն քանի մը բերդերու անունն կը շարէ. երբ նա որոշ կերպով իշխաններու անունը կը թուէ, ինքն կը բաւականանայ “բազումք որք ընդ նմայն էին„ով եւայլն եւայլն, ինչպէս յայտնի կ'երեւի մեր բաղդատած օրինակներէն: Նոյն իսկ քերականական ձեւերու ընդհանրապէս փոփոխութիւններ կա՛ն. ամէնէն աննշանը, զոր օր. տե՛ս վերագոյն, “է Հոնս եւ — այլ ամրականս„ (Փրպ.) “յաշխարհն Հոնաց եւ է բազում չայլ ազգս„, բաց աստի՝ արդէն ամբողջ նախադասութիւնը կերպարանուած է:

Պատահական երեւոյթէ աւելի բան մ'է այս. դիտումի, արուեստական միջոցի մ'արդիւնք

կրնանք համարիլ պատմագրելու այս եղանակը։ Մեր բաղդատութեան դրած եզրները, կարծենք, պէտք եղածէն աւելի ակներեւ համգամանք մ'ու-նին հաստատելու համար Վարդանանց Պատմա-գրին Փարպեցիէն ունեցած կախումը։

Դեռ սակայն կրնանք ընդարձակել մեր դի-տողութեանց սահմանը. հետեւինք Վարդանանց Պատմագրին քայլերուն, առանց ձեռքէ ձգելու Փարպեցու Պատմութեան թելը.

Հայք, ինչպէս կը պատմէ Փարպեցին, "նա-մականի„ (նամակներ եւ ոչ միայն նամակ մը կամ "հրովարտակ„ մը, ըստ Վարդանանց Պատմագրին) կը ղրկեն "առ ամենայն ազատանի տէրանն Յունաց ե-ւ առ այլ իշխանս եւ կողմնակալս, առ բդեշխն Աղձնեաց եւ առ իշխանն Անգեղ Տան, ի Ծոփս եւ ի Հաշտեանս եւ յԻնգիլենս եւ այլ իշխանաց իւրաքանչիւր տեղեաց, եւ առ մեծ զօրավարն Անտիոքայ։ Եւ զայս ամենայն թղթեան կնքէր նախ ինքն իշխանն Սիւնեաց Վասակ իւրով մատանեաւ եւ ապա ամենայն տանուտէրքն Հայոց„ (Փրպ. էջ 184)։ Ասկէ վար՝ Յունաց Պատ-գամաւորութիւնը նշանաւոր խումբ մ'էր, զոր կը կազմէին Վահան Ամատունի, Հմայեակ Մամիկո-նեան՝ Վարդանի եղբայրը, Մերհուժան Արծրունի՝ Ազանի եղբայրը, "յորոց ձեռն տուեալ զնամականին իշխանին Սիւնեաց Վասակայ եւ ամենայն նախա-րարաց աշխարհին Հայոց, յուղարկէին առ կայսր եւ առ այլ ամենայն յառաջագրեալ ազգանին Հայոց„ (անդ 185)։ Պատգամաւորութիւնը հա-սած էր ի Բիւզանդիոն՝ երբ արդէն սկսաւ Վար-դանանց պատերազմը։ Թէոդոսի (Բ) մահուան եւ Մարկիանոսի գահակալութեան պարագաները կը ստիպեն Հայոց պատգամաւորութիւնը սպասել. բայց "իբրեւ տեսին՝ թէ ոչինչ օգտեցան յաղագս որոյ աշխատ եղեն, դարձան եւ փութային գոնեայ ի յուսոյ փրկութենէն չվրիպել...։ Եւ ոչ ժամա-նեալ ի գործ ժամու պատերազմին, առ վայր մի

առ լերամբն որ կոչի Պարխար, մերձ առ սահմանակցութիւննԽաղտեաց՝ ամրագոյն տեղի մի գտեալ դադարեցին, թէ որպէս առաջիկայ իրացն մարթացին պատրաստել. (Փրպ. 218—219)։ Այս պատրաստութեան միջոցին յանկարծական յարձակում մը կը կրեն Տայոց գաւառին Որջնհաղ գիւղին մէջ, եւ Հմայեակ Մամիկոնեան՝ պատգամաւորներէն մին՝ հոն կը նահատակուի քաջապէս։

Վարդանանց Պատմագիրը կը կեղծէ իբր թէ իւր առջեւն աղբիւր մ'ունեցած չըլլայ, երբ կը պատմէ պատգամաւորութեան պարագաները։ Իւր պատմութեան առաջին մասին մէջ տարբեր կերպարանք մը կու տայ իրողութեան. նախ՝ կ'ըսէ թէ միայն Ատոմ Գնունի ղրկուեցաւ իբր պատգամաւոր (էջ 54). քիչ մը յետոյ մոռնալով՝ թէ անձ մը միայն նշանակած է, կը յաւելու "իբրեւ յանդիման եղեն մեծի թագաւորին„ (էջ 55)· բայց զարմանալի չէ այս։ Պատմագիրն իւր առջեւ ունի աղբիւր մը (Փարպեցին), որուն կը հետեւի, եւ առանց անդրադառնալու նախապէս գրածին վրայ՝ կը շարունակէ իւր հետեւումն ու կ'ընդօրինակէ՝ "յանդիման եղեն թագաւորին Թէոդոսի„ (Փրպ. էջ 217), ըստ սովորութեան փոխելով ասացուածին ձեւը՝ ոչ թէ "Թագաւորին Թէոդոսի„, այլ՝ "Մեծի Թագաւորին„։ Երկրորդ՝ Վրդնց. Պատմագիրն երբ կը պատմէ, շատ յետոյ (էջ 98—99), թէ Տայոց ձորագաւառին մէջ տեղի ունեցած ընդհարումի մէջ "երանելին Հմայեակ, եղբայր Սպարապետին Հայոց Վարդանայ, յանխնայ քաջութեամբ մարտուցեալ՝ կատարեցաւ նահատակութեամբ„, եւն, նախնապէս չըսեր թէ ո՞ւր էր Հմայեակ մինչեւ այն ատեն. պատերազմի նախապատրաստութիւններու մէջ ի՞նչ դեր ունեցաւ, կամ թէ գոնէ ի՞նչպէս եւ ե՞րբ գնաց նա Խաղտեաց լեռները։ Վարդանանց Պատմութեան մէջ յանկարծ մէջտեղ կ'ելլէ Հմայեակ. Ընդհակառակն իւր եղբօր աջ թեւն եղած էր նա։

Փարպեցու Պատմութեամբ ամէն տեղ կ'երեւի, կը խօսի, խորհուրդ կու տայ իւր եղբօր, մինչ ասդին անոր նահատակութեան պարագաները կը գտնենք, եւ այս ուղղակի օրինակուած Փարպեցիէն։

Նման կէտ մ'ալ. տեսանք թէ Փարպեցին ուրիշ նամակներ ալ կը յիշէ յականէ յանուանէ ղրկուած Աղձնեաց, Անգեղ Տան, Ծոփաց, Հաշտեանից, Եկեղեաց իշխաններուն եւ այլ իշխանաց իւրաքանչիւր տեղեաց, եւ առ մեծ սպարապետն Անտիոքայ„։ Վարդանանց Պատմագիրը չի յիշատակեր այս թուղթերն կամ նամակները պատմութեան այն տեղը, ուր Փարպեցին կը շեշտէ։ Յետոյ՝ միայն Տիզբոնի ատեանին մէջ Վասակայ ամբաստանութեան ժամանակ կ'ըսէ՝ թէ "ցուցանէին թուղթն՝ թուղթ մի ի Վրաց աշխարհէն եւ թուղթ մի յԱղուանից աշխարհէն. սոյնպէս եւ թուղթ մի յԱղձնիս, եւ հրովարտակ մի առ թագաւորն Յունաց, եւ թուղթ մի առ մեծ սպարապետն Անտիոքոս։ Եւ ի բոլորեսին յայտնի թուղթն վաւերականի մատանի Վասակայ եդեալ էր„ (Եղիշէ էջ 103)։ Պատմագիրն ինչո՞ւ նախապէս չըսեր՝ թէ բաց ի Բիւզանդիոնէն՝ ուրիշ տեղեր ալ նամակներ գրուեցան, եւ առանց նախապատրաստելու ընթերցողը՝ այս տեղ ալ դարձեալ յանկարծական յիշատակութեամբ կասկած կ'արթնցընէ անոր մտքին մէջ։ Ուրիշ եղանակ մը չէր կրնար ընտրել հետեւող մը։ Եւ հետաքրքրական է դիտել՝ թէ ոչ միայն Վարդանանց Պատմագիրը մեր վերագոյն մատնանիշ ըրած արուեստակութեամբ Փարպեցու "եւ այլ իշխանաց իւրաքանչիւր տեղեացն„ կ'որոշէ Վրաց եւ Աղուանից բացատրութիւններով, այլ մանաւանդ, Փարպեցին՝ որ Վասակի ամբաստանութեան միջոցին ընդհանուր ձեւով մը կը բացատրէ նամակներու խնդիրն, հոն Վարդանանց Պատմագիրը մի առ մի կը թուէ զանոնք (Հմմտ. Փրպ. էջ 249—250, Եղիշէ էջ 103)։

Թէ՛ Հմայեակի եւ թէ՛ Նամակներու մասին թերի պատմածը, մանաւանդ այն պատմածներուն տեղ տեղ բառական նմանութիւնները, ըսենք նոյնութիւնները Փարպեցւոյ Պատմութեան հետ, աղբիւր մը կը մատնեն։ — Փարպեցին է այս աղբիւրը։

Փարպեցու իբր աղբիւր գործածութեան՝ ծանրակշիռ հանգամանք, կերպարանք մը կու տայ Սպարապետին առ երեսս ուրացութեան իրողութիւնը։ Փարպեցին կենդանի գոյներով կը պատկերացրնէ այս պարագան (Փրպ. էջ 142—172), ինչպէս նաեւ այս առթիւ Սպարապետին երթը դէպ ի յունական բաժինը։ Վարդանանց Պատմագիրն այս կարեւոր միջադէպը ծածկել կարծած է՝ այդ մասին ուղղակի յիշատակութիւն մը չընելով։ Բայց իւր սա՛ տողերն ամէն գաղտնիք կը պարզեն, "խորհուրդ արարեալ ի գիշերի միում ամենայն ուխտին բազմութեամբ, կոչեցին եւ զսպարապետն զօրաց ի խորհուրդն. Հարցին եւ քննեցին եւ ի վերայ հասին մտացն անշարժութեան, որոյ ո՛չ առ նուազ մի թերացեալ էր ի սիրոյն Քրիստոսի։ Եւ միաբան աղօթս արարեալ ի վերայ նորա, վերստին ընկալան զնա յառաջին նոյնութիւն" (Եղիշ. էջ 49)։ Աւելորդ է բացատրել՝ թէ այս համառօտն, այնչափ սեղմ եւ կուռ, Փարպեցու ընդարձակ պատմածին կատարեալ ցոլացումն է։ Ինչո՞ւ այս յանկարծական շեղումը Սպարապետի նկատմամբ. ի՞նչ եղած էր որ Սպարապետը կը հարցափորձեն, կը քննեն եւ կը հասկընան որ հաստատուն է նա իւր հաւատքին վրայ։ — Փարպեցին կու տայ պատասխանը։

Ա՛լ մանրամասնութիւններու չենք մտներ չեշտելու համար երկու պատմագիրներուն իրարու հետ ունեցած աղերսը, այսինքն՝ Եղիշէի կախումը Փարպեցիէն։ Մտադիր կ'ընենք միայն Եղիշէի Պատմագրութեան նպատակը, որ ուղղակի ապացուցումն է մեր պաշտպանած դատին։ Մարութայի եւ Փիլոնի թարգմանութիւններուն Վարդանանց Պատ-

մութեան հետ ունեցած յարաբերութիւններն արդէն շատ որոշ կերպով ցուցուցին՝ թէ Ոսկի-Գրքոյկը Վարդանանց Պատերազմէն յետոյ գրուած մ'է։ Փարպեցին ալ որոշ ժամանակամիջոց մը ցոյց կու տայ անոր գրութեան։

Փարպեցու գրչին տակ բոլոր նահատակներ սուրբ են կամ երանելի. դիտենք այս երեւոյթը մանաւանդ Սպարապետին վրայ։ Ընդհակառակը կը տեսնենք որ Վարդանանց պատմագիրն իր "Հրաշապատում"ին դիւցազնը Քաջ, Կորովի, Արի քաջանուններով կը կենդանացընէ։ Պատմագրին բուն եւ ամբողջ նպատակն է այս։ Բովանդակ պատմութիւնը հաստուած է բարձրութեան մը վրայ, որ իսկապէս կը տարբերի Փարպեցիէն։ Աս ընտանեկան անուշութիւն մ'ունի. մեր բոլոր մատենագիրներուն մէջ միայն ինքն է այն ոճին ստեղծիչը. բուն Պատմագիր մ'է Ղազար. ամէնէն մանր միջադէպքերով, ինչպէս Արշաւրի մօյկին պատմութիւնը, Ղեւոնդ Երէցի խօսակցութիւնը Վասակին հետ Տիսբոնի ճամբուն վրայ եւ այլն, անժխտելի ընտանեկութիւն կը միացընէ իր գրչի բնական եւ կախարդիչ սահունին։ Բայց միւսը՝ Եղիշէն՝ կը դրէ պատմութիւն մը՝ որ պարզապէս դիւցազներգական բան մ'ունի։ Կուռ հնչուն մը կայ հոն։ Պատերազմական դէպքերը, իրենց կանխող եւ յաջորդող պարագաներով, առաջին անգամ գրի առնող մը՝ անկարելի էր որ այնպիսի գրուած մը տար մեզ։ Ասի գոնէ շատ ստոյգ է Վարդանանց Պատմագրին համար. նա ակներեւ դիւրութեամբ մը կը շարժէ իր գրիչը։ Այս յատկութիւնը բոլորովին խամ նիւթի մը վրայ չի կրնար փայլիլ, մանաւանդ գրելու այդ նկարէն եւ բանաստեղծական ոճին մէջ։ Մէկ գրչով կարելի չէ տալ այն կաղապարը. քանի մը փորձեր անհրաժեշտ են։ Բայց հարկ չկայ ասոր։ Փարպեցու արդէն գրած պատմութիւնն ամէն դիւրութիւն պիտի ընծայէր մեր Պատմագրին իր ճաշակին համեմատ գրելու,

կաղապարելու համար դէպքերը։ Այս է պատճառը, որ նա գրագիտական-գեղարուեստական խաղեր կ'ընէ Փարպեցու Պատմութեան վրայ, եւ տեղի կու տայ դիտելու այնպիսի նմանութիւններ՝ նոյնութիւններ՝ զորս նշանակեցինք վերագոյն։ Եւ քանի որ Վարդանանց Պատմագրի բուն եւ ամբողջ նպատակն է բարձրացընել Վարդանի եւ Վարդանանց քաջութիւնը, ոչ միայն յատուկ քաջանուններով — Քաջն, Կորովի, Արին, Զօրմանալին, Իմաստունն, Հրաշակերտն, Մանուկն, Արդարն, Յառաջադէմն (էջ 93) — կը կենդանացընէ Երանելինները, այլ մանաւանդ զանց կ'ընէ Վարդանի չուն դէպ ի յունական բաժինը՝ զայն ուրացութեան աղտէն սրբելու համար, որ ստուգիւ կրնար դիւցազներգական ոճին մէջ ստուերած մը բերել Սպարապետի քաջագործութիւններուն, գէթ Պատմագրին մտածութեամբ։ Այս է պատճառը, դարձեալ, որ պատմական ինչ ինչ դէպքեր շատ համառօտ կ'անցնի, կամ առանց կրկնելու իր նպատակին յարմար դէպքերը կ'ընդլայնէ եւ անոնց վրայ կը ծանրանայ։ Նոյն իսկ Ս. Ղեւոնդի նկատմամբ ակնարկութիւն մ'իսկ չըներ հոն, ուր Փարպեցին սքանչացումով կը խօսի (էջ 204—2 5. 227—228). եւ միայն կը շեշտէ, կը ճոխացընէ, կը կենդանացընէ ինչ որ Քաջին եւ Կորովիներուն շահատակութիւնները կրնայ ցոլացընել։

Մեր Պատմագրին տեղ տեղ քրիստոնէական-փիլիսոփայական խորհրդածութիւններն իսկ միակ բան մը կը ցուցընեն. այն է՝ աղբիւր մը. այսինքն՝ արդէն գրուած մը՝ երբ յատուկ բաժանումներու կը վերածէ, առիթ կ'ունենայ դէպքերը լաւ ուսումնասիրելու եւ ի յետնագունէ խորհրդածութիւններ ընելու։ Այս ամէնը հանդարտ, ընդարձակ ժամանակ եւ լաւ կերպով պատրաստուած նիւթ կը պահանջէ։ Վասակի վերջին վայրկեաններուն վրայ այնքան ծանրացում, “Տիկնայք փափո-

կատունք„ի այնչափ չքեղ ընդլայնումը, Խոստովանողին հիանալի դրուագը, Փիլոնի հատուածները քրիստոնէական ջատագովականի վերածելով նամակ յօրինել, եպիսկոպոսներուն բերանը դնելը, եւն եւն, առաջին դրութեան մը ժամանակ մտածելու բաներ չեն։ Մարութաէն եւ Փիլոնէն փոխառութիւններ հօն չէին կրնար մտնել առաջին գրչով մը։ Փարպեցին չէր կրնար գրել՝ թէ Վասակ ինչպէս զարդարեց ինքզինք։ Նախարարական կամ մարզպանական ատեանին պաշտօնական զգեստի մը, պատիւներու այնպէս մանրամասնութիւններն երկրորդ-դրող մը միայն կրնար յեռուլ իր պատմութեան մէջ, մանաւանդ Մարզպանին անկումն աւելի փառաւոր ներկայացնելու համար։ Փարպեցի ալ նոյն իրողութիւնները կը պատմէ, բայց պատմագրական համաչափութեամբ մը։ Փարպեցու մէկ պարզ յիշատակութիւնը կամ ակնարկութիւնը՝ բաւական եղած է ընտիր եւ չքեղ ընդլայնումներ թելադրելու Վարդանանց Պատմագրին։ Նամակներու պարզ յիշատակութիւնը Փարպեցու մէջ, ասդին պատճէններ յերիւրելու տեղի կու տայ։ Մարզպանին խայտառակութեան շատ համառօտ յիշատակութիւնը Փարպեցու մէջ (էջ 253), ասդին ուրիշ կերպով կը շրջանակուի՝ հանդիսաւոր եւ քստմնելի. Փարպեցու “Կանայք փափուկք„ը կը դրդէ Վրդնց. Պատմագիրը զայն ճոխացնելու՝ Փիլոնեան ներշնչումով. Խոստովանողին Նախարարաց խնդրանքով վերադարձը, “որոյ տեսն իսկ իւր առանց ամենայն երկբայութեան զկերպարանս հրեշտակի ցուցեալ ծանուցանէր ամենայն տեսողաց զայրն„ (Փրպ. էջ 322), բաւական եղած է որ Պատմագիրն իւր բոլոր ոյժը թափէ արտայայտիչ դրուագի մը՝ Մարութաէն ներշնչուած, ուր հրեշտակացած է Խոստովանողը։

Մէկ խօսքով Վարդանանց Պատմագրին բոլոր հանդիսաւորութիւնը, թէ խորհրդածութիւններու, թէ նկարագրութիւններու, եւն եւն, ամէնն

ալ հանգիստ ժամանակ եւ աչքի առջեւ պատրաստ գրուած մը կը պահանջեն. — զայս ունեցած է Վարդանանց Պատմագիրը։

## ԳԼՈՒԽ Ը.

## ՊԱՏՃԷՆՆԵՐ

Վարդանանց Պատմութեան մէջ երկու խումբ պաշտօնական գրութիւններու պատճէններ կը գտնենք իբր Նամակ կամ Հրովարտակ եւ իբր յորդորական կամ Ճառ։ Առաջին խումբ. — 1. Յազկերտի Հրովարտակը՝ “Առ ամենայն ազգս տէրութեան իմոյ„ (էջ 9—10). 2. Միհրներսեհի Նամակը՝ “Դուք գիտասջիք„ (էջ 20—22). 3. Այս Նամակին պատասխանը՝ “Յովսէփ եպիսկոպոս հանդերձ ամենայն միաբանելովքս„ (էջ 22—31). 4. Թէոդոս Բ.ի գրուած Հրովարտակ մը՝ “Յովսէփ եպիսկոպոս բազում եպիսկոպոսակցօք„ (էջ 54—55)։ Երկրորդ խումբ. — 1. Վարդանի Ճառը՝ “Ի բազում պատերազմունս„ (էջ 77—80), 2. Ղեւոնդի խօսածը՝ “Յիշեցէք ամենեքին„ (էջ 82—88)։

Այս բոլոր պատճէնները պաշտօնական հանգամանք մը չունին։ Ինքն Պատմագիրը յօրինած է զանոնք, անշուշտ կռահելով թէ ինչ բաներ կրնային գրուած ըլլալ այն դէպքերու առթիւ, զորս կը պատմագրէր։ Չենք կրնար անտարակոյս, մերժել թէ Նամակներ կամ Հրովարտակներ չգրուեցան. իրաց բնական ընթացքը կը պահանջէր այն տեսակ պաշտօնական գրուածներ։ Բայց կը պնդենք թէ Պատմագրին պատճէնները չեն այն պաշտօնական գրութիւնները. անոնք կեղծ են բոլորովին։ Եթէ այսպէս չէ, ինչո՞ւ կը վարանի Վարդանանց Պատմագիրը միւս Թուղթերու (էջ 103) պատճէններն ալ դնել իր Պատմութեան մէջ։ Եթէ կարելի ըլլար այն գրուածները ձեռք ձգել՝ անպատճառ առաջին անգամ Փարպեցին պիտի տեղաւո-

*րէր զանոնք իր պատմութեան մէջ։ Այս պատճէններու յերեւրումին մեկնութիւնն ալ աղբիւր մը կը մատնէ։ Այսպէս Միհրներսեհի ընծայուած վարդապետական նամակը՝ արդիւնք է Փարպեցու սա յիշատակութեան. "վասն որոյ եւ զօրէնս մեր զատոյց եւ զարդար երեցաւ եւ պտուղ բերել առջեւ„ (էջ 122. Համմտ. "եւ զայն եւս իմացեալ թէ զօրէնս անօրէնութեան իւրեանց գրով առաքէ առ նոսա„ էջ 123)։ Փարպեցին եւս, սուտգիւ, յառաջ կը բերէ հրովարտակի իմաստով գրութիւն մը (էջ 121—123), բայց՝ ինչպէս դիտել կու տայ բուն պատճէն մը չէ այն, այլ՝ "Փրեր ոյոզես„. այսինքն՝ սա իմաստով բան մը կը գրէր։ Փարպեցին, սակայն, աւելի գիտցած է պաշտօնական լեզու մը գործածել իր խմբագրութեան մէջ քան Վարդանանց Պատմագիրը։ Փարպեցու խմբագրութեան մէջ յառաջ բերուած կէտ մը դրդած է Վարդանանց Պատմագիրը մարմնացընել Հայոց աշխարհին ղրկուած "զօրէնս մեր զատոյց եւ զարդար„ն։ Վարդանանց Պատմագիրը հետաքրքիր կամ հմուտ անձ մ'է Պարսիկ բարքերու եւ իրերու, անոնց կրօնական ծէսերուն[1]։ Եւ իր հմտութիւնը փայ-*

---

1 *Այսպէս (Եղիշէ էջ 40, 112) ծիսական մանրամասնութիւնք ուշագրաւ են, զորս չունի Փարպեցին։ Այս ընդլայնումները բնական կերպով կու գան գրչի տակ՝ մանաւոր նպատակի մը համար ձեռնարկուած գործի մը մէջ։ Իբր Պատմութիւն՝ երկրորդական են ասոնք. իբր հմտութիւն՝ թանկագին են միշտ, մանաւանդ երբ մէկ կողմէ յառաջ բերուելով, միւս կողմէ կը հերքուին քրիստոնէական ըմբռնումներով։ Թովմա Արծրունւոյ հետաքրքրութիւններունի Վարդանանց Պատմագիրն ալ (Համմտ. Թվմ. Արծր. Դպր. Ա. գլ. Գ) պատշաճ առիթներու մէջ անմիջապէս ցուցընել իր հմտութեան չափը արտաքին իրերու մասին։ Այսպէս՝ Ցազկերտ Բ. վոխանի է (Եղիշէ էջ 137), Միհրներսեհ պաշտօնանկութեամբ կը խայտառակուի (անդ էջ 151), հեղինակիս՝ պարսիկ պատմութեան ունեցած հմտութիւնը*

*լեցընելու համար միայն կը ձեռնարկէ այնպիսի ընդլայնումներու, որոնք դարձեալ աղբիւր մ'ունին. — Եզնիկի գրուածը բուն աղբիւրն է Միհրներսեհի վերագրուած նամակին*[1]*: Միեւնոյն շար-*

---

*կը ցուցընէ: — Թովմայի հետաքրքրութիւնը Վարդանանց Պատմութենէն թելադրուած է անշուշտ:*

*[1] Հ. Թարսեղ՝ Եզնիկին կը վերագրէ նոյն իսկ այս գրութիւնը՝ երբ նշանակել կը ջանայ "Ընդդէմ Աղանդոց"ի գրութեան ժամանակամիջոցը. — "Արդ որչափ որ նշանակուած չէ, սակայն յոյժ հաւանական է կարծել, թէ կամ* 425—431 *միջոցին գրած լինի, երբ իրեն Վարդապետաց հրամանաւ դեգերեցաւ յԵդեսիա եւ ի Բիւզանդիոն՝ առ ի թարգմանել զգիրս յԱսորոցն եւ ի յունէն՝ ի Հայ բարբառ. եւ կամ յամին* 441—445, *երբ Յազկերտ Բ.ի հրամանաւ* Զրադաշտեան *կամ մոխրապաշտութեան կրօնքը սկսաւ տարածանիլ ի Հայս եւ նոցա մէջ ճարակ գտնել: Ստուգիւ այսպիսի մի եղելութեան առաջին ապացոյցը կու տայ մեզ* Եզնկայ *վերոյիշեալ երկասիրութիւնն, որուն Ա, Գ եւ Դ գրքերն՝ ըստ մեծի մասին թարգմանաբար քաղուածոյք են Ս. Եպիփանի* Յաղագս Հերձուածոց *գրքին եւ իմաստասիրացն Յունաց, որոնց հետ ի Միջագետս եւ կամ ի կողմանս Յունաց եղած ժամանակ՝ աւելի առիթ ունէր ծանօթանալու քան ի Հայս: Իսկ երկրորդ ապացոյցը կ'ընծայէ մեզ յամին* 449 *Յովսեփայ Նախագահութեամբ յԱրտաշատ համախմբուած եւ առ Միհրներսեհ ուղղուած Հայոց* Պատասխանին *առ* Եղիշէի, *յորում* Եզնկայ *վերոյիշեալ երկասիրութենէն այլեւայլ տեղիք մէջ բերուած են ընդդէմ Պարսից: Արդ՝ այս բանս ակներեւ կը ցուցընէ, թէ ո՛չ միայն այս թուէն յառաջ արդէն գրուած եւ ամենուն ծանօթ էր* Եզնկայ *երկասիրութիւնն,* այլ եւ գուցէ նոյն ինքն Եզնիկ շարադրած լինի նաեւ այն պատասխանական թուղթն իբրեւ ձեռն ատենադպրաց եւ քարտուղար. *որովհետեւ այս թղթի ոճերն եւ լեզուն իսկ* Եզնկայն *բերէ գոլով, քան* Եղիշէի" (Գուտշմիդ, էջ 318)*: Եւ այլուր "յաւուրս Ղեւոնդեանց՝ Վաղարշապատու* (Արտաշատու *պիտի ըսէր) ժողովքին մէջ առ մեծ հազարապետն Պարսից Միհրներսեհ գրուած թուղթը, զոր կ'ընծայէ մեզ* Եղիշէ, Եզնկայ Եղծ Աղանդոց *երկասիրութեանն բովանդակու-*

*ժառիթով խմբագրուած է Հայոց պատասխանն ալ, որ Ջատագովական մ'է. որովհետեւ ըստ Փար-*

*թիւնն է Ե— կը Ներսէսյեյնէ Բեղ Ճշնշէէ ԷՃրէԵ— Բօ—Ն Հեղէ-Նոյ Եոբդ (անդ էջ 405)։ Հ. Բարսեղ՝ դեռ "Վարդանանց Պատմութեան աստուածային հեղինակս, որու հաւատարմութեանը վերայ ցարդ ոչ ոք տարակուսեցաւ" (անդ էջ 251) համոզուած է որ, անշուշտ, այսպիսի առաջադրութեամբ Վարդանանց Պատմագիրը ականատեսի վիճակին մէջ կը ներկայացընէ։ Բայց Եղնիկ գրած չի կրնար ըլլալ այն պատասխանը. հակառակ պարագային ինչպէս կարելի է մեկնել թուն իսկ Միհրներսեհի վերագրուած նամակին պատճէնը, որ Եղնիկէն քաղուած է ուղղակի։ Վարդանանց Պատմագիրն իր առջեւն ունի Եղնիկի երկասիրութիւնը այն առատ գրուածէն օգտուելով թէ Պարսից կրօնը կը ներկայացնէ եւ թէ կը հերքէ զայն։ Եղնիկ չի կրնար գրած ըլլալ այն պատասխանը, որուն մէջ, ինչպէս վերագոյն նշանակեցինք, Փիլոնէն նմանութիւններ կան։ Իսկ Փիլոնի թարգմանութիւնն Եղնիկ չէր կրնար գործածել։ Իսկ Եղնիկի երկասիրութեան եւ Փիլոնի մէջ եղած նմանութիւնները բացատրելու համար պէտք է ենթադրել որ Եղնիկ անոր յունարէն բնագիրը գործածած ըլլայ, ինչպէս Եպիփանինը եւ Բարսղինը։*

*Նոյն դիտողութիւնը սոփսուած ենք ընել Հ. Վ. Սոմունճեանի այս մասին ըրած ուսումնասիրութեան դէմ։ Հ. Սոմունճեան իր "Կենոտքէէ Ե— Նկարոտքէէ Եղէշէյ Վարտապետ Կողբացւոյ" խորագրով յօդուածներուն մէջ (Բոզմովէոզ 1893 Յունուար—Օգոստոս) Վարդանանց Պատմագրի այս պատճէններն, որոնք Եղնիկի գրուածին հետ աղերս մ'ունին, նկատի առած է (Բոզմովէոզ Յունիս)։ Իր եզրակացութիւնները սանք են. Եղիշէ ականատես է (անդ էջ 273, 275, ծնթ.). Եղնիկ է հեղինակ "Արտաշատու թղթոյն" (էջ 275, 279). Եղնիկ իր ծանօթ գործը գրած է "յետ մեծ պատերազմին" (Թ. 451–452). վերջապէս որովհետեւ մէկ կողմանէ "Եղիշէի թուղթն նամակի պատշաճաւոր ձեւով մը կը սկսի, Միհրներսեհի չքադիր անուամբք եւ մեծարանաց ողջունիւ, եւ կանոնաւոր կերպով կը վերջանայ ըստ նիւթոյ նամակին. իսկ Փարպեցւոյն այդ ամենէն զուրկ է, գոգցես պատմութեան պարբերութիւն մի լինէր, եւ այնչափ համառօտ քան զմիւսն, որ թուի*

պեցու՝ Յազկերտ ոչ միայն իրենց ուրդուր եւ սորայք օրէնքը ղրկած է ի Հայս, այլ նաեւ «զկործեցեալներ

---

թէ պարզ յիշած ըլլալու համար գրեր է զայն Ղազար» (— տես լաւ մէջ տեղաւորութեան մ'ը ընելու համար՝ թէ Փարպեցին իմք պատմէն յառաջ մ բերեր էր գրածը, ինչպէս ըսինք առջին —)։ Միւս կողմանէ որովհետեւ «Պարսից թղթոյն վերջը մեղիչէն գրուած է «կամ արարէք բան առ բան նամակիդ պատասխանի, եւ կամ արիք ի դուռն եկայք»։ Եւ Փարպեցին այդ խօսքը իւր աւանդածին մէջ այսպէս պարզեր է. «զկարծեցեալ օրէնսդ (քրիստոնէութեան) առ մեզ գրել հրամայեցաք ձեզ»։ Եւ ահա այդ իմաստով բան առ բան պատասխան Եղիշէինն է, եւ Փարպեցւոյն գրեթէ ոչինչ է. դարձեալ Եղիշէն նպատակ չունէր ժողովոյն թուղթը երկարելու (— բայց ինչո՞ւ կ'երկարէ —), բայց Ղազար ունէր համառօտելու, պատմութեան կապն ընդ երկար չընդհատելու համար. մանաւանդ որ արդէն Եղիշէի մէջ ամբողջովին կար այն» (Բզմ. Յունիս. էջ 274–275, ծնթ. 3)։ Այս ձրի ենթադրութիւններուն բոլոր հերքումն իրենց մէջն է. — Պ. Գր. Խալաթեանի գործը՝ Հ. Սոմունճեան իւր առջեւն ունի, այսինքն այն կարծիքն ունի թէ Փարպեցի Վարդանանց Պատմագրին բանաքաղն եղած ըլլայ. որովհետեւ ըստ Հ. Սոմունճեանի «Եղիշէն ականատես է», «հոն ժողովոյն ներկայ է» «մանաւանդ որ արդէն Եղիշէի մէջ կար այն» (այսինքն՝ նամակը)։

Արդէն բացատրեցինք՝ թէ Վարդանանց Պատմագիրը Փարպեցու ինչ ինչ տեղիքներէն գրգռուած է խմբագրելու պաշտօնական գրուած մը՝ նախ չինելով Միհրներսեհի անունով նամակ մը եւ յետոյ բառ առ բառ հերքելով զայն, որ «կեղծեալ էին ծայրէ ի ծայր» չեշտելով Խալաթեանի միւս կարծիքը (Գլ. Խլթ. էջ 77)։ Պ. Խալաթեան ալ, անտարակոյս, բոլորովին համոզուած է այս կէտին (Համա. Ներծ. էջ 37–39)։ — Բաց աստի՝ կ'երեւի թէ Հ. Սոմունճեան Եզնիկի նուիրուած քանի մ'էջեր իսկ չէ կարդացեր Գոլոփնէի մէջ, որուն հմուտ հեղինակը տարբեր տարեթիւ կը նշանակէ Եզնիկի գործին գրութեան, ինչպէս տեսանք վերեւ։ Եզնիկ երբ ալ գրած ըլլայ իւր հերքումը Պարսից քէշին դէմ, Վարդանանց Պատմագիրն իւր ձեռքն ունեցած է

(Հայոց, քրիստոնէից) օրէնսդ՝ զոր մեզ տըեալ հրամայեցեր յեղուլ„ (էջ 123)։ Արդէն Փարպեցու այս կերպով պատմելն կը ցուցընէ թէ ինչն է որ կը խմբագրէ. որովհետեւ թագաւորական հրամաններն Արեւելքի մէջ ուղղակի եւ խստիւ՝ հրամայական շեշտով մը կ՚արձակուին։ Պատասխանն ալ նոյն կերպով կը խմբագրէ Փարպեցին (էջ 127—130) եւ գիտել կու տայ՝ թէ Հայք չուզեցին կատարել Յազկերտի հրամանը, այսինքն՝ ղըկել քրիստոնէական օրէնքը կամ դաւանանքը. “Եւ ոչ ումեք օրէնսդրել եւ տալ քերել զոր յեղ՝ ըստ հրամանի յերոյ՝ է տեղ եւ պատշաճ համարեցաւ„ (էջ 129)։ Վարդանանց Պատմագիրը սակայն ուրիշ կերպ չէր կրնար ընել։ Զրուանականութիւնը — որովհետեւ զրուանական վարդապետութիւն մ՚է այս պատճէնը քան բուն Զրադաշտականութիւն կամ Մազդէականութիւն — բացատրելէ յետոյ, պէտք էր հերքել զայն՝ բացատրելով քրիստոնէութիւնը եւ ջատագովելով. այս հարկեցուցիչ վիճակը ընդարձակ ջատագովական մը արտադրել կու տայ Վարդանանց Պատմագրին եւ ոչ պատասխան մը սոսկ. որչափ ալ “Բիրտ„, ինչպէս կ՚ըսէ Օրբէլեան, որչափ ալ խիստ պաշտպանողական կերպով գրուած ըլլայ պատասխան մը, կարելի չէ որ Վարդանանց

---

զայն։ Վարդանանց Պատմութեան մէջ նամակ ըսուած այս երկար ջատագովականին, — որուն ճակատը գրուած “չէ-տէրն„ անուններ իբր թէ կեղծիք մ՚ի վեր հանելու բնութիւն չունենային —, Եզնիկի հետ ունեցած նմանութիւնները զայն կը հաստատեն եւ ոչ թէ Եզնիկի խմբագրութիւնը։ Եթէ Եզնիկ գրած ըլլար, ինչո՞ւ պիտի փոխէր իր ասացուածներուն ձեւը, բառերը. ո՞ր է այն գրուածին մէջ Եզնիկի յատուկ ոճը։ Եղիշէն է որ իր սովորութեան համեմատ փոխած է ասացուածի ձեւերը Եզնիկէն օգտուելու ժամանակ։ — Մ. Աղաբէկեան ալ Եզնիկը հեղինակ ճանչցած է այն նամակին (տես Ծիլ Աւարայրի 1866 թիւ Ժ. էջ 551 ծնթ.)։

Պատմագրի պատճէնին հանի։ Ահա՛ երկու պատճէններու վիճակը, որոնք ըստ Վարդանանց Պատմագրին ստոյգ են, պաշտօնական հանգամանք մ'ունին. իսկ ըստ Փարպեցւոյ, թէեւ ստուգիւ տեղի ունեցած է պաշտօնական թղթակցութիւն մը Դրան եւ Նախարարաց միջեւ, ա՛յս անժխտելի է, բայց Փարպեցին չի յանդգնիր ուղղակի ըսել “Այս է ՊԱՏՃԷՆ հրովարտակին„, այլ՝ “Գրէր այսպէս„, իբր այսպիսի յեղով կամ իմաստով, կամ “այսպիսի հրովարտակ„ (էջ 123), իբր այսպիսի յեղով կամ իմաստով գրուած հրովարտակ մը, ինչպէս ըսինք վերագոյն։

Վարդանանց Պատմագրին ինքզինք ականատես ընծայելու համար ի գործ դրած արուեստական ջանքերէն մին ալ սա՛ է. իբր թէ իւր տրամադրութեան տակ դիւան մ'ունեցած ըլլայ պատերազմէն անմիջապէս յետոյ՝ ուսկից կ'ընդօրինակէ իւր պատճէնները։ Իւր պատմական բոլոր դիւանը սակայն՝ Փարպեցին է։ Ինքն կը յերիւրէ այն նամակը եւ կը զարմանայ թէ ինչ լաւ բան մը գրեց — “տարտամել զան ընդ ճարտարաբանութիւնն՝ ընդ համբակութեան անհեթեթութեանն զարմանայցէ„. որովհետեւ կարելի չէ որ պաշտօնական մարմին մ'այդպիսի լեզու մը գործածէ՝ նոյն իսկ ամէնէն ապստամբ վայրկենի մը մէջ։ Այդ զարմացումը, տրուած գովութիւնը Պատմագրին է. ինքն իւր գրածին վրայ կը զարմանայ այնքան աներկիւղ, կը գովէ զայն։ Զարմանալի չէ։

Թէոդոս Բ.ի գրուած հրովարտակը բոլորովին զուրկ է պաշտօնական հանգամանքէ, մանաւանդ պատմական ճշդութենէ[1]. կարծես ձեւուած է

---

[1] Այս իրողութիւնը շատոնց երեւան հանեց տաղանդաւորն Ղահնազարեան, իր “Դաշանց Թղթոյ քննութիւնն ու հերքումը„ պատմական գործին մէջ։ — Քննչ. Պատմութեան քննադատ հեղինակն ալ կը հերքէ այս եւ ուրիշ պատճէններ Եղիշէի մէջ (Քննչ. Պտմ. Գ. էջ 362—367)։

Բուզանդի Գ. Դպր. ԻԱ. գլխուն մէջ պատմուած նմանօրինակ պատգամաւորութեան մը պարագաներուն վրայ, ուր սակայն չկայ պատճէն, բայց Հայոց գրածն հրովարտակ մըն է։ Կայսրն (Կոստանդ) կը հաւանի օգնելու. "մանաւանդ զի զուխտն յիշեալ զդաշանցն կուելոց զերդմանցն հաստատութեան, միջնորդութեամբ ի մէջ կայսերն Կոստանդիանոսի եւ ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր"։ Ճառ ճիշդ նոյնութիւն մը կայ այս պատմածին եւ Վարդանանց Պատմութեան միջեւ. "անսուտ յիշատակարաններըՙ" ցոլացումն չե՞ն արդեօք Բուզանդին։ Բաց աստի "Քանզի Աստուած շնորհէ ոչ միայն Երուանդայ, այլ եւ ամենայն Միջերկրեայց տէրեցայց. եւ ան զօրութեան յետոյ եհաս մինչեւ ի ծովեզերէ" (Խոր. Գ. Ե), նոյնպէս յերիւրուած պատճէն մը Խորենացիէն, հաւասարը չէ՞ Վարդանանց Պատմագրի աս տողերուն՝ "Աներձ (Նախնեաց յերաց) զԵւրոպէ՝ անցին եւ տիրեցին եւ ամենայն կողմանցն ի սահմանացն Սերայ մինչեւ ի կողմանս Գադերոնի, եւ ոչ ոք կարաց ստամբակել եւ ելանել ընդ ձեռն նոցա" (Եղիշէ էջ 54)։ Այսպիսի նմանողութիւններ, նոյնութիւններ զարմանալի չեն, եւ ընդհանուր երեւոյթ մըն է՝ որ կը տիրէ մեր պատմագրութիւններու վրայ, մանաւանդ երբ խնդիրն այս տեսակ պատճէններու վրայ է։ Այսպէս՝ Խորենացու մէջ Աբգարի վերագրուած նամակի պատճէններ զուտ կեղծիք են. Խորենացի ոչ թէ Լաբուբնայէն կ'ընդօրինակէ, այլ Եւսեբիոսի Եկղ. Պատմութեան կը հետեւի. — ինչ որ Լաբուբնեայի մէջ իբր պատգամ կը տարուի Յիսուսի կողմանէ առ Աբգար, նոյնը կատարեալ նամակի ձեւ առած է Եւսեբիոսի պատմութեան մէջ — նոյնպէս առ Տիբեր եւ առ Ներսեհ գրուածներըՙ կատարելապէս շինծու են եւ հաւանաբար զանազան տեղերէ քաղուած եւ նամակի վերածուած են. զոր օր. առ Տիբեր գրուածը Տերտուղիանոսի ջատագովութենէն առնուած է։

Գալով Վարդանի եւ Ղեւոնդի ճառերուն, կը տեսնենք՝ թէ Վարդանանց Պատմագիրն կախում ունի տեղ մը։ Փարպեցին կը պատմէ՝ թէ այն գիշեր (451 Մայիս 25 ուրբաթ, որ շաբաթը պիտի լուսնար) խօսեցան Վարդան եւ Ղեւոնդ։ Ըստ Փարպեցւոյ նախ Ղեւոնդ կը խօսի, յետոյ Վարդան՝ զգածուած Ղեւոնդի քաջալերական ճեշտերէն՝ նոյնիմաստ յորդորական մը կ'ուղղէ, այսինքն՝ քիչ մը հոգեւորականի բերնով։ Վարդանանց Պատմագիրը, թէեւ ոչ նուազ հոգեւորականի բերնով՝ գրգռիչ բառեր կը դնէ Սպարապետին բերանը։ Վարդան անշուշտ խօսեցաւ, եւ կը հաւատամ որ բուն սպարապետի վայել բերնով մը գոռաց, յորդորեց, յուզեց, բայց ոչ այնպէս, ինչպէս յերիւրուած է պատմութեան մէջ։ Այն յորդորականին մէկ կէտը, "մանաւանդ զի բազումք ի ձէնջ լաւագոյն էք քան զիս արութեամբ, եւ գահու ի վեր ըստ հայրենի պատուոյն„ (Եղիշէ էջ 78), ուղղակի առնուած է Փարպեցիէն, որ նոյնպէս Սպարապետի խօսքերն են, "Բազումք են յայսց երից աշխարհաց յազատորերոյ, որք են աւագ քան զիս եւ գահու եւ աւուրբք, եւ շատ են՝ որ ի խոնարհ են„ (Փրպ. էջ 138)։ Ակներեւ է թէ ուսկից կ'առնու Պատմագիրն իւր շարագրած յորդորականին շատ կարեւոր մէկ կէտը։

Աւելի հետաքրքրական է Ղեւոնդի յորդորականին շարագրութիւնը։ Փարպեցին կ'ըսէ թէ "որ յուսուցանելն իւրում (Ղեւոնդ) բազում բանս հոգեւորս՝ յիշեցուցանէր ամենեցուն զվարս եւ զհամբերութիւն առաջնոցն. եւ նախ զանպատում զհամբերութիւն սրբոյն Գրիգորի, ապա զայլոցն ամենեցուն„ (էջ 206)։ Վարդանանց Պատմագիրն առիթը չի փախցըներ մի առ մի ընդլայնել առաջնոց վարքն ու քաջութիւնը, եւ կը սկսի "Յիշեցէ՛ք, ամենեքեան զհարսն զառաջինս„ (Նոյ, Աբրահամ), — "Յիշեցէ՛ք, առաքինիք, զմեծն Մովսէս„, — "Յիշեցէ՛ք

զմեծ քահանայն Փենեհեզ», — «Մէ՛ մոռանայք եւ զսուրբ մարգարէն զԵղիա», — «Յիշեցէ՛ք զամենայն զօրավարս Իսրայէլի» (Եղիշէ էջ 82—84 եւ հետեւ). Կը յիշեցնէ հիները, բայց չի յիշեր Լուսաւորիչը, զոր ընդ հակառակը Ղեւոնդ՝ իբր ամենէն աւելի քաջալերիչ տիպար մը յառաջ կը բերէ, կը յիշեցնէ, եւ Վարդան կը հաւանի Ղեւոնդի խօսածին ու կը յարէ՝ «յորոց բազումք որ աստ կամք, ոչ միայն աշակերտք՝ այլ ազգականութեամբ ենք հաղորդեալք» (Փրպ. էջ 208—209)։ Վարդան, Մեծն Սահակի թոռը, միայն կարող էր այն վկայութիւնը տալ, եւ Լուսաւորչին՝ Մեծ Նահապետին՝ հոգեկան արիութեան յիշատակով քաջալերել իր ընկերակիցները, ինչպէս Ղեւոնդը։ — Զարմանալի է որ Լուսաւորչի յիշատակութեան անգամ մ՚իսկ չենք հանդիպիր Վարդանանց Պատմութեան մէջ, մինչ Փարպեցու ամենէն մեծ դէմքն է ան եւ միշտ յիշատակութեան կը բերուի։ Այս երեւոյթն ալ կասկածելի է։

Վարդանանց Պատմագրի Պատճեններու խըմբագրութիւնն ալ՝ ուրեմն կը ցուցընեն թէ ոսկի գրքոյկն կախում ունի Փարպեցիէն։

Արդ՝ Փարպեցին, ըստ Գաթրճեանի, գրած է իր պատմութիւնը 488—490 (Հանդէս 1887 Յունուար). ըստ Խալաթեանի՝ 490—509, այսինքն՝ Նշանաւոր Թուղթի գրութենէն յետոյ, որուն գրութեան ժամանակը «խնդրելի է ի միջի 488 եւ 491 ամաց» (Գր. Խալաթ. էջ 47, եւ 111—113. — Հմմտ. Քննասէր Բ. էջ 16, 17, 19. եւ Աղֆ. Մոնդ. Ե. էջ 75—77)։ Փարպեցու Պատմագրութեան տարեթիւն ամէն պարագայի մէջ Ե. դարու ճիշդ վերջերն եւ Զ.ի սկիզբը կը նշանակուի։ Այսչափն ալ բաւական է կարծենք պնդելու համար թէ Վարդանանց Պատմագիրը Զ. դարու առաջին քառորդին գրական արդիւնքն է։ Վերագոյն (էջ 154—156) Եակայ Գիրքին յիշատակարանի տարե-

թիւն ալ նշանակեցինք 578՝ իբր որոշ կէտ մը Հելլենական կաղապարներու մէջ հայացուած գրուածներու։ Փիլոնի թարգմանութիւնները 578էն վեր չենք կրնար դնել, բայց կարելի է իջեցնել մինչեւ Վարդանանց Պատմագրութեան ժամանակամիջոցը, նկատելով թէ նոր թարգմանուած գործ մը յափշտակութեամբ կարդացուած է ժամանակակիցներէն, եւ թէ այս թարմ տպաւորութեան կը պարտի Վարդանանց Պատմագիրն իր ըրած գեղեցիկ ու ճոխ փոխառութիւնները։

Եթէ Փարպեցու պատմագրութեան տարեթիւը 509էն վեր չի կրնար բարձրանալ, Վարդանանց Պատմագիրն, ըստ ամենայն հաւանութեան, 510էն յետոյ գրած պիտի ըլլայ իր Պատմութիւնը։

Միայն՝ դիտելու կէտ մը կայ։ Պատմագրին ծանօթութիւնն այն դէպքերուն, որ տարբեր (աւելի, պակաս) պատմածներու տեղի տուած է, ականատեսի մը վկայութեան արդիւնք չէ, այլ՝ ինչպէս ըսինք, իր պատմագրելու եղանակին՝ նպատակին. ըստ այսմ դիւցազներգութեան մը համար երկրորդական եւ դիւցազնական քաջութեան տուերած բերող դէպքեր՝ իրենց յարակից մասերով ի բաց պիտի թողուէին. ապա թէ ոչ՝ ականատես մը ամենէն տեսանելի, իրական, պատմական դէպք մը պիտի չկրնար ծածկել. Հայհոյանք մ'էր այս պատմութեան դէմ. բայց արդէն Պատմագիրն ինք զինք մատնեց այդ կարեւոր խնդրին մէջ (տե՛ս վեր էջ 195)։

Ականատեսի վկայութիւններու մասին մտադիր կ'ընենք ընթերցողը սա կէտին՝ թէ Վարդանանց Պատմագիրը՝ Փարպեցու պէս ականջալուր կրնար ըլլալ ինչ ինչ դէպքերու, մանաւանդ իր պատմութեան ամենէն վերջին մասերու դէպքերուն։ Արշաւիր Կամսարական, որ անձամբ պատերազմի մտած էր, Վարդանի փեսան ու քաջ աջա-

*կիցն էր, պատերազմի մէն մի դիպուածները պատմած է Փարպեցի ճարտասանին, մինչեւ իսկ Աղուանից տիղմերուն մէջ իւր մոյկին թաղուիլը* (Փրպ. էջ 191 —193) *ընտիր եւ ընտանեկան նկարագրութեամբ*[1]։ *Անշուշտ Կամսարականի կամ ուրիշներու ալ մասին* (էջ 275 "ասէին,,) *է որ Փարպեցին կ'ըսէ՝* "Եւ որպէս շատ խուզիւ եւ բազում քննութեամբ հարցեալ եւ ուսեալք զնահատակելոցն իրս ... զոր ստուգիւ համարեալ պատմեցին մեզ տեղեկացեալքն զօրագլխացն Պարսից (Փրպ. էջ 213—214)։ Խուժիկի (= "աղքատ խուժիկ,, Խուժաստանցի, Փրպ. էջ 283) *դէպքը, որ ընդլայնուած է չափազանց եւ նշանակելի մանրամասնութիւններ ու տարբերութիւններ կան այս նկատմամբ երկու Պատմագիրներու մէջ, Արշաւիր Կամսարական "Ջերմ խնդրով,, Խուժիկէն կը տեղեկանայ եւ ըստ այնմ կը պատմէ Ղազարին* (էջ 305— 306)։ *Ասոնցմէ զատ Փարպեցին կ'ըսէ՝* "Իսկ ոմանք ի կողմանց նախարարացն յայնցանէ, որոց ականատես իսկ եղաք, որպէս յերկրի երկնաւորք էին, եւ ի մարմնի հրեշտակք երեւէին, *որոց կարգեալ անձամբ անձանց եւ ուսեալք զկտակարանս եկեղեցւոյ,,* *եւն* (էջ 329—330)։

*Վարդանանց Պատմագիրն իւր Փարպեցու հետեւողութիւնը ծածկելու համար՝ ուր որ նա ականջալուր վկայութիւնները կը շեշտէ, ինքն հոն կը լռէ։ Սա վերջին վկայութիւնը՝ թէ Փարպեցին ինքն անձամբ տեսած է կապեալները, Վարդանանց Պատ-*

---

[1] *Վահանանց Պատերազմին մանրամասնութիւններու մասին ալ Արշաւիրի որդին, Մեծն Վարդանի թոռնիկը՝ Ներսեհ Կամսարական, տեղեկութիւններ տուած է Ղազարին, որ իւր վեհանձն բարեկամն էր* (Փրպ. էջ 570— 571 եւ 591 եւլն.). — "Եւ զայս լուր ի սրբոյ առնէն Վասակայ Մամիկոնենէ՝ հաւաստի երդմամբ պատմէր մեզ բազում անգամ ինքն տէրն Շիրակայ Ներսեհ Կամսարական,, (Փրպ. էջ 411)։

*մագիրը միայն պատմութեան ձեւը կը փոխէ "ի Խոյ յերանելւոյն քաղաքն, ի նոցանէ՝ որ Մանկոնեայն էին, ոստան շառաւիղեալ հայրենի աշխարհին իւրեանց"*[1] *եւն (էջ 151—152) եւ ուրիշ տեղ կը տանի այս վկայութիւնը, "Զի հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչեմ, ոչ որ Առաքոքեայն էին, այլ գաղթականք ի Կորեկոգոնոց (քիչ մը յառաջ "Մանկագոյնք") անուն" (էջ 155). անշուշտ այս տեղ Վարդանանց Պատմագիրը փափկասուն կանանց նկատմամբ կը խօսի, խնդիրը նոյն է սակայն։ Արդ՝ ինծ հաւանական կը թուի՝ թէ ինչպէս որ Փարպեցին Առաքոքեայնէ մը՝ Արշաւիր Կամսարականէն, — որ անպատճառ ալ պատմական եւ պատուական ծաղկեալ ծերունի մ'էր այն ատեն եւ իր առոյգ հասակին յուշքերով կը պարարէր զինքը շրջապատողները —, կ'քաղէ Վարդանանց մասին պատմութիւններ, Վարդանանց Պատմագիրն ալ կրնայ տեսնուած ըլլալ Մանկոնեայն կամ Կորեկոգոնեաններու հետ. որովհետեւ ինքն իսկ դիտել կու տայ թէ չէր ճանչնար Առաքոքեայնները. "Զի քաղաքն այն էր զոր ոչ գիտեմ, զան ոչ գիտացեմ" (էջ 155)։ Եւ թերեւս այս յաւակնութիւնն է՝ որ անհնարին քննադատելի դեր մը կատարելու մղած է զինքը։*

*Իսկ Խուժիկի մը նկատմամբ իր պատմածները (էջ 142) ոչ միայն կը հակառակին Արշաւիր Կամսարականի Խուժիկէ լսելով Փարպեցու աւան-*

---

*1 Փարպեցու եւ Վրդ. Պատմութեան մէջ յիշուած այս տեղին, "որոց խորհեալ անձամբ անձանց [illegible] Եկեղեցւոյ, եւ ոստան շառաւիղեալ հայրենի աշխարհին իւրեանց", անորոշ բարեփոխուած ընդօրինակութիւն մ'է, որ Երրորդ աղբիւրէ մը հազիւ կրնայ գալ. պատմական դէպք մը չէ այս, այլ Պատմագրին տեսութիւնը Նախարարաց կեանքին վրայ, որ իրողութիւն մ'է։ Վարդանանց Պատմագիրը Փարպեցիէն կ'առնէ զայն։*

դած տեղեկութեանց, ուր Արշաւիրն իսկ կրնար ասորւոյն շաղակրատութիւններէն խաբուիլ, այլ՝ արդէն վկայաբանական յարմարում մ'է այս պարզապէս. եւ Վարդանանց Պատմագիրն ինչպէս որ Գողթացի դերը Մօգպետին տուած է՝ հանելով Խոստովանողի թարգմանութիւններէն, նոյն կերպով Խուժաստանցի մ'ալ կրնայ հանած ըլլալ այն տեղէն, քանի որ "Աբրահամու թարգմանութեան մէջ բազմաթիւ Խուժիկներ կան եւ ինքն ալ [illegible] կատարած է իր թարգմանութիւնը", ինչպէս դիտել կու տար ինձ Հ. Ց. Տաշեան, եւ կը յաւելուր թէ "Այսր մեկնութիւնը ուրիշ է"։ Խուժիկի մասին աւելի բան մը չեմ կարող աւելցընել իմ կողմէ, որովհետեւ Աբրահամու թարգմանութիւններուն մէկ չնչին մասը միայն ծանօթ է ինձ։

Մեր եզրակացութիւնը. — "Հայոց Պատերազմին" նկատմամբ գրուած Պատմութիւնը անանուն հեղինակի մը գործն է, որ Եղիշէ Վարդապետի վերագրուած է։ Այս պատմութիւնը երկար ժամանակ մնացած է անանուն։ Անանուն հեղինակս [illegible] չէ։ Մարութասի եւ Փիլոնի հայերէն թարգմանութիւնները մէկ կողմէն՝ իբր աղբիւր պատմութեան նկարագրական մասերուն, եւ միւս կողմանէ Փարպեցու պատմութիւնը, — Փարպեցին որ իրմէ յառաջ Վարդանանց ուրիշ Պատմագիր մը չի ճանչնար —, իբր աղբիւր պատմական մասերուն, [illegible] նկատել կու տան Վարդանանց Պատմագրին [illegible] [illegible] վկայութիւնները։ Միայն, այս ամենուն մէջ, [illegible] դեր մը կարելի է տալ իրեն, եւ այն ալ իր պատմութեան ամենէն վերջին մասերուն մէջ։ Ըստ այսմ՝ Վարդանանց Պատմութիւնը Փարպեցու Պատմութեան վրայէն շինուած՝ յատկապէս [illegible] ընթերցողի համար դիւցազներգութիւն մ'է պատմական։ Գրութեան ժամանակամիջոցն է Փարպեցիէն գրեթէ անմիջապէս յետոյ 510 – 520։

## ԳԼՈՒԽ Թ.

# ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏՄԱԳԻՐԸ ԹԱՐԳՄԱՆԻՉ ԵՒ ՄԱՏԵՆԱԳԻՐ — ԻՒՐ ԴԵՐԸ ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆԻ ՄԷՋ

## Ա.

*Փոքր Թարգմանչաց խումբին կը պատկանի անշուշտ Վարդանանց Պատմագիրը։ Եւ Թարգմանչաց այս խումբն անհատներու որոշ թիւ մը չունի. Փարպեցին ալ անոնց մէջ կը մտնէ իբր մատենագիր։ Բայց թէ սա է աւանդական Եղիշէն, կարելի չէ՛ երաշխաւորել. այս նկատմամբ խօսեցանք արդէն։ Չենք կրնար այս վիճակին մէջ այս կամ այն գործի թարգմանութիւն մ'ընծայել իրեն ուղղակի եւ ո՛չ իսկ Մակաբայեցւոց գրքերուն թարգմանութիւնը (տե՛ս էջ 133, ծնթ. 2)։ Ի՛նչ կերպով որ, զոր օրինակ, Փարպեցին թարգմանիչ է, նոյնպէս պէտք է նկատել Վարդանանց Պատմագիրն ալ։ Այնպիսի գրիչ շարժող մատենագիր մ'անպատճառ մասնակցեցաւ իրեն ժամանակակից թարգմանութիւններու։*

*Թէ՛ Պատմութեան ոճն եւ թէ՛ իրեն ընծայուած ուրիշ ինչ ինչ թարգմանութիւններ, զոր օր. Մեկնութիւն Արարածոց, կը ցուցնեն թէ աւելի պարսկերէնի եւ ասորերէնի հմուտ գրող մ'է Պատմագիրը. իսկ Բարբարոս բառին քանի մ'անգամ գործածութեամբ (տե՛ս Եղիշէ, էջ 11, 60) կարծես իր յունական կրթութեան ալ յատուկ ապացոյց մը տալ կը թուի, — Բարբարոս անուանելով ոչ-Հայ ազգերը, ինչպէս Յոյնք՝ ոչ-Հելլէն ազգերը։ Գէթ Փարպեցին անգամ մ'ալ չի գործածեր այս բառը։ “Աթենացի„ (Աթենացի) ուսումնական տիտղոսը, որ շատ յետոյ տրուած է մեր Պատմագրին, բոլորովին անիմաստ չի թուիր։ Բայց Հելլէն ազգեցութեան նշոյլն իսկ չունի իր Պատմութեան ոճին մէջ. Նոյնպէս Ճարտասանն ալ, որ յայտնի եւ քաջ յունագէտ մ'էր, չի ցուցներ*

թէ ինքն յոյն ուսումներով պարարուած ըլլայ։ Անշուշտ այսպիսի ազդեցութիւն մը, եթէ կարելի ըլլար ձեռք ձգել, անոնց ընծայուած թարգմանութիւններուն մէջ պէտք էր փնտռել, քան պատմութեան մէջ, որ հայուն կեանքէն առնուած, հայուն համար շինուած են, մանաւանդ հայ մտածած են, մին հանդիսաւոր, միւսն ընտանի լեզուի մը շքեղութեան մէջ։ — Իսկ Պարսից կեշտին, ծէսին, արարողութեան մասին Վարդանանց Պատմագրին ունեցած հետաքրքրութիւնը նշանակելի է. եւ իր հմտութիւնը փայլեցընելու համար լաւագոյն տեղեկութիւններ մուծած է իր Պատմութեան մէջ, թէեւ երկրորդական արժէք մ'ունին ասոնք բուն Պատմութեան հանդէպ իբր պատմութիւն (տե՛ս վերեւ էջ 200, ծնթ. 1)։

Վարդանանց Պատմագիրը՝ Եղիշէ անուան տակ միշտ Փարպեցիէն յառաջ գրուած է Ասողիկէն սկսեալ։ Ասկէ յառաջ Եղիշէ անունն ուրիշներու հետ միասին չենք գտներ։ Վարդան եւ Կիրակոս պատմիչները խառն ի խուռն կարգով մը կը յիշատակեն թարգմանիչները։ Կիրակոս՝ Փարպեցիէն յետոյ կը դնէ Բուզանդը։ Արդէն՝ Խորենացի, Եղիշէ, Ղազար՝ այս շարքը աւանդական է եւ Ժ. դարէն աւելի հնութեան մը չի վերանար։ Այս կէտը դիտել կու տանք ցուցընելու համար՝ թէ որոշ եղանակաւ մ'անհնար է թարգմանիչներու իւրաքանչիւրին գործերը նշանակել գոնէ ժամանակագրօրէն։ Եթէ ընդհակառակը քիչ շատ հաստատուն կռուան մ'ունենայինք այս ինչ թարգմանութիւնը Եղիշէի կամ Խորենացւոյ ընծայելու, անշուշտ նուազ դժուարութեան մը պիտի չբախէինք։ Անոնք որ իրենց ամենէն ծանօթ եւ ամենուն մատչելի գործերը, ըսենք “գլուխ գործոց„ները, վիճելի գետնի մը վրայ դրած են, կարելի պիտի ըլլա՞ր միթէ ուրիշ աշխատութիւններն այս ինչ թարգմանչի անունով ընդգրկել՝ առանց կասկածելու։

"Հայոց Պատկերազմ"ը պատմագրող Հեղինակին ընծայուած ուրիշ գործերուն հանդէպ ստիպուած ենք միեւնոյն կասկածով զինուիլ։ Վարդան Պատմագիր կոչուածներ կ'ընէ այժմ կորսուած գործէ մը՝ Մեկնութիւն Արարածոց՝ Եղիշէի ընծայուած։ Եւ Կիրակոս, որ Կորիւնէն անմիջապէս յետոյ կը դասէ մեր Պատմագիրը, կ'ըսէ թէ "Եւ Եղիշէ զՊատմութիւն Սրբոց Վարդանանց, եւ զԳիրս Կանոնացն, եւ այլ Մեկնութիւնս Ծնոց, եւ զՇարշարանացն Փրկչին, Ղազար զԳիրսն, եւ Եզնակ խօսս յաղագս եթող յօգուտ լսողաց, եւ Դաւիթ Փիլիսոփայ զԳիրսն Սահմանաց եւ Էակաց" (էջ 17)։ Ահա խառնակ դասաւորութիւն մը հեղինակներու եւ անորոշ խօսուածք կամ բացատրութիւն գործերու մասին։ Կիրակոսն է առաջին անգամ Վարդանանց Պատմագրին այսպիսի գործեր ընծայողը, եւ իր ամէնէն աւելի որոշ կերպով նշանակածը՝ "զՇարշարանաց Փրկչին", ոչ միայն տարբեր խորագիր մ'ունի Եղիշէի անունով հրատարակուած գրուածներու շարքին մէջ՝ "Վարդապետութիւն ըստ Յովհաննու Սիրելոյ ի Չարչարանս Տեառն", եւ զանազան մասերէ կը բաղկանայ (Խաչելութիւն, Թաղում, Յարութիւն, Երեւումն աշակերտացն, առ Տիբերեայ ծովուն, Քարոզութիւն Առաքելոց), այլ մանաւանդ՝ հրատարակիչը դիտել կու տայ թէ "Յաջորդ ճառից քառնին յանուն Եղիշէի Վարդապետի, այլ հարազատութեանն ե-իմաստիցն չէ+ որոշխաարել", Վենետիկի 1859ի հրատարակութեան մէջ, որ "Սրբոյ Հօրն մերոյ Եղիշէի Վարդապետի Մատենագրութիւնք ըստ ընտրելագոյն ընթերցուածոց ձեռագրաց"՝ կատարեալ գործն կը նկատուի Վարդանանց Պատմագրին։ Պատմութենէն զատ՝ իրեն կ'ընծայուի 1. Խրատ Միանձանց, 2. Մեկնութիւն Յեսուայ եւ Դատաւորաց. 3. Յաղօթսն որ ասէ Հայր մեր. [վերոյիշեալ դիտողութիւնը եղած է այս Երրորդ գործէն յետոյ (էջ 206)] ըստ այսմ. 4. Ի Մկրտութիւն Քրիստոսի. 5. Յայլ-

դեղութիւն Քրիստոսի. 6. Ի Չարչարանս Քրիստոսի (զանազան մասերով). 7. Վասն պատարագին Ե-միանգամ գալստեանն. 8. Վասն յիշատակաց մեռելոց. 9. Կանոն. 10. Վասն Հոգւոյ մարդկան (Հմմտ. Նոր Հայկ. Ցոլ. էջ 11)՝ կասկածելի են:

Այս գրուածներէն "Մեկնութիւն Յեսուայ Ե-Դատաւորաց", որ ամէնէն աւելի երաշխաւորուած է իբր հարազատ գործ Եղիշէի, "ոմն" Վարդան Պատմչին կու տայ (Վարդան, Ց-Ջ. էջ Դ.): Ոմանք Եղիշէի անունով Եսայեայ Մեկնութիւն մ'ալ կ'ընծայեն Վարդանանց Պատմագրին եւ Վարդան Պատմչին միանգամայն (նոյն անդ), բայց Ն. Հայկազեան Բառգրքի յօրինողները զայն կը նկատեն "օտար յոճոյ սրբոյն Եղիշէի":

Ինչպէս տեսանք մեր ուսումնասիրութեան ընթացքին մէջ, իբր Պատմագրի գրչին արդիւնք այս զանազան գրուածներու մէջէն դուրս հանեցինք Միանձանց խրատը, զոր արդէն Պատմագրին տալու ընդհանուր համաձայնութիւն մը կայ, եւ Այլակերպութեան ճառը: Ուրեմն բացի քանի մը գրուածներէն, որոնք ոեւէ եղանակաւ աղերս ունին Վարդանանց Պատմութեան հետ, ինչ որ Եղիշէի՝ իբր Պատմագրի՝ կ'ընծայուի խնդրական է:

Այս տեղ սակայն կ'ուզենք դիտողութիւն մ'ընել՝ այս գործերու նկատմամբ. — Տեսանք թէ Վարդանանց ժամանակակից Արտաշատու ժողովականներէն՝ Եղիշէ եպս. Ամատունեաց, հակառակ աւանդական կարծիքներու չէր կրնար Պատմագրին հետ նոյնացուիլ: Ասկէ զատ Եղիշէ անուններուն կամ անուանակիցներուն շփոթումն է որ հակապատմական ենթադրութիւններու տեղի տուած էր: Արդ՝ հաւանական է որ Ամատունեաց եպիսկոպոսը՝ իբր Սահակ-Մեսրոպեան դպրոցի առաջին հետեւողներէն մէկը, գրական արդիւնք մ'ունեցած ըլլայ, մանաւանդ իբր հեղինակ կանոնական գրուածներու: Անոնք որ Եղիշէի մ'անունը կրող այսպիսի

*գրուածներ Պատմագրին տուին, կարծեցին հաստատել՝ թէ Եպիսկոպոս էր նա (Հմմտ. Նոր Հայկ. Ցոլջ էջ* 11. *տե՛ս վերագոյն էջ* 7—8), *քանի որ եպիսկոպոս մը միայն կրնար կանոններ գծել, ընել։ Ինձ կը թուի որ ոչ միայն կանոնները, այլ մանաւանդ այնպիսի գրուածները, որոնք ընտրելագոյն ձեռագիրներու համեմատ Եղիշէի մ'անունը կը կրեն եւ որոնց "Հարազատութեանն եւ իմաստիցն չէք երաշխաւորել", պէտք է Ամատունեաց Եպիսկոպոսին ընծայել։*

*Վարդանանց Պատմագրին ընծայուած մատենագրական գրուածներու քննութիւնը դուրս կը մնայ մեր ծրագրէն։ Այսչափն ալ պէտք էր՝ Պատմագրին իբր թարգմանիչ կամ մատենագիր (բաց ի պատմագրութենէն) Հայ մատենադարանին մէջ գրաւած դիրքը շօշափելու համար, որ թէպէտ որչափ անորոշ, սակայն այնչափ իրական է։ Հաւանական չէ՝ որ միայն եւ միայն Պատմութիւն մը գրած ըլլայ այս եզական գրիչը. անշուշտ իբր թարգմանութիւն կամ հեղինակութիւն՝ հարազատ գործեր արտադրեց նա. ահա ատոնց իրական կորուստն է, անտարակոյս, որ անորոշ կը թողու ոսկի գրչին դիրքն իբր թարգմանիչ՝ թարգմանիչներու շարքին մէջ։*

Բ.

*Հայ մատենագրութեան մէջ Եզնիկ կը գրաւէ ամէնէն բարձր եւ ամէնէն դասական դիրքն իբր հայերէնի վարպետը։ Եզնիկ սակայն, ի հարկին իւր տեղն պիտի ցուցընէր Վարդանանց Պատմագրին եթէ մենք զլանայինք այս պատիւն անոր՝ Բանաստեղծ-Պատմչին։ Իմ հմուտ Վարդապետս իրաւամբ կը գնահատէ Վարդանանց Պատմագիրն իբր "Հայ մատենագրութեան անմոռաց փառքերէն մին՝ որ Եզնիկէ վերջ կը ներկայանայ իբրեւ երկրորդ հայկական լեզու, թէպէտ իւր ոճն փափուկ զգացմանց*

եւ վեհ իմաստից բացատրութեանց ներքեւ աւելի առոյգ եւ թարմ կ՚երեւի. զի մինչ Եզնկայ գրիչն իբր ի հայելւոջ կը պատկերացունէ յստակ եւ վճիտ, Եղիշէ զանոնք կը ցոլացնէ հաստուածակողմ ապակւոյ մը մէջէն» (Պտմ. Հյ. Մտնգր. Ե. Վ. Պ. էջ 21)։

Ամենէն մանր դէպքերը կենդանացընել, գու-նաւորել, ներշնչել ընթերցողին իւր զգացումներն, ցոլացընել իւր մտածումներն իրենց բնականու-թեան մէջ, ամէն մատենագրի տրուած չէ։ Վար-դանանց Պատմագիրը սակայն՝ գերազանցապէս յա-ջողած է այս մասին, որ իւր բուն նպատակն է. — [illegible] ընթերցումի համար գրուած մը՝ պատմա-կան չոր տեղեկութիւններու ամփոփումով մը չէր կրնար արտադրուիլ։ Ոչ միայն նիւթին պահանջն է այս յաջողութիւնը, այլ մանաւանդ Պատմա-գրին յատուկ խնամքին մէկ արդիւնքը։ Ճշմարիտ մատենագրի մը գեղարուեստական ճաշակն ունի Վարդանանց Պատմագիրը. գիտցած է նա համա-պատասխանել մատենագրելու գիտութեան պա-հանջներուն։ Ռոմանթիք հոսանք մը կայ այն բա-ցատրութիւններու ետեւ՝ համբոյր դասական գրչի մը սահումներուն, որ արեւելքի բոլոր դասական հեղինակներուն բարացուցականն է։ Ծովը, առիւ-ծը, վարազը, հնոցը, դժոխքը, լեռները, որոտումը, շանթը, մաղձը, եւայլն, բնութեան ամէնէն զօրեղ արտայայտութիւնք մարմնացընող փոխաբերու-թիւններ, այլաբանութիւններ Վարդանանց պատ-մութեան էջերը կ՚ոգեւորեն։ Այն հսկայ եւ հզօր բացատրութիւնները, որոնք Եսայիներու պատգամ-ները կ՚իրագործեն Ս. Գրոց մէջ, ուղղակի Ս. Գրքով կը մտնեն արեւելքի երկիւղած գրիչներուն տակ, որոնք արդէն բնականէն ատակ են ժպիտով ընդգըր-կելու զանոնք։ Եւ արդէն ինչ բանի վրայ չէ ներգոր-ծած Ս. Գիրքը....։ Մեր մատենագրութեան բոլոր հատորներուն կաղապարն է կարծես Տիեզերական

Մատենին պատմական եւ ոչ-պատմական էջերը։ Վարդանանց Պատմութեան մէջ անոնցմէ ընտիր մաս մը կայ, որ ու ղղակի հոգւոյ բանաստեղծութիւնն երգելու թելադրած է. սաղմոսներու մրմունջքը, հոգեւոր երգեր, պաշտամունքի անշուք ձայները մէկ կողմէն, առիծաբար գոչումներ, վարազաբար յարձակումներ, մրցում, կռծում, ճայթիւն, շառաչում, փայլում միւս կողմէն, զիրար կը հանդիպին։ Գրուածին ամբողջ ուղղութիւնը այս է, լաւ ընկլուզուած նիւթէն եւ նիւթին մէջ. հեղինակը կ'ապրի կ'արկայանայ իր տողերուն մէջ. այս յատկութիւնը Վարդանանց Պատմագրին վրայ կը փայլի զօրաւոր կերպով՝ տարբեր մեր նշանաւոր մատենագիրներէն, որոնց իւրաքանչիւրն իրեն յատուկ ոճի անհատականութիւն մ'ունի։ "Մ. Խորենացւոյ գրութեան կերպն իրեն յատուկ դրոշմ ունի, ոչ Եզնկայ պայծառութիւնն ունի եւ ոչ Եղիշէի [illegible], այլ մէկ կողմանէ բանագքօսեալ է, տեղ տեղ կամաւ՝ խորհրդական, եւ միւս կողմանէ շատ սաստիկ կերպով կ'արտայայտէ հեղինակին [illegible] (Աղէ. Մոնք. ԺԷ. էջ 101—102)։

Վարդանանց Պատմագրին ոճը՝ Փարպեցու գործին մէջ ալ կը պակսի։ Փարպեցի սուգիւ գերագանցապէս մեծ պատմիչն է. դէպքերն իրենց բնականութեան մէջ պատկերացընել, ընտանի, փափուկ, դիւրահասկնալի լեզուով մը եւ առատին ծոխ ասացուածներով։ Նոյն դէպքերու Պատմութիւնն սակայն, տարբեր գոյն մը կ'առնու Վրդնց. Պատմագրի գրչին տակ։ Երբ Փարպեցին կը գրուէ, Վարդանայ Պատմագիրը կը յուզէ. առաջինը խորհրդածելու լայն միջոց կու տայ, երկրորդն կը յափշտակէ, կը գրգռէ։ Այս յաջողութիւնը խնամոտ լեզուի եւ մեծ նիւթի մը հաշտութեան արդիւնքն է։ Տկարնախադասութիւններ պիտի սպաննէին նիւթի մեծութիւնն ու կենդանութիւնը։ Լեզուի կատարեալ հմտութիւն, բացատրութիւն-

ներու ճշդութիւն, գրական արուեստ իր բոլոր երանգներով, ահա Վարդանանց Պատմութիւնն իբր մատենագրական գործ, իբր հրաշակերտ, որ ինչպէս կը գնահատէ գերման Հայագէտը, "Հայ մատենագրութեան ամէնէն ազնուագոյն երկերէն է իր մեծագործ, սրտաշարժ նիւթովն, ծանր ու հանդիսական լեզուաւն եւ եկեղեցւոյ ու հայրենեաց հրաբորբոք ոգեւորութեամբն" (Աշխ. Մտնգ. ԺԻ. էջ 109. — Հմմտ. Նոր Հայկզ. Յառ. էջ 11. — Հ. Ա. Վ. Ագոնց Ճրտսն. (տպ. Վենտ. 1775) Յառ. էջ Է. — Պտմ. Հայ. Դպր. էջ 315)։

Դասական Հայերէնի ամբողջ քերականութիւն մը կարելի է հանել այս գրքէն, որուն (Հայերէնի) ուսուցման համար երբեմն հասարակ սովորութիւն մը եղած էր բոլոր դպրոցներու՝ Վարդանանց Պատմութիւնը տալ ուսանողներուն ձեռքը։ Եղիշէ "Հայկաբանութեան" տիպար կը նկատուէր իրաւամբ (տե՛ս վերագոյն, եր. 5—6, 12). Էն զօրաւոր ոգի ներշնչող գիրք մը, որ ամէն մասամբ յանկուցիչ բնութիւն մ'ունի ուսումնասիրողին համար։ Հայոց Աւետարանն է այն, այս բացատրութիւնը սրտիս հետ կը խօսի։ Մեր ազգային կեանքի Ե. դարուն բոլոր դէպքերը, հոգեկան խանդավառութիւնները եւ ոյժի մարմնացումներն այն բոսոր պատկերներուն մէջ տեսնել, շօշափել, խօսիլ, զգածուիլ, ահա Վարդանանց Պատմութեան հոգեխօսական արդիւնքը՝ խորունկ ազդեցութենէ մ'ետքը։

Այսպիսի հրաշակերտ մը՝ Հայ մատենագրութեան բուն հարստութիւնը կը կազմէ։ Պիտի չվարանիմ ըսելու՝ եթէ կորուստի մը դատապարտուած ըլլար "Հայոց Պատերազմին" նկարագրութիւնը, մեծ պարապութիւն մը պիտի զգացուէր դասական հայերէնի ուսումնասիրութեան մէջ։ Այնքան ճոխ ասացուածներ՝ մերթ ընտանեկան քերականական դարձուածներ, բառերու յատուկ առումներ (Հմմտ. Քննասէր Ա. էջ 16—17), բառերու իմաստ (Նոյն

իսկ ժողովրդական, զոր օր. քան, հօրքեր, եւն) ընտրութիւն, Հայերէն ոճ, ամէն էջի, ամէն տողի մէջ ուշադրութիւն կը գրաւէ։

Հայ մատենագիրներուն ամէնէն հայն է Վարդանանց Պատմագիրը թէ՛ գրչով, թէ՛ սրտով։ Լեզուի մաքրութեան վրայ համաձայն են Հայ եւ եւրոպացի Բանասէրները. ասի պարզ իրողութիւն մ'է։ Գործը ճանչցող ամէն անհատ տարբեր համոզում մը չի կրնար գոյացընել. գրուածին բնութենէն կը բխի գնահատումը։ Հելլենաբանութեան նշոյլն իսկ չկայ այն խանդավառ էջերուն մէջ, բայց իւր գրուածով ամէնէն նշանաւոր հելլէն պատմագիրներու հետ կը մրցի, — այս "չնաշխարհիկ պատմութիւն նահատակութեան Վարդանանց ...իւրովն հոգեւոր յօրինուածով, գեղեցկահիւս ոճով, յատուկ հայկականութեամբ եւ եռանդուն աշխուժիւք, ոգեպարար իմն ճարակ է մտաց եւ սրտի ամենայն առն Հայոց աստուածասիրի եւ հայրենասիրի, եւ մանկտւոյն մերոց դաստիարակութեան սնունդ ախորժահամ եւ յոյժ ցանկալի։ Այր իսկ աղագաւ իրաւամբ համեմատեալ գտանի սա յոմանց Քսենոփոնտեայ հելլենացւոյ քաղցրաբանութեանն զուգահաւասար, յայլոց Յուլիայ Կեսարու Հռովմայեցւոյ կորովաբան պատմագրութեան, եւ յայլոց Ֆենելոնի Գաղղիացւոյ յստակաբանութեան նմանատիպ" (Եղիշէ, տպ. Տփխիս 1879 "Զեկուցում")։

Եթէ կան՝ հակառակ այսչափ առաւելութեանց՝ գրուածին մէջ խորթութիւններ կամ մթին կէտեր իբր Հայերէն, անոնք իրաւի խորթ են ոսկի գրչին։ Գաղափարողներու գիտումին կամ անուշադրութեան շատ բան կը պարտին Վարդանանց Պատմութեան ծանօթ օրինակները։ Ընդհակառակը հայկաբանութեան մէջ այնչափ բնական, այնքան անկեղծ է՝ որ գրողն ու գրուածը, պատմութենէն տարբեր բան մ'է "Հայոց Պատերազմին" ծայրայեղ դրամատիք նկարագրութիւնը։ Սիրտը,

եռանդը, իրականութիւնն ալ յուզած է. կրօնի խանդակաթ փարումը հայեցողական մակարդակի մը կը բարձրացընէ մատենագիրը։ “Ա. Մատենին„ մէջ բազկի ոյժն ընկլուզուած է սրտի ոյժերէն. ատոր համար է որ հոն հնչող ընդհանուր շեշտը տարբեր աշխարհ մը կը փոխադրեն ընթերցողը։ Քրիստոնէական երկիւղած տեսութիւններ, ըմբռնում, համոզում, դէպքերուն տարբեր երեւոյթ մը տուած են։ Ահա՛ թէ ինչո՞ւ համար դիտող ընթերցողն այն էջերուն մէջ կը տեսնէ մերթ Երգիչ մը, մերթ Բանաստեղծ-Պատմիչ մը, մերթ Քանդակագործ մը, մերթ Դիւցազներգակ մը եւ կամ Ողբագիր մը. գրուածն ալ երգ մը, պատմական արձակ բանաստեղծութիւն մը, նկար մը, դիւցազներգութիւն մը, վկայաբանութիւն[1] մը հայ կեանքէն, լաւ եւս հայական սրբագրութիւն մը։

“Վարդանանց Պատերազմն հայ պատմութեան ամէնէն բեղմնաւոր եւ սքանչելի մասը կը կազմէ։ Անոր մէջ ոչ միայն ազգային Եկեղեցին կ՚երեւի պայծառ, կրօնից ազատութեան սկզբունքը յաղթական, մարտիրոսները՝ մէն մի դիւցազուններ, հայրենիքը՝ մեծ ու փառաւոր, այլ Հայոց Ներքին կեանքն իւր ծայրագոյն գործունէութեան մէջ, այլ ընտանի կենցաղը, սովորութիւնները եւ անոր կենսական տարերքն՝ իր զանազան գոյներովը։ Խորենացին արձանագրեց միայն իշխանական եւ զինական նախճիրներ եւ փառք։ Եղիշէն պատկերեց Հայաստանն, Հայաստանի գեղափայլ եւ ահարկու տեսարանները, հայ ժողովրդեան հոգին, հաւատոց եւ հայրենեաց բոցերով վառ, անդրդուելի, դիմագրաւ եւ իր աղէտից մէջ անգամ՝ կանգուն եւ անմահ։ Եթէ Վարդանանց նահատակութիւնն հայը Զրադաշտի ճիրանէն փրկեց, Եղիշէի պատ-

1 Elisée redigeait a peu près un vrai martyrologie (Փ. Նէվ. էջ 295)։

մութիւնն ազգն ապագային մէջ վերականգնեց եւ մեզի ազգային բարոյական կենօք զեղուն անցեալ մ'աւանդեց, այս պայմանաւ՝ որ մեր հոգին մերթ ընդ մերթ նոյն անցելոյն մէջ թաթախենք եւ նոյն նշանաւոր եղերերգութեան մէջ մեր հաւատոյ եւ ազգութեան դէմ ելլող արդի ազգադաւ քաղաքականութեան եւ սուտ գիտութեան դէմ զէնքեր փնտռենք (Ա. Մամուլ. 1875 Յուլիս էջ 278)։

Եղիշէն մեր ազգային հոգեբանութիւնն է. գիրք մը՝ գրուած ամէն ժամանակի համար։ Երդ դարու կռիւը, այսօրուան կռիւն է. Այս կռիւը պայթումն էր այն սարսափելի երկունքին, զոր Քրիստոնէութիւնը դրաւ տիեզերական պատմութեան հանդէպ՝ բոլոր քրիստոնեայ հպատակ ազգերու եւ ոչ-քրիստոնեայ տիրապետողներու միջեւ։ Կարդացէք զայն, նոյն իսկ քննադատելով, եւ Հայոց ազգային կեանքին միշտ կենդանի պատկերները պիտի գտնէք անոր մէջ՝ արիւնոտ, խրոխտ, բուռն՝ ինքնաճանաչութեան վրայ եւ բռնութիւններու դիմայեղումներուն հանդէպ, միշտ հաւատարմութեան սկզբունքով. որովհետեւ Վարդանանց Պատմութիւնը հայ ազգին դարաւոր հաւատարմութեան յիշատակարանն է. հաւատարմութիւն իր Եկեղեցւոյն, հաւատարմութիւն իրեն հովանաւորող վեհապետներուն։ — Սա յայտարարութիւնները պատմական իրողութիւններ են. "վկայ են մեզ երկինք եւ երկիր, ոչ երբեք հեղգացեալ եմք յարքունի վաստակս, եւ ոչ խառնեալ վատութիւն ընդ արութիւն քաջութեան. ի զուր անողորմ են հարուածքս ի վերայ մեր„ (Եղիշէ, էջ 17, Հմմտ. էջ 67.)։ — 'Ի նախնեաց ունիմք սովորութիւն աստուածատուր պատուիրանաւ՝ աղօթս առնել ի վերայ կենաց թագաւորի եւ անձանձրոյթ խնդրել յԱստուծոյ վասն երկայն ժամանակաց դորա, զի խաղաղութեամբ վարեսցէ զտիեզերական իշխանութիւնդ, զոր աւանդեալ է դմա յԱստուծոյ,

*զի ի դորա յերկար խաղաղութեանն եւ մեք առողջութեամբ կատարեսցուք զկեանս մեր։* (Ա՟դ, *էջ* 23, *հմմտ. էջ* 34—35, 132, 143)։ *Այս յայտարարութիւնները՝ պարապ խօսքեր չեն եղած. անոնք Հայ ազգին նկարագիրը կ'ցոլացընեն։*

*Ոսկի-Գիրքը պիտի չհիննայ։ Հայոց կեանքին մշտնջենաւոր պատմութիւնն է այն։*



## ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔ

---

### ԳԼՈՒԽ Ա.

### Ա.

### ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Եթէ կայ մեր տոհմային պատմութեան մէջ դարագլուխ մը՝ ուր կարելի ըլլայ ճիշդ իր տեղը հետազօտել նախարարութիւնը, այն ալ Փարպեցու եւ Եղիշէի պատմագրած միջոցն է։ Վարդանանց եւ Վահանեանց ժամանակէն յառաջ անկարելի է նախարարական դրութիւնը քննել պատմական որոշ եւ փոքր ի շատէ բազմապիսի տեղեկներով, հասկնալու համար թէ ի՞նչ էին Հայաստանի վարչական նախնի գործարանաւորութեան տարրերը։ Որովհետեւ այս կանխումը թերի արդիւնք մը կու տայ — նախարարներուն յարաբերութիւնը թագաւորին հետ է այն ժամանակամիջոցին. եւ ինչ ալ ըլլայ այն յարաբերութեան արժէքը, դեռ ուղղակի երկրի շահերուն համար բան մը չեն ըրած, ինչպէս մասամբ ըրին Վարդանանց ժամանակ, այսինքն՝ երկրի հանդէպ իրենց ունեցած անկախ իշխանութեան միջոցին։ Իսկ յետնագոյն ժամանակաց, այսինքն՝ Ե. դարէն յետոյ մեր պատմագիր-

*ներուն՝ նախարարներու կամ ասոնց նման իշխաններու նկատմամբ ըրած յիշատակարաններ պատմութիւններ լուսաբանելու միայն կ'օգնեն այն վիճակը, որուն մէջ յեղաշրջուած կը գտնենք բուն նախարարութիւնը։*

*Այս խնդիրը հետազօտելու համար քննադատին ընտրած ժամն ու ժամանակը սահմանել չէ միտքս. այլ՝ որպէս զի արտակարծիք բան մը չթուի իմ մատնանիշ ըրած դարագլուխը՝ բաւական է Եղիշէի քանի մը կէտերուն վրայ ուշադրութիւն դարձնել.*

1. "*... եւ կռուէր մինչեւ յամն վեցերորդ Արտաշիսի արքայի Հայոց, որդւոյն Վռամշապհոյ։ Եւ իբրեւ զնա եւս մերժեաց ի թագաւորութենէն ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն. զի թէպէտ եւ զանձն յարքունիս Պարսկաց երթայր, սակայն այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի.* (Եղիշէ, էջ 7)։ — *Գիտենք որ նախարարութիւններ երկրին կզզիացած ոյժերն էին, եւ հայ թագաւորը թէեւ գերագոյն իշխան, լաւ եւս էն մեծ նախարարը, իր ոյժը սակայն՝ նախարարութիւններու ամբողջին միութեան մէջ կը կայանար։ Վարդանանց ժամանակէն յառաջ կամ մինչեւ թագաւորութեան բարձումը այս դիրքին մէջ կը գտնենք զանոնք՝ նոյն իսկ իրարու հանդէպ։ Երբ թագաւորութիւնը վերցուցին՝ հակառակ Մեծն Սահակի քաղաքագիտական ջանքերուն, բան մը՝ որ շատ դիւրին էր այն թագաւորիկներուն համար, ա՛լ նախարարական իշխանութիւնը բոլորովին դուրս տուաւ իր գոյնը։ Նախարարական այսպիսի եւ թերեւս աւելի անկախ իշխանութեան ժամանակամիջոց մ'ալ Վաղարշակէն յառաջ կայ. իշխանութիւն մը, որ անշուշտ բոլոր հին ազգերու, մանաւանդ Արեւելքի միապետական դրութեան կորիզը կը կազմէ նախարարը օճախի մը մէջ՝ իբր տան գլխաւորը*

(նահապետ), իբր տոհմի մը մեծը, իբր ցեղապետ, կը մեծնայ եւ իր իշխանութիւնն ալ կ'ըլլայ միապետութիւն։ Վաղարշակը կանխող եւ Վաղարշակէն կարգադրուած նախարարութիւններու մասին շատ քիչ բան գիտենք պատմական. այս նկատմամբ իբր ուսումնասիրութիւն ինչ որ աւելի կը զբաղեցընէ քննադատն՝ այլ եւ այլ տիտղոսներու (նախարար, հարուստ, տանուտէր) բանասիրական արժէքն է որ անոնցմով հասկցուած իշխանութիւնները ենթադրել պիտի տայ եւ պիտի յանգի եզրակացութեան մը, որ թէեւ իսկապէս ճիշդ՝ բայց չի կրնար բացատրել վարչական այն դրութիւնն իր բոլոր ընդարձակութեան մէջ։

Արտաշիսին՝ Մեծն Սահակի "ախտացեալ ոչխար"ին՝ յափշտակութեան յաջորդող նախարարական իշխանութեան գործերն ու դէպքերը որոշ են։ Նախարարաց առհասարակ բացարձակութիւնը կատարեալ պիտի ըլլար՝ եթէ Տիզբոն իր մարզպաններով, որոնց մէջ նշանաւոր հայեր ալ գտնուեցան, անոնց չափ դնելու հոգը չունենար։

Թագաւորութիւնը, այսինքն՝ քաղաքական իշխանութիւնը, եւ աշխարհն, այսինքն՝ զինուորական իշխանութիւնը, նախարարաց ձեռքն էին. մարզպանը միայն Դրան տուրքերը հարկերուն հսկողն, լաւ եւս, գործակալն էր պարզապէս, թէպէտ մարզպանը աւեստայի քաղաքական գործարանաւորութեան մէջ Շահնշահէն անմիջապէս յետոյ եկող իշխանն էր՝ ընդարձակ իշխանութեամբ մ'օժտուած։ Ասկէ զատ՝ եթէ "ի Նախարարսն Հայոց անկանէր Թագաւորութիւնն" բացատրութիւնը Պատմագրին կողմանէ սրամիտ ակնարկութիւն մը համարինք նախարարներուն, որոնց ստուգիւ ամէնքն ալ, մանաւանդ զօրաւորները թագաւորութեան մի մի թեկնածուներ էին, շատ ուղիղ կերպով ըմբռնած կ'ըլլանք նախարարներուն շարժումն ու դիտումը, որոնք ալ

իրենց ուզածին պէս պիտի կառավարէին երկիրը։ Անտարակոյս է որ այս պատմական միջոցն ամէնէն պատշաճ եւ ճիշտ տեղն է հետազօտութեան համար։

2. Բուն Վարդանանց դէպքը, որ իրաւամբ կը բանայ դարագլուխ մ'ազգային եւ եկեղեցական պատմութեան մէջ։ Նախարարութիւնն եւ Վարդանանց դէպքն իրարու հետ կապուած են, այնպէս որ այս երկու խնդիրներէն որն ալ ուսումնասիրուի, նոր յայտնութիւններ կ'ունենանք։ Չկայ, առանց ընիկ թագաւորի գլխաւորութեան, նախարարական բացարձակ ձկտումներու միջոց մը պատմութեան մէջ, որ այսպիսի կարեւոր դէպքով մը նշանաւոր ըլլայ։ Վարդանանց պատերազմը, զոր շարունակեցին Վահանեանք, թէ երկրի դիրքին եւ թէ եկեղեցւոյն (քրիստոնէութեան) ծնունդն է։ Քաղաքական իշխանութիւնը թէ ինչ դիրք բռնեց այս պարագային, այսինքն՝ նախարարք ինչպէս գործեցին ատոր մէջ, էական տեսութիւն մ'է, որ կը նպաստէ նախարարութիւնը հետազօտելու ճիշդ իւր տեղը։

3. Դարուն եկեղեցականութեան ազդեցութիւնը քաղաքականութեան վրայ. այս ալ այնքան ստոյգ իրողութիւն մ'է, որ Պարսից դուռն իսկ գիտէր. ինչպէս երկու պատմագիրներն ալ կը վկայեն փուրսիշլի ժամանակ երէցներն ու եպիսկոպոսներն են որ կ'ամբաստանուին իբր ծանրակշիռ դեր ունեցողներ այն պատերազմին մէջ, որ ոչ լոկ կրօնական է, ինչպէս կը պնդեն ոմանք, ոչ ալ լոկ քաղաքական, զոր ոչ ոք կ'ընդունի. եթէ կարելի է ըսել կրօնա-քաղաքական կամ եկեղեցա-քաղաքական է այն դէպքը։ Որովհետեւ երբ կրօնական դիմակի տակ յուզուեցաւ խնդիրն՝ անմիջապէս քաղաքական եւ քաղաքային իրաւանց բռնաբարումը վրայ հասաւ Դենշապուհի ըրած սեղմումներով եւ ուղղակի իրենց քաղաքական դոյնը դուրս տուին Պարսից եւ

Հայոց ընդհարումները։ — Ա. Եկեղեցւոյ ազատութեան կապտումը, Բ. Միայնակեացներու աշխարհագրի մտնելը, Գ. Հարկերու ծանրացումը, Դ. Նախարարներն իրարու դէմ գրգռելը, "Եւ եւս չարագոյն հինգերորդն", հայ հազարապետին (վերակացու) տեղ պարսիկ մը հաստատելը (Եղիշէ էջ 19) զուտ կրօնական խնդիրներ չէն։ Այս մասին յետոյ պիտի խօսինք։ Իսկ Մեծն Վահանէ՝ խաղաղութեան համար առաջարկուած նշանաւոր երեք պայմաններ, զուտ քաղաքական են եւ երկրին բարեկարգութեան պէտքը կը շեշտեն. հանգունատիպ պայմաններ Օձնեցին ալ առաջարկեց (տե՛ս Փրպ. էջ 422, 492, 522. — Հմմտ. Կիրակոս էջ 38—9)։

Եւ քանի որ Եկեղեցին ու Նախարարութիւնը միասին գործեցին, երեւոյթ մը՝ որ մինչեւ յետին ժամանակներ տիրեց, դարձեալ ուշ դարձընելու պարագայ մ'է, զոր անկարելի է աչքէ վրիպեցնել, երբ կ'ուզենք Նախարարութիւնը հետազօտելու ժամանակ անոր ոյժը կշռել, այսինքն՝ եկեղեցւոյ ազդեցութեան չափն որոշել Նախարարներու շարժումներուն մէջ։

Այս երեք կէտերու ուսումնասիրութիւնը, որ հետաքրքրական է, տոհմային պատմութեան ցանցառած իրողութիւնները վերականգնելու համար կատարելապէս չի պարզեր Նախարարական դրութիւնը. սով՝ Նախարարութեան գրեթէ արտաքին յարաբերութիւններուն կը հմտանանք. այս ամէնը կը ցուցընեն՝ թէ գործող մարմիններ կան նախարարութիւն անուամբ, բայց թէ ինչ է այն մարմինը, ինչո՛վ կը սնանի, ինչպէս կը պահէ իւր գործառնաւորութիւնը, եւ ինչ կշիռ ունեցաւ հայու քաղաքական կեանքին մէջ, այս հարցերը պէտք է ուսումնասիրել։

Եւ յիրաւի Նախարարութեան վրայ ճշգրիտ եւ իրական գաղափար մը շինելու համար հետազօտելու է այն բոլոր հարցերը, որոնք վերաբերութիւն

ունին վարչական կազմակերպութեան հետ եւ հետեւաբար հայ ժողովրդեան հետ. հետազօտելու է հայու ընկերական վիճակը[1], իրաւունքը, Հայաստանի կալուածական կամ հողային դրութիւնը, այսինքն՝ նախարարութեան բուն հիմն ու ծագումը, հայ մշակին կեանքը կամ երկրագործին վիճակը, հայ բարքերը, հետազօտել վերջապէս ինչ որ կը հանդիպի ժողովրդի կեանքին, հարստութեան եւ աղքատութեան շարժառիթները հողին հանդէպ, ինչ որ ընկերաբանական է։

Անոնք որ ընկերաբանական հայեացքով չեն քններ Հայաստանի հողային դրութիւնը, չեն կարող երբեք հասկցընել մեզ՝ թէ ինչ է նախարարութիւնը։ Ասոր համար է որ բազմավաստակ Ին-

[1] Դարուն ընկերական աստիճանները կամ. դասերը բացատրող բառեր կամ ասացուածներ պէտք է որ ուսումնասիրուին. — Հազարապետ, սպարապետ, նախարար, նահապետ, տան, տանուտէր, Յետնաւոր, ազգ. տոհմ, իշխան, ազատ, ազատական պատիւ, ազատք եւ շինականք, ծառայք եւ տէրք, Աւագն նախարարաց, տէրք գաւառաց, Աւագագոյն եւ Կրտսերագոյն նախարարք, ոստանիկք (ազատ մարդիկ, զորս ոստանիկս անուանեն Արքունի Տանը), սեպուհ, գահ, բարձ, պատիւ, եւն յարանուանական բացատրութիւններ չեն, ասոնց լուսաբանութիւնը կարեւոր եւ անհրաժեշտ է նախարարութիւնն ըմբռնելու համար։

Գալով ամենէն կենսական խնդրին, որ է հողն, թէ ինչպէս կը մշակուէր, հողային ինչ օրէնք կար, պատերազմի ժամանակ ինչպէս կը մշակուէր, ծառայք ինչպէս կապուած էին իրենց տէրերուն, մշակն իշխանութիւն ունէ՞ր հողին վրայ, հարակաշի (Օրբել Բ. էջ 309) դրութիւնը ինչ արժէք ունի հողագործութեան մէջ, ուսկէ՞ց ծագում առած է, մարդպետութիւնն ինչ վերաբերութիւն ունի հին երկրագործութեան հետ, երբ լուծուին այս խնդիրները՝ անշուշտ յերեւան կու գայ վերոյիշեալ տիտղոսներու կամ ընկերական աստիճաններու արժէքն ալ. տիտղոսի աստիճանաւորումն ուղիղ կը համեմատի կալուածի ընդարձակութեան հետ եւ բուն նախարարութիւնը հողատիրութիւնն է։

ճիճեանի Հնախօսութեան մէջ կը գտնենք պատմական անտաշ նիւթեր նախարարութեան նկատմամբ, ուր կը վարդապետուի թէ Նախարարութիւնն եւ Աւատականութիւնը տարբեր դրութիւններ են։

Բաստամեանց իր Մ. Գօշի "Դատաստանագիրք Հայոց, ուսումնասիրած հրատարակութեան Յառաջաբանութեան մէջ եւ Ստեփանէ իր Մովսէս Խորենացու Թարգմանութեան Առաջաբանին մէջ, Ք. Պատկանեանի* հետեւողութեամբ, թէեւ համառօտակի, այլ աւելի մօտեցած են նախարարութիւնը հետազօտելու գիտական շաւղին. Բաստամեաց մանաւանդ իբր իրաւաբան շօշափած է խնդիրը[1]։

Դէպ ի այն շաւիղը քայլ մ'առած կը համարիմ, դիտել տալով՝ որ Հայաստանի Նախարարութիւնն եւ Եւրոպայի Աւատականութիւնը տար-

---

* Իմա՛ Մ. Էմինի:

1 Ողբացեալ գիտնական վարդապետն իրաւաբանական տեսակէտով կը խօսի իւր ընտիր ուսումնասիրութեան մէջ. "Եւ որովհետեւ մի ազգի կեանքի քաղաքական, ընտանեկան եւ այլ տեսակ կողմերը կարելի է յաջողութեամբ բացատրել նորա օրէնքների յատկութիւններով" (Մ. Գօշ էջ 5), պէտք է որ նախարարութիւնն ալ բացատրելու համար հողային օրէնքներ, օրէնքի ոյժ ունեցող աւանդութիւններ կամ սովորութիւններ ուսումնասիրուին։

— Ստեփանէէն դիտել կու տայ՝ թէ "Պրօֆէսօր Պատկանեան շատ հիմնաւորապէս է լուսաբանում Հայաստանի այս Նախարարական իշխանական կարգաւորութիւնը"։ Պատկանեանի այս նկատմամբ գրածն իբր մասնաւոր նիւթի մ'ուսումնասիրութիւն, հեղինակութիւն մ'է անշուշտ, թէեւ իւր ուսումնասիրութեան տեսակէտն անծանօթ կը մնայ ինձ գործին հետ միասին։

— Հ. Բարսեղ պատմական ընտիր տեսութիւններով կը խօսի Նախարարութեանց վրայ Ագաթանգեղոսի վերաբերութեամբ (Գաղտնիք ճԱ. գլխուն առաջին մասերուն մէջ)։

բեր դրութիւններ չեն իբր կալուածական իշխանութիւն։ Ծագումը հողն է Նախարարին եւ Աւատապետին, եւ իրենց աճումը կամ նուազումը հողէն կախուած է. հողն է իրենց ոյժը, իրենց գործարանաւորութիւնը։

Ինճիճեան երկրի եւ կալուածներու ստացութեան վերագրելով հանդերձ “Նախարարութեան սկզբնաւորութիւնը„ (Հնախօս. Բ. էջ 839), երբ կը բաղդատէ Հայ “Տանուտիրական„ը, եւրոպական “Կալուածական„ի (Ֆէօտա՛լ)ի հետ, սա եզրակացութեան կը յանգի. “Բայց ի պատմութենէ ազգին մերոյ իմանաս, թէ պատմութիւն սկզբնաւորութեան այնց կալուածոց ոչ համաձայնի ընդ մերումս. զի ստացուած կալուածոյ այլոց ազգաց եղեւ դրաւելով եւ յափշտակելով յառաջին տեարց նոցին կամ պատերազմաւ եւ կամ հինահարութեամբ։ Իսկ Հայաստան աշխարհիս ո՛չ այնպէս. այլ առաջին բնակիչք գոլով եղեն եւ առաջին տիրողք, եւ յորդւոց յորդիս ժառանգութեամբ օրինաւոր տանուտեարք նոյն երկրին„ (անդ էջ 84. Ծնթ.)։

Նախարարութեան եւ աւատականութեան մէջ կալուածի յափշտակութիւնն այս կամ այն ցեղին իրարու հետ ունեցած յարաբերութենէն կախուած է. եւ իսկապէս աս է այն ներքին կռիւներուն պատճառը, որ մինչեւ վերջը Նախարարութիւնները թշնամի ըրաւ իրարու. միայն ուժի առաւելութիւնն անմիջական պատճառն էր միւսին կալուածին վրայ տիրանալու. բաւական էր որ թշնամական ամենաչնչին շարժառիթ մ'ունենային իրենց յարաբերութիւններու մէջ։ Եւրոպական Աւատապետներու կռիւներն ու յափշտակութիւնները միեւնոյն եղանակով յառաջ եկան, ինչպէս նաեւ ա՛յն բոլոր ազգերուն եւ ժողովուրդներուն մէջ, որոնք հանգունատիպ կառավարութեան մ'ենթարկուած էին։

Նոյն իսկ Վաղարշակ՝ երբ եկաւ “ի Հայս՝ ոչ զոք եգիտ գլխաւոր եւ ոչ կարգ ինչ, բայց ըղձաղամութիւն նախարարութեանց, որոց իւրաքանչիւր տեարք էին լեալ երկրի եւ քաղաքաց եւ գիւղօրէից, եւ ինքեանք իշխէին յամենայնի ի վերայ նոցա, զոր ինքն համարէր որով եւ պատերազմաւ առեալ ի յետոց այլոց, որպէս եւ տեառնէր լեալ յայլ աշխարհս„ (Հնախօս. Բ. էջ 82)։ Վաղարշակ չէր սխալած. “յայլ աշխարհս„ եղած հողային տիրապետութեան եղանակը բնականաբար նոյն պիտի ըլլար եւ էր Հայոց համար։ Եւ Ինճիճեան այսպէս ուղիղ մեկնելով Վաղարշակի մտածութիւնը նախարարութեանց մասին, կը հերքէ իր “այլ առաջին բնակիչք զօրով եղեն եւ առաջին տէրողք„ կարծիքը։ Բնիկութիւնն արգելք մը չէր յափշտակութեան։

Նախարարաց ընթացքն իսկ ապացոյց մ'է. ամէնք կ'ուզէին՝ որ թէ բնիկ եւ թէ օտար թագաւորներ չխառնուէին իրենց հողին. մնացածը հոգ չէր։ Ո՞վ գիտէ, Վաղարշակի կարգադրութիւնն ինչ դժուարութիւններու բախեցաւ. որովհետեւ այն կարգադրութեամբ ուրիշ նախարարութիւններ ալ աւելցան՝ ի վնաս հին նախարարներու։ Վաղարշակ նախարարական ոյժը տկարացընել ուզեց՝ շատցընելով անոնց թիւն ի նպաստ իւր իշխանութեան. նուրբ քաղաքականութիւն մը՝ կարգադրութեան դիմակին ներքեւ, որուն հետեւեցաւ նաեւ Արշակունի նրբամիտ ծրագրողն՝ Արշակ՝ թէպէտ ձախող ելք մ'ունեցաւ իւր բոլոր ձեռնարկութիւնը, իբր արդիւնք ինչ ինչ տկարութիւններու[1]։

---

[1] Գաղտնիք էջ 168-169. — Վերջին Տիգրանի եւս կարգադրութիւնն, ինչպէս կը պատմէ Խորենացին, անշուշտ այս թաքուն քաղաքականութեան հետեւողութիւն մ'է. “Եւ ի նմանէ լեալ պատանիս չորս՝ ազգ ասրէ յանուն մօրն իւրեանց՝ Ռոփսեան, եւ զառաջին մանկանցն գլուխ

Նախարարութիւններ, որ հետզհետէ զիրար սպառեցին, նոյն կերպով հողատէրներ եղած էին ոչ միայն “յայլ աշխարհս„, զորս գիտէր Վաղարշակ, այլ նաեւ թէ Հայաստանի եւ թէ Եւրոպայի մէջ։

Երբ Նախարարութեան եւ Աւատականութեան մէջ մտածուած կարծեցեալ խնդիրը բարձուի, առաջինին հետազօտութիւնն ինքնին կը դիւրանայ՝ թէեւ ընդհանուր, բայց իր էական գծերուն մէջ։ Որովհետեւ Աւատականութիւնը պէտք է ուսումնասիրել հին գերմանական (gérmanique) ժողովուրդներու վրայ, որոնք իբր երկրագործ բոլոր հին ազգերու հասարակ կենցաղով ու բարքերով նման հանգրուաններու վրայ կը կանգնին։

Գիւղատնտեսութեան ընդհանուր գծերը նոյն են անոնց եւ Հայոց վրայ. Հայք արօր+ ունէին. գերմանք ալ ունէին arare¹. Հայ գիւղապետը,

---

նահապետ կացուցանէ եւ կարգէ ընդ այլ նախարարութիւնս, զի մի՛ անուանիցին Արշակունիք„ (Խոր. Բ. ԿԴ)։

¹ Ֆ. Գուլանժ էջ 266, 272—273. Համմ. նաեւ Ագար-ակ, ager (արաբ. عقار). — Նոյն իսկ կ'առաջարկեմ մեր արօր(ք) բառէն հանել Նախ-արար (Նախ-արօր-ութիւն) կոչումը իբր ծագում առող այդ դրութեան եւ իբր արտայայտիչ վիճակ մը կալուածային (արօր-ային) տիրապետութեան, իբր Տէր՝ արօրներու, Տան-ու-Տէր (Տան եւ Տէր) բառին կազմութեան օրէնքով եւ բառին հին եւ բուն իմաստով։ Միայն Նախ = նահ (նահ-ա-պետ) բառին սկզբնական իմաստ մը պէտք է ենթադրել։ Բոլորովին անհիմն է [illegible] է լատիներէն praefectus բառին հետ համեմատել Նախարարութիւնը, իբր “[illegible]„ (Հիւբշ. Բ. էջ 77, 83), կամ ըստ Նոր Հայկ.ի “Նախկին եւ գլխաւոր արարեալն՝ այսինքն յիշխանութեան եղեալն կամ կարգեալն„ իմաստով։ Նախ-արօրի բառին մէջ արօր երբեք չի կրնար յառաջ գալ առնել կամ առնել բայէն։

ըստ Քսենոփոնի, հող ունի, գարի կ'արտադրէ, գարեջուր կը պատրաստէ (Քննկ. Պատմ. էջ 71. 75). գերման երկրագործն ալ ունի նոյնը (Ֆ. Գուլանժ. էջ 201). Հայք նշանաւոր որսորդ են, գերման ցեղերն ալ որսորդութիւն կը սիրեն (անդ էջ 200). Հայը խաշնադարման է, հարստութեան գլխաւոր աղբիւրը[1], գերման ժողովուրդը պատուական խաշինք ունի (անդ. էջ 204). Հայ իշխաններ երկար մազեր կամ գէսեր ունին (Փրպ. էջ 395)[2], Սուէվ ազատորեարք ալ իրենց ճակտին վրայ կը գանգրեն երկար գիսակներ (Ֆ. Գուլանժ. էջ 206 եւ 252). Հայք արժանիքով, քաջութեամբ եւ այլ բարձր յատկութիւններով պատիւ կ'ընդունին իրենց տիրապետներէն[3], գերմաններու մէջ՝ հասակ, զինուորական համբաւ, ճարտարաբանութիւնն է որ յարգելի կ'ընծայէ ստորադասն իւր թագաւորին կամ գլխաւորին (Ֆ. Գուլանժ էջ 212). Հայք ունին Տանուտէր, գերմանք ունին dominusներ (անդ էջ 252) եւայլն եւայլն։ Իսկ զինուորական արուեստին մէջ Հայք Հայկի աւանդութենէն ի վեր "երեքանգիւնի" ձեւով կամ "յերիս առաջս" (Խոր. Ա. ժա. — Փրպ. էջ 190, 210) մարտ կը մղեն, ազգական նախարարներ իրարու կուսակից

---

1 Տես մանաւանդ Ռաֆֆիի Սամուէլի մէջ Մերուժանի հարստութիւնը։ — Հայք լաւ խաշնադարման են, բայց թափառիկ վիճակ մը ունին իբր հովիւ-ժողովուրդ։

2 Համմտ. Մեծն Ներսէս՝ երբ զինուորական մ'էր մազեր ունէր, զորս կը կտրեն՝ երբ կաթողիկոս կ'ընտրուի. տեսնողներ կու լան (Բուզանդ). — Վասակ "պտուտաձեւր-տոյով կը զարդարուի (Եղիշէ էջ 106). այսինքն՝ վարսակալներով կամ մազի զարդերով։

3 Համմտ. Փրպ. էջ 336, 417, 422, 492, 513—515, 522, 532—533, 536, մանաւանդ 538-539. — Եղիշէ էջ 15, 33-35, 89-90, 153։

են եւ օգնական պատերազմի ժամանակ, ճիշդ նոյն է գերմաններու սովորոյթն ալ[1]։

Նշանաւոր պատմագէտ մը Ֆիւսթէլ դը Կուլանժ՝ documentներով կը հերքէ Աւատականութեան մասին զինքն կանխող քննութիւնները։ Հետազօտութիւնը (Recherches), 19 տարիներու անխոնջ աշխատութեան մ'արդիւնք, պատմութեան մէջ ամենէն աննշան նկատուած բառի մը, ուրիշներու ուշադրութիւն իսկ չգրաւող կէտերու վրայ հիմնուած միակ գործն է, որ կը պատկերացնէ Աւատականութիւնը՝ քոյրը Հայոց Նախարարութեան, իւր ծագումին եւ իւր կազմակերպութեան աստիճաններուն մէջ։ Ստուգիւ Հայ մատենագրութեան հանգունատիպ լքուած տեղերն են որ պիտի կանգնեն Նախարարութեան պատմութիւնը։

Այս դիտողութիւններն ընելով՝ կ'ուզէի ցուցընել թէ ոչ միայն Նախարարութիւնն եւ Աւատականութիւնը նոյն են եւ հայ եւ գերման բարքերու մէջ ճշմարիտ նոյնութիւններ կան, որուն համոզուիլ լայն ճամբայ մը կը բանայ Նախարարութիւնը քննելու իւր բոլոր գործարանաւորութեան մէջ, այլ՝ թէ տակաւին բաւական կնճռոտ խնդիր մ'է — առ ի չգոյէ յիշատակարաններու — նախարարական դրութիւնը հետազօտել այնպիսի ծրագրի մը վրայ, զոր գծած է Հետազօտութեանց հեղինակը գերման ժողովուրդներու աւատական կազմակերպութիւնն ուսումնասիրելու համար[2]։ Այսպիսի աշխատութիւնը կը թողունք ժա-

---

1 Leurs pelotons de cavalerie et leurs triangle d'infanterie ne sont pas formés d'hommes assemblés au hasard; chacun d'eux est composé d'hommes unis par le lien du sang.

2 Նոյն ինքն Ֆիւսթէլ՝ իւր առջեւ ունենալով Ցակիտոսի եւ Կեսարի պէս բնագիր յիշատակարաններ՝ խնդիրը միեւնոյն դժուարութեան մէջ կը նկատէ։ Ce que nous

մանակին եւ հանդարտ ժամանակ վայելող ձեռնհասներուն։ Բայց քանի որ Նախարարութիւնք սերտ աղերս մ'ունի մեր ուսումնասիրած նիւթին հետ՝ իր քաղաքական շրջանակին մէջ, աւելորդ չէ դիտել թէ ինչպէս կը գործէին նախարարները եւ ինչ կապ ունէին թագաւորներուն հետ, կամ ինչ էր իրենց ոյժը։ Բաստամեանցի ընդհանուր տեսութիւնն այս նկատմամբ յարմար է իմ տեսակէտին.

— «Չկայ Հայաստանի մէջ կանոնաւոր եղանակ պետական կառավարութեան. թագաւորները բատ մեծի մասին թոյլ են եւ զուրկ կառավարչական ընդունակութիւններից. երբեմն երկու եւ երեք ապստամբ թագաւորներ կա՛մ պատերազմում են միմեանց դէմ՝ ոտնակոխ անելով իւրեանց ընդհանուր հայրենիքը, եւ կամ իշխում են առանձին առանձին՝ բաժանելով ազգը եւ հայրենիքը. յաճախական գահընկէցութիւններ թագաւորների, երբեմն ժառանգական եւ երբեմն անկանոն եղանակ գահակալութեան. երկարատեւ պարապութիւն գահի. անկումն թագաւորութեան երեքչորս անգամ. բացակայութիւն կանոնաւոր եւ մշտական զօրքի. անկանոն եղանակ հարկահանութեան. անընդհատ ապստամբութիւն նախարարների, եւ նոցա զինուորուած պատերազմներ կամ միմեանց եւ կամ թագաւորի դէմ, եւայլն։ Ահա յատուկ գծերը Հայոց ազգի պետական կեանքի նորա բոլոր շարունակութեան ժամանակ։

Ինչպէս յայտնի է՝ Հայոց ազգը բաղկացաւ զանազան բնիկ եւ եկամուտ ցեղերից (տես իմ յօդուածը Արարատ մէջ, 1872 թ., երես 197 —

tenions à montrer, c'est que la question est plus complexe q'uelle ne semblait, qu'on ne peut pas la traiter à la légère et en passant, et qu'il faut faire l'attention à beaucoup de faits de diverse nature avant d'essayer de la résoudre. p. 515.

203, 249—251, 312—319)։ Այդ ցեղերը դարերու ընթացքում փոքր առ փոքր խառնուեցան միմեանց հետ եւ գոյացրին մի ամբողջութիւն — Հայոց ազգ, բայց այդ ամբողջութիւնը շատ երկար ժամանակ միայն արտաքին էր, քաղաքական էր։ Եւ յիրաւի՝ թէպէտ հնագոյն դարերից սկսած՝ Հայաստանի եւ Հայոց ազգի վերայ սկսեցին իշխել առաջ իշխաններն եւ ապա թագաւորները, որոց գերագոյն պետական իշխանութիւնը ճանաչում են իւրեանց վերայ բոլոր ցեղերը, բայց ներքին կեանքի մէջ այդ ցեղերից ամէն մէկը երկար ժամանակ պահպանում էր իւր զատուած, ինքնուրոյն գոյութիւնը գրեթէ իբրեւ մի առանձին քաղաքական մարմին։ Իւրաքանչիւր ցեղը ամփոփուած նստած էր մի առանձին եւ բաւական ընդարձակ երկրի վերայ եւ կառավարվում էր իւր ցեղապետներով. եւ մի այդպիսի անջատուած դրութեան շատ նպաստում էր Հայաստանի աշխարհագրական դիրքը, բաժանուած բազմաթիւ լեռներով, որք ամէն տեղ բաւականին արգելում են եւ դժուարացնում են դրացի ցեղերի միաւորութիւնը։ Ցեղապետները, որք յետոյ նախարարներ կոչուեցան, շատ մեծ դեր էին խաղում պետական ընդհանուր կառավարութեան մէջ, իսկ իւրեանց նախարարութեան, այսինքն՝ կալուածքի կամ գաւառի մէջ եւ իւրեանց ցեղերի վերայ նոքա վարում էին գրեթէ անսահման իշխանութիւն, վասն զի՝ որպէս պարզ երեւում է մեր պատմագրութիւնների մէջ մնացած տեղեկութիւններից՝ նոքա ժողովում էին հարկը, վարում էին դատաստանը, պահում էին սեփական զօրք, եւայլն։ Այդ իրաւունքները եւ արտօնութիւնները հետզհետէ դարձան ժառանգական եւ անցնում էին հօրից որդուն, բաժանելով շատ անգամ երկիրը աւելի մանր մասերի։ Եւ այդ հզօր նախարարների քաղաքական կախումն երկրի ընդհանուր միապետից (միահեծան իշխաններից եւ

յետոյ թագաւորներից) շատ թոյլ էր եւ արտաքին, եւ արտայայտվում էր գլխաւորապէս հետեւեալ երեք պարտաւորութեան մէջ։

1. Իւրաքանչիւր նախարար պարտաւոր էր տալ թագաւորին հարկաւոր ժամանակ, օրինակ՝ պատերազմի միջոցին, զօրք որոշեալ քանակութեամբ, համապատասխանաբար իւր գաւառի բնակիչների թուին, պահել այդ զօրքը իւր հաշուով եւ՝ եթէ կարելի էր՝ անձամբ կատարել զօրապետի պաշտօնը։ Եւ ահա այդ առաջին գունդերից կազմվում էր Հայաստանի ընդհանուր պետական զօրքը արտաքին թշնամու դէմ պատերազմ վարելու ժամանակ (Եղիշէ [Թէոդոսիա, 1861 ամի], երես 112—113 [Խորենացի Վենետիկ 1843 ամի], եր. 251 եւն, Յովհաննէս կաթողիկոս [Մոսկուա 1853 ամի], եր 93, 97, եւայլն։)

2. Իւրաքանչիւր նախարար պարտաւոր էր վճարել արքունի գանձարանին որոշեալ հարկ (Թովմա Արծրունի, Կ. Պոլիս 1852, եր. 58)։

3. Իւրաքանչիւր նախարար պարտաւոր էր մատուցանել թագաւորին ընծաներ գահը բարձրանալու ժամանակ, եւ նորա ու նորա զաւակների հարսանիքի առիթով։

Բոլոր այդ պարտաւորութիւնների զանցառութիւնը համարվում էր ապստամբութիւն եւ քաղաքական մեծ յանցանք եւ թագաւորները շատ անգամ զէնքով ստիպում էին նախարարներին կատարել իւրեանց պարտաւորութիւնները (Թովմ. Արծր. եր. 310, 317, եւայլն. նաեւ այլ պատմագրութիւնների մէջ)։ — Համմտ. Մ. Գօշի Ցոչ. էջ 8—10։

Այդ հզօր նախարարները իւրեանց հզօր դրութեան շնորհիւ, մի դրութիւն՝ որ պատմական իմն վաւերացումն ստացել էր, դարերու ընթացքում, վարում էին գրեթէ անսահման իշխանութիւն իւրեանց գաւառի ներքին գործերի եւ կա-

ռավարութեան մէջ։ Նոքա կառավարում էին իւրեանց ժողովուրդը աւանդական կամ ժողովրդական իրաւունքով եւ հին սովորութիւններով, երբեմն երբեմն նոր կարգադրութիւններ անելով կամ բանաւոր պատուէրներով եւ կամ գրաւոր հրամաններով։ Բայց այդ բանաւոր կարգադրութիւնները եւ գրաւոր հրամանները չէին կարող պարտաւորեալ օրէնքի զօրութիւն ունենալ յաջորդող նախարարների համար, որք լիազօր իրաւունք ունէին խափանել դոցա կամ փոխել, եթէ հարկաւոր էր այդ։

Եւ որովհետեւ իւրաքանչիւր նախարարական կալուածքը կամ նախարարութիւնը ներկայացնում էր բաւականին ընդարձակ գաւառ, որոյ սահմանները էին ըստ մեծի մասին բարձր լեռներ, եւ այդ լեռները խափանում էին դրացի գաւառների բնակիչների մէջ մերձաւոր հաղորդակցութիւնները, մանաւանդ որ չկային յարմար ճանապարհներ, ուստի գաւառների բնակիչները մնում էին գրեթէ բոլորովին անջատուած միմեանցից, եւ մի գաւառի աւանդական իրաւունքը եւ իրաւաբանական ու այլ տեսակ սովորութիւնները, մինչեւ անգամ խօսակցութեան լեզուն (բարբառ), շորերը եւայլն, բաւականին տարբերում էին միւս գաւառներից, կրելով իւրեանց մէջ ինքնուրոյն յատկութիւններ։ Այդ պատճառով եւ մի նախարարի բանաւոր կամ գրաւոր նոր կարգադրութիւնը հազիւ թէ հազարից մին անգամ անցնում էր միւս գաւառը եւ ընդունելութիւն գտնում այն տեղ։

Հայկական պետութեան այսպիսի աւատական (ֆէօտալական) կազմակերպութեան պատճառով կենդրոնական գերագոյն իշխանութիւնը արտայայտվում էր միայն արտաքին կերպով։ Թագաւորների բոլոր հրամանները եւ կարգադրութիւնները վերաբերվում էին անմիջապէս ոչ թէ ժողովրդին, այլ նախարարներին, որք ի կատար էին

ածում իրենց գաւառների մէջ, ուստի նոքա կարող էին պարունակել իրենց մէջ միայն որ եւ իցէ արտաքին, ժամանակաւոր բարեկարգութիւններ կամ հրահանգներ, եւ ոչ թէ արմատական վերանորոգութիւններ» (Մ. Գօշ. Յոլ. էջ 12—13)։

Այս ամփոփ նկարագիրը վարչական երեւոյթի մը, որ նոյն էր իր բոլոր տեւողութեան միջոցին. այս երեւոյթին պատճառները հետազօտելն, ինչպէս ըսինք վերեւ, պիտի բացատրէ նախարարութիւնը եւ աւելորդ չէ կրկնել թէ Փիւսթէլի դրութիւնը միայն, ամէն պարագայի մէջ, կրնայ տալ լաւագոյն բացատրութիւնը. եւ նոյն հեղինակին աւատականութեան վրայ ըրած խորին եւ բազմակողմանի հետազօտութիւններն արդէն բաւական լոյս կը սփռեն հայ-աւատականութեան ալ վրայ։ Որովհետեւ Փիւսթէլ ո՛չ թէ Միջին դարու մէջ կը հետազօտէ Աւատականութիւնը, այլ Տակիտոսի եւ Կեսարի հնութեան մէջ, այսինքն՝ ճիշդ այն ատեն, ուր գերմանական ժողովուրդները դեռ հաւատարիմ սերունդն էին իրենց նախնեաց, հարազատ ցոլացուցիչն իրենց հին բարքերուն։ Գերմանական ժողովուրդները իբր Երկրագործներ խաշնարածներ անկարելի էր՝ որ հիմնական տարբերութիւններ ունենային այնպիսի հնութեան մը մէջ, ուր ճշգրիտ հանգիտութիւններ եւ նոյնութիւններ կը դիտուին միեւնոյն կամ նման կենցաղի վիճակած ազգերու եւ ժողովուրդներու վրայ։ Աւելցընենք մեր այս դիտողութիւններուն՝ եւ վերեւ մեր ըրած բաղդատութիւններուն (էջ 181) վրայ այն բանասիրական եւ ազգագրական քննութիւնն ալ, որով Կ. Վ. Շահնազարեանց գիտնականապէս կը ցուցընէ Սիւնեաց աղերսը Գերմանաց հետ։ Այն քննութիւնը Սիւնեաց վրայ մասնաւորուած՝ ծագումով կը նոյնացընէ գերմանները Հայաստանի ժողովրդեան մեծ եւ նշանաւոր մէկ մասին հետ, իր ցուցմունքներէն "հետեւի թէ՝ կամ գերմա-

նացիք ժամանակ մի կացեալ 2500 ամօք յառաջագոյն՝ անցին ապա յԵւրոպիա, կամ թէ՝ խառնեալ ընդ բուն բնակս երկրին Հայաստան„[1]: Ղահնազարեանի ուսումնասիրութեան տեսակէտն իսկ, անշուշտ, բաւական է բացատրելու, հաստատելու այն նմանութիւններն ու նոյնութիւնները, որոնք կը տեսնուին Հայ եւ գերման հին ժողովուրդներու բարքերուն եւ կառավարչական ձեւերու վրայ: Ի՛նչ տեսութեամբ ալ քննուի, նոյն եզրակացութեան պիտի յանգի: Նախարարութիւնն եւ Աւատականութիւնը տարբեր կազմակերպութիւններ չեն կրնար ըլլալ՝ իբր զուտ կալուածական կամ հողային ծագում ունեցող հաստատութիւններ:

Նախարարական դրութեան հետազօտութիւնն եթէ շատ դիւրին չէ, գոնէ բաւական դիւրութիւններ կան ուսումնասիրելու համար Նախարարութիւններու քաղաքական շարժումը Փարպեցու եւ Եղիշէի պատմական գետնին վրայ: Այս երկու պատմագիրներու տեղեկութիւններն, յիրաւի, գլխաւորաբար երկու Նախարարութեանց (Սիւնեաց եւ Մամիկոնեանց), հետեւաբար անոնց գործակից Նախարարութիւններու քաղաքականութեան շուրջ կը դառնան. բայց այս քաղաքականութիւնն ա՛յն պիսի խնդրի մը հետ կապուած է, ինչպէս է Վարդանանց պատերազմը, որ անկարելի է մէն մի դէպքին մէջ չտեսնել Նախարարներու ձկտումները:

---

1 Օրբել. Ա, էջ 27. — Հետաքրքրական է գիտնական Վարդապետին բովանդակ „Սիւնիք„ ուսումնասիրութիւնը, ուր ձեռնահասութեամբ կը խօսի Սիւնեաց ծագումին, զարգացումին եւ այլ կարեւոր կէտերու վրայ ազգագրական եւ տեղագրական տեսակէտներով: Ցաւալի է որ մեր գիտուն վարդապետին „Չորեքտասներորդ Երգոցն դարձուածը „Ըմպէին գինի ի Եկեղ... եւ անհետ արար զայն յաղթելոյն„, ինչպէս կը հառաչէ ինքն զայրացած հոգիով մը (անդ էջ 8): Անտարակոյս աւելի մանրամասն տեղեկութիւններու պիտի հմտանայինք հին եւ արդի Սիւնեաց նկատմամբ:

Արդ՝ կարեւոր կը համարիմ, կարելի եղածին չափ լայն շրջանակի մը մէջ ուսումնասիրել Ե. դարու մեծ շարժումին մէջ երկու (Սիւնեաց եւ Մամիկոնեանց) զօրաւոր եւ իրարու հակառակ հոսանքները։ Այսով ոչ միայն կ'ըմբռնենք բոլոր նախարարութիւններու ճակատագրական դերն Հայու քաղաքական կեանքին մէջ, այլ մանաւանդ Վարդանանց պատերազմին բնութիւնը կարելի է մեկնել Մամիկոնեանց եւ Սիւնեաց բռնած դիրքին մէջ երկրի այն շարժումին հանդէպ։

## ԳԼՈՒԽ Բ.

## ՍԻՒՆԻՔ

Մարդկային տարբեր ցեղերու տարբեր նկարագիրներուն սկզբնապատճառներն են երկրագնդիս տարբեր գօտիները. իսկ տեղագրութիւնը, որ ժողովուրդներու, ազգերու քաղաքական եւ կրօնական կեանքը կը շինէ եւ կը դրոշմէ անոնց վրայ իր կնիքը, միեւնոյն գօտւոյ վրայ կը ստեղծէ անոնց համար յատուկ բարք, սովորոյթ, կենցաղավարութիւն. այսինքն տեղագրական յատուկ նկարագիր մը։ Տեղագրութեան այս ազդեցութիւնը ստուգուած իրողութիւն մ'է Հայաստանի նկատմամբ։ Հովիտներ, դաշտեր՝ ջրարբի կամ ոստին՝ ինքնին կը մղեն բնիկները հող մշակելու, արդիւնք՝ արմտիք արտադրելու համար. ասոնք են երկրագործ ժողովուրդները։ Տափարակներու եւ դաշտերու բնակիչներուն կեանքը մաճէն կախուած է։ Իսկ անոնք, որ բարձունքներու վիճակած են, լեռներու մէջ կը բնակին, մեծապէս կը տարբերին դաշտայիններէն. անոնք լեռներու բնաբոյս բերքերու շահագործութեամբ կ'ապրին, արօտներով կ'արածեն իրենց հօտերը, բնականէն տիրելու միտում մը կը զգան դաշտացիներու վրայ, ինչպէս իրենց լեռները՝ դաշտերու վրայ։ Լեռներ՝ աննկուն ոգի մը կը շինեն

լեռնցիներու մէջ. անոնք իրենց սահմաններու պահպանութեան եւ ինքնապաշտպանութեան համար ինքնաբեր թելադրութիւն մ՚ունին ռազմական ընդունակութեամբ մ՚օժտուած. լեռնցւոյ այս բոլոր յատկութիւնները կը պարտաւորեն այն ժողովուրդը, որ մահուչափ ճգնի անաղարտ պահելու իր դիրքին բոլոր նիւթական եւ բարոյական ինքնուրոյնութիւնը — երկիրը, բարքերը, բերքերը (արօտ) համոզումները, հաւատալիքները, գաւառաբարբառը, եւն եւն։ Լեռներու ազդեցութիւնն աւելի անվկանդ նկարագիր մը յերեւան կը բերէ լեռնային դիրք ունեցող ցեղերու քաղաքական կեանքին մէջ։ Տիեզերական պատմութեան մէջ ո՛չ մէկ լեռնցի ժողովուրդ կորսնցուցած է իր բնիկ տիրապետական ոյժը, եթէ ոչ արտաքին անհամեմատելի եւ անընկճելի զօրութեան մը հանդէպ. որովհետեւ լեռներ անկախութիւն ձեռք բերելու բնական սատարներ են։ Հայոց քաղաքական կեանքը միշտ լեռներով չափուած է։

Սիւնիք՝ նախարարական կեանքի այս գլխաւոր եւ հզօր տարրը՝ լեռնային ազդակի մը տակ բարգաւաճած է։ Սիւնեաց տեղագրական դիրքը, ուր նշանակելի է մանաւանդ իրենց Պարսկաստանի մօտաւորութիւնը, որ Երասխով միայն կը բաժնուի անկէ, քաղաքական յատուկ, լաւ եւս բնական ուղղութեան մը հետեւելու ստիպած է Սիւնական նախարարները։ Անմոռայն Շահնազարեան, որ անձամբ պտտած քննած է այն վայրերը, կ՚ըսէ թէ "Սիսական է երկիր լեռնային. զերեք հինգերորդ մասն աշխարհին գրաւեն լերինք բարձրաբերձք ոմանք անմատչելիք եւ անբերք, այլք զարդարեալ մշտադալար անտառօք։ Ահեղ խոխոմք եւ ծմակք լերանց յիշեցուցանեն տեսողաց զանդունդս երկրի մինչդեռ, ըստ Սուրբ գրոց, տակաւին աներեւոյթ էր եւ անպատրաստ։ ...Զիք գրեթէ ամենեւին դաշտագետին ի Սիսական, եւ որք ենն ի Սիսեան

եւ այլուր՝ ի լեռնադաշտից համարի են» (Օրբէլ. Ա. էջ 8—9. — Հմմտ. Խոր. Ա. ժա)։

Այսպիսի երկրի մը մէջ էր որ կազմուեցաւ Սիւնեաց «մեծ եւ անուանի» (Խոր. Բ. ը) տոհմին քաղաքական կեանքը. անոնց ծագումն ու զարգացումը փառաւոր եղաւ (Խոր. նոյն անդ. Օրբէլ. Ա. դ.) եւ անկումը, որ մերթ ընդ մերթ կը սպառնար այս տոհմին տեւական յառաջացումը խափանել՝ նոյն իսկ ցեղային ջնջումի վտանգին ենթարկելով (Բուզ. Դ. ծը. Խոր. Գ. իը), իւր բոլոր խժդուժ կողմերով իսկ չկրցաւ հակակշռել անոնց փառքը (Օրբէլ. Ա. դ). փառք մը, զոր իրենց բնաշխարհն կը ստեղծէր իւր «ֆոշանոթ, վայրենաֆոյն, ճիւաղաբարոյ» ծնունդին համար, բայց հնարագիտութիւն, խորագիտութիւն, նենգամտութիւն եւ այլ մտային ձիրքեր, մանաւանդ ուսումնասիրութիւն, քաջութիւն, աշխարհակալութիւն, որոնցմով կը ներկայանան մեզ այս նախարարութեան բոլոր երեւելի դէմքերը, արտայայտութիւնն են Սիւնեաց բովանդակ երկրին։

Երկրի այս անկախ դիրքը՝ խրոխտ բնաւորութիւն մը տուաւ Սիւնեաց, որ միշտ անկախութեան կը ձգտէր. Տանուտիրութիւն, իշխանութիւն, գահերիցութիւն, նախարարութիւն, մարզպանութիւն, թագաւորութիւն իրենց բոլոր շքեղութեամբ պերճացաւ սխրական բարձունքներու վրայ, այն «անառիկ» եւ «ֆոլէլէ» ամրոցներուն մէջ, «որ ի մարդկան հնարից հեռացեալ են, բայց միայն թէ Տէր մատնեսցէ» (Օրբէլ.)։ Բնական ամուրները ձեռակերտ բերդերու բազմաթիւ շարքերով անսասան ըրին այս երկիրը, միշտ կենդանի պահելով այն ոգին, որու վերջին ներկայացուցիչն եղաւ Դաւիթ-բէկ (ԺԸ դար)[1]։

---

[1] Կիներ զուրկ չէին այս բնական օժիտէն։ Սիւնեաց դստերք երեւելի դէմքեր կը ներկայացընեն Սահակիայի, Բիւրեղի եւ այլ մեծանձն եւ երկրին օգտակար գործերու

Այս դիրքին մէջ բնական ուղղութիւնը քաղաքական գործերու մէջ բացարձակ չէ։ Սիւնիք ընդհանրապէս Տիսբոնի կը յարին, այս բնական էր. բայց միշտ անբաւականութեան, ապստամբութեան վիճակին մէջ։

Դէպ ի Տիսբոն Սիւնեաց միտումը բացատրելու համար, ըստ իս, հարկաւոր է հետագայ կէտերուն միտ դնել.

1. Երկրին խաղաղութիւնը։ Սիւնիք խաղաղ պահելու կ'աշխատին միշտ իրենց երկիրն եւ ասոր համար բան մը չեն խնայեր. այս պարագային մէջ անոնց համար նշանակութիւն չունին նախարարական ուրիշ տոհմեր. կը վտանգեն հայ ժողովրդեան բարօրութիւնը, նոյն իսկ կը դաւաճանեն Հայաստանի թագաւորին։ — Պատմական ոսկեղէնիկ հատուած մը, որ՝ հակառակ ուրիշ պատմածներու՝ զօրաւոր յայտնութիւններով դուրս կու գայ մատենագրաններու անկիւնէն՝ Մեծն Տրդատի ծիրանւոյն վերջալոյսը պատկերացընելու. ի վեր կը հանէ այն ուղղութիւնը, որուն միայն միշտ հաւատարիմ եղան Սիւնիք իրենց քաղաքական բոլոր շարժումներուն մէջ. — "իսկ թագաւորն Տրդատ յետ հաւատոյն ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբ փայլեալ մինչեւ ցվախճան արի ծերութեամբ։ Այլ քանզի չարք ոմանք հրամանաւ Շապհոյ խորհեցան սպանանել զՏրդատ, և միանգամ անդրէն [illegible] հաստատել յաշխարհին Հայոց, յորում խորհրդի լեալ էր եւ Սենեկապանն Տրդատայ.... Բայց ոչ գիտէր թագաւորն թէ քանի՞ք կամ ո՞յք իցեն. վասն որոյ զսենեկա-

---

մէջ (Օրբել. — Սիսական էջ 7, 14)։ Կ. Վ. Շահնազարեան ականատես կը վկայէ թէ "Արք եւ կանայք նոցա սիրեն զողջախոհութիւն. իսկ քաջարտութիւն բաշխէ երկոցուն ցեղիցն հաւասարապէս յոլով են առ նոսա կապուտակնեայք„ (Օրբել. էջ 25)։

պանն զայն հարցանէր, եթէ իցէ՞ ինչ ի Դրանս արդարեւ այսպիսի խորհուրդ։ Նա իբրեւ լուաւ՝ զահի հարեալ սրտաբեկ լինէր, եւ ուրացաւ։ ...Բայց ինքն թագաւորն ոչ առնելով դուլ, հեռանայր յարեւմուտս կոյս, մինչեւ ի գաւառն Եկեղեաց, տեղի տուեալ լոյն այնորիկ։ Եւ քանզի բազումք էին ի խորհրդին, ոմանք զկնի նորա գնացին. Մա-նաւանդ ազատքն Սիւնեաց կողմանցն, որք առաւել հրամանակատարք Շապհոյ լինէին, վասն աշխարհին իւ-րեանց խաղաղական ժառանգ. որք եւ ի յորս երեքոց եր-բեմն ընդ թագաւորին լինելով, յորոց էր խոցեալ լինէր [illegible], որպէս թէ յանդէտս ուստեք դի-պեալ պատահեաց նետն„։ Երբ Տրդատ չի մեռնիր այն նետի սակաւիկ ինչ վէրքէն, դաւաճաններէն մին՝ Սենեկապանն "արբուցանէ դեղ մահու եւ վախ-ճանէ. որ յետոյ յայտնի իսկ եղեւ ի նորին խոր-հրդակցացն„ (Գաղտնիք. էջ 166—167. Հմմտ. 272)։

Շապուհի եղերական խորհուրդին գործա-դրութիւնը շատ քաջալերիչ չեղաւ Հայաստանի կրօնական խնդիրներուն համար, թէեւ նա եւ իր յաջորդներն արիւնով շարունակեցին այժ տալ իրենց ծրագրին։ Շապուհ կրցաւ վախճան տալ Սէգ թա-գաւորի մը կեանքին բնիկներու ձեռամբ, սակայն եթէ չկրցաւ "միասնգամ անդրէն զկռապաշտու-թիւն հաստատել յաշխարհիս Հայոց„, գէթ ան-վարձ չթողուց դաւաճան խորհուրդին գլխաւոր գործողները, նուաճելով ուրիշ նախարարութիւն-ներ եւ անոնց ուժով բարձրացուց Սիւնեաց տունը — "Նուաճեաց եւ զազգ նախարարացն, եւ փոխանակ Վահանայ Ամատունւոյ՝ Սպարապետ կացոյց զՀաւա-տարիմ իւր զՎաղինակ (Ա.) Սիւնի (346 – 363) եւ նմա յանձն արարեալ զՀայս„ (Խոր. Գ. ժը. — Գաղտնիք նոյն անդ)։

Սիւնեաց համար Պարսկաստանի պէս զօրաւոր դրացիէ մը ոչ թէ ոտնակոխ ըլլալ, այլ մանաւանդ վարձատրուիլ, տիրանալով Հայաստանի զինուորա-

կան ուժին[1], ամէն նկատում կը գերազանցէր. հոգ չէր որ Շապուհի կրօնական դիմակով քաղաքական դիտումներն ալ իրագործուէին, հոգ չէր որ իշխանն Սիւնեաց երբեմն Լուսաւորչի գործակցած ըլլար, եւ ուրիշ մը՝ Վասակ՝ հեթանոսական բարքերու հետեւէր (Եղիշէ էջ 48)։ Այսպէս Սիւնիք կրնային տեղի տալ Տիզբոնի դիտումներուն, նոյն իսկ շնորհիւ իրենց երկիրներու մէջ թաքչած հեթանոսութեան (Օրբել. Ա. ժե) — զոր արմատախիլ ընելու համար Մեսրոպ իւր առաքելութեան ամենէն թարմ եւ ամենէն կորովի ոյժը նուիրեց. — աւելի եւս դիւր կը գտային հայ-պարսիկ քաղաքական խնդիրներու մէջ ազատօրէն շարժիլ.

2. Տիրապետելու ոգին։ Նախարարական կամ տանուտիրական աշխարհներու մէջ տկարագոյնը նուաճել սեւէ շարժառթով՝ տիրող օրէնք մ'է կարծես. ուժի առաւելութիւնը, դիրքը, բաւական է տկար մը, ըլլայ անհատ, ըլլայ ժողովուրդ, նուաճելու համար։ Մինչեւ հիմայ Արեւելքի այն անկիւններու մէջ, ուր դեռ կը շնչէ հին օրէնքը, յաճախ կը պատահին, մինչեւ իսկ արիւնոտ խժդժութիւններ արդիւնք տիրապետելու խոլոտ բախումներուն։ Սիւնեաց երկրին բնական դիրքը ճիշդ այն ատեն ծնաւ տիրելու ոգին Սիսականներու մէջ, երբ Սէջն Սիսակ իբր ժառանգութիւն առաւ (Խոր. Ա. ժբ.) Միջագետքը, որ կը ցցուի Գեղամայ Ծովեզերքին, Երասխ եւ Կուր գետերու շրջափակին մէջ։ — Զուարթ Գողթն միեւնոյն ոգւով մէկ մասը կազմած է Սիւնեաց։ — Բայց որովհետեւ բնագիծ սահմաններ ամբարտակ կը կանգնէին Սիւնեաց յոխորտանքին ուրիշներու վրայ, պահելով հանդերձ ներքին ինքնուրոյնութիւնը, բաժնուեցան իրենց մէջ։ Մեծ Սիւնիք, Փոքր Սիւնիք, Հայկազունք,

---

1 Սիւնիք ի վաղուց կը վարէին արդէն Արեւելեան բանակի հրամանատարութիւնը (Օրբել. Ա. էջ 64)։

Սիսակեանք՝ իշխողներու զանազան յորջորջումներ, մանր մասերու բաժնեցին Սիսակի ժառանգութիւնը։

Սիւնեաց կրօնական իշխանութիւնն ալ քաղաքականին պէս տիրող բնութիւն մ'առաւ. երբ Ս. Սահակ «ի նոցունց իսկ վայրենեացն» (Կորիւն) եպիսկոպոս ձեռնադրեց միեւնոյն ոգւով տոգորուած ծնունդը՝ Անանիան, որ «եկեալ նորոգեաց զերկոտասան գաւառ մեծավիճակ գաւազանի իւրոյ» (Օրբէլ. Ա. ժգ)։ Ասի սկիզբն է այն ձգտումին, որ չափազանց կերպով փառաւորեց եւ յաւակնեցուց Սիւնեաց Աթոռը։ Ինչ դիրք որ բռնեց Սիւնեաց նախարարութիւնը Հայոց Արքունիքի հանդէպ, միեւնոյն դիրքը բռնեց իրենց Մետրապոլտութիւնը Հայոց Հայրապետութեան հանդէպ։ Եւ իբր առաւելութիւն՝ Սիւնեաց Աթոռն իւր ընդվզումներուն հիմ կը բռնէր, անշուշտ, առաքելական յաջորդութիւնը Բարթողիմէոսէն հաստատուած։ Օրբէլեան միշտ կը շեշտէ զայս, — «նախ քան զամենայն կարեւոր եւ յոյժ պիտանի էր ինձ զայս իսկ ցուցանել՝ թէ քան զՀայաստանեաց նախահաւատ երեւեցան սոքա» (Օրբէլ. Ա. գ) — եւ իւր պատմութեան ամէն երեսին մէջ կ'եռայ Սիւնեաց Աթոռին տիրապետական շարժումներն, որոնք անզբաղ չթողուցին Հայոց կաթողիկոսութիւնը, նոյն իսկ զայն վտանգելու սպառնալիքով (անդ ԺԶ. ԻԸ. ԻԹ. Բ. ԾԲ. ՀԱ.)։ Սիւնեաց Դպրոցն ալ իբր Աթոռին հետ կապուած հաստատութիւն՝ խիզախ եւ տիրող յառաջդիմութիւն մը ցուցուց իւր հոյակապ ներկայացուցիչներով։

Այս ամէն յառաջացումներուն մէջ գերազանց դեր մ'ունի երկրին բնական դիրքը, այն «ամրածածուկ հաւալոյ»ը (Եղիշէ էջ 57)։ Քաղաքական իշխանութեան յաւակնութիւններով կը յաւակնի կրօնականն ալ. այնպէս որ Սիւնիք միշտ ծայրայեղութեան մղուեցան. անոնց բոլոր

առաջինութիւններն իրենց յաղթանակներով՝ ծայրայեղ են. անոնց բոլոր մոլութիւններն իրենց յիշատակներով՝ նոյնչափ ծայրայեղ են[1]: Իսկ անոնք՝ որ միջին շաւիղ մ'ընտրեցին այս "գազանամիտ, վայրենագոյն, ճիւաղաբարոյ" տոհմի գործիչներու շարքին մէջ, շատ քիչ են թուով, եւ հազիւ փուշերու եւ դժնիկներու մէջ ծլած վարդի եւ շուշանի նմանութիւն մ'ունին (Օրբել. Ա. ժր):

3. Սիւնեաց երկրին գրեթէ սահմանակցութիւնը Պարսկաստանին, ինչպէս ըսինք վերեւ. — Նախարարական կամ աւատական դրութեան մէջ՝ դրացիութեան կամ սահմանակցութեան խնդիրը ամէնէն զօրաւոր պատճառն է իւրաքանչիւր Տանուտիրական վիճակին որոշ կերպարանք մը տալու: Այս փոքրիկ կառավարութիւնները գիտեն իրարու ուժին չափը, եւ այն՝ որ ամէնէն զօրաւորն է, իր կամքին համեմատ կը գործածէ միւսներն՝ նոյն իսկ բռնի: Դաշնակցութեան, ապստամբութեան, ասպատակութեան գործերու մէջ՝ զօրաւորին ոյժը կը կազմեն իր դրացիները: Սահմանակցութիւնը միշտ պետութիւններու յարաբերական բոլոր գործողութիւններուն վրայ ուղղակի կը տիրէ, եւ Սիւնիք, թէպէտ զօրաւոր նախարարութիւն մը, թէպէտ անկախութեան շունչով սիգացող մը անմատչելի բարձունքներու վրայ՝ վերջապէս աւելի մօտ էր Տիզբոնի քան Բիւզանդիոնի: Այս բնական մերձաւորութեան մէջ Սիւնիք պիտի ջանային հաշտ մնալ Տիզբոնի հետ: Դիրքի պահանջն էր այս եւ ազդակը Սիւնեաց քաղաքագիտութեան:

Անշուշտ միւս կողմէն Դուռն ալ կը ճանչնար թէ ինչպիսի ոյժ մը կար իրեն դրացի բարձունքներու մէջ եւ շահիլ կ'ուզէր զայն՝ իբր առաջին

[1] Օրբէլեան, Սիսական. Ինճիճեան Հնախօս. Բ. էջ 127, 128, 373. — Գ. 87–88, 247:

քայլ մը Հայաստանը նուաճելու, եւ հաւանաբար այս էր գլխաւոր պատճառը՝ որ գահանամակներու մէջ միշտ բարձր տեղ մը գրաւեցին Սիւնիք։ Բայց ասոնք ոչ կը հրապուրուէին, ոչ ալ Հայաստանը տալու կը միտէին. իրենք կ՚ուզէին թագաւորել։ Վասակի ջանքն ալ այս եղաւ իր բոլոր խանդակաթ պարսկասիրութեան մէջ։

Սիւնեաց դիրքը Բիւզանդիոնէն ալ գնահատուած էր. միշտ մասնաւոր համակրութիւն մը կար Պալատին մէջ դէպ ի այս նախարարութիւնը։ Հնարամիտ Սիւնիք ասկէ ալ օգտուեցան՝ առանց բռնուելու հոռոմներու քաղաքական ցանցէն։ Սիւնիք Բիւզանդիոն կը նայէին ընդհանրապէս այն ատեն, երբ անբաւականութիւն մը կը զգան, դժգոհութիւն մը կ՚ուզեն արտայայտել Դրան։ Բիւզանդիոն՝ խնդամիտ կը դիտէր այսպիսի վայրկեաններն եւ փայլուն պատուով կ՚ընդունէր պարսիկ բաժնին դժգոհները՝ մանաւանդ Սիւնեաց դժգոհները։ Պալատին այս ընթացքն իրապէս չէր համապատասխաներ այն քաղաքականութեան, որով նա կ՚ուզէր որսալ իր դուռը զարնողները՝ տկարացընելու համար Պարսից ոյժը. որովհետեւ Սիւնիք՝ կայսրութեան կ՚ապաստանէին միայն իրենց շահուն համար. Բիւզանդիոնի հովանաւորութիւնը կը գործածէին ճիշդ այն նպատակին, որով Շահին զգալի ընել կու տային իրենց տեղը կամ ընդհակառակը հաշտուելու միջոցներ կ՚որոնէին. ասի ստոյգ պատրանք մ՚էր կայսեր ծրագիրներուն։

Քանի մը նշանաւոր դէպքեր բաւական են ցուցընելու Սիւնեաց ուղղութիւնը.

Սիւնեաց նահապետն “իմաստունն„ Անդովկ (Բուզ. Գ. իա), Մամիկոնեանց փեսան (անդ. ժա), երբ ստիպուեցաւ ընդհարիլ “իմաստունն„ Շապուհի հետ (Բուզ. Գ. ի.), Մեծն Թէոդոսի կ՚ապաստանի, անշուշտ Թէոդոս՝ զօրաւոր Տուն մ՚իր կողմ շահելու համար էր որ բարձր աստիճաններու հասուց

Անդովկը՝ իբր Պատրկաց պատրիկ։ Արդ՝ Անդովկ ծանր շարժառիթով մը[1] կը դիմէ "յաշխարհ Հոռոմոց„ եւ միայն իւր կեանքն ազատելու համար, առանց ուեւէ քաղաքական դիտումի։ Անդովկ Շապուհի արքունիքն աւերելէ յետոյ, նախ իւր երկիրը կը քաշուի ու կ'ամրանայ Բաղաբերդի մէջ։ Արեաց գունդերը սարսափելի կոտորած մը կը կրեն. Շապուհ անձամբ կը հրամայէ բանակին եւ երբ պարսիկներ կ'որոշեն "շուրջ զամրոցաւն աւերել„, քանդել Բաղաբերդի հիմերը, Անդովկ այն ատեն միայն՝ ճարահատ՝ միջոց կը գտնէ փախչելու։ Շապուհի համար խիստ ծանր էր այս հարուածը. այնպէս որ երբ նա վերադարձաւ ի Տիզբոն՝ հնոցի մոխրով լեցուն պղնձի սանդ մը դրաւ իր դարպասը, իբր յուշարար իւր անմոռաց վրէժին. "եւ որ գայրն ի տեղին յայն՝ կոփէր ի նմա եւ ասէր. "Սիւնեաց տէրութիւնն ընդ այս ժամուս է կոյր լեալ, եւ կեանք եւ խորհուրդ„։ Քառն հինգ տարի կոփեցին այս սանդը.

---

[1] Այս շարժառիթը թէեւ բոլորովին տարբեր կերպով կ'աւանդեն պատմիչք, բայց ամէն պարագայի մէջ Տիրոնի դէմ ներքին ատելութիւն մը կ'արտայայտեն։ Բուզանդի պատմածին համեմատ՝ Անդովկ իւր դուստր Փառանձեմի, որ թագուհին էր Արշակի, պատիւն անարգել չտալու նախանձախնդրութեամբ կ'աշխատի որ Արշակի երկրորդ ամուսնութիւնը չյաջողի Շապուհի աղջկան հետ։ Անդովկ կը յաջողի Արշակն ուծացընել Շապուհէն (Բուզ. Դ. Ի). Շապուհ կը հասկնայ խնդիրն եւ յետոյ իւր վրէժը կը լուծէ անարգ միջոցներով եւ ջարդել տալով Սիւնեաց իշխանութեան արու սերունդը (անդ. Դ. ԾԵ. ԾԸ). — իսկ միւս պատմիչներուն համար բարձի դահի խնդիր մ'է այս։ Անդովկ կը վիրաւորուի արքայական խրախճանքի միջոցին բարձերու քննութենէն, որով ՃԴՐԴ բարձն ցուցին Սիւնեաց իշխանին. սա խոժոռեցաւ եւ "ոչինչ ճաշակեաց յայնմ ուրախարար արքունական ընդունելութենէն„։ Շապուհ իմացաւ Անդովկի սրտնեղութիւնը, փոյթ չըրաւ. բայց Անդովկ անփոյթ չմնաց (Մ. Կղնկատ. Բ. Ա. — Օրբել. Ա. Թ.)։

եւ այն միջոցին քար ու քանդ մնաց «աշխարհն ցանկալին Սիւնեաց». ոչ ոք կը համարձակէր «զաւնուն Սիւնեաց առնել»։ Այս վատթար կացութիւնը սակայն Սիւնեաց մէջ սահմանափակուեցաւ. Հայաստան վնասուեցաւ մեծապէս։

Անտարակոյս այս վիճակին մէջ կ'ենթադրուի որ Սիւնիք կապուէին Պալատին հետ՝ քանի որ արդէն Անդովկ «Պատրկաց պատրիկ» եղած էր եւ իր որդին Բաբիկ «մեծամեծ ունէր պատիւ» Թէոդոսէն (Օրբէլ. Ա. Ժ), քանի որ սանդին կոփիւնները դեռ կը զայրացնէին Շապուհի վրէժը, եւ միայնակ Բաբիկ մը կար՝ իբր տէր Սիւնեաց աւերակներուն։ Սակայն լաւն Բաբիկ, որ «ոչ հանդուրժէր արտաքոյ ընիկ տէրութեան իւրոյ», ծպտած շունչ կ'առնու ի Պարսկաստան. կը խոնարհի նոյն իսկ Շահի զօրականներէն մէկուն քով պաշտակ ըլլալ եւ իր զարմանալի քաջութիւններով դրանիկներուն հիացումը կը գրաւէ եւ վերջապէս մենամարտի մը մէջ տապալելով Շապուհի թշնամին «անհնարին հսկայն Հոնագուրը»՝ կը յաջողի վերցնել տալ մոխրալից սանդը, չարաշուք խորհրդանշանը Սիւնեաց բախտին։ Բաբիկով կը հաստատուի Սիւնեաց բարձն արքունի տաճարին մէջ, «համապատիւ» Բագրատունեաց եւ Մամիկոնեանց (Օրբէլ.)։

Սիւնեաց յարաբերութիւնը Բիւզանդիոնի հետ մինչեւ Բաբիկ Ա. (379 – 400) ըստ ինքեան չունի այն սերտ երեւոյթը, որ բոլորովին բնական է Տիզբոնի հետ. եւ ճիշդ այս վիճակին մէջ կը գտնենք Սիւնեաց նախարարութիւնը Երդ դարուն մէջ, որուն Տէրն է Վասակ Ա. (412—452)։

Վասակ, ինչպէս պիտի տեսնենք, ոչ Բիւզանդիոնի կը միտի, ոչ ալ Տիզբոնի. նա լաւ կը պահէ իր յարաբերութիւնը Դրան հետ. կը գործակցի անոր շարժումներուն՝ հայկական թագը յափշտակելու համար։ Այս միտումը բոլորովին

տարբեր բան մ՚է, իւր երկրին եւ իւր դիրքին ներշնչումը, որուն զոհեց Վասակ իւր իշխանութեան ներքին անդորրութիւնն ու ինքզինքը։

Բաբիկէն մինչեւ իւր որդին՝ Վասակ՝ Սիւնիք լուսաւորութեան շաւղին մէջ էին. շինութիւն մէկ կողմէն, գրական զարգացում միւս կողմէն աւելի մեծ փառք մը կը պատրաստէին Վասակին. իւր հօրեղբայրը Վաղինակ Բ (401—410) ներքին բարգաւաճումի կը նուիրէ ինքզինքը, եւ այն միջոցին է որ անմահն Մեսրոպ իւր նորագիւտ նշանագիրներն "ի Սիսական աշխարհն„ եւս հաստատելու համար հոն կ՚երթայ եւ մեծ օգնութիւն կը գտնէ Վաղինակէն, անարգել կը պարապի Սիւնեաց առաքելութեամբ, եկեղեցական եւ վանական կարգադրութեամբ եւ դպրոցներու հաստատութեամբ (Կորիւն էջ 14. — Խոր. Գ. խէ)։

## ԳԼՈՒԽ Գ.

## ՎԱՍԱԿ[1]

*"Զի յայլ ժամս իմաստուն էիր, եւ ես գիտէի. զայս գործ իմաստութեան ոչ գործեցեր„*

Եղիշէ էջ 47.

Վասակ հայ պատմութեան ամենէն փառաւոր ժամանակամիջոցին նշանաւոր դէմքերէն է. այսինքն՝ այն ժամանակին, ուր կ՚եռար հայ-

---

1 Վասակի պաշտօնական գործողութիւններն աւելի ծանօթ են քան իւր կեանքը՝ կենսագրականը։ Բաւական ծեր կը թուի նա Վարդանանց պատերազմի ժամանակ, գրեթէ 68 տարեկան ծեր մը։ Ահա այս հաշուին ժամանակագրական հիմերը։

ա. "Բաբիկ առեալ զտէրութիւն Սիւնեաց ի վաթսներորդ ութերորդ ամի Շապհոյ՝ պարսից արքայի, եւ վարեալ զիշխանութիւնն ամս 21, փոխի յաստեացս„ (Օրբել. Ա. ժգ)։ Արդ՝ Շապուհ Բ.ի թագաւորութեան

կական վերածնութիւնը — Ներուի մէջ մասնաւոր առումով մը գործածել այս բառը — գրական խանդավառ շարժումով մը. իբր հակապատկեր

---

ակիզբն է 309. Բաբիկ տէր կ'ըլլայ իր երկրին՝ 309+68=377, եւ կը վախճանի 21 տարի յետոյ՝ 398: Վաղակ, ըստ Օրբէլեանի, ծնաւ 377—398 քսան մէկ տարիներուն մէջ. որովհետեւ Բաբիկ՝ «յետ առնլոյ զնահանգն թագաւորութեանն Սիւնեաց, եւ շինելոյ զամենայն աւերեալ գաւառն կրկնապատիկ քան զառաջինն, որպէս ասացաք ի Վաղակ անուն, եւ ի զարգանալ հասակին ընծայեցուցանէ զնա ի դրան արքունի Վռամայ՝ Պարսից արքայի» (նոյն անդ): Շապուհի բրած աւերը (տես վերեւ էջ 251—253) Սիւնեաց երկրին մէջ կրկնապատիկ քան զառաջինն շինելու համար՝ առնուազն 10 տարի պէտք է միջոց տալ Բաբիկին, այսինքն՝ մինչեւ 387, որ է Վաղակի ծննդեան տարին: Ի զարգանալ հասակին գուռը կ'ընծայուի (իբր պատանդ?). առնուազն 10 տարեկան պէտք էր ըլլալ Վաղակ այն ատեն. այսինքն՝ 397ին կը ղրկուի Տիզբոն՝ Վռամ-Կրման Շահին Դ. (388—399): Արդ՝ Բաբիկի մահուան ժամանակ (398) դեռ Վաղակ Դուռն էր. եւ «Սամ Գնթունի՝ Սենեկապետն նորին, գնայ ի դուռն արքայի, եւ ծանուցանէ զբօթ վախճանին. սակս որոյ տրտմեալ Վռամայ եւ ողբերգեալ ի վերայ մանկանն որ ի դրանն կայր, խորհէր ընդ [illegible] ի յետս Վռամայ. եւ առաքել զնա յաշխարհն իւր (Օրբէլ. Նոյն անդ): Վռամ Կրման շատ գթասիրտ թագաւոր մ'էր եւ քրիստոնեաներու բարեկամը, այնպէս որ նախարարները նեաահար սպաննեցին զանի՝ իբր չքաջալերող իւր նախնեաց ուղղութիւնը (Արարատ ամսագիր Թ. Հոկտեմբեր 1895 թ. էջ 385). Սա կը ցաւի Բաբիկի պէս շինարար եւ քաջ նախարարի մը մահուան վրայ եւ կ'ուզէ Սիւնեաց իշխանութիւնը տալ մանկանն՝ Սամ Գնթունւոյ խնամակալութեամբ. առ պարագան կը ցուցնէ որ Վաղակ յիրաւի մանուկ մ'էր այն ատեն 11 կամ 12 տարեկան: Բայց Մանկանն Վռամ իւր Կրման Շահի այդ բարի տրամադրութեան դէմ բրած «ցուրտ եւ [illegible]» պատասխանին համար, թէեւ ճշմարիտ՝ բայց մանկական պատասխան մը, մնաց Դուռը, մինչեւ որ տարի մը Սամ Գնթունի եւ 9 տարի ալ Վաղինակ՝ Վաղակին հօրեղբայրը՝ Սիւնեաց իշխանութիւնը

քաղաքական աշխարհի թոյլ շարժումին. որուն զսպանակը կը խորտակուէր նախարարներու քմահաճոյքին տակ, հակառակ Մեծն Սահակի գործ-

---

վարեցին. այսպէս կը հանինք 410ին։ Վռամ Կրման մեռած էր այն ատեն եւ Յազկերտ Ա. էր գահակալողը (399–420). այս միջոցին է որ "Վասակ որդի Բաբկայ, առնու ի Վռամ-Շապհոյ զտէրութիւն իւր, եւ վարէ ամս 39" (Օրբել. անդ)։ Վասակ ինքն թագաւորի մը ձեռքով կը տիրանայ իւր երկրին. հետեւաբար այդ միջոցին Տիզբոնէն վերադարձած պէտք էր ըլլալ։ Հաւանական է որ Յազկերտ Ա. իւր գահակալութեան առթիւ անմիջապէս արձակած ըլլայ Վասակը, կամ նոյն իսկ Վռամ-Շապուհի միջնորդութեամբ կ'արձակուի եւ անոր ձեռքով կը տիրանայ։ Վռամշապուհ թագաւորեց ըստ Գաթրճեանի 391 կամ 392–414 (Պտմ. Տիզ. Բ. էջ 522)։

Վասակ 451ին զրկուեցաւ թէ՛ հայոց մարզպանութենէ, թէ՛ Սիւնեաց իշխանութենէ. Մարզպանութիւնը յանձնուեցաւ Ատրորմիզդ Արշակունին եւ Սիւնեաց իշխանութիւնը Վարազվաղան Սեպուհին (Փրպ. էջ 221 եւ 253. Եղիշէ էջ 100)։ Ըստ Օրբելեանի 39ը հանելով 451էն կ'ունենանք 412 իբր սկիզբն Վասակի Սիւնեաց իշխանութեան. բայց, ինչպէս տեսանք, անկարելի է 410էն յետոյ դնել. 2 տարուան բացը լեցընելու համար պէտք է Վասակի իշխանութեան միջոցը գէթ 42 տարի ընդարձակել. որովհետեւ Օրբելեանի թիւերը՝ սասանեան թագաւորներու գահակալութեան ժամանակամիջոցներուն հետ կապուած՝ աւելի ճիշդ են։ 410ին Վասակ անպատճառ սկսած էր տիրել Սիւնեաց վրայ։

բ. Հայ նշանագրերու գիւտէն յետոյ՝ Մեսրոպ Աղուանից նշանագրերու գիւտին ալ կ'աշխատէր. հոն իւր մօտ կանչեց "զԲենիամին ոմն շնորհաւոր թարգման, զոր անդանդաղ առաքեաց մանաւանդ Վասակ Սիւնեաց տէր ի ձեռն Անանիայի եպիսկոպոսին իւրոյ" (Խոր. Գ. ծդ)։ Հայ նշանագրերու գիւտը եղաւ 404ին. Մեսրոպ հազիւ 410ին կրնար Վրաց եւ Աղուանից սահմաններն անցնիլ։ Եւ Վասակ այն ատեն դեռ 22 կամ 23 տարեկան երիտասարդ իշխան մը՝ կը նպաստէ Մեսրոպին։ Անհնար է ասկէ աւելի

վալից պաշտպանութեան, որ իբր Հայր վերծանութեան եւ իբր իսկատիպ Հայրենասէր՝ պահել կը ջանար Արշակունի թագը՝ դէմ դիմաց գրչի տիրապետութեան հետ։ Եւ ըստ վկայութեան Կորիւնի

---

փոքր տարիք մ'ենթադրել Վասակի համար՝ մանուկ բայարութեան հանդէպ (Հմմտ. Պտմ. Ցեղ. Բ. էջ 529)։

Վասակի կեանքին ամենէն անվիճելի թուականն է մարզպանութենէն զրկուիլը՝ 451ին վերջերը։ 452ին բանտուած է դեռ (Փրպ., էջ 255)։ Հարկաւ քանի մը տարի ապրեցաւ, դէթ մինչեւ 454 կամ 455 եւ հոն մեռաւ (նոյն անդ). 67 կամ 68 տարեկան՝ 387—455։

Վասակի մարզպանութեան տարին շատ որոշ չէ։ Չամչեան (Բ. էջ 14) կապած է զայն Յազկերտի (Բ) առաջին հրովարտակի հրատարակութեան հետ, 442. իւր Թագաւորութեան չորրորդ տարին. որով իբր թէ Վեհմիհրշապուհ՝ Հայոց առաջին մարզպանը՝ ետ կը կոչուի եւ Վասակ կը հաստատուի անոր տեղ։ Ս'չ Փարպեցու, ոչ Եղիշէի մէջ այդպիսի հիմ կայ։ Խորենացին Վեհմիհրշապուհի մարզպանութեան սկիզբը միայն կը յիշատակէ (Գ. Դ). այս եղաւ 428ին։ — Աւելի հաւանական կը թուի Յազկերտի գահակալութեան հետ կապել Վասակի մարզպանութեան սկիզբը՝ 438 Օգոստ.։ Վասակ՝ Հայոց մարզպան ըլլալէ յառաջ մարզպան էր Վրաց (Փրպ. էջ 247. Եղիշէ էջ 105), եւ Յազկերտ իւր գահակալութեան առթիւ բարեկարգութիւն մ'ընելու դիտումով կրնայ Վասակը Հայաստան փոխադրած ըլլալ՝ իբր Հայ մարզպան մը. կամ թէ նոյն ինքն Վասակ՝ այս առիթէն օգտուելով կրնայ ձեռք բերած ըլլալ Հայոց մարզպանութիւնը։ Ասկէ զատ Հոնաց պատերազմի մը ժամանակ, — զոր կարելի է նոյնացընել Վռամ Ե.էն մղուած Հեփթաղներու պատերազմին հետ, որ տեղի ունեցաւ Յազկերտի (Բ) առաջին տարիներու մէջ. — «Եւ Վասակ մարզպան էր Հայոց ի ժամանակին եւ թշնամեացն արտաքնոյ խորհրդակից գտաւ» (Եղիշէ, էջ 104)։ Այն պատերազմին հաշտութիւնը կնքուեցաւ 442ին (Հմմտ. Պտմ. Ցեղ. Բ. էջ 399. — Արարատ ամսագիր Ժ. Հոկտեմբեր 1895 Թ. էջ 388)։ Հետեւաբար Չամչեանի նշանակած թուականին՝ Վասակ մարզպան եղած էր արդէն իր 50 կամ 51 տարեկան հասակին։

եւ Խորենացու Մանուկն Վասակ նպաստած է վերածնութեան գործին՝ Մեծն Սահակի աշխատութեան՝ գէթ իւր սեփական աշխարհին մէջ անդանդաղ քաջալերելով գրականութիւնն ու անոր գործիչները՝ իբր շարունակող իւր հօրեղբօր Վաղինակի գործերուն։

Կորիւն այս քաջ Սիւականին ցուցած «Նպաստաւորութեան» մանրամասն յիշատակութիւնը չէ ըրած. բայց անոր իշխանութիւնը մատնանիշ կ՚ընէ իբր աստուածային պարգեւ մը. եւ Կորիւն՝ գրական վարդապետ մը՝ իւր յուզումներուն բոլոր թարմութեամբ՝ յատուկ փոյթ եւ հիացում մը կ՚արտայայտէ՝ ցոլացընելով Սիւնեաց իշխանը չքնաղ շրջանակի մը մէջէն. — «Յորում ժամանակի աջողեցելոյ Աստուծոյ, հասանէր ի գլուխ իշխանութեան Սիւնեաց՝ Սիսականն Վասակ, այր խորհրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց, շնորհաւորեալ իմաստութեամբն Աստուծոյ։ Բազում էին նպաստաւորքն ցուցանէր աւետարանագործ վարդապետութեան, իբրեւ որդւոյ առ հայր՝ հպատակութիւն ցուցեալ, եւ ծառայեալ ըստ Աւետարանին վայելչութեան

---

Վասակ ըստ Օրբելեանի երկու ուստր եւ մէկ դուստր ունեցած է. ահա իւր ազգատոհմը.



— մինչ ի վախճան ընրամայեալն է գործ բերէր. (Կորիւն, էջ 15)։

Այսչափ բարձր կարողութեան տէր անձ մը, բնական էր որ բարձր գործերու ալ հեղինակ, պաշտպան ըլլար. ցաւալի է որ Կորիւն “բազում ինչ նպաստութիւն„ը չէ ուզած որոշ գծերով կարկառուն ընել. սակայն նկատելով Վասակի իշխանութեան հանելու եղեռական պարագան, կարծեմ, չենք սխալիր՝ երբ ըսենք թէ Վասակ իր հօրեղբօր տեղն զգալի ընել չտալու դիտումն ունեցած ըլլայ իր “նպաստութեան„ մէջ. որովհետեւ գէթ Վաղինակի նկատմամբ, որ Սիւնեաց մէջ առաջին սատարն եղաւ Մեսրոպին, չի գործածեր մին այն բառերէն, որոնք Մանուկն Վասակի կարողութիւնը կը բացատրեն։ Եւ Վաղինակ Վասակէն նուազ կարող անձ մը չի ներկայանար դիտողի մը՝ այդ քաջալերուած գործին մէջ։ Դժբախտաբար Վասակի բովանդակ պատմութեան մէջ այս է միայն իր ամենէն փայլուն, ամենէն հաճակրելի եւ ամենուն հասկնալի ձեռնարկն, որ սակայն, անհամեմատելի կերպով կը նսեմանայ եւ ուշադրութիւն իսկ չի գրաւեր այն պատկերներու մէջ, զոր գծելու համար կարծես գոյն երանգ չեն գտներ Ղազար եւ Եղիշէ՝ մեր ամենէն լաւ նկարագրող պատմագիրները։ Վասն զի նկարագիրներու այս հոկապատկերները այնքան անհամեմատելի են, որ Հ. Ալիշան կ՚երկբայի Կորիւնի պատմածին վրայ (Սիսական, էջ 11)։

Չենք գիտեր թէ Վասակ ինչո՞ւ իր հօրեղբայրը պատուանդան մ՚ըրաւ արիւնոտ՝ անոր գահը նստելու համար։ Սիւնեաց բովանդակ մեծութեանց մօտ մեծ դաւաճանութիւններ, նախճիրներ ալ կը քստմնին (Օրբել. — Եղիշէ, էջ 103). եւ Վասակ՝ իր երկրին Լուսաւորութեան նպաստող մ՚ըլլալէ յառաջ ոճրագործ մ՚է, որչափ ալ այդպիսի բանագործութիւններ ժամանակին տիրող բարքերը նկատուին՝ մանաւանդ նախարարական գործերու

*մէջ։ Գրեթէ այսպիսի մեծագործութեամբ յառաջացաւ նա եթէ ոչ իր Սիւնեաց իշխանութեան 39 տարիներուն մէջ՝ գոնէ իր մարզպանութեան 10 տարուան ամբողջ ընթացքին մէջ։*

*Վասակի մարզպանութենէ յառաջ ապրած կեանքը շատ մութ չէ։ Նա մանուկ մ՚է, այսինքն՝ շատ երիտասարդ. երբ Սիւնեաց Տէրութեան կը հասնի, եռանդոտ, արիւնալի, ննեգամիտ երիտասարդ մը, որ կ՚ուտէ ինքզինք եւ ազատօրէն գործելու նպատակին համար ամէն միջոց կը գործէ. ասոր կ՚ակնարկեն նոյն իսկ իր ազգականներուն կրկին գանգատները. — "զի ոչ երբեք արդարութեամբ վարուեալ էր ի մանկութենէ" (Եղիշէ էջ 104 - 105)։*

*Պէտք է սակայն դիտել որ Վարդանանց Պատմագիրները, մանաւանդ Եղիշէ, քիչ մ՚աւելի սեւի կը թաթխեն իրենց վրձինը՝ երբ Վասակին է նկարելու դէմքը։ Պատմական անձի մը գնահատութեան մէջ ծանրակշիռ պարագայ մ՚է այս, որուն՝ պատմագիրը մտադիր կ՚ըլլայ արդէն ընթերցողը։ Եղիշէի դիտումն է իր պատմածներուն ամբողջ ընթացքին մէջ "կշտամբումն" (Եղիշէ, էջ 109), զոր պէտք է տարածել ոչ միայն Վասակի վրայ, այլ նաեւ անոնց վրայ, որոնք նոյն իսկ փոքր ինչ գայթած են պատմագրուած դէպքերու մէջ. այսու հանդերձ Վասակի մասին չափազանցութիւնները շատ քիչ են եւ ակներեւ, այսինքն՝ իբր նկարագրութիւն մանաւանդ երբ բաղդատուին Փարպեցւոյ կշտամբումներուն հետ. Փարպեցի, որ իբր Պատմագիր աւելի բարձր է քան Եղիշէ, եւ որուն պատմածները, գէթ այս նկատմամբ, որչափ ճիշդ, այնչափ մեղմ բնութիւն մ՚ունին։ Ասկէ զատ Սիւնեաց Պատմիչն Ստ. Օրբէլեան, որ ընդհանրապէս հիացումով կը խօսի իր երկրին անցեալ եւ ժամանակակից դէմքերուն եւ դէպքերուն վրայ, շատ ճիշդ կը դատէ Վասակը եւ երբեք ծայր մը չէ գտած*

գանի արդարացնելու։ Եւ անշուշտ ծանօթ ըլլալով նոյն իսկ Կորիւնի նշանաւոր հատուածին, իբր “Չոր եւ չոր մորթ մնաց է„ կը դատապարտէ “հանճարեղ„ սխալանը այն “ցուրտ եւ ապաշնորհ„ պատասխանին առթիւ, — “եթէ զի՞ս առնէ տէր, մինչ բնական իմ հարցն է ժառանգութիւն Սիւնեաց„ —, զոր տուաւ իւր հօր սենեկապան Սամ Գնթունիին, երբ սա Սիւնեաց Տէրութեան Վասակի անցումը կ'աւետէր Շահին կողմանէ։ Շահը կը խոժոռի եւ նոյն Սամը կը կարգէ “Տէր Սիւնեաց„․ հազիւ տարի մը կեցաւ Սամ, մոլեխինդով վերջ տրուեցաւ անոր կեանքին․ անտարակոյս Վասակն էր դաւաճանը։ Զհասաւ իւրնպատակին․ իւր հօրեղբայրն Վաղինակ եղաւ Տէր Սիւնեաց, որու կեանքին ալ դաւաճանեց, ինչպէս բսինք վերեւ (Օրբել Ա․ ժդ)։

Կ'երեւայ թէ Վասակ որչափ ալ ապօրէն միջոցներով տիրացած ըլլայ Սիւնեաց իշխանութեան, իւր գործունէութեամբ հրապուրած է Դուռը․ գործունէութիւն մը, որ միմիայն Դուռը շլացնելու կը ծառայէր եւ բստ ինքեան ննդամտութիւն մ'էր այն։ Եւ այս նենգութեան մէջ էր իւր անձնական զանձին շահը (Եղիշէ, էջ 104) եւ Հայոց աշխարհին վնասը, որ հարուստ էր անհունապէս, որուն պարսիկներն ալ կը զարմանային (Եղիշէ, էջ 19․ հմմտ․ Փրպ․ էջ 416), եւ Վասակ միամեայ ժամանակամիջոցի մէջ կեղեքած էր զայն (Եղ․ էջ 105)։ Քայքայուած երկրի մ'ապագան միշտ հզօր անհատականութիւններու կը ժպտի։ Վասակ փարած էր այս ապագային իւր էութեամբը։ Այս նպատակին մէջ սակայն՝ ինչ ալ եղած ըլլար իւր գործունէութեան եղանակը մինչեւ իւր վճռական ամբաստանութիւնը, դեռ Մոգպետը գովելով կ'ըսէր երեսն ի վեր՝ թէ “յայլ ժամս իմաստուն էիր, եւ ես գիտէի․ զայս՝ գործ իմաստութեան ոչ գործեցեր„․ այսինքն՝ այն գործը, որուն համար միացած էին

Եկեղեցւոյ ամբողջ "ուխտ„ը, բաւական զօրաւոր նախարարներով, եւ միայն Վասակ գլուխ կը քաշէր իւրայիններով։

Եղիշէի՝ Մոգպետին բերանը դրած երկար ճառը (Եղիշէ, էջ 45 — 47) մերկացընելով Պատմագրին փայլուն դրուագէն, բունը ճշգրտիւ ի վեր կը հանէ Վասակի առաջին սխալը Վարդանանց շարժումին մէջ։ Անգղի դիմադրութեան առաջին փորձին հանդէպ Մոգպետին խորհրդածութիւնները, աւելի գուրգուրանք մը կը ցուցընեն Հայոց աշխարհին վրայ քան վրէժ մը, եւ այս իրենց շահերուն համար։ Եւ անդէպ չէ ենթադրել, թէ Դուռն իսկ մոգպետի պէս կը խորհէր։ Շապուհի հալածանքներուն արհաւիրքը դեռ կը տիրէր անշուշտ Յազկերտի անյաջող ծրագիրներու փլատակներուն վրայ. ժողովուրդն զգալի կերպով նուաղած եւ նուազած էր թէ՛ գաղթով թէ՛ ջարդով եւ այս էր Դրան վախցած կէտը։ Դուռն այս կորուստին դարման մը տանելու համար բազմակնութիւնը հաստատել կ'ուզէր Հայաստանի մէջ՝ իր դենին հետ միասին (Եղիշէ, էջ 21, 35)։ Յազկերտի հալածանքին սկզբնաւորութեան մէջ իսկ նոյն դիտումը կը շեշտուէր. — "Քանզի մարդ է աշխարհս, զօրացէ յորժամ բազմանայ մարդիկն, երկնաւոր ցրուեալ կափնեցցին յօժարութեան. իսկ յորժամ աշխարհս նուազ լիցի մարդկանէս, յայնժամ եւ տեղ գերեալին մեծացեալ բազմանայ յարգանաւոր„։ Այս պայմաններու տակ Պարսիկը ոչ թէ բռնութեամբ եւ առաջին պատեհութեամբ կ'ուզէր մոգացընել Հայաստանը, այլ ինչպէս կը ծրագրէ մոգպետը, "ի կամս մարդկան ապաստան արասցեն, զի առ սակաւ ընդելցին ընդ օրէնս մոգութեանս„. սիրով թող վարժուին Պարսիկ կեշտին, ասոր համար ամէն զիջում կ'ընէին, միայն թէ Հայք չելլէին իրենց "ծառայութենէն„ (Եղիշէ, էջ 47, 64 – 65, 101 — 102)։

Բայց Վասակ՝ Անգղի անյաջողութեան պատճառը շատ լաւ գիտնալով հանդերձ՝ «[illegible]» կը վերագրէ զայն, կը խարէ Մոգպետը եւ շահաւոր անոր բարեկամական խորհուրդներուն. ընդհակառակը՝ վստահ իւր նենգամիտ խարդաւանքին՝ կը յորդորէ զանի համբերել «մինչեւ ես ինձ ույժ ժողովեցից զօր ի թիկունս անձինս, եւ զուխտ եկեղեցւոյդ թերեւս կարացից երկփեղկել» (Եղիշէ, էջ 48, 71)։ — Վասակ իւր մտքին մէջ կազմած է գործելու ծրագիրը, որուն կարեւորագոյն մէկ կէտին գործադրութեան, այսինքն՝ Հայոց Աղուանից մէջ գտնուած այրուձիուն (10.000) հրամանատարութիւնը ձեռք ձգելու համար նոյն ինքն Մոգպետին միջնորդութիւնը կը խնդրէ (Եղիշէ էջ 48) եւ ինքն միւս կողմէ կը սկսի ույժ կազմելու՝ ամէն դասակարգը իւր տկարութեան մէջ ընկճելով — կարասի (ինչք), ողջքին խօսք, սպառնալիք ռամիկը սրտաթափ ընելու, գիներբուք, լկտի կաքաւներ, ցոյցապաշտօն խրախճանք, երգ՝ ամէնն ալ հեթանոսական սովորոյթներով, որոնք աւելի անոնց ախորժելի էին, որ Սիւնեաց թաքուն անկիւններու մէջ դեռ հաւատարիմ կը մնային հեթանոսական բարքերու. եւ որովհետեւ ինքն Վասակ «[illegible]» փարած էր «[illegible]», իւր մտքին բոլոր գործունէութիւնը մէջտեղ թափեց — «Մարտեաւ [illegible] ընդ իմաստունս, եւ [illegible] ընդ գիտունս, [illegible] ընդ անմեղս, եւ ի [illegible] ընդ խորհրդականս. ձեռն էարկ եւ եհան զբազումս ի գնդէն Քրիստոսի եւ խառնեաց ի գունդս դիւաց։ [illegible]»[1]։

---

¹ Փրպ. էջ 195, 198. Եղիշէ էջ 57, 71, 72. — Եղիշէի այս տողերը կարծես Կորիւնի մտանանիշ ըրած

Այսպիսի յանդուգն եւ արագ գործերու շլացումով այնչափ ափշեցուց նա Մոգպետին միտքը, որ "չէր նմա իմանալ զեւր իրոցն", եւ պարսիկ կէշտին բոլոր պիղծ խառնակութիւններով ամէն կողմ ապականեցաւ։ Քրիստոնէութեան այսքան վատ հալածումը բնիկ երկրի մը մէջ, բնիկ իշխանի մը ձեռքով եւ այն ալ եկեղեցիներու, տուներու մէջ, արանց վրայ, կանանց շուրջ (Եղիշէ, էջ 49) Փոքր Ներոնի կամ Դեկոսի մը գազան տիպերը կը մարմնացնեն "վատշուէր" Վասակին յղացումներով։

Ա՛լ դիմանալու բան չէին Վասակի գործերը. եպիսկոպոսունք առանց ժամանակ կորսնցնելու անմիջական վրէժ կը խնդրէին (նոյն անդ). միացան Սպարապետին հետ, եւ իրենց զայրոյթը թափեցին "սերմն ժանտ" Զանգաղանի վրայ, որ ներքին խորհուրդները շուտ շուտ կը հասցնէր "նմանւոյն իւրում Վասակայ" (Եղիշէ, էջ 50. Փրպ. էջ 176)։ Զանգաղանի քարկոծումն Արծակի մէջ, առ հասարակ սարսափ ազդեց բոլոր Բագրեւանդի վրայ։ Նենգամիտն Վասակ "ի հորկէ", Զանգաղանին բախտին չվիճակելու վախով կը միաբանէր Սպարապետին, եւ անոնք, "որոց մատանեաւ չեւ եւս էր կնքեալ զԱւետարան՝ կնքէին" (Եղիշէ, էջ 50—51. Փրպ. 177—181. 227)։ Վասակ անպատճառ զոհ պիտի երթար ուխտապահներու արդար վրէժին, բայց անոնց ամէնէն նուիրական, ամէնէն վճռական գթութեան ապաստանեցաւ. կնքեց Աւետարանը։ Անկեղծ մարդիկ, գիտէին Վասակի խաբէութիւնը, "այլ սուրբ Աւետարանին թողին ի դատապարտութիւն[1]"։

---

կարողութիւններու տարբեր պատկերն է, նոյնքան սեղմ շրջանակի մը վրայ գծուած։

1 Աւետարան ամէն ինչ էր նախնեաց համար. քաջ գիտնալով հանդերձ թշնամիներու դրժումը, երբ անգամ մը լսէին Աւետարան անունը, կը թուլնային. ամէն վտանգ,

Տօթագին օրեր ալ անցան այսչափ տագնապներու հետ, երբ այս նոր ուխտողները՝ Աւետարան կնքողները՝ միահամուռ Արարատ իջան

---

ամէն փորձանք գիտնալով զինուոր կ'ըլլէին։ Այս ամէնը քրիստոնէական այն ծայրագոյն ներողամտութիւնն է, զոր գիտցան նախնիք ցուցընել տագնապոտ վայրկեաններու մէջ ալ։ Աւետարանն էր անոնց դաւանանքը. "Քանզի հայր մեր՝ զսուրբ Աւետարանն գիտեմք, եւ մայր՝ զԱռաքելական Եկեղեցի կաթողիկէ" (Եղիշէ, էջ 51)։ — Նախնեաց այսպիսի ընթացքը քաղաքական տագնապներու մէջ իսկ՝ պէտք չէ պարզամիտ մոլեռանդութիւն մը նկատել։ Քրիստոնէական ըմբռնումի թարմութիւնն է այն, որ մարդը կը մղէր միշտ անկեղծ ըլլալու իր գործողութիւններու մէջ. ժամանակի ամէնէն անկեղծ քրիստոնէական բարքերէն է Աւետարանի երդումը։ Հոգեխօսական վիճակ մ'է այս՝ էն զօրաւոր ազդակով մը։ Ազգերն ու անհատներ իրենց ամէնէն թանկագին եւ ամէնէն նուիրական ստացութիւնները, իրենց պատիւը, գրաւական կը դնեն, նոյն իսկ հանրային գործերու կանոնաւորութիւնը պահպանելու կամ ապահովելու համար։ Աւետարանը նուիրական էր, նոյն իսկ ծանր գործողութիւններու զսպանակ ըլլալու չափ նուիրական։ Դրուժանին հոգեխօսական տագնապը բաւական կը համարուէր իբր պատիժ։ Մեծ նահատակին ոգւով (Լուսաւորիչ) եւ Մեծ Հայրապետին շունչով (Սահակ) սնած մտքեր՝ չէին մոռնար ամէն վայրկեան թէ իրենք Հայ-քրիստոնեաներ են. այս համոզումն իրենց տուաւ յաղթանակը։ Աւետարանը նուիրական էր եւ գործնականապէս կը յարգէին զայն։ — Ամէն ազգ կամ ժողովուրդ իրեն համար երդումի յատուկ ձեւեր ունի։ Հոնք Հայոց հետ դաշնակցեցան երդում ընելով "ըստ կարգի իւրեանց օրինացն" եւ "յանձն առին զերդումն կտակարանացն" (Եղիշէ, էջ 60)։ Հայն Աւետարանի կամ խաչի վրայ կ'երդնու ընդհանրապէս։ "Խաչ որ" երդմնաձեւը դեռ հասարակ բան մ'է նոյն իսկ առանին բարքերու մէջ։ Թուրք դատարաններու մէջ դեռ Աւետարանը տեղ մ'ունի։ — Երդումի յատկացուած Աւետարան մը կայ՝ միշտ նշանաւոր եղած որ եւ իցէ դէպքով մը։ Փարպեցին ուղղակի կը յիշատակէ "Աւետարան տախտին" կամ "Աւետարան երդման" (Փրպ. էջ 167, 168, 169). Նախարարներ երդումի համար

(Փրպ. էջ 182)․ Հոն Աղուանից հազարապետն ու եպիսկոպոսը Հայոց օգնութեան ապաստանած էին. Միհրներսեհ այն տեղ ալ բորբոքած էր վառամական կրակը (Եղիշէ, էջ 53—54)․ Հայք "ուխտակից" էին (Փրպ. էջ 183)։ Վասակ չարաչար գործածեց այս առիթը եւ հազար ու մէկ երդումներով Սպարապետը դաշնակից Աղուաններու օգնութեան փութացուց։ Սպարապետին երթը դիւրացընելու համար անոր առաջարկները յանձն առաւ առանց դժուարութեան (Փրպ. էջ 184), եւ անոր ընկերակից տուաւ այնպիսիները, որոնք հաւան չէին իր "չար մտածութեան" (անդ էջ 186)։ Վասակ՝ Սպարապետը Աղուանք ղրկեց ոչ թէ օգնութեան, այլ մատնելու զանի իր սակաւաձեռն գունդով՝ Միհրներսեհի եւ Սեբուխտի "անթիւ բազմութեան"։ Ըստ Եղիշէի՝ ինքն ալ իբր թէ "ընդ ճապուկ" հոն պիտի անցնէր, բայց մնաց "պատճառանօք" (Փրպ. էջ 183), դարանամուտ եղաւ Սիւնեաց բարձունքներու մէջ եւ այն "յամրածածու- հաւալոցէն" ըրաւ իր մատնութիւնը (Փրպ. էջ 187—189. Եղիշէ էջ 57—58), հակառակ իր Աւետարանի վրայ դրած կնիքին, որուն աշխուժով

---

կը բռնէին այդ Աւետարանը (անդ. Հմմտ. եւ էջ 247. — Եղիշէ. էջ 49 եւ 50)։ Աւետարանի այդչափ գործնական յարգանք մ՚ընծայելու հետքերն դեռ կը մնան գրեթէ քրիստոնեայ հին ազգերու մէջ։ Վասակ չարաչար գործածեց այս միջոցները (խաչ եւ Աւետարան). մինչ նախնիք պատերազմի ժամանակ նիզակներու հաւասար կը բարձրացընէին զանոնք. Palladium մ՚էր այն։ Զեթունցիք այս նպատակին կը ծառայեցընեն դեռ իրենց Վ—ոյէ նշանաւոր Աւետարանը՝ իբր Պ—հ—պ—ն—ի պատերազմի մէջ եւ իբր պատժող սուտ երդումի (Տե՛ս Սէ———ն էջ 187 եւ 189)։ Հայաստանի շատ վանքերու մէջ կամ ուխտատեղիներու մէջ դեռ կան տիտղոսաւոր Աւետարաններ յատուկ գործերու առաջնորդ նկատուած։ (Հմմտ. Բուզ. էջ 126. Փրպ. 171, 181, 198, 364–366, 403–405, 406, 447. — Եղիշէ 71, 72, 95)։

Սպարապետն յաղթանակներ կը կանգնէր Աղուանից մէջ Պարսից ստուար բանակին դէմ եւ Հոները դաշնակից կ'ընէր Հայոց (Փրպ. էջ 190—194. Եղիշէ էջ 59—60)։ Վասակ ալ կը սփռէր իր շահատակութիւններուն սարսափն ասդին՝ անտերունչ Այրարատի մէջ — կործանում՝ արքունի ձմերոցին եւ երկրի ամէնէն ամուր բերդերուն, կողոպտում՝ եկեղեցիներուն, բանտ՝ քահանաներու, թէ Սպարապետի կողմնակիցներուն եւ թէ քահանայից ընտանիքներու վայրավատին փախուստ. Մամիկոնեանց եւ Կամսարականաց զաւակներուն յափշտակութիւն, զորս Սիսականի մէջ պահելէ յետոյ Տիզբոն ղրկեց (Փրպ. էջ 194—197, 223, 229. Եղիշէ 60)։ Ասոնք էին դրուժանին մեծագործութիւնները, որոնք զանխուլ չմնացին Աղուանից յաղթականներէն, որոնց յաջողութիւնն ու անխուս դարձն այնքան սարսափեցուց Վասակը, որ գիշերանց՝ շունչը առաւ Սիւնեաց լեռներու մէջ. “եւ այնպէս տագնապաւ մերժեցաւ, զգերի եւ զաւարն զոր առեալ էր յԱյրարատ գաւառէ, ակամայ զիւրն եւս եթող եւ փախեաւ„։ Վարդանանք իրենց գերուած զաւակները “Ամենահնար Աջոյն„ նուիրելով (Փրպ. էջ 196), պահ մը սովալլուկ, սովատանջ ըրին Մարզպանը իր ամրոցներուն մէջ (Եղիշէ էջ 61)։

Վասակի այս դրժումէն յետոյ ալ երկպառակութիւնն իր վերջնական ձեւն առաւ. Հայք դուրսէն անօգնական մնացին. միայն դաշնակից Հոները չէին հրապուրուած, բոլոր շրջակայ ազգեր թակարդուած էին Վասակով. ուրացած, պէտք է ըսել ք—ն—ղ—ա—փ—ա—ծ երէցները իրեն գործիք ըրաւ Վասակ՝ ռամիկը շլացնելու համար, եւ իր ջուխտակ եղբօրորդիներուն իսկ չխնայեց (Եղիշէ էջ 73—74)։ Այս երկպառակութիւնը կատարեալ հնարքն էին Վասակի օձամիտ, բայց անարի դարձուածներուն, որոնք որչափ ալ շլացուցիչ, որչափ ալ ան-

ակնկալ, խելացի գործ մը չէին, եւ այս ամէնը իբր անհաւատարմութիւն, Վասակի ճարպիկութեան բոլոր դիմակներուն տակ իսկ յայտնի էր աւելի չարամիտ, աւելի դառն ծերին՝ Միհրներսեհի, որ առ երեսս միայն ոյժ կու տար Վասակին, իբր անարգ գործիքի մը. իսկ Յազկերտ բոլորովին դէշ տրամադրուած էր, զոր «անսուտ երդմամբ» յայտարարեց (Եղիշէ էջ 70, 75. — Փրպ. էջ 228)։

Վարդանանց պատերազմին յաղթական նախատօնակ մը կատարած էր քաջն Առանձար՝ երբ Վասակ նորէն կեղծաւոր հնարքներու կը դիմէր խաբելու եւ երկփեղկելու համար ուխտապահներու գունդը, մանաւանդ եկեղեցւոյ ուխտը (Եղիշէ էջ 82)։ Բուն պատերազմի ելքին հանդէպ Պարսից կողմն ափշած էր եօթնպատիկ հարուածով (անդ 92, 96) եւ դեռ Վասակ հնարք կը ցուցնէր իւր «նենգութեամբ». թէեւ ժամանակն անցած էր այլ եւ «ոչ կարէին հաւատալ», բայց փորձ մ՚ալ եղաւ Վասակը շահելու։ Արշէնի ընտանի խօսակցութիւնը, պաղատանքը, գթութեան կոչումն ապարդիւն եղան (անդ էջ 98)։ Քահանայք պաշտօնապէս Դուռն բողոքեցին՝ Վասակը ամբաստանելով (անդ էջ 96)։ Մուշկան Նիւսալաւուրտ, որ պահ մը հետեւեցաւ ուրացեալին (անդ էջ 98), վերջապէս նա ալ բողոքեց՝ բոլոր յանցանքը կուտելով «ի վերայ անօրինին Վասակայ» (Փրպ. 214—215. Եղիշէ 99—100)։ Դուռը շատ ճիշդ կշռած էր Մարզպանին ապականիչ ընթացքը, որուն հետքերը մոռցընելու համար՝ Ատրորմիզդ, որ արդէն պաշտօն ունէր Հայաստանի մէջ, Մարզպան կը կարգուէր եւ Վասակ պաշտօնանկ՝ դատի կը կոչուէր. իսկ նոր Մարզպանն ամէն գիւղում եւ [illegible] կը հրատարակէր (Փրպ. 215—216. Եղիշէ 100—103)։

Ժամանակակից պատմութեան այս իրողութիւնները, որոնք Վասակի բոլոր քաղաքական

կեանքը կը կազմեն, շատ լուրջ, շատ հանդարտ եւ բազմակողմանի կերպով քննուեցաւ Պարսիկ ատեանի մէջ։ Դատավարական գործողութիւնն երկարեցաւ "զբաղում աւուրս" (Եղիշէ, էջ 103), եւ "պարտաւորեցաւ կողմ ուրացելոցն", որոնց վարիչը Վասակ՝ մահապարտ հռչակուեցաւ. պայիկներ զանի մերկացուցին, առին "ի նմանէ զզարդարանս պատուոյ Տէրութեանն զոր ունէր յարքունուստ" եւ արեւելեան խայտառակութեամբ փոխանակեցին անոր բոլոր պերճանքը։ Վասակ՝ իր նենգամիտ արարքներուն պատրանքը գնդանին մէջ լուծեց. նա հոն տեսաւ իր ծրագիրներուն ելքը. իր թաթերով ծեծեց գլուխը (Փրպ. էջ 243—255)։

Ասով չի լմննար սակայն Վասակի նկատմամբ յուզուած խնդիրներուն լուծումը։

Տիւրոնի դատարանը, եթէ ուզէք քննադատութիւնը, դրական եւ շօշափելի փաստերու, այսինքն իրողութիւններու վրայ յենլով՝ չարդարացուց Վասակը իր արարքներուն մէջ. արարք մը՝ զոր իր երկունքին մէջ իսկ Դրան մարդիկ եւ գործին յաջողութեան ամենէն աւելի հոգի տուող միգպետը չհաւնեցաւ իբր անխելք գործ (Եղիշէ էջ 47) եւ Ցազկերտ յիրաւի նկատեց զայն "անհանճար գործ" (անդ էջ 100)։

Վասակի բոլոր ձեռնարկութիւններուն մէջ գրեթէ չկայ իր քաղաքականութիւնն արդարացընելու նպաստող կէտ մը, բայց եթէ քանի մը երկրորդական պարագաներ, զորս պէտք է ի վեր հանել իբր մեղմացուցիչ հանգամանք։

## Ե.

Դուռը կոչուած բոլոր նախարարներ, ինչպէս նաեւ Վիրք եւ Աղուանք, Ցազկերտի ձեռքէն անգամ մ'ազատելու համար, վերջապէս զիջան առ երեսս հաւանիլ անոր առաջարկութիւններուն. բայց Ցազկերտ "հայելով յառաջիկայ իրացն ան-

յայտութիւն» պատանդ պահեց «զըդեշխն Վրաց զԱշուշայ, եւ զերկու որդիս իշխանին Սիւնեաց Վասակայ, զԲաբիկ եւ զԱտրներսեհ» (Փրպ. էջ 159)։ Վասակ՝ իրենց Տիզբոնի մէջ ըրած ուրացումին հակառակ, երբ վերադարձան՝ չուզեց անմիջապէս ուրացութեան աղտը սրբել. «Ջանայր յապաղել նա, մի՛ վասն որդւոցն իւրոց, որք ի դրանն էին, եւ դարձեալ զի եւ կեանքն իւր իսկ ի ձեռս չարին մատնէին հանապազ», բայց բռնադատութեան տակ «ոչ կամաւ» միաբանեցաւ (Փրպ. էջ 177. Օրբլ. Ա. ժէ)։ Պատմագիրը դիտել կու տայ սակայն, թէ արդէն Վարդանանք գիտէին որ Վասակի «ի փրկութեան դարձէն» խորշիլը երկրորդական կարեւորութիւն մ'ունէր (Փրպ. էջ 175)։

Հին քաղաքականութեան մէջ պատանդն ուշադրութիւն իսկ չէր գրաւեր՝ երբ իրական շահ մը կար պատանդ տուող երկրին համար։ Ասկէ զատ՝ հակառակ Փարպեցու մէկ դիտողութեան (էջ 173) շահուելու վիճակին մէջ չէր Հայոց պատանդը։ Նախ, առանց մասնաւոր կէտերու ուշ դնելու, Դրան ընդհանուր շարժումը դիտելով՝ կրնանք ըսել թէ այն միջոցին Դուռը կը զգուշանար ո եւ է խիստ եւ խռովեցիչ եղանակով մը գրգռելէ Հայաստանի պէս երկիր մը. այս պարագային պատանդը յարաբերութիւններն անկասկած ընելու կը ծառայէր։ Երկրորդ, թող որ եթէ զաւկի սէրը անտանելի էր եւ ասոր համար հարկ էր ամէն ինչ զոհել, նոյնը պէտք էր ընէին նաեւ Մամիկոնեանք եւ Կամսարականք եւ ուրիշներ, որոնց զաւակներն ինքն Վասակ Ցազկերտին ղրկեց (Փրպ. էջ 195)։ Վասակ ըրաւ այն դաւաճանութիւնը, որպէս զի կարող ըլլար տիրել անոնց ազգային եւ քրիստոնէական զգացումներուն. բայց Վարդանանք չզգուշացան։ Եւ արդէն ինքն Վարդան «իբրեւ զգարեսէր» կը զբաղէր միեւնոյն խնդրով. նախազգուշութեամբ կ'աշխատէր՝ որ «թէ մի՛ գուցէ դժուար ինչ արանցն ի

*թագաւորէն դիպի եւ մնասիցին„։ Վարդան այս մտազբաղումին մէջ դեռ ուրացեալ մ'էր Տիզբոն գացող բոլոր նախարարներուն հետ, եւ իրենց ուխտին համեմատ՝ Հայաստան վերադառնալէ ան-միջապէս յետոյ պէտք էր յայտարարէին թէ իրենք քրիստոնեայ են. այդ անմիջականը չեղաւ։ Վար-դան նոյն իսկ պահ մը հեռանալ ուզեց վախնալով որ զինքն մինակ կը թողուն. թոյլ չտրուեցաւ. այն ատեն սկսաւ մասնաւոր ճնշում կրել Եկեղեցւոյ կողմէն, որովհետեւ աշխարհ արարատ գայթակ-ղած էր Տիզբոնէն դարձողներուն վրայ եւ Վարդան անոնց գլուխ կը նկատուէր, առանց գիտնալու այն ներքին խորհուրդը, զոր չէին կրնար յայտնել։ Վարդան այս ստիպումին տակ կը նեղուէր. բայց "կամաւ օրհնելոյն տեառն Աստուծոյ համբերէր իրացն. Հա-ճոյով եւ ողջունիւ ընկերացն որդւոց [illegible] եւ ան-ձին. մանաւանդ յաղագս Աշտիշատայ Վարդայ Բդեշխի եւ որդւոց Եղխանին Սիւնեաց Վասակայ, զոր արգելեալ պահեաց անդրէն ի Դրան թագաւորն Պարսից Յազ-կերտ„ (Փրպ. էջ 159—172)։ Անշուշտ քիչ մ'ալ կրնային համբերել. բայց աշխարհի վրդովումն այն կերպ ուրացութեան պատճառաւ կրնար գայթակ-ղութիւնը վտանգաւոր ընել (Փրպ. էջ 159—162. Եղիշէ էջ 41—43) եւ ժողովրդեան այս կերպով լքումն ինքնին կը հարթէր դենիմազդեզն ճամբայ մը։ Եկեղեցին, յայտնի է որ, չէր կրնար անտար-բեր մնալ այս վտանգին հանդէպ։ Եթէ աւելի ու-շացընէին, ինչպէս կ'ըսէին նախատեսութեամբ, "անթիւ բազմութեանն արանց եւ կանանց, ծերոց եւ տղայոց լինիմք պատճառ յաւիտենից կորս-տեանն„. ասոր համար "խնդրէին հնարս իրացն, թէ որպէս զանձինս եւ զսիրելիս հանցեն ի մեծ նեղու-թենէն„ (Փրպ. էջ 142, 144. Եղիշէ, էջ 37)։ Թէ՛ ուշ թէ՛ կանուխ Վասակը պէտք էր որ իւր առաջին ուխտին վրայ հաստատ կենար։ Նա "ի հարկէ„ միաբանեցաւ, եւ սակ, որչափ ալ առ երեսս, կրցաւ*

սակայն ոյժ տալ "ռամիկ զօրացն բազմութեան", որք ատրուշաններ կործանեցին, "եւ առեալ զկրակարանն՝ վարեցին ի ջուրսն զկրակն, որպէս ի գիրկս եղբօր", ուժգին դիմադրեցին մոգերու խմբին (Փրպ. էջ 282. Եղիշէ, էջ 44. Հմմտ. էջ 103)։ Վասակ եւ Վարդան իրենց լռութեամբ քաջալերեցին ռամկին այս նախաձայուզութիւնը. նոյն իսկ Մոգպետը՝ կարծելով որ թակարդի մէջ ինկած է, կ'ըսէր. "ապա թէ ոչ յայտ է թէ դու (Վասակ) ի նոցա բանի ես. եւ փոյթ խորհրդով անցուցեր զայս անցս ընդ իս եւ ընդ զօրս։ Արդ եթէ այդ այդպէս է, եւ քեզ կամք չէ առնել զմտաբանութիւն, մի՛ ինչ պատկառեր դու երկիւղիւ յարքայէ. ես գրեմ եւ ցուցանեմ... որպէս չէ ի քոյ թողացուցէ ըստ առաջին հրամանին, եւ է կամս մարդկան ազատական արասցէն" (Եղիշէ, էջ 45, 47)։ Եղիշէի այս տեղին շատ կարեւոր է եւ շատ լաւ կը բացատրէ Վասակի կարողութիւնը, որուն վրայ վստահացած՝ Դուար իրեն կը յանձնէ մոգութեան Հայաստանի մէջ հաստատելու էական պատրաստութիւնները։ Մոգպետն առաջին դժուարութեան մը հանդէպ անճարացած կը հարցնէ Մարզպանին՝ եթէ անկարելի կը տեսնես յաջողութիւնը, մի՛ քաշուիր, ըսէ գրեմ Դրան որպէս զի փոխէ իւր առաջադրութիւնը։ Վասակ չի քաջալերեր Մոգպետի խորհրդին գործադրութիւնը. ընդհակառակը կը յուսադրէ, հնարք կը գտնէ, կը գողնայ Մոգպետին միտքը — "Քոյդ դու արա զոր առնես" (Եղիշէ էջ 48)։ Վասակ այսպէս ցոյց տուաւ թէ ինքն չէր "ի նոցա բանի". եւ լաւ փարած էր մոգութեան. այնպէս որ "սկսաւ բաշխել մոգս ի տունս նախարարացն եւ մեծամեծ ռոճիկս կարգել, զոհել պատրուճակս, եւ բռնաբար կնքաւոր մարդկան տալ ուտել միս յազածոյ, եւ երկիր պագանել արեգական։ . . . յանդգնեցան եւս եւ կանայք փշտիպանացն յաւուր կիւրակէի անցուցանել զճրագունս եկեղեցւոյն եւ պատառել զհանդերձս հաւա-

տուոր կանանցն„ (անդ էջ 49)։ Վասակ աւելի յառաջ գնաց. “Եւ բովանդակ զիւր բոլոր աշխարհն ապստամբեցոյց յուրացութիւն„ (անդ. էջ 71). բան մը՝ զոր դժուար չէ երեւակայել Սիւնեաց երկրին համար։

Այս բովանդակ պատմածին մէջ պատանդի խնդիրը, որուն հանդէպ թէեւ անհոգ չկեցաւ Վասակ (Փրպ. էջ 248—249), բայց երկրորդական է բոլորովին. այնպէս որ սխալ է կարծել, թէ Վասակ իւր զաւակներուն խանդաղատանքով աղէկէզ՝ ափշեցաւ։ Վասակի “հանճարեղ եւ յառաջիմաց„ մտքին դէմ տեսակ մը հայհոյանք է այս. նա իւր “խորագիտութեամբ„ կրնար մոռնալ այն սէրը, կրնար զաւակները զոհել իւր նպատակին, — ինչպէս զոհեց Սամը, Վաղինակը, Բաբգէնն եւ Բակուրը (Օրբլ. Եղիշէ) — եւ յառաջ մղել իւր քաղաքագիտական ծրագիրը։

Ասկէ զատ՝ Վասակին ուրացութիւնը կատարեալ է. անկասկածելի է այս։ Եւ Վասակ իւր ծրագրին իւր զաւակներէն յառաջ իւր կրօնքը զոհեց, զոր արդէն թողած էր իւր փեսան՝ Վարազվաղան՝ որպէս զի պաշտպանութիւն գտնէ իւր աներին դէմ յարմար առիթով մը գրաւելու Սիւնեաց Տէրութիւնը, եւ թերեւս մարզպանութիւնն ալ։ Վասակ իւր հակառակորդին ոչ միայն բոլոր զէնքերը պէտք էր ունենալ զանի եթէ ոչ յաղթահարելու, գոնէ հակակշռելու համար, այլ մանաւանդ աւելին պէտք էր ընել, եւ կ'ընէր նա իբր ջերմեռանդ, լաւ եւս կեղծեռանդ մը, եւ իբր “բարեգործ„ մը Դրան հանդէպ։ Կրօնք, դէն՝ Վասակի պէս մտքերուն համար ամենէն դիւրին անցք մ'է նպատակին հասնելու։

Եթէ նախարարութիւններ տային իրեն այն պատիւը, զոր Դռնէն կը յուսար ընդունիլ, ամենէն ջերմ քրիստոնեայ մը պիտի հանդիսանար նա։ Վասակ իւր փառքին կրօնքը կը պաշտէ եւ անոր հաւատարիմ է միայն։ Ո՛չ Քրիստոնէութեան հա-

կամ չհաւանեալ ապստամբել իշխանն Սիւնեաց Վասակ՝ ձեռանէ յիւրոցն ընկերաց անդրձան մահուամբ, կամ թէ հաւանեալ առ տանջին ապստամբել, արգելեալ անդրէն ի դրանն արքունի երկուցեալն՝ չարաչար կենօք տանջեալ պատահեն մահու, եւ կամ բազմաժամանակեայ կարեւոր կապանօք եւ բանտիւ դեղեալք՝ տանջին անկանայ,, (Փրպ. էջ 173)։

Փարպեցու այս թանկագին յայտնութիւնը, անտարակոյս կը ցուցնէ թէ Վասակը գայթագնող եւ իր խոհականութեան բոլորովին հակառակ ընթացքի մը մէջ յամառումը զօրացնող ազդակներէն մին ինչ էր, որ այնքան աղխատաբեր եղաւ իրեն պէս բարձր կարողութիւններու տէր դէմքի մը համար, որ դարձեալ պատկառելի բան մ'ունի իր սեւ շրջանակին մէջ։

Երկու խոհական նախարարներու թշնամութեան ծագումը նշանակութիւն ունի թէ պատմութեան հանդէպ եւ թէ նախարարական գործողութեանց մէջ։ Վասակ այնպիսի կերպով մը յառաջ բերաւ "քաջն„ Վահանի մէջ ոխի այն "մթերքը„, որոնք մինչեւ վերջը զօրեղապէս հաւանեցին իր փառասիրական ձկտումներուն ծրագիրը։ Վասակ երբ կը դաւէր Վահանին՝ կամ սիւնական յանդգնութեամբ ամէն ինչ նախատեսած ու անարգած է, կամ վստահացած է թէ իր դաւանքը պիտի չյայտնուէր։ Բայց Վահան՝ "ծանր խոհականութեան„ տէր անձնաւորութիւն մը՝ գիտէր թէ որմէ կը դաւաճանուէր։

Իրաւ է որ այս իրողութիւնն անուղղակի կերպով կը յիշատակուի, ինչպէս իր ծագումը, Փարպեցու եւ Եղիշէի կողմէն, բայց ամէնէն աւելի վստահութեամբ կարելի է ենթադրել՝ թէ նախարարական աշխարհի հորիզոնին վրայ իբր թեթեւ երեւոյթ մը չանցաւ Սիւնեաց իշխանին եւ նախկին հազարապետին թշնամութիւնը։ Այս վարկածին ուղղակի հաստատութիւն կը համարիմ

Փարպեցու միջանկեալ կերպով ըրած յիշատակութիւնը, զոր յառաջ բերինք։ Այս թշնամութիւնը ծագում առաւ՝ երբ Դենշապուհ Հայաստան գալով սեղմումներ ըրաւ, մանաւանդ “Քանզի որ հազարապետ աշխարհին էր՝ իբրեւ զայր վերակացու համարեալ էր աշխարհականաց գործակալէից, գրգռեաց յորոց զամբաստանութիւն ի վերայ նորա, եւ հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա զպարսիկ ած յաշխարհն„ (Եղիշէ, էջ 19)։ “Քաջն Վահան Ամատունի„ էր այս հայրաբարոյ վերակացուն, “զօրաւոր հաւատովք եւ ճոխութեամբ մարմնաւորաւ... ի ժամանակին յայնմիկ (այսինքն՝ Ս. Մեսրոպի մահուան ժամանակ՝ 439 փետր. 17) ի նա էր հաւատացեալ Պարսից զհազարապետութիւն Հայոց աշխարհին„ (Խոր. Գ. կէ)։ Աշխարհի հայր համարուած անձի մը վրայ կը գրգռուի ամբաստանութիւն մը, որուն հեղինակն է անպատճառ ինքն Վասակ։[1]

Երկրի երկու նշանաւոր եւ պաշտօնական անձնաւորութիւններուն բախումը ժողովրդական է. Վասակ այս դաւանքով ժողովուրդը վիրաւորած եղաւ անշուշտ, եւ յետոյ իբրապէս ազգային խնդրի մը բորբոքումներուն մէջ պայթումը նախարարական այնպիսի թշնամութեան մը, որչափ ալ ծանր կշիռ մ'ունենայ իբր հալածում Վարդանանց կողմէն, դարձեալ ծանր պատասխանատուութեամբ մը կը պարտաւորուի Վասակ իբր հնարիչ կործա-

---

[1] Ա. Մ. Գարագաշ (Քնն. Պատմ. Բ. էջ 18, 19) “գրգռեաց յորոց (Վասակ) զամբաստանութիւն ի վերայ նորա„ կը գրէ. անշուշտ քերականօրէն ուղիղ չէ այս։ Եղիշէի նշանակած սեղմումներուն մէջ գործողը Դենշապուհն է. “կեղծաւորէր„, “արկանէր„, “ի ծառայութիւն„, “էարկ„, “ծանրացոյց„, “էարկ ընդ միմեանս„, “արար խռովութիւն„, ‘գրգռեաց յորոց„, “պարսիկ ած„ (Եղիշէ էջ 19)։ Փարպեցիով միայն կը մեկնուի թէ անպատճառ Վասակ մաս ունէր Դենշապուհի այդ կարգադրութեան մէջ։

նարար միջոցներու եւ իբր վրդովիչ երկրին խաղաղութեանը իւր անձնչին համար։ Վասակ զրկել տալով երկիրն իւր հայրաքարոյ հազարապետի գուրգուրանքէն՝ նպատակ ունէր զօրաւոր նախարարութիւնները տկարացընել. իրեն համար արձակ համարձակ գործելու միջոց մ'էր այս՝ առանց ընդդիմութիւն մը կրելու երկրին պաշտպաններէն. Վահանի անկումով սակայն չէր կրնար յաջողիլ. ասոր համար իւր կողմ շահեցաւ Յունական բաժնի Մամիկոնեանները, մանաւանդ Վասակ Մամիկոնեանը, որ «ի [illegible] ժամանակին սպարապետ էր [illegible] Հայոց, եւ [illegible] զօրացն Հայոց է [illegible] Պարթևաց, եւ [illegible] էր օրինացն Աստուծոյ [illegible]։ [illegible] այս Վասակ [illegible] Վասակ[illegible] [illegible] է [illegible], [illegible] [illegible] [illegible]» (Եղիշէ, էջ 72)։ Դարձեալ իւր կողմ գրաւեց զօրաւոր կուսակցութիւն մը (Փրպ. էջ 195. Եղիշէ էջ 57, 71. Հմմտ. Տէրև. Պտմ. Բ. էջ 530) եւ այսպիսի դարձուածներով քակեց այն դաշնակցութիւնը, որ կնքուած էր Հայոց, Վրաց, Աղուանից եւ Աղձնեաց հետ (Եղիշէ էջ 72)։ Վասակ որչափ ծայրայեղութեան դիմեց, ջլատեց դաշնակցական ոյժն եւ վնասեց միւս նախարարութիւններուն, Վարդանանք այնչափ սերտ կապուեցան իրարու հետ եւ յառաջ բերին այնպիսի ոյժ մը, որուն հանդէպ փշրուեցան ոչ միայն Վասակի բոլոր հնարամտութիւնները, այլ մանաւանդ Տիսբոնի՝ Ձապուհէն ի վեր արիւնով գծուած ծրագիրները, որոնց գործադրութեան մէջ կր տեսնէր Վասակ իւր փառասիրական նպատակին պսակումն ալ։

Գ.

Ի՞նչ էր Վասակի փառասիրական նպատակը։

Հայկական թագը ձեռք բերելու տենչը՝ հասարակ բան մ'եղած էր զօրաւոր նախարարութիւններու մէջ՝ Արշակունի գահին բարձումէն ի վեր։

Վասակ ինքզինքն ամենէն յարմարն ու ամենէն արժանաւորը կը համարէր Թագաւորութեան։ Նա շատ լաւ ուսումնասիրած էր, թէ իշխանութեան մը հասնելու համար ինչե՛ր պէտք էր ընել։ Սիւնեաց իշխան եղաւ նա քստմնելի իրողութիւններով։ Թագի համար հարկաւ աւելի լայն բանագործութիւն մը ծրագրած էր նա իւր մտքին մէջ։ Այս ամէնը շատ դիւրին պիտի իրագործուէր, քանի որ արդէն Միհրներսեհն ալ այս յոյսը ներշնչած էր, միայն թէ Դրան տրամադրութիւնները լիապէս կատարուէին (Եղիշէ, էջ 70)։ Դուռը գիտէր արդէն զօրաւոր նախարարներու ձկտումներն եւ անոնց իրագործումին համար պայմաններ ունէր։ "Զօրաւոր հաւատովք" նախարարներ իսկ հաւանաբար՝ առանց ետ կենալու իրենց ձգտումէն պիտի չհամաձայնէին պայմաններուն, միւս կողմէն պիտի աշխատէին որ Վասակ՝ այն միջոցներով, որոնց իրենք չէին կրնար խոնարհիլ, չյաջողի Թագաւորական փառքը յափշտակել։

Վասակ Թագի երազներով տոգորուած էր. երազներ՝ որոնք սակայն իրականութիւն էին իրեն համար. եւ այս մասին Միհրներսեհի ներշնչած վստահութիւնն այնչափ զօրացուցած էին իր մէջ Թագաւորութեան համոզումը, որ անտարակոյս չէր մտածեր այլ եւս՝ թէ նոյն յոյսը միւս նախարարներ ալ կը տածէին, թէ խոհական անձնաւորութիւնները թշնամի ըրած էր իրեն. բաւական էր որ ինքն վստահ էր իւր գործին վրայ, ինքն ալ ունէր ոչ աննշան կուսակցութիւն մը։ Վասակին "որոճմունք"ը Հայոց Թագաւորութիւնն էր լոկ, զոր շատ լաւ կը հասկնար Վարդան. այս նկատումով էր որ Հայոց Սպարապետը չուզեց այլ եւս ուրացութեան կեղծիքին տակ մնալ եւ յապաղումը վտանգաւոր նկատեց ամէն կերպով. "դիտելով ոչ միայն լոկ վասն որդւոցն եւեթ զկասումն առն (Վասակայ) ի փրկութեան դարձէն, այլ [illegible]

[illegible]„ (Փրպ. էջ 175–176)։ Ու Վարդանանց գործն էր աչքէ չվրիպեցնել փառասէր Մարզպանին շարժումները ու միշտ հեռացրնել անոր աչքէն թագին փայլն ու ծիրանիին հրապոյրը, որոնք ընդհակառակն այնքան մօտիկ էին Վասակի մտքին։ Վասակ ինքն ալ կը դիտէր իր հակառակորդներուն շարժումները, ասոր համար ինչ որ կրնար ընել՝ ըրաւ. — արմատական միաս մ'էր ամէն կողմէ անօգնական թողուլ Վարդանանց խումբը՝ յաջողեցաւ. ուզեց Սպարապետին դաւաճանել՝ իբր թէ յաջողեցաւ այս մասին ալ մատնելով զանի Պարսից բանակին՝ Աղուանից մէջ. Սպարապետն ազատեց իր կեանքը, Վարդանանք չվնասուեցան։

Նախարարական այս ընդհարումներ կարեւոր կշիռ մ'ունին Վարդանանց պատերազմին նախապատրաստական դէպքերուն մէջ. այնպէս որ եթէ Վասակ յաջողէր իր գլխաւոր հակառակորդները վերցընել մէջտեղէն՝ նա հաւանաբար կարող պիտի ըլլար կորզել թագը, եւ եթէ միանար Վարդանանց հետ, առանց այնքան արիւնահեղութեան եւ ներքին վնասներու, պիտի ոչնչանային Տիզբոնի բոլոր ծրագիրները։

Կարելի՞ է մեղմացուցիչ պարագաներ գտնել Մարզպանին փառասիրական արարքներու մէջ. — Հեշտին է թերեւս անոր մտաւոր ընդունակութիւններու մագնիսումին տակ "այո„ ըսել։ Հայոց թագաւորական գահը վերանորոգելու գաղափարը, պահ մը մէկդի դնելով ամէն տեսութիւն, ըստ ինքեան առարկութիւն չի վերցըներ. բայց այս չէ Վասակին ուզածը. նա կ'ուզէ իր անձն եւ Սիւնեաց իշխանութիւնը բարձրացընել, զոհելով Հայոց աշխարհը Դրան քաղաքական դիտումներուն։ Եթէ Մարզպանը Հայոց ազգը կը մտածէր, անշուշտ լաւագոյն խորհուրդ մ'էր այս, որուն գործադրութեան սիրով պիտի աշխատէին Վարդանանք ալ։

Այս սակայն մտածելու բան չէ նախարարական դրութեան մէջ։ Եւ հակառակ ամէն աննպաստ դիտումներու՝ եթէ ընդհանուր նախարարութեան ազդեցութեան ներքեւ Դուռը դարձրնէր Հայոց թագը, այն իսկ Կամսարականաց իրաւունքն էր. անոնք միայն իրաւունք ունէին թագ դնելու իբր Արշակունի տոհմ։ Բայց տիրաբար խօսելով՝ թագի վերահաստատութեան գաղափարը շատ հեռի է նախարարական մտքերէ՝ իբր համազգային իշխանութեան կենդրոնացում, որչափ ալ տեսական կենդրոնացում մը։ Եթէ այս գաղափարը տածէին՝ պիտի չտապալէին Արտաշէս Դ.ի գահը։ Թագաւորութիւնը հակառակ է արդէն նախարարական դրութեան, եւ մեր նախարարք թագը մերժեցին ազատ մնալու համար բնիկ թագաւորի մը ճնշումէն։ Եւ Վասակի տենչը՝ իւր երկրին ներշնչումը՝ զուտ նախարարական ձգտում մ'է։ Այդ ձգտումներն են որ դարեր յետոյ Արծրունեաց, Բագրատունեաց մի մի թագ տուին։ Վասակ կը դիտէր ապագան եւ այն օրէն կ'ուզէր ձեռք բերել զայն։

## Դ.

Ներքին խնդիր մ'ալ յատուկ Սիւնեաց իշխանութեան, իբր երկունք նախարարական բարքերու, ազգային շարժումի մէջ պայթեցաւ։ Նախարարութիւնը միշտ վտանգ եղած է Հայաստանի կառավարութեան մէջ. ազգութիւնը տուժեց այն կղզիացած ոյժերու ներքին վրդովումներով։ Վասակ իւր սխալ քայլերուն մէջ զերծ չմնաց ներքին չփոթներու ազդակէն։ Սիւնեաց Սեպուհը Վարազվաղան, որ փեսայացած էր Վասակին՝ վտանգաւոր թշնամի մ'եղած էր իրեն դէմ։ Փարպեցի այս թշնամութեան երկու պատճառ յառաջ կը բերէ. Ա. — "ըստ համբաւոյ ոմանց՝ ատելութեամբ մեծաւ ատէին զկեալն ընդ միմեանս զՎարազվաղա-

*նայ եւ զդստեր իշխանին Սիւնեաց. յաղագս որոյ ծանր քինու հայէր հայր աղջկանն ընդ փեսային իւրում, եւ ջանայր ողանձամբ խնդրել շիրեծս ի թշնամեաց զաւերն իւրոյ, մինչեւ հալածել հանէր զնա յաշխարհէս Հայոց" (Փրպ. էջ 108)։ Բ. — "զի ոչ կարէր (Վարազվաղան) հանդուրժել սաստիկ քաղաքեան աներոյն՝ յաղագս հզօրագէս ծախաթեան որով վարէր ի ժամանակս իշխանութեան իւրոյ, փախուցեալ յերկիրն Պարսից՝ առ Միհրներսեհ հազարապետն Արեաց անկանէր" (Նոյն անդ)։*

*Առաջինն իբր շատ լուրջ պատճառ մը չի թուիր՝ թշնամութիւնը մահով վերջացնելու չափ բանաւոր. եւ արդէն պատմագրին համար ալ "համբաւ (= զրոյց) մ'է այդ լոկ ժողովրդեան բերնին մէջ*[1]*, մանաւանդ Բ. պատճառին հետ բաղդատելով, որ աւելի հիմնական է եւ յաջորդ պատմածներով կը հաստատուի եւ աքանչելապէս կը յարմարի Վասակի բարքերուն հետ։ Մարզպանին ճախութիւնը դիմանալու բան չէր։*

*Արդէն առիթ ունեցանք յիշատակելու (վերագոյն) Օրբէլեանի այն հատուածիկը, որուն մէջ Վասակ ցոյց կու տայ իր բուն նկա-*

---

*[1] Էրիկ-կնիկի խնդիր մը պարզապէս, որուն պատճառն է հաւանաբար Վարազվաղանի ջղային մէկ հիւանդութիւնը, եթէ Փարպեցու "զգեստնեալ փրփրէր անզգայութեամբ", "չարալլուկ կատանօք զարկուցեալ հեղձոյց" բառերն իբր ուրացեալի մը հոգեխօսական տագնապները բացատրող զուտ փոխաբերութիւններ, կամ նոյն ինքն պատմագրին կողմէ ուրացեալի մը վիճակին՝ Աւետարանի լուսնոտներու, այսահարներու նմանութեամբ եղած ակնարկութիւններ չեն։*

*Օրբէլեան իբր պարզ առելութիւն մը կը ներկայացնէ։ Օրբէլեան անշուշտ Փարպեցիէն կ'առնու զայս եւ իւր իմացումով կը բացատրէ, "Որ եւ սոփեստոսական որքանծէ անկաւ առելութիւն ի մէջ նոցա, եւ առէր Վարազվաղան զկին իւր" (Օրբել. Ա. ժէ)։*

րագիրը — "Եթէ զԽս առնէ տէր, մինչ բնական իմ Հարցն է ժառանգութիւն Սիւնեաց" — ։ Յա-նուկն Վասակ միշտ այս սկզբունքով քալեց եւ իր իշխանութեան մէջ ի գործ դրած բռնութիւնն անտանելի եղաւ Վարազվաղանին։ Անկէ պատ՝ շատ Հաւանական է որ Վարազվաղան՝ իբր Սեպուհ՝ նախանձած ըլլայ իր աներոջ փառքին։ Վասակ ամէն պարագայի մէջ անշուշտ "[illegible]" միայն կրնար լուծել իր վրէժը, ուսկից կը փախչի իր փեսան եւ Միհրներսեհի պաշտպանութեան կ'ա-պաստանի, եւ ուրացութեամբ կը Հանի [illegible] մը, որ կրնար նոյն իսկ իր ճոխ աներոջ նա-խանձը գրգռել։ Ճիշդ այս նպատակին կը ծառայէ նոյն ինք Միհրներսեհ՝ երբ կ'ուղէ վարձատրել՝ "[illegible]" փախստականը. "[illegible]" (Փրպ. էջ 120)։ "Դժնամիտ" Հազարապետին խորՀուրդը, որուն Հաւնեցաւ Յազ-կերտ, կէտ առ կէտ կը շօշափէր փառասէր նախա-րարներու շարժումները. եւ Վասակ՝ ամենէն փա-ռասէրը՝ իր փեսան ընկճելու Համար պիտի աճա-պարէր ընտրել "[illegible]"։ Եւ յիրաւի ոչ միայն ճո-խացաւ քան Վարազվաղան, այլ մանաւանդ ուրիշ պայմաններով յուսադրուեցաւ որ կրնար "[illegible]" (Եղիշէ էջ 70)։

Վարազվաղանի տուած Հարուածը թեթեւ բան մը չէր. անոր միացումը Միհրներսեհին Հետ, որ միայն "[illegible]" կը մեծարէր Վասակը, երկիւղ կ'ազդէր Մարզպանին։ Միհրներսեհ կեղծ

բարեկամ մը, նոյն իսկ Թագի յոյս ներշնչող, կ'առնէր զինքն. այս կարեւոր պարագան Վասակ գիտէր անշուշտ, բայց շահել կ'ուզէր իւր ոխերիմին պաշտպանը, որ միշտ կ'որոճար, "շատ է ինչ եբաստակն՝ լուրն եւ տես կորուսեալ ճշմարտոյ իմոյ" (Փրպ. էջ 114)։ Այս վիճակին մէջ Վասակ անհանդարտ "խուճապէր միշտ. եւ ոչ ունէր քուն ի գիշերի կամ հանգիստ ի տուընջեան" (Օրբլ. Ա. ժէ)։

Պէտք էր ընկճել անպատճառ Վարազվաղանը։

Ահա թէ ինչու Վասակ կը դիմէր այնքան վտանգաւոր ծայրայեղութիւններու։ Նա չէր կրնար զիջումներ ընել այնպիսի դէպքերու համար, որոնք ուղղակի անձնական էին եւ այնպիսի զիջումներ, որոնք նուաստացուցիչ էին նախարարական բարքերու մէջ։ Վասակ իւր բովանդակ կարողութեամբ զինուեցաւ իւր անձնական թշնամիներուն դէմ եւ որովհետեւ խնդիրը յուզուեցաւ ազգին քաղաքական եւ կրօնական կեանքին շուրջ, Վասակ թշնամաբար գործեց հոն. այս է իւր անկանգնելի անկումը, անկում մը, որ ընդհակառակն փառքի յաղթանակ մը պէտք էր ըլլալ դարուն ամէնէն կարող Անձնաւորութեան։

## Ե.

Ուրիշ պարագայ մ'ալ՝ որ Վասակի հակազգային գործերու մեղմացուցիչ տարրը կը նկատուի, է Վարդանի չուն արգելելու համար ըրած ճիգը (Փրպ. էջ 166—171) եւ դաշնակցական խնդիրներու մէջ Վարդանանց հետ գործելը (Փրպ. 184—185, 245—250. Եղիշէ էջ 54, 103), իբր թէ Վասակ այդ ամէնուն մէջ թաքուն մտածութիւն մը չունենար։ Բաւական շլացուցիչ դիտողութիւն մ'է այս անշուշտ, մանաւանդ երբ Վա-

սակին բերանը կը դրուին սա խօսքերը, «Թէ պարտ է փութով զհետ զօրավարին Հայոց Վարդանայ Մամիկոնէի՝ քահանայս առաքել ընտիրս եւ արս ուսեալս ի տանուտեարցս Հայոց, եւ աղաչանօք դարձուցանել զնա այսրէն. զի առանց նորա մեր այնչափ եւ խորհուրդք եւ ուխտ մի ինչ վճարէին» (Փրպ. էջ 166—167)։

Առանց նախապաշարուելու Մարզպանին կախարդիչ կարողութիւններով՝ եթէ պատմութեան միւս տեղեկութիւններն անվիճելի են, անոր բոլոր դարձուածներն արտաքին պէտք է համարիլ։ Վասակ եթէ համոզուած էր թէ «առանց նորա» բան մը չի կրնար ընել, ինչո՞ւ Աղուանք կը ղրկէ Վարդանը եւ միւս կողմէ Միհրներսեհին եւ Սեբուխտին կը մատնէ զայն, մինչ ընդհակառակն ինքն ալ պէտք էր «ընդ ճակատ» միանար սպարապետին — կ'առարկուի որ եթէ Վասակ ուզէր Սպարապետին կորուստը՝ պիտի չարգիլէր անոր չուն դէպի յունական բաժինը։ Ա՛յս է բուն պատճառն որ Վասակ՝ Սպարապետին կորուստը կը խնդրէ. 1. Վարդան յունական հողին վրայ կորսուած պիտի չըլլար. ընդհակառակը միշտ վտանգ մ'էր նա Վասակի համար. պէտք էր մէջտեղէն վերցնել զնա. 2. Վասակ լաւ կը դիտէր ուրիշ վտանգ մ'ալ, այն է ժողովուրդն ու եկեղեցւոյ ուխտը, որ Վարդանին կապուած էին. այս միաբանութիւնը շահելու կամ շլացընելու համար պէտք էր ջնջել Սպարապետը, 3. Վարդանանք, որոնց մէջ էր իր ախոյեանը՝ Ամատունին, առանց Վարդանի ալ անզբաղ պիտի չձգէին Վասակը. արդ՝ պէտք էր ջնջել Վարդանը, որպէս զի իր խումբով ճեղքեցնէր, ինչպէս ալ ըրաւ։ Անկէ զատ՝ Բիւզանդիոնէն օգնութիւն խնդրելու որոշումը, որ հակառակ էր Վասակի ծրագրին, «յաղագս ճեղքման զնոր առաջի եղեւ զխորհուրդն կատարելոյ յանձն իւր առնոյր» (Փրպ. էջ 184)։ Վարդան անպարտելի խոչընդոտ մ'էր. վերցընել պէտք էր զանի. ահա Վասակին

խորհուրդը։ Եւ, ինչպէս ըսինք, Աղուանից օգնութեան համար Վասակ ինքն ալ պէտք էր ընկերանար Սպարապետին, բայց ետ կը քաշուէր, կը դաւաճանէր. «Թէ ես սատէն պատրաստիմ, գուցէ, այլ ինչ իմացեալ չարախորհուրդն Միհրներսեհ՝ փորձեսցէ ընդ մեզ„ (Փրպ. էջ 183)։ Վասակ՝ Վարդանանց իրապէս համախոհ պիտի նկատուէր Պարսից կողմէն՝ եթէ յանկարծ Աղուանից սահմաններու վրայ երեւէր Սպարապետին հետ. հետեւաբար նենգութիւն մը պիտի համարուէր իր ըրածն ալ. անպատճառ դաւաճանութիւնը կանխաւ պատրաստուած պիտի ըլլար Միհրներսեհի եւ Վասակի մէջ. ապա թէ ոչ դժուար է մեկնել Վասակին արարքը, որ մէկ կողմէն Սպարապետը ճամբու կը դնէ եւ միւս կողմէն գաղտնապէս կը գրէ Միհրներսեհին, թէ «անձամբ ելեալ յեկեղեցւոյ ընդ Վարդանայ ի վերայ ձեր, եւ մի՛ զուրհասցէք, վասն զի շատք այն են՝ զորս ես սատէն պահեցի առ իս եւ պայլս բազումս ընդ այսր ընդ այնր ցրուեցի, եւ դա յոյժ սակաւուք է եւ ո՛չ բազմօք„ (անդ. էջ 188)։

Վասակին այս ընթացքն երկայրի դաւանք մ'էր, սաղին ազգն օրօրելու, անդին Դուռը խաբելու համար. որովհետեւ ոչ ազգին օգտակար եղաւ իր ամէնէն հեռատես խորհուրդներով եւ ոչ ալ Դուռը ճանչցաւ անոր աշխատանքը, նա որ իրապէս իր փառքին համար աշխատած էր Դրան հաճոյքը կատարելով եւ վճռապէս հրաժարելով ազգային միութենէն։

Մարզպանի շարժումներու մէջ դիտուած թաքուն մտածութիւնը կարծ հակազգային է մեղմացուցիչ տարր մը նկատուելու համար։ Պէտք է խոստովանիլ, թէ Վասակ այնքան ճարպիկ գործեց, այնքան փայլուն եւ նպաստաւոր ցուցուց Դրան իր գործերը, որ արքունեաց մէջ, բաց ի Միհրներսեհէն՝ որ «յոյժ փառասէր զնա„, ոչ ոք կրցաւ հասկընալ զանի. երբ փութիշը վերջացաւ Ղեւոնդէ-

Հէօյա– Ցակլերտ, “եւ ամենայն իշխանք Դրան զարմացան„։ Դուռն այն ատեն միայն հասկցաւ ստուգիւ թէ ինչպիսի անձի մը հետ գործ ունեցած էր։

Զ.

Վասակին բոլոր գործողութիւններն ու շարժումները, որ քաղաքական ամէնէն իսկատիպ հանճարի մը ազգօգուտ Ն–+Ն+ը կը համարուի, այնչափ սեւ գծերով արձանագրուած են պատմութեան մէջ, բայց ճշգրիտ գծերով, որ տեսակ մ'անել դիրքի մէջ կը ձգեն ընթերցողը ըմբռնելու համար թէ ինչ կը գործէ Հայոց Մարզպանը։ Պատմածները հակասական երեւոյթ մ'ունենալու չափ ճոխ են, եւ արդի քննադատութիւնը պատմութեան այս սեւ գծերը ուղիղ դատելու կը ձգտի. այսինքն՝ Վասակեանք աւելի լաւ կը ճանչնային ազգին շահերը քան Վարդանանց կողմը։ “Այդ տեսութեանց համեմատ Վարդանեանք եւ Վասակեանք երկու հակառակող օտարամոլ ընթացից հետեւողներ են. առաջինք յունասէր եւ վերջինք պարսկասէր։ Յունասիրութեան հիմն է կրօնից մերձաւորութիւն. իսկ պարսկասիրութեան հիմն է կրօնից հեռաւորութիւն։ Արդ, կ'ըսեն, որ եւ իցէ հպատակ ազգի գոյութիւնը պաշտպանելու նպատակաւոր միջոցը տիրողի տիրապետողէն ունեցած հեռաւորութիւնն է։ Կրօնից հեռաւորութեամբ հայը պարսիկէն զատ կը մնար. կրօնից մերձաւորութեամբ հայը յոյնին հետ խառնուելու վտանգին կ'ենթարկուէր։ Ազգային շահը, կ'եզրակացնեն, աւելի լաւ կը հոգար պարսկասէր Վասակը քան յունասէր Վարդանը„ (Եկղ. Պօմ. յեա—ջէր 1889 Մ. Ե. Օ. էջ 148)։

Այս տեսութիւնը շատ շատ Վարդանանց եւ Վասակեանց շարժումներուն զուտ արտաքին կերպարանքին կը յարմարի եւ տրամագծապէս կը հակա-

ռակի այն իրողութեան, որ ոգին կը կազմէ Վարդանանց դատին (այս խնդրին վրայ տես գլուխ Զ). այնպէս որ Վասակի արարքներու մէջ մեր մատենանիշ ըրած կէտերը թոյլ չեն տար յանգիլ եզրակացութեան մը՝ որ ի յառաջագունէ ենթադրութիւններու վրայ հիմնուած է, եւ սա՛ պատճառներով. 1. Վարդանանց եւ Վասակեանց քաղաքականութիւնները հպատակութեան չեն վերաբերիր. Տիզբոնի կամ Բիւզանդիոնի յարելու խնդիր մը չէ՛ դարուն շարժումը. 2. Վարդանանք, նոյն իսկ այն տեսութեան համեմատ, Պարսիկներէն հեռի մնալով հանդերձ, երբեք չմօտեցան Յունաց, որ կրօնի նոյնութեամբ Հայը յունին հետ խառնուելու վտանգին ենթարկուէր: Եթէ Վասակեանք ազգային շահը կը պաշտպանէին, գէթ Վարդանանց հակառակ ընթացքը կարծեցեալ վտանգն անպատճառ յառաջ բերած պէտք էր ըլլալ. թող որ Յունաց կողմէն ոչ թէ օգնութիւն, քաջալերութեան չոր ճիկ մ'ալ չկայ: Յոյնք անտարբերութեամբ դիտեցին. եւ եթէ իրենց շահաւոր բան մը նկատէին Վարդանանց քաղաքականութեան մէջ, անտարակոյս պիտի օգնէին Հայոց. 3. Վասակ յարած էր Պարսից դենին. եւ եթէ նա կրօնի հեռաւորութեան քաղաքականութեամբ կը գործէր՝ ի՞նչու ոյժ կու տար մոգութիւնը Հայաստանի մէջ հաստատելու. ինչպէս կրնար ուրենալ այս քաղաքականութեամբ հայը պարսկէն զատելու: Մինչ Վարդան ուժգնութեամբ կռուեցաւ կրօնի ոխերիմին դէմ, կրօն մը՝ զոր Մեծ Նահատակն Գրիգոր աւանդեց հայուն, եւ "զոր ուսոյց եւ հաստատեաց..., կ'ըսէր Վարդան, ճշմարիտ հայրն իմ Տէր Սահակ„ (Փրպ. էջ 147, 163). Հայոց էր Մեծ Հայրապետը: Վարդան այս հաւատքէն Յունաց նշանախեց մը իսկ չզոհելու համար միեւնոյն ուժգնութեամբ պիտի կռուէր: Վերջին դարերուն մէջ իսկ Յունաց հետ դաւանաբանական յայտնի եւ բուռն կռիւներուն մէջ Հայք շատ նեղ

քաղաքական կացութիւն մ'ունեցան, բայց չգոհուեցան երբեք։ Այս տարբեր խնդիր մ'է։ Հետեւաբար “կրօնից հեռաւորութեամբ հայը Պարսկէն զատ կը մնար„ տեսութիւնը պէտք է Վարդանանց վրայ կենդրոնացնել։ Վարդանանք չապստամբեցան հպատակութենէն, անոնք ուզեցին որ Դուռը չդպչի իրենց կրօնին. ասի Մամիկոնեանց սկզբունքն է, ինչպէս պիտի տեսնենք։

Քաղաքական իրարու հակառակ այս երկու հոսանքները, որոնք շարժել կը թուին երկու խումբերը, այնքան նոր գիւտ մ'է, զոր անհնար է նախարար գլուխներու մէջ յղացուած մտածել։ Նախարարներն որոշ ուղղութիւն մը չունէին յոյն կամ պարսիկ քաղաքականութեան հանդէպ, լաւ եւս շատ քիչերն ունէին, եւ իրենց մերթ ընդ մերթ միտումները դէպ ի այս կամ այն կողմն իբր արդիւնք անբաւականութեան կամ իբր պէտք ժամանակաւոր պաշտպանութեան, երբեք չի կրնար հաստատուն իրողութիւն մը նկատուիլ։

Նախարարներն երկրին բախտը վճռելու համար երբեք ստոյգ եւ համերաշխ եղանակով մը չգործեցին եւ չէին կարող ալ գործել. ասի այնչափ ճշմարիտ, այնչափ իրական է, որչափ Հայաստանի լեռներու գոյութիւնը, որ ծնունդ տուաւ այդպիսի դրութեան մը։ Ամէն Նախարարութիւն իւր տեղագրական դիրքին ազդակով պիտի գործէր։

## Է.

Սիւնիք այնպիսի դիրքի մը մէջ, ինչպէս ըսինք նախընթաց գլխուն մէջ, ստիպուած էին քաղաքական որոշ գոյն մ'ունենալ։ Երկիրն ամէն նկատումէ բարձր ոգի մը դրած էր անոնց մէջ. սիսական առիւծներ քաղաքական ոչ մէկ գառագեղի մէջ կրնային զսպուիլ, բայց կը ձեւացընէին զսպուած ըլլալ, կանոնաւորապէս գործադրելով Դրան հետ յարաբերութեան պահանջները։

Վասակ հաւատարիմ չմնաց այս ճարտար ուղղութեան։ Նա ո՛չ Պարսից կողմը յարեցաւ Անդովկի եւ Բաբիկի պէս, ո՛չ ալ Յունաց։ Այս Վասակեան ուղղութիւնը յատուկ քաղաքականութիւն մը չէ Վարդանանցին հակառակ։ Իւր երկրին ներշնչումները, որոնք տարօրինակ մոքի մ'երկունքով օժտուած Թագի եւ ծիրանիի ապագան պարզեցին իւր աչերուն, շատ հզօր էին։ Նա առջի օրէն զայրոյթով ժայթքած էր, խօսք մը, զոր մինչեւ վերջը սկզբունք ըրաւ իրեն — "Թէ զի՞նչ առնէ Տէր" —։ Հեշտ է ուրեմն ըմբռնել, թէ ինչ ճարպիկութեամբ եւ ինչ արագութեամբ գործեց Վասակ։ Սիւնեաց Տէր եղաւ նա այնքան շուտ եւ քստմնելի միջոցներով. Մարզպան եղաւ Վրաց եւ այնչափ "Բազում կորուսի" աւարեց անմիջապէս, որոնց միայն "Եթէ զմի մասն Հոնաց տամ առնել, կ'ըսէր, առնել այնչափ աստակէլ հանեմ Հոնս, որչափ զի հողն Պարսից չկարէցէ նոցա յաղթել" (Փրպ. էջ 247—248. Եղիշէ, էջ 105). յետոյ Մարզպան եղաւ Հայոց եւ "ի միում ամի կորոյս զերկիրն ամենայն" (Եղիշէ անդ), այսինքն՝ սարսափելի հարստութիւն մը դիզեց այն նպատակին համար, որուն ծրագիրը այնքան որոշ էր իւր մոքին մէջ։ Վասակ ա՛լ միայն Թագի կը սպասէր. որովհետեւ իւր բոլոր ջանքն ու ճիգը ատոր համար եղաւ։ Նա պարսիկ քաղաքականութեան մը չէր հետեւեր. պարսիկ կրօնը պաշտպանեց այս ծառայութեան փոխարէն Թագով վարձատրուելու համար. ամէն ինչ սարքած էր. եւ "Բայց է զարմանալ Թագաւորացն որ նուաճէր նմա, այլ ոչինչ գերդոյ էր՝ զոր ոչ առնէր" (Փրպ. էջ 243)։

Հայ ժողովուրդն եւ Հայ քահանայութիւնը տարբեր կը խորհէր սակայն. անոնք, որոնց գլուխ կանգնած էին Սպարապետի եւ Ամատունւոյ պէս ժողովրդական անձնաւորութիւններ, գիտէին Մարզպանին արարքը. անոր Թագի համար ունեցած տենչը հրապարակուած բան մ'էր. գիտէին

նաեւ Պարսից տրամադրութիւնն եւ Ղեւոնդ Երէց՝ ժողովրդականութեան մարմնացումը՝ լաւ գիտած էր իրաց ելքը։ Վարդանանց Պատերազմը լրացած էր եւ Վասակ շքեղ կառաւան մը կազմած էր դէպ ի Տիսբոն, կը կարծէր հոն տեսնել իր սիրուն մտածականին իրականացումը, երբ կէս ճամբան Ս. Ղեւոնդ յուսահատիչ շունչ մը փչեց անոր. "Կարծեցուցանէ՞ զքեզ դեւդ՝ որ պատրեալ սատրեաց զքեզ ննջել սուրբ Աւետարանին ուխտի, Թէ արդ միայն Նախարարութեամբ աշխարհին Հայոց կարէին Արիք տալ տեղ ընդ արժանի վաստակոց քոց շնոր-հատուցմամբ, այլ եւ ոչ մի ինչ է որ կարէին տալ տեղ փոխարէնս. բայց թէ արդարեւ զուկնդանութեամբ զգլուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս, ապա ընդ իս Տեառն Աստուծոյ չէ խօսեցեալ" (Փրպ. էջ 227—228)։

Վասակեան քաղաքականութիւնն ըստ ամենայնի խորթ Սիւականին, ըստ ամենայնի վնասակար ազգային պահանջներուն, Օրբէլեանի համար "ծնունդ էր չար յուսահատութեան" (Ա. ժէ). Եւ կ՚ըսեմ ծնունդ իր բնական ներշնչումներուն, ծնունդ իր համոզումներուն մէջ յամառ եւ յամառումներուն մէջ խրոխտ եւ խորագէտ մտքի մը, որ շատ հեռուէն կ՚ընդնշմարէր իր ծրագրին կառուցումները, որ շատ մօտէն շօշափեց սակայն անոնց փլատակները անհաւատարմութեան բրիչներով կուտակուած։

Սիւնեաց երկրին այս խորհրդական, հանճարեղ, յառաջիմաց քաջը, որ "իմաստուն" էր իր գործերուն մէջ, տապալեցաւ ստորանկումի մը մէջ, ուր քստմնեցաւ, տեսնելով որ իր բարձր կարողութիւններն ու հսկայ յանդգնութիւնները, վճռուած իր ազգէն ու ազգականներէն եւ Դռնէն, ուրացուցած էին բոլորովին։

ԳԼՈՒԽ Դ․

# ՄԱՄԻԿՈՆԵԱՆՔ

> «Զի այր (Մուշեղ)՝ որ ազգաւ պատուական է իբրեւ զմեզ, եւ նախնիքն դորա իբրեւ զնախնիսն մեր, եւ թողեալ նախնեացն դորա զթագաւորութիւնն Ճենաց աշխարհին, եկեալք առ մեզ նախնիքն՝ ի նախնեացն մերոց ի վերայ կեցեալք եւ մեռեալք են եւ հայր դորա ի վերայ հօրն իմոյ մեռաւ»։ (Բուզ. էջ 204։)

Նախարարական ծանօթ պատմածներու մէջ Մամիկոնեանց տրուած տեղը եզական հանգամանք մ՚ունի, եւ այն խորքը, որ այս տոհմը կը զատէ միւս նախարարութիւններէն, նկարագիրն է Մամ-գունի ցեղին. «Նախնի ազգն» Մամիկոնեանց «ի քաջատոհմիկ եւ ի գլխաւոր աշխարհէ»՝ մը բերին իրենց արիւնի այն սէգ տարրը, զոր Սիսակ բնիկ երկրէն ժառանգած՝ ուռճացուց, սիգացուց Սիսականի բարձունքներուն վրայ։ Քանի մը զուգադիպութիւններ, որոնք ապահովեցին Մամիկոնեանց բնակութիւնը Հայաստանի մէջ, շատ լաւ յարմարեցան այս Ճենացի բնիկներու միտումներուն, յառաջդիմական ձգտումներուն հետ։

---

1 Խորենացին կը շփոթէ Ճենոյէնները (Ճենք) Չէնոյէններու (Չին, Չինաստան) հետ, երբ Մամգունի գաղթը պատմելէ անմիջապէս յետոյ «[illegible]» Չինաստանը կը նկարագրէ։ — Ճենք այն ազգերէն մէկն է, որոնք Խորենացւոյ համար [illegible] են (Խոր. էջ 342 եւ 571) եւ Եղիշէի բացատրութեամբ [illegible] կամ [illegible] (Եղիշէ էջ 10, 11. 73. 100. — Համմ. վերը էջ 213) եւ Հոնք ընդհանուր անունով ծանօթ են պատմութեան մէջ։ Ճենք մօտ են Հայաստանի — «Եւ որք ի [illegible] կողմանս, [illegible] [illegible] [illegible]» (Խոր. էջ 306) — Օրբելեանք ալ այս «[illegible]» ազգէն ծագում առած են. — Համմ. Սեբէոս էջ 11-13. — Ասողիկ Բ. դ. — Օրբել. Բ. — Չ. պատմ. Հյ. Ա. էջ 67. 167. 614. — Սիսական էջ 403։

Թագաւորազն Մամգուն ճիշդ այն ժամանակ վտարուեցաւ Հայ հողին վրայ, երբ բնիկ նախարարներ դաւաճանութիւններ կը նիւթէին Տրդատին դէմ. այս Մեծ Արշակունիին ալ թեւ մ'եղաւ նա՝ ծառայելով անոր իբր հաւատարիմ եւ իբր քաջ։ Սլկունեաց ապստամբութեան բարձումը եւ գրաւումը Հռչակաւոր Ողականին (բերդ) ոչ միայն Տրդատի գահին թշնամիները տկարացուց, այլ եւ հաստատուն բնակավայր մ'որոշեց Մամիկոնեանց (Խոր. Բ. ձգ)։

Այս ցեղին բնիկ իշխանութեան մասին ցուցած հաւատարմութիւնը, ի գործ դրած պաշտպանութիւնը ճիշդ այս ժամանակէն կը սկսի։ Եթէ ուրիշ նախարարութեան մը, զոր օր. Սիւնեաց պէս բնիկ երկիր մը ժառանգած ըլլային, երկիր մը՝ որ իր տեղագրական բոլոր յարմարութիւններով ներշնչէր անոնց ոգի մը, հետեւաբար տեւական ապստամբութեան սկզբնապատճառ մը, անտարակոյս ազգին համար Մամիկոնեանք աւելի ծանր փորձանք մը պիտի ըլլային՝ իբր նախարարութիւն։ Միւս կողմէն անհնար չէր սակայն, իրենց համար ըլլալ նոր Սլկունիք մը, քանի որ անոնց բոլոր երկրին տէր եղան. երկիր մը՝ անառիկ բերդերով պաշտպանուած եւ յարմար ապստամբական շարժումներու։ Գէթ Մեծն Տրդատի եղերական վախճանէն յետոյ՝ Մամիկոնեանք կրնային հետեւիլ նախարարական ուղղութեան, որ աղետաբեր եղաւ երկրին համար. այսինքն՝ դաւել թագաւորի անձին, մատնութիւններ ընել Տիզբոնի կամ Բիւզանդիոնի, դրժումներ ուխտապահական եւ դաշնակցական գործերու մէջ։ Մամիկոնեանց պատմութեան մէջ չկայ այս պատկերներէն եւ ոչ մին։ Այս տոհմը որոշ ուղղութեան մը հետեւեցաւ քաղաքական գործերու մէջ եւ իբր նախարարութիւն, եւ նշանաւոր նախարարութիւն մը, գիտցաւ չինել ներքին ոյժ մը, որուն շնորհիւ երկար ժամանակ

պահեց իր գոյութիւնը, Մամգունի Ճենազէն մինչեւ Գրիգոր Մամիկոնեան, միմիայն Ազգին համար (Ցէ. պատմ. էջ 51 – 52)։

Մամիկոնեանց կրօնական կեանքին մէջ ալ կը տեսնուի միեւնոյն որոշ ուղղութիւնը՝ նոյնչափ հին եւ հիմնական. այնպէս որ ամէն վտանգի հանդէպ, իրենց ժամանակաւոր կամ առ երեւս բոլոր տկարութիւններով միասին, աննուաճ մնալով դիւցազներն եղան այնպիսի շահատակութիւններու, այնպիսի նահատակութիւններու, որոնք մեր ազգային-եկեղեցական պատմութեան ամենէն փայլուն եւ ամենէն փառաւոր թուականները կը կազմեն։ Մամգուն ոչ միայն աջ բազուկ մ՚եղաւ Սէջ Թագաւորին՝ քաղաքական իրերու մէջ, այլ մանաւանդ բաղդաւոր եղաւ Հայոց քրիստոնէական լուսաւորութեան ամենէն թարմ ժամանակին ոտք դնելով Հայ հողին վրայ, ուր դեռ Լուսաւորչի հետքերը չէին անհետացած։ Մամիկոնեանց նախահայրը անտարակոյս շատ սիրով ընդգրկեց կրօն մը, որուն պաշտպան եղաւ Տրդատ, եւ տիրացաւ երկրի մը, որ Հայոց ամենէն նուիրական վայրն էր. Տարօ՛ն, բագիններու եւ մեհեաններու դեռ նոր խախտած կեդրոնը. հո՛ն Աշտիշատ Երեքմեհեան, «Վիշապաքաղ» Վահագնեան Վահէվանեան, Ոսկեհատն Ոսկեմօր ոսկեծին դից, Սենեակն Վահագնի Աստղկան դից, Իննակեան Տեղեաց Գիսանէն եւ Դեմետրէն (Ագաթ. եւ Զեն.), հեթանոսական սրբութիւններու այս կեդրոնն, ուր նոյնքան նշանաւոր եղան քրիստոնէականներն ալ (Բուզ. Գ. ժդ), որոնք դեռ կը խօսին հայ ժողովուրդին Մեծ Նահատակին յիշատակներով։

Շատ խորին տպաւորութիւն մ՚ըրաւ անշուշտ Հայոց կրօնական կեանքին վերականգնումը Մամգունեանց վրայ հոն, ուր Լուսաւորչի մեծագործութիւններուն թատրը միշտ իրենց առջեւ կը պարզուէր. այս է պատճառը՝ որ Մեծ Նահատակին

անունը, վարդապետութիւնը, ուսուցումը իրենց անխորտակելի յարացոյցը եղաւ։ Մեծն Տրդատ եւ Մեծ Նահապետը վախճանեցան, բայց իրենց լուսաւորութեան գործը շարունակուեցաւ իբր երկու զուգահեռական գծերու վրայ. Մամիկոնեանք Տրդատին դերը, իսկ Լուսաւորչեանք Լուսաւորչինը կատարեցին՝ մինչեւ Մեծն Սահակ, որ ազգակցութեամբ ի մի ձուլեց երկու ցեղերը[2]։ Եւ այն յա-

1 Վաչէ Մամիկոնեան՝ Վրթանէս Հայրապետին հետ, Մուշեղ՝ Մեծն Ներսէսի հետ, Համազասպ՝ Մեծն Սահակի հետ ձեռք ձեռքի տուած աշխատեցան. եւ յաջորդ Մամիկոնեանք, երբ դադրեցաւ Լուսաւորչի սերունդը, չթողուցին Անոր յաջորդ գահակալները. Վարդան՝ Յովսէփ կաթողիկոսի հետ եւ Վահան՝ Գիւտ եւ Մանդակունի կաթողիկոսներու հետ միեւնոյն սրտութեամբ եւ եռանդով գործեցին։ Սքանչելի է այս երկու ցեղերուն զուգակցութիւնը, անձնական շահու համար աշխատելու ծիգ մը չկայ անոնց մէջ։ Հայրապետն ու սպարապետը միեւնոյն ոգւով, միեւնոյն գործունէութեամբ կ'աշխատէին ժողովրդեան համար. իրենց բովանդակ նպատակը երկրի բարօրութիւնն է Հայոց աշխարհի համար նահատակեալը եւ կրօնի համար արիւն թափողը նոյն են Լուսաւորչի թոռներու համար. շատ ազատամիտ գաղափար մը (Հմմտ. Բուզ. Գ. ժա)։

2 Մեսրոպ Երէցի համար արդէն Մեծն Ներսէսով ազգակցած են Մամիկոնեանք եւ Լուսաւորչեանք (Սոփերք Զ. էջ 14)։ Ըստ Խորենացւոյ (Գ. ժզ) Ներսէս Կ. Պոլսի մէջ ամուսնացաւ իշխանազունի մը հետ (Հմմտ. [illegible] Ա. էջ 317–319, ծնթ. 2)։ — Ահա այդ ազգակցութեան աստիճանը.



բացոյցը, զոր Լուսաւորչի գործերուն հանդէպ կազմեցին Մամիկոնեանք, Մեծն Սահակի կրթութեան, ներշնչումներու ազդակին տակ առաւել եւս փայլեցաւ։ Արդիւնքը յայտնի է։

Ճենայն Մամգունի տոհմը այսպէս քրիստոնէական անխառն եւ թարմ տարրներու մէջ խմորուած՝ տուաւ ազգին քաջ, հաւատարիմ, վեհանձն, խոհական եւ բարեպաշտ անձնաւորութիւններ. բաց ի իւր նախկին դարու մեծագործներէն, արտադրեց նաեւ վերածնութեան հեղինակներէն մին եւ հերոսներն այն մեծ շարժումին, որ մեր պատմութեան դարագլուխն է։ Առաջին կէտը կը շեշտեմ, Մեսրոպի, Հայաստանեայց Եկեղեցւոյ եւ հայ դպրութեան Առաջին եւ Մեծ Վարդապետին անուան հետ[1]։ Մեսրոպ իբր ծնունդ Մամիկոնեան՝ Լուսաւորչեան ծնունդի մը հետ զուգակցած՝ շատ լաւ պատրաստեցին ինչ որ ազգի մը յառաջդիմութեան, լուսաւորութեան, քաղաքակրթութեան պայմանն է։ Իսկ հերոսներուն՝ Մամիկոնեանց՝ նշանակութիւնը բացատրելու համար երկու ցեղերը հարկ չկայ բաղդատել իրարու հետ. բաւական է որ մեր ուշադրութենէն չվրիպի այս համագործութեան սկիզբը, որ Տրդատի դարագլխով կը նշանակուի։

Մամիկոնեանք, որ հայութեան մեծագործութիւններն ստեղծելու կոչուած էին, չթերացան իրենց կոչումին մէջ. իբր հայ՝ աւելի քան հայ՝ քրիստոնեայ Հայաստանի բարգաւաճութեան

---

1 Կորիւն էջ 6. — Պօղ. Ցեղ. Բ. էջ 523. — Մ. Էմին (ուսկից նաեւ Գ. Խալաթեան) նոյն կարծիքը պաշտպանած են։ “Հայոց Գիրին„ հեղինակը “բաւական„ չի համարիր Էմինի յառաջ բերած պատճառաբանութիւնը. “վասն զի Հացեկաց գիւղի բնակիչ մի պարզ գիւղացի եւս կարող էր Վարդան կոչուիլ. սակայն այսու ամենայնիւ մեզ եւս հաւանական է թուալ, որ Սուրբ Մեսրոպն ազնուական ընտանիքէն լինէր„ (Հայոց Գիրը, էջ 388–389)։

համար իրենց տոհմային նկարագրին բոլոր տրամադրութիւնները կէտ առ կէտ գրեթէ յաջողեցան գործադրել: Պապ, որ հակառակ տոհմային պատմագրութեան, շատ ընտիր գծերով կը նկարագրուի արտաքին պատմիչներէն, ճշգրտիւ եւ գուրգուրանքով կը յայտնէր իր հիացումը Մամիկոնեանց մասին, երբ շատ մը քսուներ կ'ուզէին վնասել Մուշեղ զօրավարին՝ հետեւաբար այս Մեծ սպարապետի ցեղին, գժտութիւն ձգելով թագաւորի եւ թագաւորութեան այս անձնուէր պաշտպանին մէջ: Պապ գիտէր սակայն, թէ Մամիկոնեանք “[illegible]„ ցեղ մըն էին Արշակունեաց պէս. գիտէր թէ “[illegible]„ Վասակ իր կեանքը զոհած էր Հայոց ամենէն լաւ թագաւորի մը համար. գիտէր վերջապէս, թէ Մուշեղի նախնիքը՝ իր նախնեաց քով եկած եւ անոնցմէ բարձր տեղ մը գրաւած էին ազգին մէջ եւ միշտ բարեկամ եւ միշտ պաշտպան եղած էին Արշակունի գահին: Արդարեւ՝ Արշակունեաց գահը երբ նախարարական քմահաճոյքներու տակ կ'երերար Մամիկոնեանք եղան միակ նեցուկը եւ իրենց այդ սրտեռանդն զոհողութիւններուն մէջ զօրաւոր հակառակութիւններու հանդիպեցան. գահին թշնամիները իրենց ալ սկսան դառնալ. թագաւորութիւնը բաժնուեցաւ հակառակ Մամիկոնեան քաղաքականութեան, եւ սկսան այն տարուբերումները, որոնց մէջ Մամիկոնեանք մտատանջուեցան ամենէն աւելի եւ ամենէն աւելի վտանգ կրեցին:

Հայ պատմագրութեան Մամիկոնեանց նուիրած էջերը, որոնք մէյ մէկ ներբողներ են, թոյլ չեն տար մեզ բան մ'աւելցնել անոնց վրայ. Բուզանդ, Ղազար, Եղիշէ ամենէն ընտանի եւ ամենէն սքանչելի ներբողներ հիւսած են անոնց դիւցազնական քաջագործութիւնները արտայայտող: Մենք պէտք է հետաքրքրուինք սա խնդրով՝ թէ այս քաջագործութիւնները ի՞նչ արժէք ունին հայ պատմա-

թեան մէջ. ուրիշ խօսքով Երդ դարու Մամիկոնեանց հետեւած քաղաքական ուղղութիւնը կարելի՞ է մոլեռանդութիւն մը համարիլ:

Հաստատական պատասխանը շատ դիւրին կու տան անոնք՝ որ Սիւնեաց, լաւ եւս Վասակի հետեւած ուղղութիւնը կը պաշտպանեն՝ իբր ազգօգուտ քաղաքականութիւն մը: — Ըսինք արդէն նախորդ գլուխներու մէջ՝ թէ Սիւնիք հաւատարիմ իրենց երկրին բնական պահանջներուն՝ բոլորովին տարբեր նկարագրի, տարբեր ուղղութեան տէր մարդիկ են. եւ այդ բնական դիրքին մէջ Պարսից մօտաւորութիւնն է որ զիրենք կը կապէ Տիզբոնի, միշտ ձկտեցնելով սակայն իրենց տեղագրական ներշնչումներուն գործադրութեան, միշտ տիրապետելու, առաջին ըլլալու տենչին: Դիտեցինք նաեւ թէ Վասակ իբր Սիւնեաց ծնունդ՝ հաւատարիմ չմնաց իր նախնեաց ուղղութեան. ոչ միայն Սիւնեաց երկրին եզական հանգամանքները, այլ մանաւանդ իր տարօրինակ կարողութիւնները շատ հեռուն տարին զինքը. այնպէս որ անոր բռնած ընթացքը դարու շարժումին մէջ կարելի չէ պաշտպանել իբր ազգին նպաստաւոր քաղաքականութիւն մը եւ ոչ ալ ենթադրել՝ թէ Վարդանանք եւ Վասակեանք իրարու հակառակ երկու ուղղութեան կը հետեւէին. ասի գիւտ մ'է որ տրամագծապէս կը հակառակի թէ՛ դարու ոգւոյն եւ թէ՛ պատմութեան իմաստասիրութեան:

Այսպէս դիտելով Սիւնեաց եւ Վասակի ուղղութիւնը, քննենք՝ թէ ինչ սկզբունքով գործեցին Մամիկոնեանք եւ Վարդանանք:

Մամիկոնեանց Հայաստան գալէն ետքը երկրին զինուորական ոյժը գրեթէ իրենց ձեռքը մնաց. այնպէս որ Սպարապետութիւնը իբր տոհմանուն տրուեցաւ իրենց եւ (ցեղ) սպարապետութեան բացատրութիւնը Մամիկոնեանց Տուն կը նշա-

նակէր[1]։ Անոնք այս ոյժը ամէն ժամանակ խաղաղասիրական եւ աշխարհաշէն խորհուրդներ իրականացնելու գործածեցին՝ պաշտպանելով երկիրը թէ՛ ներքուստ թէ՛ արտաքուստ։ Իրենց նպատակը եղած է միշտ երկրին շահը։ Սպարապետութիւնը չարաչար գործածելու ձգտում չունեցան երբեք եւ իրենց ամենէն նշանաւոր ներկայացուցիչներն իսկ՝ ամէն յարմարութիւն առձեռն ունենալով հանդերձ՝ չզեղծան Հայոց Մարզպանին պէս։ Նախարարական խռովութիւններ, որոնց մէջ կը տառապէր արքունի գահը, Մամիկոնեան մեծ զօրավարներու ձեռքով կը հանդարտէր։ Վաչէ՝ Փոքր Խոսրովու ամենէն վստահելի մարդն էր եւ ներքին մեծ վրդովումները նա խաղաղեցուց (Թուզ. էջ 9)։ Վաչէն էր դարձեալ որ իր զինակիցներով՝ երբ

---

[1] Բուզ. Գ. դ. — Զինուորութիւնը՝ իբր ամենէն զօրաւոր տարրը երկրին՝ Մամիկոնեան սպարապետներու ձեռքին տակ նախանձելի ոյժ մ'առաւ, մանաւանդ Այրուձին, որ միշտ հռչակաւոր եղած է նոյն իսկ օտարներու առջեւ, հրաշքներ գործեցին Մամիկոնեան կրթութեամբ. այնպէս որ ամէն հայ հեծելազօր կրնար Մուշեղին պէս ըսել “Բոյց էշրէ– էհօռ էնչ մահը, Նէ է վէրոյ յէրոյ դէղեւոլ էրո (Բուզ. էջ 244)։ Զարմանալի կրթութիւն մը տուած էր Մուշեղ իր գունդին. Արշակի եւ իր հօր Վասակին կսկիծը կը գալարէին այս տիրասէր Սպարապետին եւ զինուորներուն աղէքը. Վասակին վրէժը խոտիւ լուծեց (անդ էջ 192). իսկ “Ա– Արշակ խօղո եւ “Արշակոյ ղոհ ւէլէրո՝ եռանդուն աղաղակներուն մէջ կենդանացուցին Արշակը։ Շապուհ զարմանքի մէջ գամուած էր — “Մոլեկան գունդն Մուշեղեան, զի ինձ այսպէս թուէր՝ եթէ հուր բոց ի գնդէն ելանիցէր եւ ի նշանացն, եւ իբրեւ ի հուր հրդեհի այնպէս անցանէր ընդ գունդն որպէս բոց ընդ եղէգն... Այլ ասէր, Էրանի՛ որ Հայոց ֆնդէն ոէր էջէր։ — Այրուձիին հզօր կազմակերպութեան համար էր որ Յուլիանոս (Ուրացող) իր Շապուհ Բ.ի դէմ պատերազմներուն մէջ Հայոց գունդը օգնութեան կանչելը պատիւ կը համարէր եւ իր զօրավարներուն կը հրամայէր. որ Արշակի (Բ) գունդով միասին գործեն (Պատմ. Տիզ. Բ. էջ 493–494)։

Մաղքութք կ՚ասպատակէին եւ երկիրը Սանատրուկի եւ Բակուրի ապստամբութիւններով կ՚երկպառակէր, երկպառակում՝ որուն ույժ կու տար նենգամիտ Շապուհ, այդ ահագին զօրութեան դէմ դրաւ եւ ընկաւ նոյն պատերազմի շարունակութեան մէջ “Մեծ սպարապետն Հայոց Վաչէ, եւ լինէր ամենայն աշխարհին առաջի անձնուրէն, զի բազում անգամ էր Տեառն փրկութիւն տուեալ Հայոց ի ձեռն նորա„ (Բուզ. էջ 26—29)։ Արթանէս կաթողիկոս այդ համաշխարհիկ սուգը կը փարատէր Մեծ զօրավարի յիշատակին տօն հաստատելով եկեղեցւոյ մէջ (նոյն անդ). եւ անոր որդւոյն՝ մանուկն Արտաւազդին կը յանձնուէր սպարապետութիւնը. “զի որդի վաստակաւորի էր, եւ ի վաստակաւոր ազգէ. զի այլ յաղթէին ոչ գտանէին, զի է մեծ պատերազմին ձեռն„ (անդ էջ 28)։ Խորով թէեւ չունէր իւր հօր՝ Սէգն Տրդատի՝ քաջութիւնը, բայց արժանի զաւակ մ՚էր անոր իւր ուրիշ յատկութիւններով. երբեք չնախանձեցաւ Վաչէի խումբին յաջողութիւններուն վրայ, զի ասոնք եղան երկրին ազատարարները եւ նեցուկն իւր գահին (Պոմ. Տէղ. Բ. էջ 485)։

Զօրավարք (Մամիկոնեանք) Արշակի անգթութիւններէն նեղացած՝ պահ մը քաշուեցան “յամուրս Տայոց„, անոր տարապարտ կոտորածէն ազատելով Ռշտունեաց եւ Արծրունեաց տոհմերէն մէկ մէկ շառաւիղ։ Մեծցուցին մանուկները, պսակեցին իրենց աղջիկներով (Բուզ. Գ. ժը)։ Արծրունիք եւ Ռշտունիք՝ Մամիկոնեանց կը պարտին իրենց գոյութիւնը։ — Այսպիսի պաշտպանութիւններ կը ցուցընեն՝ թէ Մամիկոնեանք որչափ ազնիւ եւ բարձր զգացումներ ունէին, հեռի այն նախարարական ատելութենէ, որ շարունակ կը սպառնար իրարու սերունդին դէմ։

Շատ զգալի եղաւ սակայն պէտքը “Տոհմին զօրավարաց„. Արշակ (Բ) գտաւ զանոնք. Վարդան

*եւ Վասակ Մամիկոնեաններուն յանձնեց Սպարապետութիւնը*[1]*։ Վասակ սկսաւ իր քաջագործութիւնները Յունաց դէմ* (Բուզ. էջ 107) *եւ Տիգրանի արքունիքին մէջ նախանձախնդրութեամբ փոխուեց իր բնիկ թագաւորին անարգողը* (տես էջ 128—129)*. եւ այն ներքին անվստահութեան մէջ, որուն ենթարկեցին նախարարք երկիրն ու գահը՝ ապստամբելով Արշակին դէմ, մանաւանդ երբ Մերուժան եւ Վահան Պարսից կողմ անցնելով՝ զօրավիգն եղան Շապուհի ասպատակութիւններուն, Վասակն էր դիմագրաւողը* (Բուզ. Դ. իգ, իդ, խե—ծա)*։ Այս սարսափելի ընդհարումին մէջ, ուր թշնամիները ներսէն եղան, Շապուհ անճարացաւ եւ դաւանքի դիմեց. Վասակ թոյլ չտուաւ, որ Արշակ բռնուի այդ թակարդէն. երբ վերջապէս Շապուհի երդումներէն եւ նախարարներու ստիպումէն բռնադատուած Արշակ եւ Սպարապետ, այն միայն Սպարապետ, իր թագաւորին հաւատարիմը, ընկան Տիզբոնի խորխորատին մէջ. դաւաճանն Շապուհ կախարդական արհեստի փորձերէն անցնելէ յետոյ Արշակի հայրենասիրութիւնը, անյուսութեան դատապարտեց զանի Անդմշն բերդի մէջ երկաթեայ կապանքներու տակ* (Բուզ. Դ. ծբ—ծդ)*։ Վասակը անմիջապէս մորթել հրա-*

---

1 Բուզ. Դ. բ. «Նոյնպէս սպարապետութեան սպարապետութեանն զօրավարութեանն մարդ [illegible], [illegible] ... [illegible] մամիկոնեան ազգէն, ի վերայ [illegible] ... ի վերայ ամենայն զօրաց զօրավարութեանն [illegible] Հայոց Մեծաց, հանապազ յամենայն ժամ յաղթող [illegible] ... ի մեծ նահատակութեան [illegible]։»

մայեց. Շապուհ շատ ծանր հարուածներ կրած էր այս "անձամբ փոքրիկ" մեծ զօրավարէն, զոր Աղուէս կ'անուանէր իր ցաւերու ժայթքումին մէջ — "դու էիր խռովարարն որ այդչափ աշխատ արարեր զմեզ դու ես այն՝ որ կոտորեցեր զԱրիս այդչափ ամս"։

---

1 Բուզ. Դ, ծդ. — Շապուհի եւ Վասակի այս վերջին տեսակցութիւնը, զոր ըստ ինքեան կարելի չէ չինծու նկատել, կը դնենք այս տեղ ցուցնելու համար Վասակի, հետեւաբար Մամիկոնեանց ոգին, որոնք միշտ երկիրը չէին պահել ու զիջին, Պարսիկներն ու Յոյները ոտքի տակ կոխկռտելու համարձակութիւն ցոյց տալով. — "Եւ եղեւ ի վաղիւ անդր ետ հրաման Շապուհ արքայ, ածել զառաջեաւ իւր զՎասակ Մամիկոնեան զզօրավարն սպարապետն Հայոց Մեծաց. սկսաւ պատուհասել զնա, քանզի էր Վասակ անձամբ փոքրիկ. ասէ ցնա արքայն Պարսից Շապուհ. Աղուէս, դու էիր խռովարարն՝ որ այդչափ աշխատ արարեր զմեզ. դու ես այն՝ որ կոտորեցեր զԱրիս այդչափ ամս, եւ զի՞ փորձես. զմահ աղուեսու ածից զքեզ։ Իսկ Վասակ տուեալ պատասխանի ասէ. Այժմ քո տեսեալ զիս անձամբս փոքրիկ, ոչ ունէր զչափ մեծութեան իմոյ. զի ես ցայժմ ես քեզ առեւծ էի, եւ արդ աղուէս։ Բայց մինչ ես Վասակն էի, ես հսկայ էի. մի ոտն ի միոյ լերին կայր, եւ միւս ոտն իմ ի միւս լերին կայր. յորժամ յաջ ոտնս յենուի, զաջ լեառն ընդ գետին տանէի. յորժամ ի ձախ ոտնն յենուի, զձախ լեառն ընդ գետին տանէի։ Ապա հարցանէր թագաւորն Պարսից Շապուհ եւ ասէ. Ուղէ տուր ինձ գիտել. ո՞վ են լերինքն այնոքիկ՝ զորս դու ընդ ունջ տանէիր։ Եւ ասէ Վասակ. Լերինքն երկոքեան, մի դու էիր, եւ մի թագաւորն Յունաց։ Այն մինչ տուեալ էր ինձ Աստուծոյ, զքեզ ընդ գետին տանէի եւ զթագաւորին Յունաց, մինչեւ օրհնութիւն հօրն մերոյ Ներսէսի հանգուցեալ էր ի վերայ մեր, եւ Աստուծոյ զմեզ ի ձեռանէ չէր թողեալ. մինչեւ զնորա բանն արարաք, եւ խրատ նորա [illegible] առ մեզ, [illegible] տեղ խրատ. մինչեւ մեղքն [illegible] անկաք ի խորխորատ։ Արդ զինչ եւ կամիս արա։ Ապա եւ հրաման թագաւորն Պարսից մորթել զզօրավարն Հայոց Վասակ, եւ զմորթն հանել եւ լնուլ խոտով, եւ տանել ընդ նոյն-

Վասակ մորթուեցաւ եւ անոր խոտալից տիկն էր ալ Արշակի պաշտպանը։

Նախարարական դժգոհութիւններու, քմահաճոյքներու զոհ գացին Թագաւորն ու սպարապետը։ Վասակի համար շատ դիւրին էր միաբանիլ նախարարներուն հետ եւ գործել աւելի ուժգնութեամբ, քանի որ ինքն էր զօրավարը։ Բայց նա չխոտորեցաւ այն ճամբէն, որ միշտ պատուաբեր եղաւ Մամիկոնեանց Տան համար, թէեւ բանագործութիւններով պսակուած։

Մամիկոնեանք պարապ չթողուցին գահը. Մուշեղ, Վասակի որդին, Յունաց օգնութեամբ թագաւորեցուց Պապը՝ հակառակ Շապուհի կործանիչ դիտումներուն. անկից ծագում առաւ այն սարսափելի պատերազմներուն շարքը, զոր Շապուհ անձամբ մղեց Մերուժանի առաջնորդութեամբ Հայոց դէմ, եւ Մուշեղ ազատեց երկիրը անոնց արհաւիրքէն։ Այս պատերազմները որչափ սաստիկ եղան եւ անընդհատ, Մուշեղ այնքան Սպարապետի կատարեալ վեհանձնութեամբ վարուեցաւ իւր թշնամիներու գլխաւորներուն հետ. — Շապուհի հայ ազատանի տիկիններուն ըրած թշնամանքին փոխարէն (Բուզ. Դ. ծը) ժանուարներով՝ ողջ անարատ ղրկեց անոր իւր գերուած կիները. Շապուհ մոռցաւ իւր կրած հաստոյր հարուածներն այս վեհանձնութեան հանդէպ[1]։

---

բերդ յԱնդմըշն՝ որ Անյուշն կոչեն. ուր արգելին իսկ զթագաւորն Արշակ»

[1] Բուզ. Ե. բ. — «Իսկ թագաւորն Պարսից զարմացեալ ընդ բարերարութիւնն Մուշեղի եւ ընդ քաջութիւնն եւ ընդ ազատութիւնն, զի ոչ արար ինչ նմա յաղագս կանանցն թշնամանս։ Եւ էր ի ժամանակին յայնմիկ երիվարն Մուշեղի, ճերմակ ձի մի. իսկ թագաւորն Պարսից Շապուհ յորժամ առնոյր գինի ի մատունսն ըմպել, յորժամ ուրախութեանն իւրոյ խրախութիւնս առնէր զօրացն իւրոց, ասէր. Ճերմակաձին գինի արբցէ։ Եւ ետ նկարել

Պապ չարախօսներու դրդումով երկար ժամանակ ծուռ աչքով կը դիտէր խոհուն սպարապետին արարքը. Մուշեղ կը վստահեցնէր սակայն թագաւորը՝ թէ “Մեռայց ի վերայ քո... բայց միայն չարախօսացն ունկն մի դնիցես„ (Բուզ. էջ 194, 198—199)։ Մուշեղ միեւնոյն վեհանձնութեամբ վարուեցաւ Ուռնայրի հետ ալ. ամբաստանութիւններ սաստկացան. Պապ՝ ամօթահար Սպարապետի նրբամիտ բացատրութեանց հանդէպ՝ խանդաղատանքով եւ արցունքով կ'ընդգրկէր իր զօրավարը եւ առատապէս կը վարձատրէր (անդ էջ 202—204)։ Մուշեղի վեհանձնութիւնը քաջութեան մէջ՝ նպաստաւոր եղաւ ոչ միայն իր թշնամիներուն համարումը գրաւելու, այլ մանաւանդ օգտուելու անոնց բարեկամութենէն (անդ Ե, ե)։

Մուշեղի բոլոր հոգն ու մտածութիւնը արշակունի թագին պաշտպանութիւնն էր եւ թագաւորութեան թշնամիները նուաճելու կը ճգնէր (անդ Ե, ը), երբ Տիզբոն եւ Բիւզանդիոն Հայոց աշխարհին համար մարտ կը մղէին. Պապ կը դաւաճանուէր ոչնածեալ ընթրիքի մը միջոցին (Պատմ. Տիզ. Բ. էջ 506—509). Վաղէս կը խնդար, Հայք ընկած էին վիճակի մը, ուր Մուշեղի խորհրդով կ'ըսէին՝ թէ “Ոչ կարեմ հեթանոսաց եւ պղծոց եւ ծառայութեան մտանել, եւ թշնամի առնել զԹագաւորն Յունաց. եւ ոչ զերկոսեան թշնամի առնել, եւ ոչ առանց միոյ թիկանց կարեմ կեալ„ (Բուզ. Ե, լգ) — վասն զի երկու Տէրութեանց քաղաքական դիտումներն ալ միեւնոյն էին եւ Հայոց համար տարբերութիւն չունէր այս կամ այն կողմը յարիլ։ Յունաց գերիշխանութիւնը բնական էր այդ միջոցին, որով-

---

զտաշս ի պատկեր զՄուշեղ ճերմակաւն, եւ ի ժամ ուրախութեան իւրոյ դնէր զպաշտն առաջի իւր. եւ յիշէր հանապազ զնոյն բանս ասելով՝ թէ ճերմակաձին գինի արբցէ„։ Հմմտ. Փրպ. էջ 496։

հետեւ թէ Պապը եւ թէ Վարազդատը անոնք թագաւորեցուցին. Մուշեղ այս ժամանակաւոր քաղաքականութեան հետեւեցաւ եւ խորհուրդտուաւ երկիրը ամրացնելու օտար ձգտումներու դէմ (Բուզ. Ե, լդ)։ Մուշեղի ռազմագիտական ծրագիրը շատ յաջող էր, նախարարներ խուչուխութեղան անոր գործադրութեան. Բայց՝ բանսերթուկ Վարազդատին դայեակը՝ «չինչ յանցաւոր էր» ուզեց Մուշեղին փառքը. փառք մը, որ թագաւորական ճոխութեան մը հասած էր՝ շնորհիւ իր վեհանձն քաջագործութիւններու։ Կոչունքի դաւաճանութեան այս մեծ զօրավարն ալ զոհուեցաւ, մի միայն վեհանձն, քաջ, տիրասէր, քաղաքագէտ ըլլալուն համար։ Տնեցիք չէին հաւատար որ Մուշեղ մեռած ըլլայ[1]։

Մանուէլ, որ նոյնպէս պաշտպան էր Արշակունի թագին, նոյն իսկ Վարազդատը իբր ոչ Արշակունի անարգելու չափ յառաջ գնաց, Պարսից կողմ յարեցան Զարմանդուխտի (Պապի կինը) հետ խորհրդակցելէ ետքը։ Մանուէլ Տիրբոնի օգնութեամբ էր որ Արշակը փեսայացուց իրեն եւ թագաւոր ըրաւ երկրին։ Նա հակառակ իր կամքին՝ մահճի մէջ մեռաւ փոխանակ պատերազմի դաշտին. մեծ ցաւ մ'եղաւ այդ մահը այնպիսի զօրավարի մը. որ իւր մանկութենէն ի վեր պատերազմի մէջ սնած էր եւ «տան ղերամ խոյծ ոչ գտանէր ողջ ի մարմնի նորա[2]»։ Մանուէլ Մուշեղի

---

1 Բուզ. Ե, լե, լզ. — Տես մանաւանդ Ի. «Ցաղագս Մուշեղի Սպարապետին Հայոց», ուր պատմագիրն այնչափ ճիշդ կը խօսի, որչափ Մամիկոնեանք ըրած են երկրին համար։

2 Մուշեղի վրայ սպի մ'իսկ չկար. ընդհակառակը Մանուէլի մարմնին վրայ ողջ տեղ չէ մնացեր. այս պատմածներու մէջ որչափ ալ հակադրական մաս մը նկատենք՝ իրողութիւնն նոյն է, թէ սոնք պատերազմի մարդիկ էին. կրնային ողջ ալ ելլել մարտէն եւ կը վիրաւորուէին՝ առանց լքուելու։

նկարագիրն ունէր. մահուան անկողնէն երբ իր Արտաշիր որդեկին տուաւ Սպարապետութիւնն ու Մամիկոնեանց Տանուտէրութիւնը, իրենց տոհմին նշանաբանը կտակեց անոր. — “Հնազանդ հպատակ կալ արքային Արշակայ, եւ լինել միամիտ. ջանալ եւ վաստակել, եւ տալ պատերազմ փոխանակ աշխարհին Հայոց զանձն քո, որպէս քաջ նախնիքն ի վերայ աշխարհին մտադիւր մեռանել...: Անուն քաջութեան յերկրէ թողցուք, եւ շնորհաւորութիւն յերկինս ընծայեցուցանէք. եւ ամենեւին ի մահուանէ մի երկնչիք, այլ յուսասջիք յայն, որ զամենայն արար եւ հաստատեաց„ (Բուզ. Ե, լէ—խդ): Մանուէլի մահը թագաւորութեան բաժանումը բերաւ — “յետ մահուան Մանուէլի զօրավարին Հայոց ոչ էր կարող հաստատել ի վերայ աշխարհին թագաւորութեանն Արշակայ„ (անդ Զ. ա):

Մամիկոնեանց մասին ուրիշ մանրամասնութիւններ կը թողունք Բուզանդի եւ Մեսրոպ Երէցին: Ինչ որ քաղուածօրէն յառաջ բերինք պիտի ծառայեն մեզ իբր անցք Վարդանանց խնդրին, որոնց ուղղութիւնը Մամգունէն կը սկսի, մեր մատնանիշ ըրած սպարապետներու գործերով կը հաստատուի. իսկ Վարդանանք եւ Վահանեանք հաւատարիմ նոյնին կը նուիրագործեն զայն իրենց նահատակութիւններով:

Վաչէ, Վասակ, Մուշեղ, Մանուէլ, որոնց կեանքը գործունէութիւն է համակ, երբեք չեն կուրցած Տիզբոնի կամ Բիւզանդիոնի պաշտպանութեան հրապոյրով, ոչ ալ սարսափած են անոնց սպառնալիքներուն հանդէպ. որովհետեւ թէ՛ պաշտպանութիւնը, թէ՛ սպառնալիքը իրականապէս երկիրը ճնշելու համար էր. թէ՛ Շահը թէ՛ Կայսրը կ'ուզէր բացարձակ ճնշող ըլլալ. իսկ բացարձակ տիրապետութիւնը ոչ միայն տեւական պատերազմի սկիզբ պիտի ըլլար Պարսից եւ Յունաց մէջ, այլ մանաւանդ նախարարութիւնը թոյլ պիտի չտար տիրապետութեան մը, որ վնասակար

էր իր շահուն։ Տիզբոնի ու Բիւզանդիոնի երկու հակառակ հոսանքներուն մէջ տարուբերուած երկրի մը համար, յիրաւի, տարբերութիւն մը չկար, կրնային որ եւ է կողմ յարիլ վերջնապէս։ Բայց իրաց այս վիճակին մէջ, քանի որ կանգուն էր Արշակունի գահը, Մամիկոնեանց նպատակը եղաւ զայն պահելու միջոցներուն վրայ խորհիլ. ոչ մէկ կողմը կրնային թշնամի ընել. ահա այս է պատճառը, որ մերթ Տիզբոնի կը յարին, մերթ Բիւզանդիոնի պաշտպանութիւնը կը խնդրեն, մերթ կ'ապստամբին թէ Շահին եւ թէ Կայսեր դէմ։

Բնիկ իշխանութիւնը պահպանելու համար Մամիկոնեանց ի գործ դրած քաղաքական ուղղութիւնը շատ ուղիղ էր, եւ երկրին շահը մտածող ամէն նախարարութեան նպատակն ալ այդ պէտք էր ըլլալ։ Բայց ամէն նախարար Մամիկոնեան սպարապետներուն պէս չէր խորհեր։ Անոնք պատերազմի դաշտին վրայ մեռնիլ կը փափաքէին. երկրի անկախութեան, բնիկ թագաւորներու կեանքի պահպանութեան, եկեղեցւոյ ազատութեան համար եւն, եւն, հոգի կու տային. իսկ ուրիշներ իրենց հանգստութիւնը չվրդովելու համար պատերազմի աշխատանքը հեռացնել կ'ուզէին Արշակունի գահուն տապալումով. անոնք օտարներէն կը վարձատրուէին առանց արիւն քրտինք թափելու. Մամիկոնեանք երկրի համար վաստակելով բնիկ թագաւորներէն կը վարձատրուէին լիառատ. եւ այս՝ նախանձ կը գրգռէր, չարախօսութիւններու, մատնութիւններու տեղի կու տար։ Մամիկոնեանց դիրքը շատ վտանգաւոր էր, ոչ միայն երկիրը պիտի պաշտպանէին Յունին կամ Պարսկին դէմ, այլ նաեւ նախարարական հակակիր ոյժին, ներքին յուզումներուն հանդէպ անկուն պարտէին մնալ. ասոր համար անհրաժեշտ էր քաջութիւն եւ խելք. այս ձիրքերուն աւելի եւս պէտք կար՝ երբ անչափահաս

ըլլային Արշակունի գահակալներ։ Եւ Մամիկոնեանք յաջողեցան ցուցընել, փայլեցնել այս ամէնը. իսկ իրենց վարձատրութիւնը եղաւ դաւանք եւ հալածանք — — ուրիշ նախարարութիւններէն, եւ Վարազդատի նման ապաշնորհներէ։

Մեր նպաստաւոր հայեացքը՝ արձագանգը չէ պատմութեան, որ ընդհանրապէս ներբող մ'է։ Միտ դնելով նախարարական շարժումներուն, աննպաստ եզրակացութեան մը կարելի չէ յանգիլ՝ Մամիկոնեանները պատկերացնելու համար. եւ այս եզրակացութիւնն է անշուշտ, որ պատմագիրները մղած է ներբողներու մէջ շրջանակել այս դէմքերը, առանց պքօղելու սակայն, թէ անոնց մէջ Վարդան մը կայ, մեղսակից Գնէլի եղերական սպանութեան, եւ Վահան մը՝ գործակից Մերուժանին, եւ միանգամայն թշնամիներ Արշակունի գահին (Բուզ. Դ, ժա, ժե, ժը — ծ, ծը, ծթ)։

## ԳԼՈՒԽ Ե.

## ՎԱՐԴԱՆԱՆՔ

Վարդանի կամ Վարդանանց գործերը դժուարութիւն մը չեն յարուցաներ Վասակի կամ Վասակեանց գործերուն նման. այնպէս որ եթէ քննական տեսութիւններ կրնան Վասակի արարքներուն մէջ մեղմացուցիչ պարագաներ մատնանիշ ընել, դէթ Վարդանի կարմրութեան ստուերած բերող էական կէտ մ'ալ չեն կարող ցուցընել մեզ՝ դարուն մեծ շարժումին մէջ։ Ահա այս պարագայն, որ արդէն երանգ երանգ նկարուած է Փարպեցու եւ Եղիշէի գրիչներով, թոյլ չտար աւելի բան մ'ըսել իբր ջատագովութիւն։

Բայց մանաւորապէս ուշադիր ըլլալու պարագաներ կան Երդ դարու այս դիւցազնի գործերուն մէջ, որք ըստ ինքեան հաշտ ըլլալով հանդերձ պաշտպանուած դատի ոգւոյն հետ, արդիւնք կը հա-

մարուին կրօնական մոլի նախանձայուզութեան մը։ Այս նախանձայուզութիւնը, իբր յունասիրութիւն՝ քաղաքական տեսակէտով եւ հանդէպ Վասակեան քաղաքականութեան՝ կը դատապարտուի (վերը եր. 286—288)։

Այսպիսի դատաստանի մ՚անտեղութիւնն արդէն ինքնին երեւան եկաւ, երբ հերքեցինք Վասակեան քաղաքականութիւնը, եւ մեր հերքելու բնական պատճառներն այժմ առաւել եւս կը շեշտուին՝ երբ դիտենք Մամիկոնեան քաղաքականութեան ընթացքը, որու վրայ բաւական խօսեցանք։ Այս մասին մեր դիտողութիւնները ամբողջացնելու համար դիտել կու տանք թէ Վարդանանց նախորդներն իբր ջերմ Հայ-քրիստոնեայ ցոյց չտուին երբեք այնպիսի յունամոլութիւն մը, զոր քննադատք կ՚ուզեն տեսնել Վարդանանց վրայ։ Վարդանանց նախորդներն ոչ Պարսից կ՚ուզէին զոհուիլ ոչ ալ Յունաց։ Արշակունի գահին, երկրին, եկեղեցւոյն շահերու պաշտպանութեան համար երկու կողմերուն ալ յարեցան։ Երբեմն միայն մէկուն գերիշխանութիւնը ճանչցան եւ զինուեցան միւսին դէմ, եւ փոխադարձաբար։ Այս ընթացքը ամբողջ նախարարութեան յատուկ է։ Նախարարութիւններէն շատեր իրենց շահին տեսակէտով մերթ ընդ մերթ այս կամ այն կողմը կ՚անցնէին՝ ապստամբելով բնիկ թագաւորին դէմ. Մամիկոնեանք չունեցան այսպիսի շահախնդրական դիտում մը. այնպէս որ առանց Մամիկոնեանց մասնակցութեան ալ՝ նախարարք Յունաց դիմեցին (Բուզ. Գ. իա)։ Պապ՝ որ կայսեր պալատը մեծցած եւ անոր ձեռօք թագաւորած էր՝ ապստամբեցաւ անոր դէմ եւ Շահի կողմն անցաւ (անդ. Ե. լբ)։ Իսկ Մամիկոնեանք շատ անգամ մարտ մղեցին ընդդէմ Յունաց. երկու կողմերն ալ շահիլ կամ, ի հարկին, մին շահիլ միւսին հարստահարութենէն ազատելու համար երկիրը՝ բնական

բերումն է դերիշխաններ ունեցող երկրի մը, եւ որովհետեւ դերիշխան ձեռքեր՝ ամէն պարագայի մէջ՝ ըլլայ Պարսիկ, ըլլայ յոյն, գրաւել կ'ուզէին Հայոց աշխարհը — ինչպէս որ վերջ ի վերջոյ յաջողեցան բաժանումով տկարացնել — նշանակութիւն չունէր կրօնի խնդիրն ու խտիրը։ Յոյնը եթէ կրօնի նոյնութեամբ նուաճել կ'ուզէր Հայերը, պարսիկը՝ իր կրօնին ու իշխանութեան տակ միանգամայն կ'ուզէր ճնշել։ Բայց այս չէ խնդիրը. Մամիկոնեանք երկու տէրութեանց ալ նպատակը քաջ գիտէին եւ չէին գոհուիր ո՛չ Տիզբոնի, ո՛չ ալ Բիւզանդիոնի։ “Անձամբ փոքրիկ„ն Վասակի, հետեւաբար եւ Մամիկոնեանց համար երկու լեռներու նմանութիւն մ'ունէին Պարսիկն ու Յոյնը. անոնք կրնային կոխել այդ լեռներուն՝ գետնի տակ անցնելու համար[1]։ Այն բացատրուած այլաբանութիւնը որչափ ալ հպարտ — թերեւս ոմանց համար անհաւատալի — ձեւ մ'ունենայ, բայց շատ ստոյգ է. եւ այսպիսի բացատրութիւն կարող էին տալ նոյն իսկ ուրիշ նախարարութեանց ներկայացուցիչներն ալ՝ եթէ Մամիկոնեանց պէս փարած ըլլային բնիկ երկրի փառքերուն եւ վտանգներուն։

Արշակունի գահին նեցուկներն, ուրեմն, ունեցած են քաղաքական ուղղութիւն մը, որ միակողմանի չէ։ Թերեւս կրնայ առարկուիլ, որ դէպ ի Բիւզանդիոն մերձեցումներ աւելի աչքի կը զարնեն քան դէպ ի Տիզբոն։ Դիտել կու տանք թէ Մամիկոնեանց յունական հողերու սահմանակցու-

---

1 Բուզ. Դ. ծդ. — Այսպիսի համոզումներու հանդէպ դժուար չէ ալ մեկնել այն ձգտումը Արշակունեաց, որք կը խորհէին “հանել զթագաւորութիւն Պարսից յազգէն Սասանայ„, որովհետեւ գիտէին թէ “մեր լեալ էր եւ հարցն մերոց այն տէրութիւն„ եւայլն, որ ըստ Պատմչի մատնիչ Փիսակի հնարքն է (Բուզ. Դ. ի.). բայց Մամիկոնեանց քաջ զօրավարներուն համար անհնարին բան մը չկար։

թիւնը, — ինչպէս էր Սիւնեացը՝ Պարսից —, քրիստոնէական կրօնի կապը, որչափ ալ մերձեցումի էն նպաստաւոր պայմաններն ըլլային, նախ չունեցան յունամոլութիւն համարուելու չափ վտանգ մը, եւ երկրորդ՝ այդ մերձեցումներն ուղղակի արդիւնք են միեւնոյն նպատակին, որով կը մօտենային Պարսից:

Ինչ որ Վարդանի նախորդներն ըրին գահին հանդէպ, նոյնն ըրաւ Վարդան երկրին հանդէպ, որ այլեւս գրկուած էր բնիկ թագաւորէն: Այս ժամանակամիջոցին՝ ամենէն յառաջ պէտք է դիտել որ Յազկերտի հալածանքը պաշտօնական ձեւ մ'առած է, եւ բացարձակ գործողութիւններ սկսած են դենիմազդէզի լուրջ տարածումին համար, որուն կ'օժանդակեն նոյն իսկ մեր նախարարները: Յազկերտի կրօնական իրերու բուռն ձեռնարկը, թէպէտ շարունակութիւն Շապուհի (Երկայնակեայ) ծրագրին գործադրութեան, նոյն իսկ Շապուհի ձեռքով, դէթ Հայոց համար, պատերազմ գրգռելու վախճանին չհասաւ իր ամենէն անգութ եւ ամենէն արիւնոտ հալածանքներով: Վաչէէն մինչեւ Մուշեղ, Մանուէլ, Մամիկոնեանք, պէտք չունեցան ուղղակի կրօնական խնդրի մը հետ զբաղիլ. դեռ թարմ էր Շապուհի քաղաքականութիւնը: Այս պարագան՝ ընդհակառակը՝ բաւական ծանրակշիռ հանգամանք մը կու տայ Վարդանանց գործերուն: Եւ դիտելով Յունաց հետ կրօնական կապի անժխտելի գոյութիւնը, պէտք էր որ Յոյնք ինքնին միանային Հայոց հետ քրիստոնէութիւնը հալածողներուն դէմ. աստ՝ Յոյնք ոչ միայն պաշտպանած պիտի ըլլային կրօն մը, որ իրենց ալ կրօնն էր, այլ մանաւանդ իրենց տիրապետական ձգտումներուն գործադրութեան ամենէն յարմար եւ ամենէն արդար (քաղաքականօրէն) միջոցներն ինքնին ձեռք պիտի անցընէին: Յունաց կողմէն ցուցուած այսպիսի անշարժութեան պատ-

ճառներն ինչ ալ ըլլան, իրաւունք կու տան մեզ ըսել թէ Վարդանանք հեռի էին յունամոլութենէ. նոյն իսկ հակառակ ճգնաժամի այն դիմումներուն, որք իսպառ ամուլ մնացին։

Վարդանանք՝ ընիկ թագաւորէ զուրկ երկրի մը բախտն վճռելու կոչուած էին։ Այս խումբը, որու գլխաւոր գործիչն է Մամիկոնեանց Տունը, գլուխ չվերցուց Տիզբոնի այն պահանջներուն հանդէպ, որք հպատակութեան կամ ծառայութեան կը վերաբերէին։ Բայց երբ փոխուեցաւ պահանջներու կերպն ու եղանակը՝ ապստամբութիւնը ինքնին զհետ եկաւ. արդ՝ այս պահանջներն անհատական չէին. այս կամ այն նախարարի զիջումով չէին վերջանար. անդին ահագին ժողովուրդի մը կրօնական կեանքի փոփոխումը, եւ ամենէն զօրաւոր տարրին, այսինքն՝ Հայ քահանայութեան փճացումն էր այդ պահանջը. մէկ խօսքով՝ ազգն ու կրօնը պարսկին յանձնել։ Ասկէ զատ անհատական եւ մասնաւոր ոյժեր չէին կրնար նպաստել Պարսից ծրագրին յաջող գործադրութեան։ Մատենագրական վերածնութիւնը յեղափոխիչ ոյժ մը դրած էր դարուն մէջ. այդ ոյժը անպատճառ պիտի պայթէր այն ամէն շարժումի դէմ, որ դէպ ի անկում կ'առաջնորդէր։ Դենիմազդէզը անկում մըն էր Քրիստոնէութեան հանդէպ, որ Մատենագրական վերածնութեամբ տոգորուած օժտուած էր։ Վերածնութիւնը տիեզերական պատմութեան մէջ ազգերու յեղափոխիչ տարրն է, եւ եթէ ենթադրութեամբ՝ Վարդանն ալ գործակցէր Վասակի, ոյժի համեմատութիւնն պիտի այլայլէր լոկ, մինչ ժողովուրդն ու քահանայութիւնը, վերջինը մանաւանդ իբր հեղինակ վերածնութեան եւ շարժող զօրութիւն մը անոր ազդեցութեան տակ, պիտի դիմադրէր։ Սակայն՝ Մամիկոնեանք սկիզբէն ի վեր կապուած էին ընիկ երկրին. այնպէս որ դարու շարժումին մէջ զգալի էր իրենց պէտքը (Փրպ.

էջ 144, 166, 168—169, 170)։ Այդ կապը աւելի եւս զօրացաւ երբ Մամիկոնեանք շատ մօտէն շփուեցան վերածնութեան հետ, անոր մէջ. Վարդանանց ոգին կրկնապատկուած էր ուրեմն։ Այս նոր ոգին երկրի բարուքումին եւ բարօրութեան պիտի նուիրուէր՝ եթէ Յազկերտի հալածանքներուն դէմ չգործածուէր։

Վարդանանց եւ Վասակեանց արարքներուն եռեւ ծածկուած դարուն այս նկարագիրը՝ ամենէն հաստատուն եւ ամենէն դրական ապացոյց մ'է հերքելու համար յունական կամ պարսկական քաղաքականութեանց տեսութիւնները։ Բաց աստի պատմական տեղիքն իսկ բաւական են ցուցընել թէ Վարդանանք դժգոհ չէին Պարսիկ հպատակութենէ. միայն թէ այդ հպատակութիւնը միար իր նախկին ձեւին մէջ։ Վարդան եւ յետոյ Վահան միշտ միեւնոյն սկզբունքը կրկնեցին Դրան, միեւնոյն բանը պահանջեցին անկէ, թէ մենք կը հպատակինք, կը ծառայենք՝ միայն թէ ազատ թողէք մեր կրօնը մերհաւատքը եւ արժանիք գնահատեցէք։ Եւ Վարդան Շահին առջեւ կը յիշեցնէր իր նախնեաց հպատակութիւնը եւ իր հպատակելու պատրաստականութիւնը (Փրպ. էջ 157)։ Դուռը անցաւ սակայն իր պահանջներուն սահմանը եւ Վարդան բողոքեց անոր դէմ դարձուածով մը, զոր չըմբռնեցին Պարսիկները եւ ընդհակառակը չնորհակալ եղան — "Բայց արդ յայսմհետէ այսպէս կամք են, ջանամ զի եթէ ցայժմ գործեալ ինչ իցէ՝ եւ ոչ արժանի անուան կամ գովութեան, յայսմհետէ հնարիմ ամենայն զօրութեամբ եւ ուժով օգնականութեամբն Աստուծոյ՝ գործել գործ այնպիսի, զոր ոչ միայն առաջի ձեր Արեաց, այլ և ի Կայսեր Դրանն և յայլ ազգս զարմացի համբաւն այն մինչև ցյաւիտեան" (անդ)։

Բիւզանդիոնի եւ Հայոց մէջ եղած մերձեցումը՝ իբր յունամոլութիւն՝ կարելի չէ Վարդա-

նանց վերագրել։ Պատմական վկայութեանց հանդէպ ոչ ոք կրնայ հերքել թէ երկու ազգերու հաւատակցութիւնը քաղաքական իրերու վրայ ալ չազդեցին։ Բայց բոլորովին տարբեր խնդիր մըն է այդ եւ կարող է առարկայ ըլլալ ընդարձակ եւ հետաքրքրական ուսումնասիրութեան մը՝ երբ մանաւանդ գիտուի թէ Հայկազուններ, զօրավար, իշխան, կայսր, ոգեսպառ Բիւզանդիոնի՝ ժամանակ մ՚ալ ոգի տուին, եւ անոր անկումի ժամանակներուն փառաւոր թուականներ դրոշմեցին Բիւզանդական տարեգրութեանց մէջ։

Վարդանանց գործը՝ մաքրելով հանդերձ յունամոլական պարսաւներէ, կ՚ուզենք ցուցընել թէ ինչու համար Յունաց հետ եղած յարաբերութիւնները վնասակար կը նկատուին Վարդանանց ժամանակ։

Հայոց՝ Նոր Հռովմի հետ ունեցած յարաբերութիւնը հին է, եւ Հին Հռովմի աշխարհակալութիւններով կը սկսի։ Ազգերու սովորական յարաբերութիւնն է այդ։ Եւ դժբախտաբար, բնական դժբախտութիւն մը, Հայոց համար օտար գերիշխանութեան տիրումն է այդ յարաբերութիւնը։ Երբ Քրիստոնէութիւնը պետական կրօնք եղաւ. եւ Կոստանդիանոս՝ մեծ քաղաքի մը պատշաճ սքանչելի կէտի մը վրայ շինեց Նոր Հռովմը՝ իբր կեդրոն քրիստոնեայ պետութեան, դեռ Հին Հռովմի հեռաւոր հորիզոններու վրայ գծած գերիշխանութեան սահմաններու յիշատակը մոռցուած չէր. եւ Հայք՝ որ այդ գերիշխանութիւնը ճանչցած էին երբեմն, այժմ իբր քրիստոնեայ՝ աշխարհագրական գծերու վրայ աւելի մօտեցած էին Նոր Հռովմին։

Եւ ստուգիւ Բիւզանդիոնը գերիշխանութիւն մը ի գործ դրաւ Հայոց վրայ. բայց իւր տիրողները չէին այլեւս Հին Հռովմի Օգոստոսներն, ոչ ալ իւր զօրավարները Պոմպէոսներու սիրտն ու

խելքն ունէին։ Եւ այն ժամանակները, ուր Հռոմը սկսան գերիշխանական թեւածութիւններ ընել Հայոց վրայ, Տիզբոնէն հզօր բազուկ մը կր սպառնար անոնց դէմ։ Շապուհ Երկայնակեաց պատուհաս մըն էր Բիւզանդիոնի համար։ Հայք այս երկու թեւածութիւններու մէջ տեղ պիտի ճնշուէին։ Հայք թէ Տիզբոնի, թէ Բիւզանդիոնի փոփոխակի տկարացումներուն հետեւեան. ո՛չ Յոյնը, ո՛չ Պարսիկը բացարձակ տիրապետութիւն մը չէին կարող ընել Հայոց վրայ. որովհետեւ ո՛չ միայն իրարու թոյլ չպիտի տային, այլ՝ ներքին ոյժը, թէպէտ տարակենդրոնացած նախարարութիւններու մէջ, անյաջող կրնային ընել այդպիսի փորձեր։

Ասկէ զատ՝ նախարարութիւնը երկպառակուած յոյն կամ Պարսիկ հողերու սահմանակցութեամբ, ժամանակ մըն ալ պիտի երաշխաւորէին Հայութիւնը, երբ սա զօրաւոր ոյժ մը կը զգար իր մէջ՝ զոր վերածնութիւնը բերած էր իրեն. Կարծես վերջին Արշակունիի հայրը, Վռամ-Շապուհ, նախատեսութեամբ մը սատարեց վերածնութեան հեղինակներուն. այնպէս որ թէեւ Հայք կը զրկուէին իրենց ազգային գոյութեան պաշտպանէն, վերածնութիւնը կու գար կանգնելու այդ պաշտպանութիւնը։ Եւ որովհետեւ այս մեծ գործը հայ քահանայութեան եռանդին արդիւնքն էր եւ գործին կատարելութիւնը ապահովելու համար Եդեսիոյ դպրոցէն զատ Աղեքսանդրիոյ, Աթէնքի, Բիւզանդիոնի մօտէն շփուիլ, ծանօթանալ անհրաժեշտ պէտք մըն էր, Հայք ստիպուած էին յունական յարաբերութիւնները մշակել։

Վարդանանք այս յարաբերութեանց ամենէն սերտ եւ ամենատաք միջոցին պիտի ընդհարէին Պարսից դէմ, եւ ինքն Վարդան քանի մը տարի յառաջ Մեսրոպի ընկերակցութեամբ յատկապէս Բիւզանդիոն ուղարկուած էր Մեծն Սահակի կող-

մէն, այդ յարաբերութեանց պաշտօնական ձեւ մը տալու եւ յունական բաժնի մէջ գործադրուելիք աշխատութեան համար կայսերական պաշտպանութիւնը խնդրելու, որ շատ յաջող ելք մը ունեցաւ։ Ահա՛ թէ ի՞նչու Հայք աւելի մօտեցան Յունաց. այս մերձեցումը քաղաքական նպատակ չունի երբեք եւ միայն Հայոց Կաթողիկոսին բարձրագոյն հեղինակութեամբ ի գործ կը դրուի։ Եւ երբ միտ դնենք թէ Սահակ ինչ դիրք բռնեց այդ յարաբերութեանց մէջ՝ որ քաղաքագիտական կերպարանք մը չառնուն, դիւրաւ կ'ըմբռնուի՝ թէ քահանայութիւնն իսկ՝ հակառակ հաւատակցութեան հրապուրանքին, հակառակ այն դիմումներուն, որոնց տարբեր գոյն մը կու տան մեր պատմագիրներու եկեղեցականի տեսութիւնները, Բիւզանդիոնի դարձուածներուն խաղալիք չըլլալու լաւագոյն փորձեր ըրած է. քանի որ Բիւզանդիոնի պաշտպանութիւնը անկեղծ չէր։

Մեծն Սահակ, հայրն երկրին եւ պաշտպանը հայրենի գահին, երբ ամբաստանուեցաւ իբր "զՅունովք գլեալ խորհրդոյն„ (Խոր. Գ, կդ եւ կե), նա՛ արդարացուց ինքզինք՝ ճառելով "զերախտիս ծառայութեանն„ (նոյն անդ)։ Դուռը գոհ եղաւ Մեծ հայրապետին բացատրութիւններէն եւ ի վարձատրութիւն կատարեց անոր խնդիրը (նոյն անդ)։ Եթէ Սահակ ուզէր Յունաց յարիլ բոլորովին, զայդ շատոնց պէտք էր գործադրէր՝ երբ անպատուեցաւ Տիզբոնի մէջ եւ յարօսնիս զրկուեցաւ իր բոլոր ինչքը եւ բաժնուեցաւ կաթողիկոսական իշխանութիւնը իր ընդդիմափառ Սուրմակի եւ Շմուէլի մէջ (անդ, եւ Յուշիկք Ա. էջ 337)։ Ընդհակառակը՝ Սահակ սիրով տարաւ այդ ամենուն եւ մտքէն իսկ չանցուց Բիւզանդիոնի պաշտպանութեան դիմել. մանաւանդ որ Ատտիկոս պատրիարքն ալ, որուն հետ յարաբերութիւն ունէր Սահակ, հայ մըն էր եւ կրնար օգնել հայուն իր հեղինա-

կութեամբ։ Սահակի մտքէն շատ հեռի էր Յունաց մօտենալու քաղաքական նպատակը։ Նա չէր կրնար թողուլ Տիզբոնը, ուր կը յարգուէր գերազանցապէս — առանց նկատելու վերջին անարգանքը, որ արդիւնքն էր մեր նախարարներու քսութեան — եւ շահի հետ ունեցած բարեկամութեան շնորհիւ երկիցս կանգնեց Արշակունի գահը եւ երկիցս նախարարական գահնամակը հաստատել տուաւ։ Բիւզանդիոն այս տեսակ կապ չունէր Սահակը իրեն քաշելու համար, թէպէտ հրապուրիչ բան մը ընել ուզեց բարձր տիտղոսներ տալով Մեսրոպին եւ Վարդանին։

Նոյնպիսի ամբաստանութիւն մըն ալ եղաւ յունագէտ Գիւտ Կաթողիկոսի նկատմամբ, իբր թէ նա "ընդ Կայսեր խօսի եւ պատուական ընծայիւք հպատակէ նմա եւ մեծամեծաց՝ որ ի Դրան նորա են„ (Փրպ. էջ 342)։ Գիւտ՝ Սահակի նման միեւնոյն անարգանքի ենթարկուեցաւ, թէպէտ անոր բացատրութիւնն "ստոյգ եւ մտացեբար„ գտաւ նոյն ինքն Պերոզ։ Գիւտ համոզեց թէ իւր երթեւեկներն "ի Հոռոմս քաղաքական դիտումով չեն, այլ որովհետեւ "յաշխարհին Հոռոմոց„ ուսած է, հոն բազում ծանօթներ եւ աշակերտակիցներ ունի. նոյն իսկ ոքեմք (եկեղեցական հանդերձից) անկից կը գնեն, ատոր համար կը մօտենայ Յունաց. "Այլ ընդունողութեան ծառայութեան՝ որքան իսկ մեր պատուիրեն հաստատեցանել տէրանց՝ ուղիղ ուղղութեան եւ ընդհանուրն„ (Փրպ. էջ 345)։

Ահա դարուն քահանայութեան միտումն ալ դէպ ի Բիւզանդիոն, որ քաղաքական զսպանակներով չէ լարուած։ Զայս կը զգային նոյն ինքն Յոյնք. այնպէս որ վերածնութեան առաջին աշխատութեանց անդրադառնալով թէ Թէոդոս եւ թէ Ատտիկոս՝ վերջը կը յայտնեն թէ էր Սահակ յոյն ծառաներէը արհամարհելով "յաւուրս ոմանց„ կը փնտռէր "գիմաստից գիտս„, կամ թէ ինչու Ոսկի

բերանին չդիմեցին գրոց գիտին համար եւայլն (Խոր. Գ., ԾԷ)։ Կայսեր եւ Պատրիարքի յայտնութիւնները զօրաւոր փաստեր են ցուցընելու համար թէ Հայք իսկապէս որչափ կը զգուշանային Հոռոմոց քաղաքական թակարդէն, եւ թէ ինչ համոզումներով կը մշակէին այն յարաբերութիւնները որ քննադատելի են՝ միայն քննադատելի աչքերու համար։

Դիտելու է որ յարաբերութեանց մասին Եղիշէի տեղեկութիւնները չափազանց են եւ հակասական. այնպէս որ օգնութեան մը համար "եթէ նա (Թէոդոս) կամեցցի՝ նմա իսկ մտանել ի ծառայութիւն„ յօժարութիւնը ոչ միայն այն տեսակ խոստումներէն է, զորս Հայք շատ լսած են թէ՛ Տիրանի եւ թէ՛ Բիւզանդիոնի, այլ մանաւանդ այդպիսի բացատրութիւն մը չկայ այն Հրովարտակին մէջ, որուն պատճէնը(?) անմիջապէս յառաջ կը բերէ (Եղիշէ, էջ 54—55)։ Այսու ամենայնիւ պէտք է խոստովանիլ թէ վերածնութեան ազդակին տակ՝ Յունաց հետ բնականօրէն ի գործ դրուած շփումը, Պարսից քաղաքական երկիւղ ազդելէ չդադրեցաւ, եւ այս նկատմամբ ձեռք առնուած միջոցներ աղիտաբեր եղան գրական յառաջդիմութեան[1]։

---

1 Խոր. Գ. ԼԳ. ԾԳ—ԾԵ. — Պատմութեան այս կէտերուն վրայ մասնաւոր ուշադրութիւն դարձուցած է Հայագէտ Կ. Կոնիբեր. ահա իր խօսքերը. "Այն դարու կէտերը պարսիկ կառավարիչք կ'արգելուին յունական գրքերն ու յոյն դպրութիւնն Մեծ Հայոց մէջ՝ քաղաքագիտական նպատակաւ. վասն զի կը կասկածէին իրենց նպատակներուն Յունական ինքնակալութեան ներդաշնակցելուն։ Յունական գրոց արգելուիլն խափանեց ու ընկճեց հայ գրականութեան զարգացումն, որ նորածիլ էր դեռ. բայց մտաւորական այս կապերու խզուելովն՝ որ սոյն ցեղը կը կապէր Կ. Պոլսոյ եւ Աթէնքի հետ, անկախ ազգային եկեղեցւոյ մը կանգնուելուն նպաստեց. Աղէ Մոնդ. Ժ., էջ 21. Հմմտ. Հանդէս 1895 Ապրիլ. էջ 98—99։

*Այսպէս Հայք իրենց ամենէն սիրելի եւ ամենէն անմեղ յարաբերութեանց մէջ իսկ, զոր հաստատած էին Յունաց հետ, մէկ կողմէ տեսակ մը փնաս կրեցին, եւ միւս կողմէն շահ մը ունեցան եկեղեցւոյ համար։ Եւ արդէն պէտք է ուշադիր ըլլալ որ Հայք այդ շահը դիտեցին. զի ազգային եկեղեցւոյ ոգին աւելի նկատումէ բարձր էր հայ քահանայութեան համար եւ իրենց բովանդակ շարժումներուն եւ յարաբերութեանց մէջ ո՛ եւ է օտար կէտ մը իսկ չզոհելու հայկականութիւնը (հայկական ոգին) չկորսնցուցին թէ այս եւ թէ յաջորդ դարերուն, առանց նկատելու այն մանաւոր պարագաները, որք շատ ծանր ճնշումի արդիւնք են եւ տեւականութիւն ալ չունեցան։*

*Արդ՝ կ՚եզրակացնենք թէ Վարդանանց ժամանակ Յունաց մերձեցումը իւր ամենէն սերտ եւ ամենէն տաք վիճակին մէջ՝ բոլորովին տարբեր հիմ մը ունի — վերածնունդը։ Եւ յարաբերութիւնները բոլորովին տարբեր մարմնի մը կողմէ կը մշակուէին արդէն՝ երբ Վարդանանց խնդիրը պայթեցաւ։ Այս մարմինը (Քահանայութիւնը) ըստ ամենայնի միաբան էր Վարդանանց հետ եւ գործակից Տիզբոնի դէմ մղուած պատերազմին։ Ահա ինչ որ յանիրաւի պարսաւներ կը բերէ Վարդանանց վրայ՝ իբր յունամոլներու, մոլի նախանձայոյզներու վրայ։*

*Վահան, որ Վարդանանց գործը շարունակեց, աւելի նեղ վիճակի մը մէջ էր. իրական պէտք մը ունէր ամէն տեսակ օգնութեան։ Բայց նա առանց Բիւզանդիոնի մտենալու քաղաքականութեան՝ կատարեալ ինքնութեամբ գործեց։ Վարդանանք վերջնական ձեւ մը տուած չէին իրենց շարժումին, թէպէտ Դուրը պահ մը թուլցած էր իւր նկատումներուն եւ առաջադրութեանց մէջ։ Ներքին եւ արտաքին թշնամութիւններ չէին վերցած. Վասակի տեղ Գդիհոնը կը մորակէր Պար-*

միկ ձկտումները. Վահան մինակ էր. ընդհակառակը Տիզբոն իր բոլոր ույժը գործածեց անոր դէմ. Պերոզ անձամբ մղեց պատերազմը, բան մը զոր Յազկերտ չըրաւ Վարդանանց դէմ։ Այս ծանր եւ դժուարին պարագաներու մէջ Վահան աչք իսկ չդարձուց ո՛չ Հոներուն (Փրպ. էջ 363, 418), ո՛չ ալ "Հռոմ տան„, որովհետեւ, կ՚ըսէր նա, "զԱրեաց ուժն եւ ստամբակութիւնն քաջ գիտեմ, եւ զՀոռոմոց զնուաղութիւնն եւ զխաբէութիւնն„[1]։

Վարդանանք եւս փորձով գիտէին Հոռոմոց այս նկարագիրը, եւ պատճառն այս է որ պատգամաւորութիւնը չկրկնեցին։ Հոռոմք չեն ուզեր օգնել արդէն, զի՝ ո՛չ միայն դաշինք կար Բիւզանդիոնի եւ Տիզբոնի մէջ, այլ մանաւանդ Յունաց ուզածը Հայոց աշխարհին երկփեղկումն էր — "Այն էին եւ կամք Յունաց աշխարհին, լինել զայն (զերկպառակութիւն) ախորժանեամք, այլ ի յետ նորա (Վասակայ) առնել եւս ի նոյն յեղեղ տադալեցան (Եղիշէ, էջ 72)։

Անհիմն ենթադրութիւն մըն է Վարդանանց եւ Վասակեանց գործերը յունասիրութեան կամ պարսկասիրութեան քաղաքականութիւն մը նկատել։ Այս խնդիրը կարելի էր բոլորովին մէկդի նետել՝ եթէ մեր պատմութեան ամենէն փառաւոր դէպքին բնութիւնը փոխելու չծառայէր իբր ենթադրութիւն կամ վարկած։

[1] Փրպ. էջ 356, 362, 400, 423, 514. — Մեծն Վահանի բոլոր պատերազմներուն մարդ մը միայն, Վահանի արքանեակը "երանելին Գերպարգոս, որ էր ազգաւ յոյն„ ընկաւ այն ընդհարումին մէջ, որ սասանեցուց սասանեանց ույժը. — Վահանի ակնարկած խաբէութիւնն եւ այլ յոռի միջոցներ են որ կը կազմեն Հռոմոց դիւանագիտութիւնը, այսպէս է պատմութեան վճիռը. Au reste nul scrupule: l'intrigue, le mensonge, la trahison sont armes légitimes Նոլդ. էջ 668։

## ԳԼՈՒԽ Զ·

# ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԲՆՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԱՐԴԻՒՆՔԸ

*Մեր պատմութեան Երդ դարը, Ոսկեդար անուանուած, դեռ լաւ ուսումնասիրուած չէ. կամ թէ եղած ուսումնասիրութիւններն այնքան միակողմանի, թերի են՝ որ նոյն իսկ դարուն ամենէն նշանաւոր դէպքերուն նկատմամբ, որոնցմէ է Վարդանանց պատերազմը, չինուած գաղափարը սխալ եւ անճիշդ գիծերու երեւակայութիւն մըն է։ Շեշտելով խնդիրը Վարդանանց Պատերազմին վրայ, կը դիտենք որ երկու հակառակ ծայրեր կաշկանդած են միտքերը բուն պատմական գետնէն հեռու պահելու այդ խնդիրը։ Բուն պատմական կ'ըսենք, որովհետեւ Վարդանանց Պատերազմին պատմութեան հարեւանցի մէկ կողմն միայն, այսինքն՝ դէպքին ստուգութիւնը ճանչցուած է։ Ամէն մարդ գիտէ որ Վարդանանք պատերազմ են մղած Պարսից դէմ։ Երկու ծայրերէն մին է զուտ նախապաշարում մը, որ եւ ոչ քննական ակնարկի մը կը ներէ դիտելու խնդիրը այնպէս՝ ինչպէս որ կը պահանջուի. իսկ միւսը՝ ծայրայեղ տենչ մըն է՝ քննադատի խարազանով ցրուելու ամէն ինչ՝ առանց թափանցելու պատմական այն իրողութեանց, որոնց ներքեւ է բուն իրողութիւնը։ Առաջինին մէջ գործող ոգին պարզապէս ազգային այն նախանձաւորութիւնն է, որուն նուիրականութեամբ ժողովուրդը շաղապատուած կը մտածէ իր սրտին հետ խօսող խնդիրները, եւ կը կարծէ թէ քննութիւնը կրնայ անոնց արժէքը նուազեցնել։ Երկրորդը անթափանց հայեացք մ'է իրապէս, որ ստուգիւ ոչ միայն կը նուազեցնէ իրողութեան արժէքը, այլ մանաւանդ կ'այլայլէ զայն. ըսել կ'ուզենք չթափանցեր բուն իրողութեան։ Այսպէս են պարսկասիրութեան եւ յունասիրութեան դատումը, որով*

կ'ուզեն մեկնել Վարդանանց Պատերազմը։ Նախորդ գլուխներու մէջ բաւական ծանրացանք այս խնդիրներուն վրայ. այս տեղ կ'ուզենք իրողութեանց բնութիւնը մատնանիշ ընել։

Ա.

Սասանեան հարստութեան զօրանալը Տիզբոնի գահին վրայ՝ հակազդեցութիւն մ'եղաւ Արշակունի գահին տկարացումը փութացնելու համար, եւ այս իբր արդիւնք Պարթեւ հարստութեան անկումին. որովհետեւ Պարթեւք զօրավիգն էին Արշակունեաց։ Բայց երբ Սասանեանք տիրացան անոնց տեղ, ա՛լ տարբեր աչքով կը դիտէին Հայ Արշակունի հարստութիւնը։ Պաշտպանութենէ աւելի նախանձ մը, զօրավիգն ըլլալէ աւելի հարուածելու դարձուածներ պաշարեցին անոնց քաղաքականութիւնը, մանաւանդ երբ հզօր արշակունիներու հանդէպ գտնուեցան. եւ Տիրանի նկատմամբ "տիրանենգ„ Փաւստի ամբաստանութիւններն հաւանաբար անհիմն բաներ չէին (Բուզ. Գ. ի)։ Կարելի է նոյն իսկ ենթադրել թէ Տիրանի մատնութիւնները ուրիշ Արշակունիք ալ ունեցան։

Սասանեանք զուտ քաղաքական ուժով մը չէին ապահոված իրենց տիրապետութիւնը՝ նոյն իսկ իրենց կեդրոնին՝ Տիզբոնի՝ մէջ։ Մազդէականութիւնը, որ պետական կրօն եղաւ Սասանեանց գահակալութեամբ, ամէնէն զօրաւոր միջոցն եղաւ թէ՛ իրենց երկիրը զսպելու եւ թէ՛ արտաքին տիրապետութեան կամ աշխարհակալութեան համար։

Արտաշիր Բաբեկեան, Ա. եւ Բ. Շապուհներ եռանդուն հոգածութիւն մը ունեցան մազդէականութեան վրայ, մանաւանդ Շապուհ Բ., որ բաւական աղէտաւոր յարաբերութիւններ ունեցաւ Հայոց հետ, սկսած էր ցոյց տալ իր ըմբռնումը, իր գոյնը։ Ինչ որ մոգերը, ինչպէս նաեւ Միհրներսեհը՝ Հազարապետ մոգը՝ Յազկերտ Բ.ի ժա-

մանակ ըրին, նոր բան մը չէր: Մոգութեան ամբողջ պատմութիւնն է այդ: Շապուհ Բ., որչափ զօրաւոր, նոյնչափ "իմաստուն" Շահ մը, մոգերու թելադրութեամբ կը գործէր: Նա մազդէականութիւնը իր երկրին մէջ ապահովելու համար հերձուածները խեղդեց եւ ներքնապէս զօրացնելէ յետոյ՝ ուզեց հպատակ ազգերն ալ միացնել անով: Շապուհ յաջողեցաւ իր պետական կրօնին հերձուածները վերցնել, որոնց պիտի չհանդուրժէր այլեւս՝ իբր սուտ-կրօններու (ag-dinih), երբ միանգամ ընդ միշտ Ատրպատի անձին վրայ կատարած հրոյ փորձով (տեսակ մը օրտալի) ճշմարիտ կրօնը յայտնուած համարեց (Annalesի. XXII XXXV): Այս տեսութեամբ Շապուհ Քրիստոնէութեան ալ հաշտ աչքով պիտի չնայէր՝ հակառակ Մեծն Կոստանդիանոսէն ունեցած իր ակնածանքին: Ցիրաւի՝ Պարսկաստանի քրիստոնեաներ սկսան հալածուիլ (նոյն անդ) եւ Հայոց Նախարարութիւնը, իբր արդիւնք իր կայսրակերպութեան պահանջներուն, դուրս տուաւ իր փառատենչիկ ծնունդը՝ Մերուժան Արծրունին եւ Վահան Մամիկոնեանը, կամ թէ ըսենք Պարսից կէշտը սկսած էր իր որսերն ընել՝ իբր զէնք սասանեան քաղաքականութեան, որու համար լաւագոյն յաջողութիւն մը պիտի ըլլար անշուշտ հպատակներու կրօնական միութիւնը:

Պարսկաստանի քրիստոնեաները կը նեղուէին արդէն՝ երբ Շապուհ կը պատերազմէր Հայոց հետ Արշակի ժամանակ: Այս պատերազմները, արդարեւ, գրեթէ չունին կրօնական որոշ գոյն մը, բայց շատ որոշ է այդ Շապուհի մտքին մէջ: Նա կը քաջալերէ հայ ուրացեալները, մանաւանդ Մերուժանի վերագրուած արարքը մատենագրական փճացումները՝ գործադրութիւնն է Շապուհի մտածութեան:

Ի՛նչ որ դիտել կու տանք Շապուհի քաղաքականութեան մէջ, ամբողջովին սասանական է:

Շապուհի բրածր հալածանքի փորձ մ'է քրիստո-նէից վրայ, զոր իւր յաջորդներն, բարեբախտաբար, չկրցան շարունակել մինչեւ Հայոց Թագաւորու-թեան բարձումը, որուն սկսած էին արդէն հա-րուածներ տալ այլեւայլ միջոցներով՝ թէ Վռամ-գոռ, որ "զքէն վրիժուց խնդրեաց ի մերմէ աշխար-հէս" (Խոր.) եւ թէ իւր որդին Յազկերտ Բ., որ "թշնամի եւ հակառակորդ երեւեցուցանէր իւր զհաւատացեալքս ի Քրիստոս" (Եղիշէ):

Սասանեանց ակնկառոյց սպասածն էր Հայոց Թագաւորութեան բարձումը, որպէս զի կարող ըլլային իրենց դարաւոր մտածութիւնը ի գլուխ հանել — զրկել հայն իւր ազգութենէն եւ իւր կրօնէն: Թագաւորութիւնը վերցաւ, բայց ոչ Սա-սանեանց ուժով, այլ մանաւանդ զօրաւոր նախա-րարութիւններու ձեռնտուութեամբ. որովհետեւ՝ նախարարք եթէ ուզէին՝ չէին իսկ թող տար խլրտիլ Յազկերտին, թող որ այդչափ աղէտներու ճամբայ բանալ: Նախարարաց պատմութեան մէջ միակ այս ժամանակամիջոցն է, ուր ամէն ինչ էին այս մտովի Թագաւորները: Մեծ ոյժ մը կար իրենց ձեռքը, թէեւ Թագաւորը վերցած էր, լաւ եւս իրենք վեր-ցնել տուած էին. կալուածական իշխանութեամբ աւելի ճոխացած էին ի վնաս Թագաւորին (արշա-կունի գահին անկումը փութացնող գլխաւոր մէկ պատճառ). այրուձին իրենց ձեռքն էր. զանձն միայն "յարքունիս պարսկաց երթայր". հայ Թա-գաւորին տեղ Մարզպան մը նշանակուած էր Դռնէն. վերջապէս Եղիշէի բացատրութեամբ "Նա-խարարն Հայոց անկանէր Թագաւորութիւնն": Եւ բուն խնդիրը հոս է. Թագաւորութեան բարձումը՝ իրա-կանացումն էր Տիզբոնի (Սասանեանց) երազներուն. իսկ նախարարներուն համար Թագի, ծերանիի ար-շալոյսը: Այսպէս Տիզբոն եւ նախարարութեան մէկ մասը, լաւագոյն եւ ժողովրդական մէկ մասը, իրարու պիտի ընդհարէին արիւնոտ եւ բուռն

յարձակումով մը. Մնացած մասը Տիրոնի կողմը պիտի տաշէր շլացած աչքերով եւ բնականաբար պիտի հակառակէր այն մասին, որ թէ Տիրոնի թոյլ պիտի չտար իր երազներուն իրականացումը տեսնել եւ թէ պիտի խորտակէր Թագի ծիրանիի տենչանքը փառասէր խումբին մէջ։

Ահա մէկ կողմէն Տիրոնի դիտաւորութիւնը, որ շատ լաւ կը բացատրէ թէ ինչ էր Վարդանանց Պատերազմին բնութիւնը, եւ միւս կողմէն նախարարներու դիրքը այդ դիտաւորութեան հանդէպ եւ շարժումները (Հմմտ. Թրքմ. Խոր., էջ Թ—ԻԲ), որք բոլորովին տարբեր արտաքին մը կու տան բուն խնդրին։

## Բ.

Վարդանանց Պատերազմը միշտ նկատուած է 1. համաշխարհիկ եւ 2. զուտ կրօնական. եւ ամէն անոնք, որք Երդ դարու վրայ կը խօսին երեւելի դէպքերը կ՚անուանեն Կրօնական պատերազմներ։

1. Համաշխարհիկ չէ այս պատերազմը։ Պարսկահայաստանի մէջ միայն կը յուզուէր խնդիրը (Փրպ. էջ 3) եւ այս բաժնին նախարարները երկու կուսակցութեան բաժնուած էին։ Հազիւ 12 նախարարութիւններ մասնակցեցան պատերազմին, եւ հակառակ կողմին՝ Պարսից՝ յարեցան 7—9 նախարարութիւններ (Փրպ. էջ 195. Եղիշէ 57)։ Բայց ատի [illegible] հոգիներու բանակ մը կրցաւ կազմել Վարդան, այսինքն՝ Հայոց զինուորական ուժին կէսը (Քնն. պատմ. Բ. էջ 49), եթէ կլորիկ թիւ մը չէ այդ։ Փարպեցին թիւ չնշանակեր. իսկ Բուզանդին մէջ (էջ 147) կայ այդ թիւը, որ թէպէտ Բուզանդեան Բնագրէն չէ, դարձեալ չափազանց կը թուի. եւ հաւանաբար նոյն թիւն է որ Եղիշէին մէջ կը ցոլանայ Պատմագրէն եղած զուգադիպութեամբ մը արդեօք. հօն Վասակ Մամիկոնեան, հօս Վարդան Մամիկոնեան։ Դիտելու է նաեւ

որ կանոնաւոր զինուորներու բանակ մը չէ 60.000 ը։ Վարդանանց խումբը կազմող 12 նախարարութիւններու ժողովուրդներն են, որ կը յորդորուին Աւարայրի ճակատը զօրացնելու (Եղիշէ էջ 43—44)։ Իրարու վրայ 5000 հոգի (զինուոր) կ՚իյնայ 12 նախարարութեան իւրաքանչիւրին, որ դժուար կրնայ արդարանալ գէթ համեմատելով իւրաքանչիւր նախարարութեան ուժին, որով կը կազմուէր հայկական կանոնաւոր բանակը (տե՛ս Աշխարհացոյց Շիրակացիին ընծայուած զինուորական տախտակը)։ Իսկ Վարդանանց զոհը, քանի մ՚անգամ եւ այլեւայլ կէտերու վրայ բաշխումներէ յետոյ, կը յանգի 1036ի։ Շատ պարզ է ուրեմն՝ որ Վարդանաց Պատերազմը նշանակութեամբ, սկզբունքով "Կրօն" է, ուր ինքն ժողովուրդն ալ կը գործէ, եւ ոչ զինուորական ռազմագիտական ճշդուած հաշիւներով։ Ազգովին չէ թէեւ այդ պատերազմը, բայց իրապէս ազգային է։

2. Ի յետադարձ ուսումնասիրելով թէ Դենշապուհի բրած սեղմումները Հայաստանի քաղաքական իրաւասութիւններու մէջ եւ թէ Վահանի դաշինքը Վաղարշի հետ, յստակօրէն կը տեսնենք՝ թէ ինչ բանի վրայ կը դառնար խնդիրը։ Ընդհակառակ, դարձեալ կը կրկնենք, առանց Վահանի գործերը ուսումնասիրելու կարելի չէ ըմբռնել թէ ինչ գոյն ունէր Վարդանանց Պատերազմը (տե՛ս վերը, էջ 228—229)։ Ահա Վարդանանց Պատերազմը գրգռող վերջին շարժառիթները. — Յազկերտ Բ. երբ չյաջողիր Հայերը, ինչպէս նաեւ միւս քրիստոնեայ ազգերը, իր քաղաքական թակարդին մէջ ձգել խոստումներով, գահով եւայլն, յայտնի միջոցներ ի գործ կը դնէ։ Դենշապուհ կու գայ Հայաստան եւ եկեղեցականներն ու միաբանակեացները տուրքի կ՚ենթարկէ, հարկերը կը ծանրացնէ, նախարարները իրարու դէմ կը գրգռէ, եւ "չարագոյն"ը՝ հայ Հազարապետին (= Վաստրիոշ) տեղ պարսիկ կը

դնէ, կը ջնջէ Հայոց սեփական դատարանը։ Այս բոլոր սեղմումներու մէջ խիստ դիտումներ կան Հայոց Եկեղեցւոյն դէմ, բայց ամէնուն ալ նպատակը զուտ քաղաքական է։ Տիզբոն իր քաղաքական դիրքը զօրացնելու համար է որ հպատակ ազգերու մէջ պետական կրօնը հաստատել կը ջանայ։ Ասոր բնական հետեւանքն էր՝ դպչիլ Հայոց Եկեղեցւոյն կամ Քրիստոնէութեան։ Բայց ամէնէն աւելի ոյժ կու տայ Հայոց տնտեսական վիճակը վատթարացնելու. Հարկերը կը ծանրացնէ չափազանց կերպով եւ «հինօբօր» կը յափշտակէ գայն։ Ահա երկիր մը, ազգ մը՝ փճացնելու ամէնէն դիւրին, բայց ամենէն աղէտաւոր միջոցը. եւ այս է գաղտնիքը, որ Վարդանանց եւ Վահանեանց բանակը կը շարժէր։ Չկայ այդ շարժումներու մէջ ինչ որ կրօնականով հասկցնել կ'ուզեն։ Այս բոլոր խնդիրներու մէջ կրօնը, եկեղեցին այնչափ բաժին ունի, որչափ ազգային կազմակերպութեան պայմանները, ազգային ինքնավարութեան իրաւունքը, քաղաքական յարաբերութիւններ Դրան հետ, տնտեսագիտական վիճակը։ Հայոց՝ իբր քրիստոնեայ ազգ մը՝ մարտ մղելէն սխալ է կրօնական եզրակացութեան մը յանգիլ։ Ազգային, այսինքն՝ ներքին ինքնութեան կռիւն է այն, եւ հայ ազգին ինքնութիւնը իր կրօնական եւ քաղաքական իրաւունքներով կը բացատրուի։

Եւ քանի որ Սասանեան քաղաքականութեան նշանաբանը եղաւ իրենց գերիշխանութիւնը ճանչցող բոլոր քրիստոնեայ ազգերը — եւ ոչ միայն հայերը — իր պետական կրօնի ուժով ի մի ձուլել, եթէ Հայք ոչ-քրիստոնեայ ազգ մը եղած ըլլային դարուն նախարարական դրութեան մէջ, Սասանք միեւնոյն կերպով պիտի գործէին։ Տիզբոնը պիտի չհանդուրժէր որ այն փոքրիկ թագաւորները այնքան ազատ իրաւունքներով զօրանային. առ

իրական վտանգ մըն էր իրենց դէմ։ Ատոր համար էր որ երբեմն նախարարական գահերու թիւը բազմապատկեցին. ոյժերը ցրուելու լաւագոյն միջոցն էր այդ։ Այս քաղաքականութիւնը նոյն իսկ հայ թագաւորներն ալ փորձեցին (տե՛ս վերը, էջ 232—233)։ Արդ՝ եթէ հայք նոյն դրութեան մէջ դեռ քրիստոնեայ եղած չըլլային եւ Տիգրան սկսէր գործել մազդէականութիւնը հաստատելու համար իւր հպատակներուն մէջ, այս առթիւ մղուած պատերազմները ի՞նչ գոյն պիտի ունենային։

Կարելի չէ ուրանալ Վարդանանց Պատերազմին մէջ քրիստոնէութեան հրաշալիքը։ Բայց քրիստոնէութիւնը Հայոց մէջ կը հալածուէր, միայն Հայոց ազգային ինքնութիւնը ատով ջնջելու համար։ Դարուն պատերազմները ուրեմն, մղուեցան ազգային ինքնութիւնը պաշտպանելու համար, որուն պիտի միանար կրօնն ալ։ Եւ հայ եկեղեցականութիւնը այդ պարագային մէջ ժողովուրդը ինքնապաշտպանութեան յորդորելու համար բնական էր որ յանուն կրօնի կոչում ընէր։ Արդի մտածումներով զուտ քաղաքական իրաւունքներու գաղափար ներշնչել անկարելի էր ժողովրդեան մը, որ արդէն տեսակ մը ազգային-ստրուկ եղած էր զանազան նախարարութիւններու տակ անդամահատուելով։ Քրիստոնէական ըմբռնումը աւելի գիւրամատչելի էր ռամիկ մտքերու ինքնապաշտպանութեան մասին։ Դարու նկարագիրն է այս եւ ամէն ժամանակի համար գրեթէ ճշմարտութիւն մը։ Ազգային, քաղաքական խնդիրներու մէջ գահլիճներն են, որ գիտեն ստոյգը. ժողովուրդը ենթադրութիւններ կ'ընէ եւ իւր հակրցողութեամբ կը մեկնէ քաղաքական երեւոյթները։ Առաջնորդողները միշտ ժողովրդեան սիրելի եւ իւր ամէնէն թանկագին զգացումներուն կոչում կ'ընեն ինչ խնդրի մէջ ալ գործեն, բաւական է որ ժողովրդական ոյժը շարժումի դնեն։ “Քրիստոսը կը թշնամանուի”, այս բաւական էր ո եւ է

հաւատացեալ ազգի մը Քրիստոնէութիւնը բոլորովին գրգռելու համար։ Գիտենք Խաչակրութեան պատմութիւնը։ Կրօնական գրգիռը, չըսելու համար մոլեռանդութիւնը, նշանաւոր էջեր ունի պատմութեան մէջ։ Հայուն համար այսպէս չէր սակայն. մոլեռանդութենէ բոլորովին տարբեր բան մը կը տիրէ ժողովրդեան զգացումին մէջ։ Դարու ըմբռնումը եկեղեցւոյն նկատմամբ, միեւնոյն է ազգի համար ալ։ Ա՛յս տեսակէտով իսկ անհնար է զուտ կրօնական գոյն մը տալ դարու պատերազմներուն։ Ազգային-եկեղեցական ձուլուած ըմբռնումը, նոյն իսկ մեր սա քննադատական ժամանակին մէջ, դժուար է իրարմէ զատել։ Երդ դարն այդպէս կ'ըմբռնէ։ Իւր լուսաւորութիւնը թէ կրօնական թէ մատենագրական՝ դեռ թարմ եւ գործօն՝ այդ ամէնը Քրիստոնէութեան կը պարտէր հայը. ազգը ատով զօրացած էր իր քաղաքական անկումներուն մէջ։

Գ.

Կանխաւ առիթ ունեցանք մատնանիշ ընելու Հայ-եկեղեցականի դերը ազգային շահերու մէջ (տես վերեւ էջ 176—177)։ Եկեղեցին նշանաւոր գործիչներ տուաւ ազգին շահերը պաշտպանելու համար։ Սկիզբէն ի վեր աշխահական եւ եկեղեցական ներկայացուցիչներ գլուխ գլխի կուտան պաշտպանութեան գործին մէջ։ Այս համագործութիւնը բարացուցականն է այն ըմբռնումին, որ ազգն ու եկեղեցին կը միացնէ։ Հայ եկեղեցականը միշտ պաշտպան կանգնած է ազգի շահերուն, նոյն իսկ թագաւորութեան ժամանակ. Պապ պատերազմ կը մղէր, Ներսէս խորհուրդ կու տար. Մուշեղ Մամիկոնեանի զէնքերն կ'օրհնէր Նպատի վրայ, կը քաջալերէր հայ բանակը։ Սահակ՝ Արտաշէսի գահին համար կը մտածէր, կ'անարգուէր։ Ծանօթ են Մանդակունին, Օձնեցին, Թրդ դարու կաթողիկոսներ եւայլն եւայլն, եւ դա-

րուս սկիզբը Աշտարակեցին եւ անկէ ի վեր մեր եկեղեցւոյն գլխաւորներն են որ կ՚աշխատակցին պաշտօնապէս ազգային գործերուն։ Եւ ո՞ր դնենք Հայ. եկեղեցականի խոնարհ բայց սուտ եւ ընտիր դասակարգի գոհողութիւնները ներքին գաւառներում եւ դեռ հիմայ ...։ Կրօնական ո՛ր մոլեռանդութիւնն է այս ամենէն լաւ գործիչները դրդողը։ Եկեղեցականը բացարձակապէս չխառնուի քաղաքական գործերուն. այս լաւ. բայց տարբեր խնդիր մ՚է ա՛յլ։ — Զծանրանանք, սակայն, ա՛յսքան ակներեւ գործերուն վրայ, որք զուտ ազգային իրաւունքներ են, եւ այդ իրաւունքներն են մեր ազգին եւ մեր եկեղեցւոյն շահերը։

Վարդանանց Պատերազմին բնութեան մասին մեր տեսութիւնը վերջացնելու համար, ինչպէս ըսինք վերագոյն, պէտք է դիտել Վահանի դաշինքը Վաղարշի հետ։

Մտադիր կ՚ընենք նախապէս թէ Վահան միջնակ չէ՛ այս նշանաւոր դաշինքին մէջ, որ մեր պատմութեան ամենէն փայլուն մի ժամանակամիջոցը կը փակէ։ Մանդակունին, Գուինի պարիսպներուն վրայ այ՛ն ալեզարդ կաւուղն (Փրպ. էջ 441—442), մեր ամենէն Մեծ Սպարապետին խորհրդակիցն էր։ Վահան շարունակեց իւր հօրեղբօր գործերը միեւնոյն ազգային գետնի վրայ եւ իւր դիւցազնական յաջողութիւնները սա դաշինքով կնքեց.

Ա. "Կորէ–որ է– դէ–ան– եթէ զհայրենի եւ զբնիկ օրէնս մեր (այսինքն՝ զՔրիստոնէութիւն) ի մեզ թողուք"։ — Հայը մեջ չընել, ոչ ալ մեքոն–Բեան համար գոն եւ պարի– շնորհել, հետեւաբար եւ կրակարանները (Ատրուշան) վերցնել Հայոց աշխարհէն եւ համարձակութիւն տալ Հայ-քրիստոնէին բոլոր պաշտամունքին։

Բ. Արժանիքի գնահատում. այսինքն լաւն եւ վատթարը, պիտանին ու անպիտանը, տոհմիկն ու անտոհմիկը ճանչնալ եւ ըստ այնմ պատուել։

Գ. Ղահն անձամբ պիտի քննէ եւ պիտի դատէ. հրամաններն ինքն իր բերնով պէտք է խօսի եւ ոչ “այլոց բերանով„ (Փրպ. էջ 492—494. Հմմտ. էջ 416, 417, 422—423, 481, 511, 513, 531)։

Առաջին հայեացքով թերեւս զուտ կրօնական բան մը նշմարուի այս պայմաններու մէջ. բայց հիմնովին քաղաքական հանգամանքներու արդիւնքն է այդ։ Վահանի ապստամբութիւնները, իբր շարունակութիւն Վարդանանց պատերազմին, բողոք մ'է Հայոց աշխարհին ազատ-իրաւասութիւններու սեղմումին դէմ։ Պերոզ՝ զոռող, բայց ոչ այնչափ քաղաքագէտ սասանեան մը, այնքան դէշ վարուեցաւ հայ այրուձիուն հետ — որ Արեւելքի զինուորական փառքն էր այն ատեն — այնքան վար զարկաւ Հայոց մատուցած ծառայութիւնը Արեւաց իշխանութեան եւ ի գործ դրաւ [illegible] մը Հայոց զինուորական պատուին ու քաղաքական իրաւունքներուն դէմ, որ զայրացուց Վահանեանները։ Դիտելու է որ այս ամենուն երկար ժամանակ համբերեց Վահան. իր բոլոր հնարագիտութիւնը թափեց համոզելու համար դրան թէ՝ իրենց քաղաքական իրաւասութիւնները պէտք է յարգուին, եթէ սասանեանք կ'ուզեն Հայաստանի վրայ գերիշխանութիւնը ստանալ։ Վահան մինչեւ իսկ զիջաւ “[illegible] ի [illegible]„, որպէս զի կարենար յաղթել թէ ներքին թշնամիներու դաւաճանութիւններուն, թէ դրան [illegible] (Փրպ. էջ 354. Հմմտ. էջ 357, 360, 421)։ Եթէ խնդիրը լոկ կրօնական ըլլար, դժուար է բացատրել Վահանի [illegible], որ շատ ազատ միտք մը կ'ենթադրէ սքանչելի Մամիկոնեանին մէջ, այնպէս որ նա կրնայ հաշտեցնել կրօնը պետական պահանջներուն։ Բայց երբ տեսաւ որ հակառակ իր ամէն զիջումներուն դեռ Դուռը կը քաջալերէ Հայոց աշխարհին իրաւասութիւնները կոխկռտող վատերը,

փառքի, գահի համար մղած պայքարների. մանաւանդ երբ քաղաքական յանցանքներով կ'ամբաստանէին զինքն՝ իբր թէ "խորհի երթալ առ կայսր եւ կամ յաշխարհն Հոնաց եւ տուեալ զակին՝ կամի խնդրել գունդ եւ ողոքանքել., երբ տեսաւ որ քրիստոնէութիւնը քաղաքական շրջանակներում կ'անարգուի, այսինքն՝ Դուռը կը նախատէ յայտնապէս քրիստոնէութիւնը՝ Հայ եւ Ասորի գունդերուն վրայ, մանաւանդ հայ գունդը, որ ընդհակառակն միշտ գովուած էր նոյն դրան մէջ, (Փրպ. էջ 336, 417, 513, 515. Բուզ. էջ 207) եւ այս լոկ քաղաքական նպատակի մը համար, Վահան կը վճռէ ջնջել (Փրպ. էջ 363, 364. Հմնտ. էջ 494):

Վահանեանք զինուորական եւ քաղաքական նոր կարգադրութիւն մ'ըրին նախապէս (Փրպ. էջ 369), բողոքելու համար դրան շարժումներուն դէմ, որոնց նպատակը շատ չաւ գիտէին: Հայոց պատրաստութիւններն ու պատերազմները Վարդանանց օրէն ի վեր կցկտուած չմնացին, գիտենք որ Սասանեան դերիշխանութիւնը ճանչցող բոլոր քրիստոնեայ ազգեր միեւնոյն սեղմումները կրեցին. բայց առաւելապէս Վիրք եւ Աղուանք կապուած էին Հայոց շարժումներուն. իսկ դրան հանդէպ Հայաստանի բորբոքած վիճակը այնչափ նշանակութիւն ունէր, որչափ այդ աշխարհին Թէոդոսիոն ու Զենոնը (Փրպ. էջ 416, 482—486 եւն):
Ահա բուն հիմը այդ պատերազմներուն, ուր կրօնը միջոց մըն է լոկ քաղաքագիտական ծրագիրներու գործադրութեան եւ այս երկու կողմին համար ալ նոյն է: Պարսիկը իր պետական կրօնը կ'ուզէ ընդգրկել տալ իր բոլոր քրիստոնեայ հպատակներուն, որպէս զի կենդրոնացումը չխախտի կամ չտկարանայ զանազան ազգերու իրաւատական պահանջներով: Իսկ քրիստոնեայ ազգեր՝ հետեւաբար Հայք, ըսենք մանաւորաբար, կը պաշտպանեն իրենց կրօնը, իրենց ազգային եկեղեցին, որ-

պէս զի չկորսնցնեն իրենց ազգային-քաղաքական իրաւունքները։ Երկու կողմէ ալ կրօնի դրօշին տակ կը յուզուէին խնդիրները, բայց երկու կողմերն ալ իրենց քաղաքական ծրագիրները կը գործադրէին։

Վահանի առաջարկած դաշինքն, ուրեմն, զոր ընդունեցաւ "մտացի եւ աշխարհաշէն„ Նիխոր եւ "բարերարն„ Վաղարշ (Փրպ. էջ 487 եւայլն, եւ 480), հաստատուած են ազգային-քաղաքական իրաւունքներու ծրագրին վրայ, որուն գործադրութեան համար անհրաժեշտ էր յարգել ազգային եւ քաղաքական պաշտօն, պատիւ չտալ անոնց, որք իրենց կրօնը կը կորսնցնեն։

Պատմական այս դարագլուխը կը պարտինք Վահանին (484 կամ 488), եւ իրաւամբ կը համարինք զինքն յաջողցնող այն մեծ դատին, որուն համար իր տոհմն սպառեցաւ գրեթէ։ Հայաստանի գրեթէ-բացարձակ կառավարութիւնը՝ Վահան իւր ձեռքն անցնելով՝ իբր Սպարապետ-Մարզպան (Փրպ. էջ 546--547), զօրեղապէս շեշտեց թէ ի՛նչ էր այնքան բուռն ապստամբութիւններուն հիմը, զոր արիւնով դրին Վարդանանք։

Վահանի դաշինքը հայոց համար իրական ծրագիր մ'եղաւ միշտ։ Ամէն գերիշխան կառավարութեան (ոչ քրիստոնեայ) հանդէպ, անխախտ է տոհմ սկզբունքը, ազգային շահերու պաշտպանութիւնը, այնպէս որ երբ "բարբարոսաց„ (Արաբք) արշաւանքներուն եւ պատերազմներուն ալ թատր եղաւ Հայաստան, Հայք պինդ կեցան իրենց ազգային շահերու պաշտպանութեան վրայ. եւ Օձնեցին, Ըրդ դարու այն խորհրդաւոր դէմքը, կարծես Վահանի դաշինքն էր որ կը ներկայացնէր Հաշմին՝ իբր պայման հպատակութեան (Կիրակոս, էջ 38—39)։ Այս կարեւոր ժամանակամիջոցին մէջ, ուր արաբական բռնութիւնը ամէն ինչ կը փճացնէր, հայ ազգին շահերը վերահաս վտանգի մ'առջեւ կը գտնուէին յայտնապէս։ Մաղդէակա-

նութիւնը՝ Սասանեանց պետական կրօնը՝ քաղաքական նպատակի մը համար իւր մէջ ձուլելու կը ճգնէր ոչ-Մազդէական ազգերը։ Ըրդ դարուն միեւնոյն ուղեգծի վրայէն կը քալէր Մահմետականութիւնը, Արաբի լափիչ արշաւանքներու սոսկումին տակ։ Հայք այդ նոր պատուհասին դէմ ալ զինուեցան՝ պաշտպանելու համար իրենց ազգութիւնը։ Արաբը քրիստոնէութեան ջնջումով կ՚ուզէր իւր ծրագիրը գործադրել. Հայք այդպիսի քաղաքականութեան մը փորձը առած էին. պէտք էր միեւնոյն կերպով յարմարիլ բռնապետին հետ։ Օձնեցին կը յաջողի, յարգել կու տայ իւր ազգին իրաւունքները։ Օձնեցիին դէպքը կը շեշտենք հերքելու համար լոկ կրօնական գոյնը Վարդանանց եւ Վահանեանց պատերազմներուն մէջ։ Այդ պատերազմները կրօնա-քաղաքական են, ինչպէս ըսինք գործիս այս մասին սկիզբները։

Պատմութեան մէջ դէպքերու բարացուցականը կը նմանի բժշկութեան մէջ այն ախտանիշներուն, որք հիւանդութիւն մը կը ցուցընեն, բայց ոչ բուն հիւանդութիւնը։ Կրօնական գոյնը Երդ դարու քաղաքական պատերազմներուն արտայայտիչն է, բարացուցական է։ Քրիստոնէութեան հակառակ կրօնները՝ երբ պետական են՝ հպատակներու կրօնին պիտի բախին միշտ։ Սասանեանց պետական կրօնը անցուց իւր շրջանը։ Իսլամականութիւնը Ըրդ դարուն սկսաւ. այն ալ անցուցած պիտի ըլլար իւր շրջանը, եթէ խալիֆայութիւնը չէզոքացած ըլլար Արաբիոյ մէջ։

## Դ.

Կրօնա-քաղաքական պատերազմները, զորս հետզհետէ մղեցին Վարդանանք եւ Վահանեանք, պէտք էր որ իրենց բնութիւնը արտայայտող արդիւնք յառաջ բերէին։ — Վահանի դաշինքը կ՚երաշխաւորէ արդէն զայդ։ Երդ դարուն պատե-

րագմները հիներուն պէս չէին. քրիստոնէութիւնը, սեփական մատենագրութիւնը, իբր վերածնութիւն՝ զգալապէս փոխեցին ըմբռնումները։ Պարսից քաղաքականութեան համար կրօնը թէ եւ բուն պատճառ մը, բայց ուղղակի չէր յուզուած Դրդ դարուն՝ հայոց դէմ մղուած պատերազմներու մէջ։ Մեր ուսումնասիրած դարուն՝ կրօնը միջոց մ'եղաւ երկու կողմերու համար քաղաքական կամ ազգային շահերը պաշտպանելու։

Հայք երբ թագաւոր ունէին, աւելի զօրաւոր էին. հետզհետէ վերջին թագաւորներու ժամանակ այդ զօրութիւնը սկսաւ նուազիլ բնական պատճառներով։ Բայց քրիստոնէութիւնը երբ իրեն հետ բերաւ նոր ոյժ մը՝ Հայաստանեայց Եկեղեցին, որ ժողովրդական կեդրոն մ'եղաւ, եւ երբ իբր անմիջական արդիւնք Քրիստոնէութեան, Հայք ունեցան սեփական, ազգային մատենագրութիւն, ու աւելի զօրացաւ ժողովրդական կեդրոնը։ Նախարարական առանձնախումբերը, այնքան տարբեր իրարմէ անձնական շահերու ըմբռնումով, վտանգ մ'էին արդէն երկրին համար, եւ Սասանեանք կը յաջողէին իսկ իրենց ծրագիրը իրագործել, եթէ անդին բուն ժողովուրդ մը պատրաստուած չըլլար՝ ինքնապաշտպանութեան նոր ոյժերով, որուն գլուխ կանգնած էր սկիզբէն ի վեր երկրին պաշտպան սերունդ մը, Մամիկոնեանց Տունը։ Վերածնութիւնը սերտիւ կապեց հայը իւր երկրին. նա ճանչցաւ իւր իրաւունքները, տէր եղաւ իւր լեզուին, իրեն յատուկ համոզումներուն, իւր բոլոր սեփականութիւններուն, բարք, սովորոյթ, կրթութիւն, եկեղեցի եւն։ Քրիստոնէութեան այս արդիւնքը նոյն ինքն Քրիստոնէութիւնը պահելու միակ միջոցն եղաւ Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ՝ ազգային ըմբռնումներով։ Մեր Եկեղեցւոյ այս նշանակութիւնը չեշտուեցաւ Երդ դարու պատերազմներով, որք տակաւին կը խօսին մեզ իբր մեր

պատմութեան ամենէն կենդանի, ամենէն փայլուն եւ ամենէն հայկական եղելութիւնները։ Պատերազմին դիւցազունքը եւ նպատակը թելադրիչ ոյժեր եղած են Հայոց համար։ Ամենէն մեծ բարոյական արդիւնքն է այս Երդ դարու պատերազմներուն, որ տեւական եղած է։

Հայաստանեայց Եկեղեցին, եւ Երդ դարու Հայաստանեայց Եկեղեցին, իբր "Մայր" (Եղիշէ էջ 51) կամ կեդրոնական հաստատութիւն մը, ամէն թեւարկութիւն ըրաւ երկրի շահերուն. իւր հիմերուն վրայ ամրացաւ, պէտք է ըսել, արդարացուց իւր ազգային կոչումը։ Թէեւ այս բոլոր յաղթութիւնները, յաջողութիւններն ու արդիւնքը հիմնական եղան, ազգն ճանչցաւ իւր նոր ոյժերն ալ գործածելու եղանակը, բայց վերջնական կամ վճռական չեղան. որովհետեւ գէթ Զրդ դարն չկրցաւ նախորդ դարու փայլը անաղարտ պահել. կարծես Վահանի յիշատակներուն կախարդանքը թուլցած էր, եւ հետզհետէ վռամական կրակը սկսաւ Հայաստանի մէջ աղբին անդին մխալ, թէ եւ ալ առաջուան բոցը չունէր։

Մանդակունի Հայրապետն, ականատես դարուն բոլոր եղելութիւններուն, երկրին վատթար եւ լաւ վիճակին, ուրախութեան արցունքով ողջունեց Վահանի յաղթանակներն Դուինի Եկեղեցւոյն մէջ, սքանչելի պերճախօսութեամբ պարզելով Հայ. Եկեղեցւոյն նշանակութիւնը։ Այդ յանպատրաստից խօսքերը, որք ընտրանքով կուգան կը հնչեն արդէն շինուած գաղափարներ արտայայտելու, թէ՛ իբր քրիստոնէական ներողամտութեան արտայայտութիւն, թէ՛ իբր Հայաստանեայց Եկեղեցւոյ նշանակութեան բացատրութիւններ, իրաւի պատմական մեծ արժէք ունին։ Ծերունի Հայրապետը բացատրելով Եկեղեցին թափանցիկ փոխաբերութիւններով բացարձակ ներողամտութեամբ ի միութիւն կը հրաւիրէ զա-

նոնք, որ մէյ մէկ պատճառներով հեռի մնացած էին այդ ազգային մեծ տօնի արիւնոտ նախատօնակներէն։ Մանդակունի մարմնացումն է, այն գաղափարին. որով մենք կ'ըմբռնենք այսօր մեր եկեղեցին։ Մանդակունի Եկեղեցւոյ ծոցէն ելած, աշխատած անոր համար եւ անոր ազգային ոգիով հրաշալի արդիւնք մը ձեռք բերած էր։ Դրուինի այդ մեծ օրուան խանդավառութիւնը, թէ փողոցներու եւ Եկեղեցւոյ մէջ Հայաստանեայց Եկեղեցւոյ նշանակութեան բացատրութեան տօնը եղաւ։

## Ե.

Վարդանանց պատերազմը դարաւոր բախումի մը պայթումն էր։ Տեսանք թէ ինչպէս Շապուհ մազդէականութիւնը իբր ճշմարիտ հաւատ եւ պետական կրօն հռչակելէ յետոյ՝ աղանդները ջնջելով ի մի ուզեց ձուլել հպատակ ազգերը։ Աղանդներ, մանաւանդ երբ զօրաւոր են, կը ջլատեն պետական ոյժը։ Քրիստոնեայ Հայաստանը մեծ եւ զօրաւոր աղանդի մը կեդրոն կը նկատուէր սասանեան քաղաքագիտութեան հանդէպ։ Դրան այս նկատումին մշակումը ծնունդ տուաւ Վարդանանց եւ Վահանեանց պատերազմներուն տարիներ յետոյ։

Ուրիշ շարժառիթներ ալ կը ցուցուին սակայն։ Փարպեցու պատմածով Վարազվաղան՝ Վասակի փեսան՝ է գրգռողը։ Եղիշէ ուղղակի Յազկերտին կը վերագրէ։ Արեւմտեան պատմագիրներու համար բոլորովին տարբեր պատճառ մ'ընդունելու (La Perse էջ 286)։ Այս վերջինը ծանօթ չէ մեր պատմութեան։ Յազկերտ Բ. ի ժամանակ երկու հայ թագաւորներ (Տիգրան եւ Արշակ) ունինք, որոնք իբր թէ իրարու սահմանները գրաւելու համար յեղափոխութիւն մը հանած ըլլան եւայլն։

Եղիշէի պատմածը ճիշդ է թէ Յազկերտի կողմէն սկսաւ հալածանքը. բայց ինչպէս ցարդ ըսուածներէն կ'երեւի, ուղղակի Յազկերտին յղա-

ցումը չէ այդ, այլ՝ սասանեան քաղաքականութեան նոր զարկ մը Յազկերտի կողմէն։ Ջուխչուխ, այսպէս կը կոչուի Յազկերտ մեր պատմութեան մէջ, հազիւ թէ “որ եւ է գովելու արժանիք ունեցած լինի„ ըստ Թ. Նէօլտէքէի (Արարատ 1895. Հոկտ. էջ 387), թէեւ արեւելեան պատմագիրներու համար, բաց ի հայերէն, արդարասէր մ'էր նա (La Perse էջ 321)։ Եւ քանի որ թէ՛ Փարպեցին, թէ՛ Եղիշէն Յազկերտի ժամանակ տեղի ունեցած դէպք մը կը պատմագրեն, բնականաբար անոր պիտի վերագրէին ուղղակի, մանաւանդ որ շատ լաւ տրամադրուած չէին Յազկերտի նկատմամբ։

Իսկ Վարազվաղանի Գրգիռը զուտ երկրորդական արժէք մ'ունի. այնպէս որ կարելի չէ այնքան մեծ շարժումի առիթ մ'ընդունիլ զայն (տե՛ս վերը էջ 280—281)։

## ԳԼՈՒԽ Է.

## ԿԱՐՄԻՐՆ ՎԱՐԴԱՆ

Ամէն մտքի ծանօթ եւ ամէն սրտի մօտ անուն մ'է Վարդան։ Պատմութիւնը մէկ կողմէն, իսկ եկեղեցին միւս կողմէն կենդանացուցած են Վարդանը. համազգային յարգանքի եւ երախտագիտութեան այն բարձր նուիրականութեան մէջ, զոր երբեք կրնայ առեղծել ամէնէն լուսաւորեալ դարու ազգ մը իր մեծ անձնաւորութեանց յիշատակը անմահացնելու համար։ Եւ ժողովրդական աւանդութիւնը, որ այդ դիւցազն դէմքը կուրծքով կախարդած՝ ոսկի-գունդ խորհրդանշանի մը պէս սերունդէ սերունդ կը ցոլացընէ, չէ՛ յղացումը այն հսկայ արձաններուն, որոնք այժմ կը յաջորդեն յուղարկաւորութեանց շքեղ շռայլ բոմբիւններուն, համաշխարհիկ ցոյցերուն, այլ՝ զգացումը հայ սրտին՝ գարնանային Տղմուտի նման եւ յղացումը

*Հայ մտքին՝ Հանդոյն ծաղկալից դաշտերու բնական, իրական երանգապնակին։*

*Հայ ժողովուրդն ու Հայաստանեայց Եկեղեցին է Անոր կենդանի յիշատակարանը։*

*Այսպիսի անձնաւորութեան մը կեանքն Հարկաւոր է իւր գործերուն չափ. — ո՞ր ծնաւ, ի՞նչ կրթութիւն առաւ, ի՞նչպէս յառաջ դիմեց զաւակ ունէ՞ր, քանի՞ տարեկան նաՀատակուեցաւ, ի՞նչ է իւր արժանիքը։*

*Ցարդ լոյս տեսած պատմական աղբիւրներ եթէ լիովին չեն գոՀացըներ մեր Հետաքրքրութիւնը այս մասին, գէթ շատ թանկագին են ատոնք եւ բաւական՝ ցուցընելու այն միջավայրը, ուր կազմուեցաւ Սպարապետին նկարագիրը. նկարագիր մը, որ Հասարակ է Մամիկոնեանց երեւելի դէմքերուն[1] եւ որ կարծես ժառանգական եղած է անոնց Համար։*

---

1 Ցաւալի է որ Մամիկոնեանց թէ՛ պատմական կեանքին եւ թէ՛ առանին կենցաղավարութեան մասին Հարկաւոր ծանօթութիւններ ոչ միայն չեն Համեմատուիր իրենց անպարտելի քաջութեանց պատմութիւններուն Հետ, այլ մաւանդ գրեթէ կը պակսին։ Իբր բացառութիւն, բայց բոլորովին թերի, կրնանք յիշատակել 1. Արտաւազդ Մամիկոնեանը, Մերուժանի դէմ մղեցին կռուող վառվռուն մանուկը, որուն գլխու մազերը «ըստ մանկութեան օրինի, ըստ կրօնից (ըստ սովորութեան) Հայոց գերծեալ էր... Եւ ցցուցանէր ճողեալ եւ գէս ոլորեալ» (Բուզ. Ե. խգ). — 2. Մանուէլ եւ Կոմս Մամիկոնեանները, որք դեռ երիտասարդ՝ քաջութիւններ գործեցին Պարսից բանակին մէջ Քուշանաց դէմ, եւ յետոյ սաստիկ կոտորածէն Հետիոտն պրծան. Շահը զայրացաւ «զի գնտա միայն տեսանէր ողջ եկեալ յամենայն զօրացն իւրոց», վռնտեց զանոնք Պարսկաստանէն դէպ ի իրենց բնաշխարհը. «Եւ էին հետիոտք երկոքին եղբարքն. եւ էին երկոքեան մեծք անհեթեթք, երկոքեան անձնեայք արդեօ ախոյանականք։ Մինչդեռ գնային ի ճանապարհի, ոչ կարէր Մանուէլն գնալ, զի [illegible] էր. այլ Կոմս եղբայր իւր [illegible] [illegible] [illegible], եւ [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] ըստ [illegible] [illegible] [illegible] [illegible]։

*Այս մասին բաւական է աչքի առջեւ ունենալ նախորդ գլուխներու մէջ մեր յառաջ բերած ամենէն պարզ իրողութիւնները, որոնք մէյ մէկ պատկերներն են Վարդանի գործերուն: Որուն մէջ, բաղդատմամբ*

---

ին իրեր յերկիրս Հայոց (Բուզ. Ե. լէ): — Մեծն Վար-դանէն յետոյ 3. կը յիշենք իր եղբօրորդին Մեծն Վահանը, որ տղայութեան Փարպեցու հետ միասին կ'ուսանէին ի Դուռն Վրաց, Զուիկի (մայր Վահանի) եւ Անուշ-Վռամի (մօրքոյր Վահանի) խնամքին տակ: Շատ աքանչելի յայտնու-թիւն մ'է այն, թէ Վահան ուսումնակիցնեցած է Փարպե-ցուն եւ այդ անշուշտ Աղանի նման անձի մը դաստիարակու-թեամբ (Փրպ. եջ 15, 572): Փարպեցի "խաղալից ե-սննդակից այլ էր Վահանին, եւ "ի խաղս զօրականականս,, կը կրէր ապագայ սպարապետ-Մարզպանին (անդ էջ 572): — Այսպիսի մանր մունր եւ ցրիւ յիշատակութիւններ կը գտնուին Մամիկոնեան վերջին շառաւիղներու մասին ալ: Աւելին կայ սակայն. նկատելով ժամանակի Ցիկիններու ու-սումնասէր բարքերը, հաստատապէս կարելի է ըսել թէ աղեղի, նիզակի, սուրի վարժութեանց հետ գրիչ ալ գոր-ծածել կը սորվեցնէին իշխանազուններու: Մեծն Վահանի օրինակը բաւական է այս մասին: Այդ Ցիկնայք, որ երբեմն առնացի քաջութեամբ եւ սպարապետի հնարագիտու-թեամբ գերզգօնութիւններ ի գործ դրին, որոնք դեռ դարեր յետոյ մեր սքանչացումը կը մագնիսեն, իսկական կարեւորու-թիւն մը տուին իրենց իշխանիկներուն կրթութեանը: Այս դասակարգէն յատկապէս կը յիշատակենք 1. Մամիկոնեան եւ Կամսարական նախարարութեանց Ցիկինները, այս ամա-զոնները, որոնք մօրի եւ սրտի քաջութեամբ փայլեցան իրենց ամենէն դառն ու թշուառ վիճակին մէջ. "Եւ սնուցեալ դայ-եկաւ ի դայեկութեան հասակի որդւոց նախարարաց ընդ որդւոյն Վարդանայ, որ է նոյն տոհմէ Մամիկոնէից, եւ-կամ որ է տոհմէ Կամսարականաց եւ կամ յայլ ազգաց, անուանի նախարարաց որդւոց եւ կողմնակալաց ի դրան, թէպէտ եւ ի նեղութեան էին, սակայն սնուցեալ եւ բազում հոգաբարձութեամբ սնուցանել տուեալ եւ խրատեալ, ոչ իբրեւ զանձինս եւ զանդամս կանայս, այլ իբրեւ զօրավիգս զարմանալի քաջութեան հրահանգս մանկանց հա-ւատացեալ գիտէին: Եւ մանաւանդ զին (Զուիկ) նահապետին

*ուրիշ Մամիկոնեաններու, տարբեր բան մը կայ, Մեծն Սահակի մասով գրուած։*

*Ե՞րբ ծնաւ այս մեծ սպարապետը — հարցում մը, որուն կարեւորութեան հանդէպ չլատիչ ամլու-թեամբ մը կը լռեն պատմագիրներ։ Ո՛չ Ղազար, ոչ ալ Եղիշէ ակնարկութիւն մ՚իսկ չունին այս նկատմամբ։ Կորիւն միայն կը յիշատակէ զանի իբր անդրանիկ զաւակ, որ Մեծն Սահակի յատուկ խնամքը կը վայելէ* (*Կորիւն էջ* 13)։ *Խորենացիէն ալ կը տեղեկանանք, թէ Մեծն Սահակ աշխատող մըն է իր թոռան համար եւ թէ Վարդան կարեւոր գործերու կը մասնակցի։*

*Խորենացին է սակայն որ՝ պիտի առաջնորդէ մեզ դէպքի մը, որու հետ կապել կ՚ուզենք Վարդանի ծնունդը։ Այդ պատմական դէպքն է Համազասպի սպարապետութիւնը՝ Սահակ ապետ մահէն անմիջապէս յետոյ. կամ որ նոյն է ըսել Մամիկոնեանց՝ նախարարական ընտանեկան գահը բարձրացումը։*

*Խորենացու մէջ Վարդանի ծննդեան ժամանակը սերտիւ շօշափող պատմական դէպքերուն գլխաւորները միայն նկատի կ՚առնունք, իբր հիմ մեր կազմելիք ժամանակագրութեան, որուն բաղդատութեան եզր կ՚ընտրենք Նէօլտէքէի "Սասանեանց ժամանակագրական ցուցակն"* (*տե՛ս Հայոց Պէտը էջ* 348—349. *ծնթ.* 43 *եւ* 46)։

---

Հմայեկեայ Մամիկոնէի եղբօր Սրբոյն Վարդանայ, որ եղե-կին անուանի եւ առաւելեալ ամենայն լաւ եւ մտաւոր մաւամբք յամենայն կանայս ի Հայաստան աշխարհէս, որ անուն եւ երանելոյ ուրդեան եւր յաշխարհէն Վրաց… (*Փրպ. էջ* 343, 338, 572. *Հմմտ. էջ* 444—452)։ — 2. *Սիւնեաց Ցիկինները՝ իրենց Բիւրեղներով եւ քերդողուհիներով* (*Սահակադուխտ, Մարիամ*) *Օրբել.* — 3. *Արծրունեաց Ցիկինները, որոնց մէջ պակաս չէին Հրանուշներ եւ Մեծ Ցիկին Հափսիմէներ* (*Թովմ. Արծր.*)։

Արդ՝ Խորենացին կ'աւանդէ թէ "դադարումն եղեւ ուստերաց նորա (Մեծին Սահակայ) ունելով դուստր մի Սահականոյշ կոչեցեալ, որ տուաւ յամուսնութիւն Համազասպայ Մամիկոնենի։ Եւ ի մեռանել քաջ Սպարապետին Հայոց Սահակայ, առեալ ի տեղի նորա զնա աղաչէր կարգել Խոսրովայ արքայի, եւ զկնի կապանաց նորա՝ եղբօր նորա Վռամշապհոյ։ ..... Վասն որոյ առեալ ի նմանէ (ի Վռամշապհոյ) թուղթս, ի Բախանջելոյ տարեր (Սահականուշի կնոջն Համազասպայ)՝ ինքն չոգաւ առ Արտաշիր Պարսից արքայ, որ յետ եւթանասուն ամի թագաւորութեան հօրն (Շապհոյ Բ.ի) կալաւ զտէրութիւնն ամս չորս" (Խոր. Գ. ծա)։

Այս պատմածին համեմատ շատ որոշ է թէ 1. Սահականուշի եւ Համազասպի ամուսնութիւնը եղած է արդէն Խոսրովու թագաւորութեան ժամանակ. 2. Սահակ Ապետ մեռած է դարձեալ Խոսրովու ժամանակ. որովհետեւ Սահակ անմիջապէս անոր կը դիմէ իր փեսան՝ Համազասպը նոր վախճանածին տեղ հաստատել տալու համար. 3. Մեծն Սահակ իր առաջին դիմումը կ'ընէ Խոսրովին եւ յետոյ Վռամշապուհին։

Անվիճելի է որ այս դիմումներու միջոցին Համազասպ ամուսնացած է. զայդ կը ցուցընէ ոչ միայն պատմածի ընթացքը եւ Մեծն Սահակի միջամտութիւնը, այլ մանաւանդ Սահականուշի Բախանջանը. թախանձանք մը, զոր կ'ընէ իր հարսնացած Տան բարձրացումին համար։ Այս ամուսնութիւնը անհնար կը թուի ինձ հեռացնել Խոսրավու ժամանակէն, աւելի եւս ճշդելով՝ Սահակ Ասպետի մահուան թուականէն։

Արդ՝ Խոսրով, ըստ Գաթրճեանի, կրնայ թագաւորած ըլլալ 381—391 (Տիեզ. Պատմ. Բ. էջ 520)։

Սահակ Ասպետ մեռած է, ըստ Նորայրի. 388ին (Քնն. Բ. էջ 20—21)։

Վռամ Շապուհ թագաւորած է, դարձեալ ըստ Գաթրճեանի, 391 կամ 392—414 (անդ էջ 522)։

Բաղդատելով այս թուականները Նէօլտէքէի ցուցակին հետ, կ'ունենանք սա ժամանակագրութիւնը.

| | | |
|---|---|---|
| Շապուհ Բ. . . . . . | 309—379 | |
| Արտաշիր Բ. . . . . . | 379—383 | Խոսրով Գ. 381—391 |
| Շապուհ Գ. . . . . . | 383—3°8 | Սահակ Ասպետ † 388 |
| Վռամ-Կրման-Շահ Դ. | 388—399 | Վռամշապուհ 391 կամ 392—414 |
| Յազկերտ Ա. . . . | 399—420 | |

Մէկ կողմէ Խորենացու՝ Նէօլտէքէի հետ համաձայնութիւնը Շապուհ Բ.ի՝ եւ Արտաշիր Բ.ի անմիջական յաջորդութեան եւ թագաւորութեան տեւողութեան մասին, միւս կողմէ՝ Վռամշապուհը Արտաշիրի հետ յարաբերութեան մէջ դնելով՝ յառաջ բերած անհամաձայնութիւնը — անշուշտ Խորենացին իւր մէջ — վեր ի վայր կը խրամատէ թէ Պատմահօր եւ թէ իրեն հետեւող պատմագիրներու ժամանակագրութիւնը, եւ կ'ունենանք թուականներու բաց մը, ուր կը կորսուին Խոսրով եւ Վռամշապուհ, մանաւանդ վերջինը, որուն ծանրակշիռ դեր մը կ'ընծայուի Համազգային Սպարապետութեան բարձրանալու կարգադրութեան մէջ։

Ինչպէս կը տեսնուի մեր բաղդատած թուականներէն, Վռամշապուհ ոչ միայն չի կրնար գործ ունենալ Արտաշիր Բ.ի հետ, այլ ինքն՝ Վռամ-Կրման Շահի ձեռքով միայն թագաւորած կրնայ ըլլալ, որուն հետ, յիշուի, բարեկամ էին (Խոր. Գ. ծա) թէ Վռամ Շապուհ եւ թէ Մեծն Սահակ։

Եթէ Նէօլտէքէի՝ Արտաշիր Բ.ին տուած 379—383 տարին, ուրիշ ցուցակներու համեմատ 381—385ի բարձրացնենք, Վռամշապուհ դարձեալ յարաբերութիւն չի կրնար ունենալ Արտաշիր Բ.ի

հետ, որ թագաւորեց "ամս չորս"։ Եթէ՝ գէթ Շապուհ Գ.ի (383—388) հետ համաձայնէր Վռամշապուհի թուականը, կարելի էր ըսել թէ Արտաշիր (Բ.) Խորենացու համար Շապուհ (Գ.) է. այսինքն՝ անուանակոչութեան պարզ սխալ մը, որ մանաւանդ շատ կը պատահի Սասանեան թագաւորներու, որոնցմէ շատեր Շապուհ կոչուած են մեր պատմագիրներէն. եւ որովհետեւ Արտաշիր Բ. չորս տարի, իսկ Շապուհ Գ. հինգ տարի թագաւորեցին, մէկ տարուան տարբերութիւնը կարելի էր հաշուի չառնել, կամ, աւելի ճշդութեամբ հաշտեցնել Նէօլտէքէի թուին հետ, որ Շապուհ Գ.ին 4, իսկ յաջորդին (Կրման) 11 տարի կու տայ. մինչ Խորենացին՝ Արտաշիր Բ.ին 4 կու տայ, իսկ յաջորդին (Կրման) ամս տասն։ Բայց դժբախտաբար Խորենացին ոչ միայն շատ ճիշդ կը նշանակէ թէ անուանակոչութեամբ եւ թէ ժամանակագրական կարգով Արտաշիրի (Բ.) չորս եւ անոր հօր (Շապուհ Բ.) եօթանասուն ամ թագաւորութիւնը, եւ ասկէ զատ, ոչ միայն Շապուհ Գ.ի թուականին ալ չի համաձայնիր Վռամշապուհի թագաւորութեան ժամանակը, այլ մանաւանդ Խորենացին բոլորովին կը մոռնայ Շապուհ Գ.ը եւ Արտաշիր Բ.ին անմիջական յաջորդ կը նշանակէ Վռամը "որ եւ Կրմանն կոչեցաւ ամս տասն", որ է նոյն ինքն Վռամ-Կրման-Շահ Դ[1]։

---

[1] Խոր. էջ 515. — Նման անճշդութիւն մ՚ալ այս ժամանակամիջոցին, մնաց Խորենացու Գ. Ծ. գլխուն, ուր յիշուած Շապուհը, "որ էր ցասմամբ ընդ Խոսրովայ", Երկայնաձեռն է, ինչպէս կը տեսնուի մեր բաղդատական ժամանակագրութենէն, յարաբերութիւն չի կրնար ունենալ Խոսրովու հետ, եթէ նոյն իսկ Խորենացու չնշանակած Շապուհ Գ.ն ալ ըլլայ այն։ Այդ տեղ կը յիշուի նաեւ Արկադէոս, որուն հետ բարեկամական յարաբերութիւն ունեցած է Խոսրով եւ Շապուհի ցասումը "ընդ Խոսրովայ" այս բա-

Առանց նախապաշարուելու Պատմահօր պատճեններով՝ հիմնուելով Նէօլտէքէի եւ Գաթըրճեանի թուականներուն վրայ, կը գտնենք որ Խոսրով յարաբերութիւն կրնայ ունենալ Արտաշիր Բ.ի, Շապուհ Գ.ի եւ Վռամ-Կրման-Շահ Դ.ի հետ, մինչեւ ասոր երրորդ տարին (388+3 = 391 կամ 392)։ Կը գտնենք նաեւ, որ Սահակ Ասպետ կը վախճանի Շապուհ Գ.ի վերջին եւ Վռամ-Կրման-Շահ Դ.ի առաջին տարիներուն, այսինքն 388ի օգոստոսին։

Արդ, ինչպէս տեսանք, Խորենացին կ՚ըսէ թէ Մեծն Սահակ դուստր մ՚ունէր "Սահականոյշ կոչեցեալ, որ տուաւ յամուսնութիւն Համազասպայ Մամիկոնենի„, եւ թէ Սահակ "ի մեռանել... Սահակայ Ասպետի՝ ի տեղի նորա զնա (զՀամազասպ) աղաչէր կարգել Խոսրովայ... եւ զկնի... Վռամ Շապհոյ„. ուրեմն Սահակ Ասպետի մեռած ժամանակ՝ Համազասպ արդէն փեսայացած է Մեծն Սահակի. այսինքն 388էն յառաջ։

Այս ամուսնութիւնը 388էն՝ որչափ ալ ետ մղուի, զոր օր. մինչեւ 384—386, կարելի չէ նոյն համեմատութեամբ Վարդանի ծնունդը համաձայնեցնել։ Ըստ իս 387ը ամէնէն հաւանական թիւն է Սպարապետի ծննդեան։

Ասկէ կը հետեւի, որ Մեծն Սահակի Առաջին երթը ի Տիզբոն 388էն, այսինքն՝ Ասպետի մահէն անմիջապէս յետոյ պէտք է փնտռել. ո՛չ թէ Արտաշիր Բ.ի ժամանակ ըստ Խորենացու, այլ 388ի օգոստոսին՝ Շապուհ Գ.ի վերջին, իսկ Վռամ-Կրման-Շահ Դ.ի առաջին տարիներուն եւ շատ շատ 389ին. այսինքն՝ միայն Վռամ-Կրման-Շահի

---

րեկամութեան համար եղած պիտի ըլլայ ըստ Խորենացու. արդ՝ Արկադէոս թագաւորեց 395–408. այսինքն՝ Խոսրովու մահուանէ չորս տարի յետոյ։

ժամանակ (388—399) եւ իւր կաթողիկոսութեան երկրորդ տարին։ Այս ժամանակամիջոցին պէտք է դնել նաեւ Վռամշապուհի միջամտութիւնը եւ Սահականուշի թախանձանքը։ Արման-Շահի բարեկամութիւնը Հայոց պաշտօնական անձնաւորութեանց հետ, զօրաւոր հաւաստիք մ'է այսպիսի կարեւոր խնդրի մը անմիջական կարգադրութեան. աստ կը նպաստէ ոչ միայն ժամանակագրութիւնը, այլ մանաւանդ զայդ կը հաստատէ այն դաշնամակը, զոր Վռամ-Գոռ (Ե) նորոգեց, երբ Մեծն Սահակ Երրորդ անգամ գնաց ի Տիզբոն[1]։

Այսպէս հակառակ Խորենացու պատմածին, որուն վաւերական ձեւ մ'ալ տուած է չեչէ-չուած պատճէններով, ոչ Մեծն Սահակ յարաբերութիւն ունեցած է Արտաշիր Բ.ի հետ, ոչ ալ Վռամշապուհ։ Որովհետեւ Մեծն Սահակ վախ-

[1] Մեծն Սահակի երթն ի Տիզբոն երեք անգամ կը յիշատակէ Խորենացին, լաւ եւս՝ Մեծ Հայրապետին երթերէն երեքին յիշատակութիւնը միայն պահուած է պատմութեան մէջ.

Ա. Երթ. — 388 կամ 389, Վռամ-Արման-Շահի ժամանակ, որ հրամայեց "զազգն Համազասպայ, որ է տոհմ Մամիկոնեան, ի վեր մատուցանել, զի կարասցեն ունել զհինգերորդ գահ նախարարացն Հայոց, եւ ի դիւանի իւրում գրել„ (Խոր. Գ. ծա)։

Բ. Երթ. — 414. Յազկերտ Ա.ի ժամանակ. — "Յայնմ ժամանակի երթեալ մեծին Սահակայ ի Դուռն արքային Պարսից Յազկերտի՝ խնդրել զկապեալն Խոսրով... Եւ Յազկերտի հաւանեալ՝ կատարէ զհայցուածսն, տալով նմա զտէրութիւնն՝ արձակեաց ի Հայս„ (Անգ, ծե)։

Գ. Երթ. — 428, Վռամ-Գոռ Ե.ի ժամանակ. — "Յայնժամ արքայն Պարսից Վռամայ կոչեցեալ ի Դուռն զթագաւորն Հայոց զԱրտաշիր (զԱրտաշէս Գ. 422—428), եւ զՄեծն Սահակ, եւ խնդրէին ի նմանէ ամբաստանել զԱրտաշրէ. եւ նա հրաժարէր բնաւ ասել ինչ չար կամ բարի„ (Անգ. կդ. կե)։

ճանեցաւ “յառաջնումն ամի Յազկերտի (Բ) որդւոյ Վռամայ (Ե)... ի կատարել ամենանն Նաւասարդի„ (Կորիւն էջ 25, Փրպ. էջ 103. — Խոր. Գ. կէ) այսինքն՝ 438 սեպտ. 7. (Նաւասարդ 30) ԴՇ։ — Յազկերտ Թագաւորեց 438 օգոստ. 4. իսկ Սահակ 51 տարի կաթողիկոսութիւն ըրաւ. հետեւաբար գահակալած կ'ըլլայ 438—51 = 387ին կը գահակալէ։ Միւս կողմէն գիտենք, որ Արտաշիր Բ. Թագաւորեց 379—383. այսինքն Մեծն Սահակ կաթողիկոսացած է Արտաշրի մահուանէն շատ ետք յետոյ։ Միեւնոյն ժամանակագրութեամբ Վռամ-Շապուհն ալ դուրս կը մնայ Արտաշիրի ժամանակէն, եթէ նոյն իսկ Վռամշապուհի Թագաւորութիւնը, ըստ ոմանց, դնենք 389—410ին, եւ ոչ թէ 391 կամ 392—414ին։

Ամփոփելով ցարդ ըսուածները կ'ունենանք հետեւեալ ժամանակագրական ցուցակը.

| | |
|---|---|
| Ամուսնութիւն Սահականուշին Համազասպի հետ . . . . . | 384—386 |
| Վախճանումն Սահակ Ապետին . . | 388 |
| Ա. Երթ Մեծն Սահակի ի Տիզբոն . | 389, որ |

առեն Վռամ-Կրման-Շահ Դ. հրամայեց՝ “զազգն Համազասպայ, որ է Տոհմ Մամիկոնեանց, ի վեր մատուցանել, զի կարասցեն ունել զհինգերորդ գահ նախարարացն Հայոց„ (Խոր.)։

Այս բոլոր գործողութեանց միջոցին, այսինքն նուազն 387—388ին Համազասպ արդէն ունեցած էր իւր անդրանիկը. որովհետեւ Սահականոյշ երբ կը նախանձէր իւր հայրը, Տիկին եղած էր Համազասպին եւ անպատճառ իւր կուրծքին վրայ կը գգուէր իւր Վարդանը։

Ըստ այսմ՝ Քաջն Վարդան վաթսուն երեք-տարեկան նահատակուած է Աւարայրի դաշտում (451 Մայիս 26 ՇԲ)։ Եւ քանի որ Վարդանի ծնունդը կը կապուի Համազասպի ամուսնութեան

հետ, մեր նշանակած վախճանն երէք տարիներուն, լաւ եւս ճշդելով, վախճանէն առէմ տարիներու հաշիւը հաստատուն է։

Վարդան կամ Վարդկան, հաւանաբար, ծնած Տարօն։ Համազասպին եւ Սահականուշին անդրանիկն է Վարդան. Միջինը՝ Հմայեակ, իսկ կրտսերը՝ Համազասպ կամ Համազասպեան՝ հօրը անունով (Հմմտ. Խոր. Գ. ծա. ծբ. — Փրպ. էջ 103. 168, 211, 314. — Եղիշէ էջ 90, 99)։

Ըստ Հ. Ղ. Ալիշանի "գոնէ յիսնամեան եղեր ըլլար„ Վարդան իւր նահատակութեան ժամանակ (Յուշիկք Ա. էջ 266)։ Շատ փափաքելի էր գիտնալ բազմահմուտ հեղինակին հաշիւը, որմէ զրկած է իւր պատմաբանաստեղծական դրուագը ի կարմիրն Վարդան։

Պէտք է դիտել սակայն, թէ պատճառաբանուած՝ ժամանակագրական հաշիւներէն զատ դեռ կան պատմական ուրիշ հիմեր ալ, որոնք թոյլ չեն տար յիսունի սահմաններուն վրայ փնտռել Սպարապետին տարիքը. տարիք մը՝ բեռնաւորուած եւ փառաւորուած երկար տարիներու գործունէութեամբ։

Վարդանի կեանքին երկու գլխաւոր կէտերը անվիճելի են իբր ժամանակագրական թուականներ. մին՝ երթն ի Բիւզանդիոն Ս. Մեսրոպի հետ, եւ միւսը՝ իւր մարտն ու նահատակութիւնը Արտազ։ Վարդան երբ գնաց Բիւզանդիոն՝ կայսրն էր Թէոդոս Բ. (Փոքր), որ գահակալեց 408—450 Յուլիս. իսկ Պատրիարքն էր Ատտիկոս, ծագումով Հայ, 406—426։

Ըստ Խորենացու "ընդ նոյն աւուրս„, այսինքն՝ 419ին, երբ Յազկերտ Ա.ի որդին Շապուհ "զքառեամ անարգաբար„ թագաւորելէ յետոյ Հայոց վրայ, փախաւ ի Տիզբոն, իւր հօր հիւանդութեան լուրով, որուն մահը չուշացաւ, "թագաւորեալ լինէր Պարսից Վռամ երկրորդ„ (Վռամ-Գոռ Ե.

420 *օգոստ.* 8 438 *օգոստ.* 4)․ “Եւ չէին վռա-մայ խնդրելոյ *ի մերձ աշխարհէս, խաղաղութիւն ունելով ընդ Յոյնս՝ ոչ ի բաժին նոցա Հայք*։ Իսկ ինքն եւս Մեծն Սահակ զայս ամենայն շարէր ի մասինն Պարսից, քանզի նա զկողմանսն արեւմտից մերոյ աշխարհիս ի բաժին մասինն Յունաց․ եւ ոչ ըստ արժանեաց իւրոց եղեւ ընկալեալ․ վասն որոյ յղէ զՄեսրոպ եւ զՎարդան թոռն իւր ի Բիւզանդիոն առ կայսրն Թէոդոս„ (Խոր․ Գ․ ծզ, ծէ)։ — *Յայտնի է որ այս ամէնը տեղի կ'ունենայ Անթեմիոսի երբ Վռամշապուհ կը թագաւորէ․ այսինքն՝ 420ի օգոստոսին․ որ է ճիշդ թուականը Վարդանի երթին ի Բիւզանդիոն* (Հմմտ․ Յովսէփ էջ 331, 334)։ *Արդ՝ 420էն յետոյ՝ երեսուն եւ մէկ տարի ապրեցաւ Վարդան, մինչեւ 451 Մայիս 26․ այսինքն՝ մեր նշանակած վաթսուն երեք տարիներուն գրեթէ կէսը․ ուրեմն՝ երբ Վարդան Բիւզանդիոն գնաց երեսուն երկու տարեկան, լաւ եւս, երեսուներկու ամեայ էր։ Յիրաւի այդչափ կարեւոր պաշտօն մը, ինչպէս էր Մեծն Սահակի կազմած պատգամաւորութիւնը, նուազ տարիքոտ, այսինքն եթէ յիսնամեայ ընդունինք, 19—20 տարեկան երիտասարդի մը եթէ ոչ կարելի՝ գէթ հաւանական չէր յանձնել։ Նոյնչափ եւ աւելի կարեւոր գործի մը համար Վարդան, դարձեալ ըստ Խորենացւոյ, ընկերացած է Տիզբոն գացող պատգամաւորութեան մը, որով Արտաշէս Գ․ թագաւոր եղաւ Հայոց՝ 422ին (Խոր․ Գ․ ծը)․ բնական է որ 19—20 տարեկան երիտասարդ մը պիտի չկրնար միջամտել երկրի քաղաքական գործերուն։ Ընդ հակառակը այդ տարիքը դեռ այն ժամանակն է, ուր* “Առաքել երանելւոյն Սահակայ զՄամիկոնեան որեարն՝ ի վերայ վարդապետու-թեան զօրավարեցուցեալ․ որոյ առաջնոյն Վարդան անուն էր եւ Վարդէն կոչէր„ (Կորիւն էջ 13—14)։ *Յայտնի է որ Վարդան այս կրթութեան միջոցին, որ կ'ինայ ճիշդ հայ նշանագիրներու գիւտին կամ*

*թարգմանութեանց (Ս. Գրոց) ժամանակ՝ 404էն առդին, տղայ չէ, այլ հասուն պատանի մը։ Զայդ կը ցուցընէ ոչ միայն Սահակի տուած ուսանել կարեւորութիւնը իւր թոռներուն կրթութեան, որովհետեւ դժուար է տղայ մը ի վարժս վարդապետութեան պատրաստելու, այլ մանաւանդ որեւէ բացատրութեան կիրարկումը, թոյլ չի տար մանուկ կամ տղայ հասկընալ։ Նախնիք այդ բացատրութեամբ կը հասկընան մարդիկ ընդհանրապէս բարձր դասակարգի եւ պատերազմի մարդիկ, եւ մանկութեան տարիքը բացատրելու համար յատուկ բառեր չեն մոռնար։*

*Դիտենք այժմ եւ այն պատմածները, որոնք առոյգ-ալեւոր Զօրավարի մը կեանքը կը կազմեն.*

*Առաջին. — "Ի բազում պատերազմունս մտեալ է իմ եւ ձեր ընդ իս... Եւ մեք իսկ աւասիկ յիւրաքանչիւր մարմինս ունիմք զվէրս եւ զհետս բազմաց" (Եղիշէ էջ 77—78)։*

*"Բազումք են յայս երից աշխարհաց յազատորերոյ, որք են առաւել քան զիս եւ գահու եւ ա-ռաւելք, եւ շատ են՝ որ ի խոնարհ են" (Փբզ. էջ 138)։*

*"Եւ զմեծամեծ գործոց նորա (Վարդանայ) յիշումն առ Արեաց աշխարհին, զոր բազում զօրագլուխք եւ այլ Արիք յիշեն, ընդ որս եւ նորա (Վարդանայ) կռիւ եղեալ էր. այլ եւ զոր իւր իսկ աստուածանման տեառն իւրովք աչօք տեսեալ էր ի Մար-Վիռոտ՝ զնորա քաջասրտութիւնն" (Փբզ. էջ 233)։*

*"Այլ յիշէր (Պերոզի) ընկերսն եւ զնախնեացն նորա (Մեծին Վահանայ) զերս եւ զգործս, եւ որպէս հանապազ ընդդիմամարտութեամբ աշխատ կացեալ էր զնոսա" (Փբզ. էջ 339)։*

*"Եւ յայմհետէ ապա հնազանդէին Հայք առաջնորդութեան քաջին Վարդանայ մինչեւ ցօր մահուան նորա, որ բազում պատերազմունս քաջութեան վասն առ ի Քրիստոս հաւատոցն կատարեալ" (Ցվ. Պատմ. էջ 35)։*

"Իսկ սուրբն Վարդան Մամիկոնեան զօրավարն Հայոց ամս 19 պատերազմեալ ընդ Յազկերտի Պարսից արքայի, մեռանի ի վերայ սուրբ ուխտի եւ քրիստոնէական հաւատոց ի դաշտին Աւարայրի ի գաւառին Արտազու„ (Ասողիկ էջ 79)։

"Յորմէ (ի Յովսեփայ) մանաւանդ հնազանդեցան Սրբոյն Վարդանայ ամենայն նախարարքն Հայոց, որովք տայր պատերազմ ընդ Պարսս ամս իննեւտասն, յաղթեալ քառասուն եւ երկու պատերազմաց, մինչեւ ցկատարումն իւր մարտիրոսութեամբ„ (Վարդան էջ 53)։

Այն քառասուն պատերազմներուն, որոնց նկատմամբ պանծալով կը խօսի ինքն Սպարապետն, ինչպէս կ'երեւի՝ յետին դարու պատմագիրներ 19 տարիներու ընթացք մը կը գծեն, եւ Վարդան Պատմագիր 42ի կը հասցընէ անոնց թիւը։ Անպատճառ կամ այն ազգային աւանդութիւններէն է այդ տեղեկութիւնը, որոնք առատ են ժողովրդեան մէջ եւ կամ այն պատմածներու տեսակէն, որոնց աղբիւրը տեսած են Յվ. Պատմաբան եւ Թովմա Արծրունի (տե՛ս Ա. Գիրք. գլ. Ե.)։

Ցիրուցի քառասունը անորոշ բացատրութիւն մ'է, եւ 42էն աւելին կամ նուազն ալ քառասուն է. այսու հանդերձ պատճառ մը չունինք մերժելու պատմագրի մը աւանդածն, որ 3, 7, 9, 12, 30, 32, 40. 70 եւ այլ թիւերու խորհրդականութեամբ չինուելու բախտը չէ ունեցած. որովհետեւ այն մեծամեծ գործերը, մանաւանդ Մար-Վիռոտի պատերազմը (ի Նպատ Պարսից) անշուշտ այդ քառասուններէն են, որոնց վերջինը, բայց ամէնէն փառապանծը եղաւ Աւարայրինը։

19ամեայ պատերազմները լոկ Յազկերտի (Բ) դէմ չէր կրնար մղած ըլլալ Ասողիկի պատմածով. Վարդան պատմիչինը՝ "ընդ Պարսս՝„ աւելի ճիշդ է. այնպէս որ 42 պատերազմներու աւանդութիւնը նոյնչափ ճշդութեամբ կարծես աղբիւր մը կը

չօշափէ։ 19ամեայ ժամանակամիջոցը անընդհատ պատերազմներու ընթացք մը կը ներկայացուի մինչեւ Աւարայրի յաղթութիւնը. այս հաշուով Պարսից դէմ մղուած ճակատներուն սկիզբը կ'ըլլայ (451 — 19 =) 432. այսինքն՝ Վռամ-Գոռի ժամանակ կամ Արշակունի գահին բարձումէն գրեթէ անմիջապէս ետքը, երբ 42—43 տարեկան էր Վարդան։ Եւ ստուգիւ Վարդան գէթ այսչափ յառաջացած տարիք ունենալու էր, որ կարող կ'ըլլայ նախարարներն իր գլուխը ժողովել, կամ թէ նախարարք կը հնազանդին իրեն եւ կը սկսի ընդդիմութիւնը։

Եղիշէ. — "Եւ նորա (Վարդանայ) խօսակցեալ զամենայն այսպէս ընդ ընտանիս տանն իւրոյ։ Պատասխանի ետ նմա եղբայրն Հմայեակ եւ ասէ. "Քաջութիւն կատարել զոր խորհիս, եւ մի յապաղեր„. (Փրպ. էջ 164)։

"Մտանէին զառաջեաւ, պատմէին երանելւոյն Վարդանայ տեառն Մամիկոնէից եւ Հայոց սպարապետին, եւ առաջի եղբարցն իւրոց՝ Հմայեկայ եւ Համազասպայ, ցուցանէին իւրեանց քաջութեանն անուանելոյն առ նոսա .... յառաջ բերեալ եւ զԱւետարանն Երդման՝ ունէին առաջի երանելւոյն Վարդանայ եւ եղբարց նորա։ . . . Եւ զայս ամենայն քանզի լուեալ . . . Վարդանայ հանդերձ եղբարքն իւրովք„ (Փրպ. էջ 168—169)։

"Եւ պատրաստեալ ճանապարհին Յունաց կազմէին զիշխանն Տանն Ամատունեաց Վահան, որպէս զայր մտացի եւ խորհրդական եւ ընդ Սեպուհն Հմայեակ զեղբայրն . . . Վարդանայ ի Մամիկոնեան տոհմէն, եւ զերանելին Մերհուժան . . . յուղարկէին առ կայսր.„ (Փրպ. էջ 185)։

"Քանզի բազմութիւն փախստէիցն Հայոց, նախարարք եւ ռամիկք, ոտանիք եւ ամենայն մտեալ ի լերինս Տայոց, ժողովէին առ Հմայեակ„ (Փրպ. էջ 216)։

Որջնհաղի պատերազմը, ուր Հմայեակ կը գործէ իբր զօրավար եւ կը նահատակուի (Փրպ. էջ 219—220. — Եղիշէ էջ 99)։

“Եւ զՀամազասպեան զիւր եղբայրն թողոյր վերջապահ„ (Փրպ. էջ 211). կամ “Ցանձն առնոյր զգունդն Երրորդ, եւ նիզակակից իւր զքաջն Արշաւիր եւ զՀարազատ եղբայր իւր զՀամազասպեան„ (Եղիշէ էջ 90)։

Վարդանի եղբայրներն, ուրեմն, փորձառու եւ տարիքոտ մարդիկ են։ “Սեպուհն„ Հմայեակ խոհուն եւ գործօն անձնաւորութիւն մըն է — Վարդան կը խորհրդակցի անոր հետ, կ'անսայ անոր խորհուրդներուն։ Հմայեակ՝ իբր պատգամաւոր կ'ընկերանայ ուրիշ “մոացի եւ խորհրդական„ անձնաւորութեան մը, այսինքն՝ դիրքով եւ գլխով իրեն յարմար մարդու մը. այնպէս որ պատգամաւորութեան Բիւզանդիոնէն վերադարձէն յետոյ, երբ Վարդան ընկած էր արդէն Աւարայրի մէջ, կը տեսնենք որ ահագին բազմութիւն մը Հմայեակին կը դիմէ։ Հմայեակ այսպիսի դիրք մ'ունենալու համար, անշուշտ, ոչ միայն գլուխ, այլ մանաւանդ պատկառելի տարիք պիտի ունենար՝ իւր մեծ եղբօր 63 տարիներու համեմատութեամբ։

Նոյնպէս Համազասպեան, Վարդանի եւ Հմայեակի կրտսերը, որ կը մասնակցի իւր եղբայրներու խորհուրդներուն եւ գործերուն, մանաւանդ իբրեւ վերջապահ կամ նիզակակից կը գործակցի Վարդանին, այսինքն՝ Աւարայրի պատերազմին ոգին կազմող ամենէն գործունեայ գունդին կամ առաջին, Համազասպեան կ'ըսենք, քաջ զօրականի մը տարիքն պէտք էր ունենալ. այսինքն յիսունէն վեր։

Դիտելու է նաեւ Խորենացու սա պատմածը. — “Վասն որոյ թողու (Մեծն Սահակ) զՄեսրոպ ի վերայ վարդապետութեան կողմանն արեւմտից (Յունաց), եւ առ նմա զթոռունսն իւր զՀմայեակն ե-

յՀամաշատակեան շեղջարան Վարդանայ Սպարապետի: Հրամայէ տնկել ցծանրատէրծ ծործորետանան, եւ եթէ ոչ հեշտութեամբ եւ ոչ սաստիւ գայցեն յաղթութեան, լուսաւորանօք հալածել» (Խոր. Գ. ծը):

*Մեծն Սահակ այս կարգադրութիւնը* 420—421*ին ըրաւ, երբ Մեսրոպ եւ Վարդան վերադարձան Բիւզանդիոնէն եւ Սահակի գործունէութիւնը յունական բաժնի մէջ պաշտօնական կերպարանք մ'առաւ:*

*Արդէն գիտենք որ Հմայեակ եւ Համազասպեան* 451*ին նահատակուեցան. ուրեմն* 421*էն մինչեւ* 451*՝ երեսուն տարի ապրած են. այս անվիճելի է: Եւ որովհետեւ* 421*ին Մեսրոպի մատենագրական եւ քրիստոնէական ձեռնարկներուն սատարողներ կը նշանակուին, նոյն իսկ լուսաւորանօք հալածելու արտօնութեամբ, գէթ այն ատեն Հմայեակ* 28—30 *եւ Համազասպեան* 25—26 *տարեկան պիտի ըլլային: Այսպէս՝ երեսուն անվիճելի տարիներուն վրայ գումարելով* 28—30 *եւ* 25—26 *հաւանական տարիները, Հմայեակ ապրած կ'ըլլայ* 58—60, *իսկ Համազասպեան* 55—56: — *Այս հաշուով՝ իրարու վրայ գրեթէ* 3 *տարի կը հեռանան Սահականուշի որդեծնութեան տարիները:*

*Մեծ Սպարապետի եղբայրներուն իսկ գիրքն ու գործունէութիւնը որոշ ժամանակամիջոցի մը մէջ, կը ցուցընեն թէ Վարդան վաթսունէն աւելի աւարայրեան գարուններ տեսած զօրավար մըն է. բազում պատերազմներու մէջ մտած, բազում վէրքեր եւ սպիներ առած՝ երբեմն փոթորկալից խիստ եղանակներու, երբեմն ալ ծիծաղկոտ ամիսներու մէջ՝ երբ «գարնանային էր ժամանակն եւ դաշտքն ծաղկալից:» Ո՜րչափ մեր սրտերուն յարմար բան մ'էր քաջին տարիքը՝ իր էն մեծ գործին պէս՝ երիտասարդ արձանագրուած գտնել պատմական էջերու մէջ:*

Արդարեւ Վարդանի քաջագործութիւնները ոչ թէ 50, ոչ թէ 60, այլ՝ 40 գարուններ ծծած կորիճի մ՚աննուաճ կորովին մարմնացումներն են։ Եւ սակայն ինչ աւելի սքանչելի, ինչ աւելի կախարդիչ քան այն գարուն մ՚աշխոյժը, քան այն սիրտ մ՚եռանդը, եւ քան այն երիտասարդութիւնը՝ համակ գորով, որ ալեւորի մը մէջ կը վառի, կ՚եռայ, կ՚արտափայլի։

## ԳԼՈՒԽ Ը.

### § 1. ՎԱՐԴԱՆԻՆ ԿՐԹՈՒԹԻՒՆԸ

Այս խորագրին տակ մատնանիշ ընել կ՚ուզեմ այն առանին դաստիարակութիւնը, զոր տուին Վարդանի՝ իր Մեծ Հայրը՝ Սահակ, եւ մայրը՝ Սահականոյշ, որ անտարակոյս արժանի դուստրն էր իր Հօր։

Իշխանազուններու կրթութիւնն առ հասարակ, մանաւանդ ռազմագիտական հրահանգներ՝ ժամանակին ըմբռնումով, ձիավարութիւն, նետաձգութիւն, որս, յանձնուած էր սնուցիչներու, դաստիարակներու, [illegible] կամ [illegible], դայեակներու։ Վերջիններն մանաւանդ ամէն վայրկեան կ՚ընկերանային կամ կը հետեւէին իրենց յանձնուած իշխանիկներու, նոյն իսկ պատանդի ժամանակ. դայեակներ՝ իբր խնամակալ՝ ամէն խնամք, ամէն հսկողութիւն անձնազոհութիւն իսկ չէին խնայեր. ասոնք միշտ ընտիր խորհրդականներ եղած են իրենց իշխանիկներուն[1]։

---

1 Պատմութեան պահած քանի մը թանկագին հետքեր կը ցուցընեն թէ դայեակներ զկեանս կապուած էին իրենց խնամքը վայելող նախարարներուն, նոյն իսկ թագաւորներուն։ Առանց ուրանալու չար կամ դաւաճան դայեակներու գոյութիւնը, կը տեսնենք Դրաստամատ մը

Մամիկոնեանց մէջ սակայն դայեակներէ աւելի ծնողքի դաստիարակութիւնն իւր յատուկ դրոշմն ունի. այս կէտը զօրեղապէս կը շեշտենք մանաւանդ՝ երբ խնդիրը Մեծն Սահակի թոռներուն վրայ է։

Մեծ Մարդը՝ արդէն ուսեալ, գիտուն, քաղաքագէտ, կենցաղագէտ անձնաւորութիւն մը՝ ծնելասէր գուրգուրանքով կը գգուէր իւր ծերութեան մխիթարութիւնները, եւ այս ճիշդ այն ատեն, ուր Հայ գրականութեան ծաղկումը սփոփանք մը եւ ամոքում մը բերած էր պատուական ծերին խոնջանքներուն։ Անոր թոռները, մանաւանդ Վարդան, բարեբաստիկ զուգադիպութեամբ, ազգի մը համար ամէնէն նշանաւոր դարագլուխ համարուած՝ ոսկեղէն ժամանակի մը բարիքը վայելեցին. իրենց պատանի ծաղկումը՝ գրական ծաղկումի մէջ զարգացաւ, ընիկ մատենագրութեան մ'ամէնէն հարազատ դաստիարակութիւնը անոնք առին՝ նոյն ինքն հնարիչ վարպետներու ձեռքով։

Պատմական կեանքի մ'ամէնէն հետաքրքրական մէկ կողմն է այս, որ երբեք պատահած ըլլայ տիեզերական պատմութեան ամէնէն նշանաւոր դէմքերուն։ Խնդիրը այն չէ, որ Վարդան ճակատագիրը հարուածող այս դէպքին մէջ մեծ, բարձր կը կանգնի, իւր կեանքը նշանաւոր կնիք մ'ալ կը կրէ, որովհետեւ Մամիկոնեան տոհմին ուրիշ ներկայացուցիչներն ալ նոյնքան մեծ, նոյնքան բարձր եղած են առանց բածնական վեհեռանդին թարմութիւնը ծծելու, այլ՝ Վարդան դարուն արժանի ծնունդն եղաւ։ Ծնունդ մը՝ կրօնի եւ գրականութեան ամէնէն տաք երկունքին մէջ, ուր իսկ գտաւ իւր սնունդը, աջողակ, հզօր, կա-

քաջ, հաւատարիմ, Արշակի մօտ՝ Անյուշ բերդի մէջ, եւ Խուրսը՝ Կամսարականաց մօտ (Բուզ. Ե. է. — Փրպ էջ 434, 437, 454–55 եւայլն)։

րող ձեռքերով ջամբուած։ Վարդան՝ անմիջապէս նուիրուելու պատրաստուած սիրտ մը զգաց իր լանջքին տակ։

Այդ պատրաստ սիրտը Մեծն Սահակ դրաւ իր Թոռան մէջ. այս մեծ մարդը, որ համակ սիրտ մ՚էր իր ազգին համար, այն Տիպար եկեղեցականը, որ ըրաւ, ինչ որ չկրցան ընել երբեմն ամբողջ նախարարական ոյժը կամ Թագաւորը, մանաւանդ անոնք, որ իր ժամանակին հանդիպեցան եւ իրմով Թագաւորեցին։ Մեծն Սահակ մարմնացումն է սրտի եւ մտքի բովանդակ ոյժերուն, կրօնի եւ ազգութեան բոլոր Թափանցկութեան. մարմնացումը Մեծին, Նուիրումի, Կորովին, Գորովին, Պատկառանքին, Աղօթքին, որք պահեցին զինքն միշտ երիտասարդ եւ հասուցին "ի յերկար ծերութիւն„։ Այս մարմնացումի մէկ ցոլքն է Վարդան՝ Մամիկոնեան արիւնի մէջ մարմնացած։

Մեծ Հայրապետը՝ Մեծ Վարդապետին հետ հայուն գրական կեանքն ալ կազմակերպելէ յետոյ՝ կարծես Մեսրոպին Թողուց պարգացումը ու բարգաւաճումը այն գործին, եւ ինքն իր աչքը դարձուց ——Էլուղէ—— կրԹութեան այն Տոհմին, որ ազգին համար պարգեւ մ՚եղաւ սկիզբէն ի վեր եւ որ քիչ յետոյ հրաշքներ պիտի գործէր։ — Թերեւս Մեծն Սահակ ալ, Մեծն Ներսէսէն յետոյ, իր արիւնը միացուց Մամիկոնեանց, այս Տոհմին հայրենագործութեամբը փոխարինելու այն կորուստը, զոր քիչ յետոյ պիտի ունենար հայ արքունի հարիւնն՝ արշակունեաց ծիրանիին սեւացումով՝ մրրկայոյզ մԹին ամպերէ քշուած վերջալուսի պէս։ Մեծն Սահակ կը տենէր զայդ. կը տեսնէր արցունքի եւ հեկեկանքի ողբերգին մէջ որ (Փրպ. էջ 54—56) Թէ արքունի մականը, Թէ քահանայական "ընիկ հայրենի„ ճոկանը ճակատագրապէս կ՚իյնային. մին՝ չկանգնելու համար, իսկ միւսը՝ ուրիշ ձեռքերու յանձնուելու համար։

Այնախատեսական յափշտակութիւններու տագնապին մէջ էր՝ որ, ինչպէս կը սիրեմ հաւատալ, իր ձեռքով նարօտեց Համազասպի եւ Սահականուշի գլուխները։ Օրհնեա՜լ պսակ. որչափ արդեօք արցունք թափեց պատուական ալեւորը՝ երբ իր սրտաբուխ օրհնութիւնները տուաւ անոնց, երբ Երջանկին օրհներգն մրմնջեց եւ Երկինքի գութը մաղթեց ծաղիկ ամոլներու. նա՛ որ միշտ կը խռովէր, կու լար տեսլական նախազգացումներով ընկլուզուած "վասն չլինելոյ . . . արու որդի„ (Փրպ. էջ 86), եւ միայն իր Սահականուշէն կը սպասէր բողբոջի մ'ընձիւղելուն. եւ ահա՛ Վարդկան, զերդ վարդ կը բացուէր. կը ժպտէր Սահականուշի առագաստը իր Հօր գերարտօսրը սրբելու եւ Անոր մտայուզումները հանդարտեցնելու համար։

Այս վիճակին մէջ ուրեմն, շատ բնական էր որ Մեծն Սահակ իր Թոռնիկներու տար կրթութիւն մը, որ յարմարէր իր ամէնէն մեծ նպատակին։ Եւ երբ Կորիւն դիտմամբ մասնանիշ կ'ընէ սա պարագան, թէ Մեծն Սահակ [illegible] Մամիկոնեանց կրթութեան ոյժ կու տար, դիւրին է ըմբռնել՝ թէ Վարդան ինչ ոգւով գործեց յետոյ։ Մեծն Սահակի ոգին կը զսպանակէր Սպարապետի բարոյական, ճշմարիտ քրիստոնէական ոյժը։ Նա արդէն ազգին նուիրուած էր։ Վարդան՝ երկար տարիներ՝ մինչեւ 428՝ շնչեց իր [illegible]. անոր հովանաւորութեամբ գործեց, պաշտօններու բարձրացաւ։ Միշտ յեղյեղեց թէ ինքն որչափ պարտական էր Անոր։

Վարդան՝ ընտիր առիթներ ունեցաւ ցուցընելու թէ իր հաւուն [illegible] իրեն տուած կրթութիւնը ա՛յնչափ հաստատուն էր որչափ իր ասպարէզին հրահանգները։ Ուսած էր նա քրիստոնէութիւնը եւ պարծանքով կը յայտարարէր կայդ. — "Քա՜ մեզ. ոչ [illegible]

յէր ճշմարիտ հաւան էր Տէր Սահակ, մերժեցէ յինէն». — «Յոյժ հմուտ էր եւ ընտրել գրոց վարդապետութեան՝ ուսեալ խրատեալ ի սուրբ հայրապետէն ի Սահակայ ի հաւոյն իւրմէ». — «Զի եւ ինքն իսկ տեղեակ էր ի մանկութենէ իւրմէ սուրբ կտակարանաց», եւն (տես Փրպ. էջ 136, 146—147, 149—150, 163. — Եղիշէ էջ 81)[1]:

Վարդանի մէն մի խօսքը կը մատնէ թէ ինքն Հայրապետի թոռ մ'է: Ի՛նչ պարզութեամբ արդեօք կ'ուսուցանէր Սրբազան Ծերունին իր Նոր Թարգմանած Աւետարանը իր թոռնիկին. եւ ի՛նչ ազդեցութեան տակ կը իւրացնէր զայն

---

[1] Հաւատքի մասին կարեւոր գիտելիք անհրաժեշտ էին միշտ քրիստոնէին համար. Վարդան անշուշտ աւելի խնամքով հմտացած էր անոնց: Հին ժամանակները՝ յայտնի է որ գրել-կարդալ, տեսակ տեսակ հմտութիւն՝ մանաւանդ կրօնական իրերու վրայ, բարձր դասակարգին մատչելի էին: Մեր նշանակած պատմական էջեր կը ցուցընեն թէ Վարդանի հմտութիւնը զուտ քրիստոնէական, բարեպաշտ եւ անկեղծ հանգամանք մ'ունէր. եւ անշուշտ այդպէս պէտք էր ըլլալ: Յետին դարերուն սակայն, քանի՛ կրօնական պարզ հաւատալիքներ դաւանաբանական կնճիռներով խրթնացան՝ բարձր դասակարգի անձնաւորութիւններ քշուեցան այդ բնազանցիկ հովերէն. որովհետեւ ստիպուած էին ժողովներու մասնակցիլ. լուռ կենալ կամ տգէտ երեւնալ ծանր էր: Այս երեւոյթը Բիւզանդիոնի մէջ աւելի մոլեկրօնացած էր եւ անկից կ'ազդէր մեր իշխաններուն. կայսերք հոն աստուածաբաններ էին: Մեր ուսումնասիրած դարուն՝ Թէոդոս Բ. փիճող մը, կրօնամոլ քահանայ մ'էր եւ վատ կառավարող մը: — Հայ իշխաններու մէջ ունեցանք իշխան մը՝ Սմբատ Ասպետ Բիւրատ, որ իբր յոյն աստուածաբան՝ Ստեփանոս Սիւնեցին, Հայ մտքով եկեղեցականը, պապանձեցուց իւր բնազանցական վէճին մէջ. յաղթութիւնը իշխանին էր եւ Ստեփանոս Բիւզանդիոն կը դիմէր փութով յոյն աստուածաբան մ'ըլլալու (Օրբել. Ա. լա. — Հմմտ. վերեւ. Ա. գիրք էջ 152—153): — Դեռ կարծես մեր ականջին կը խօսին Հայ աստուածաբան ամբոններու պատգամները (?):

Վարդկան. ի՜նչ զգածումներ կը պարարէին ապագայ սպարապետին սիրտն ու հոգին։

Վարդկանի մօր՝ Սահականուշի՝[1] մայրենի գուրգուրանքն ալ անշուշտ առաջին դաստիարակութեան խմորն եղաւ։ Արդարեւ անոր կեանքը անծանօթ է պատմութեան. որովհետեւ մեր պատմագիրները եթէ բոլորովին զանց կ'ընեն նոյն իսկ պատմական անձնաւորութեանց կեանքը, գէթ Հայ Տիկիններու պատմականները հազիւ կը գրաւեն անոնց ուշադրութիւնը՝ անունի մը յիշատակութեամբ, եւ այդ՝ նշանաւոր պարագայի մը մէջ։ Արեւելեան ազգերու արհամարհանքը կնոջ դէմ եւ կիներու սքօղուած վիճակը թէ տան եւ թէ ընկերութեան մէջ՝ նոյնութեամբ կը պատկերանայ պատմութեան մէջ ալ։ Միայն Բուզանդն է որ մեր մատենագրութեան մէջ՝ հազիւ բացառութիւն մը կրնայ նկատուիլ, երբ կանացի դէմքեր կը ներկայացնէ իրենց ներքին կեանքով։ Իսկ Փարպեցու, Թովմայի եւ Օրբէլեանի յիշատակածները հազիւ ուշադրութիւն գրաւողներ են։ Ո՛րչափ բան տուժած է Հայ կնոջ պատմական կեանքին ուսումնասիրութիւնը՝ պատմագիրներու այս անքաւելի զանցառութեամբ։

Բայց Մեծն Սահակի միամօր դուստրը կրնանք դնել անոնց շարքին մէջ, որք քաջոյք են, եւ չեն նմանիր անփոյթ եւ անպիտան տիկիններու։ Նա ալ, անտարակոյս, եղաւ կին մը "անուանի ե-տանուտիկնաց ամենայն լաւ եւ մտաւոր մտօք", Փարպեցու ամէնէն հզօր եւ ցոլացուցիչ բացատրութիւններով։

---

[1] Շուշան ալ գրուած է այդ անունը (Հնոց Նորոց էջ 91)։ Սահականոյշ է ճիշդը, թէեւ լոկ Անուշ ալ կայ։ Իսկ Շուշան կամ փաղաքշական անուն մ'է կամ պարզապէս սխալ մը. լաւ եւս շփոթում մը Վարդանի դուստր Շուշանի հետ (տես քիչ ետքը Գլ. Թ. § Վարդանեան Գերդաստանը)։

Խորենացու ըրած յիշատակութիւնը՝ "ի Թախանձելոյ դատերն, հեռատես եւ գործօն Տանուտիկնոջ մը կարողութիւնն ու ընդունակութիւնը կը մատնէ, որուն համար իր Հայրը գնաց Տիզբոն եւ առանձնաշնորհումներ ստացաւ, որու գլխաւորն էր իր փեսին Սպարապետութիւնը՝ Մամիկոնեանց Տոհմին նախարարական Եր^{րդ} գահին բարձրացումը, ուր ինքն Սահականոյշն ալ բարձր, հպարտ զգաց ինք զինք՝ իբր հարս սպարապետական Տան։ Սահականոյշ հարսնացած էր զօրավարներու Տոհմին, որու փառքը կը վառէր զինքն. գիտէր որ իր Համազասպը սպարապետ պիտի ըլլար, պիտի բարձրանար իր հարսնութեան Տունը։ Այս էր անոր առնացի մտածումը, քաղաքական գործերու խելամտութեան ստուգանիշը։ Այսպիսի գլխու տէր Կին մը կին իր էութեամբ, անպատճառ իր Հօր չափ եւ Թերեւս անկէ աւելի հոգ տանէր իր որդեկին՝ մայրենի գուրգուրանքով, կը պատրաստէր ապագայ սպարապետը իր կաթին ջամբով եւ իր զգացումներուն տաքութեամբ։

Չենք գիտեր Թէ Համազասպ, Վարդանի հայրը, ինչ անհատական նկարագիր ունէր եւ ինչ ազդեցութիւն գործեց իր զաւկին վրայ։ Համազասպ իր նախորդներուն պէս մանաւորաբար չյիշատակուիր իր գործերու հետ միասին։ Անշուշտ պատմութիւնն էջ մը բացած պիտի ըլլար այս պատուական զօրավարին, որուն վաղահաս մահը անմխիթար սուգ մը դրաւ իր ալեւոր աներոջ սրտին մէջ, իսկ աշխարհը մատնուեցաւ վրդովումներու։ — "Քանզի մեռեալ Համազասպայ (414—415) եւ ի տեղի մեծի եղեալ Սահակայ, ոչ ոք ի միաբանութեան հաւատոյ դիտանոյ Հայոց, (Խոր. Գ. ծե)։ Երբ մեծ աղէտ մը կը մտնուի Մեծ Հայրապետը, եւ Հայոց բանակը վարելու ոչ ոք կը գտնուի, դիւրին է զգալ Համազասպի

գերն ու գիրքը, որու արժանիքին գրաւականն է արդէն Մեծ Սահակի փեսայացումը, հայ զօրավարութեան սանձին իրեն յանձնուիլն ու Մամիկոնեան Տոհմին իրմով բարձրացումը Երդ գահին։ Համազասպ նշանաւոր Մամիկոնեաններէն է ուրեմն, եւ հարկաւ իւր սպարապետի ընտիր յատկութիւններէն բան մը դրաւ իւր Վարդանին մէջ, որ քիչ յետոյ իւր տեղը պիտի գրաւէր։ — Համազասպ անշուշտ շատոնց Տանուտէրն եղած էր իւր Տոհմին. առոր թուականը կարելի չէ որոշել. իսկ իւր սպարապետութիւնը տեւեց 26 տարի, 388 կամ 389—414 կամ 415։

Յայտնի չէ թէ Վարդան՝ իւր հօր գերեզմանին վրայ թափած արցունքո՞վ ողողեց իւր մօր շիրիմն ալ, կամ թէ Մեծն Սահակ այս ամոլներէն որո՞ւն խամրիլը ողբաց առաջին անգամ։ Որովհետեւ Սահականոյշ իւր Նախանձանօք միայն կը յայտնուի պատմութեան մէջ։

Վարդանի եւ իւր եղբայրներու ռազմական մարզանքներն, որք յետոյ այնքան նշանաւոր էջեր լեցուցին պատմութեան մէջ, կը սիրեմ Համազասպին տալ։ Համազասպ վարժեցուց եւ հսկեց անոնց վրայ. այս այնչափ բնական է որչափ Մեծն Սահակի [illegible]ել հոգածութիւնը միւս մարզանքներու վրայ։ Եւ անտեղի չէ ենթադրել թէ զօրավար Տոհմի մը պահանջն պիտի ըլլար իւր հարազատները օտար վարժերու հրահանգին չենթարկել, գէթ բոլորովին։ Մեծն Սահակի մասնաւոր խնամքը միակողմանի պիտի չըլլար. Համազասպն ալ կը հսկէր իւր զաւակներուն վրայ, "որք„, Փարպեցու՝ Վարդանի եղբօրորդիներուն մանկութիւնը բացատրող խօսքերով, "մինչ դեռեւ ի տիս մանկութեան էին՝ ամենայն տեսանող մտաց երեւելին ազգաւ եւ զարմանալի... լսազոյնք... յամենայնի, եւ ազնուագոյնք ի խորհուրդս. մտաւորք եւ իմաստնագիտութք, ինքնայօժարութեանն կեղեց-

կայծք եւ գեղեցկացոյց, յոր՝ ԹեԹեւաշարժք եւ նախարարք, յերկոցունց կէսաց աջողակք, եւ յամենայն կողմանս ազգականք եւ շնորհալիցք· զորոց յանձրացուցանէին բազմամարտայն զանձառայեցն զօրսն, խնդրելով հանապազ զմեծ այլ եւ այլ որսոց, եւ կամ այլ զուարճական եւ մեծագին գեղեցիկ խնդրովք ըստ կարաւանաց աշխարհաց։ Նոքօք շքեղանային ընԹրիք ամենայն Տանուտերանց Հայոց, նոքօք զարդարէին յամենայն տանս օտարք եւ ընտանիք„[1]:

*Հմայեակի սերունդին այս բնախօսական եւ մատուորական կենդանի եւ աշխոյժ նկարին մէջ՝ Փարպեցւոյ արտայայտիչ գրչէն ելած՝ իբր միեւնոյն տոհմի նկարագիր, ամենայն իրաւամբ կրնանք գիտել Վարդանը, Հմայեակը եւ Համազասպեանը։ Եւ Վարդանը՝ այնչափ ԹեԹեւաշարժ եւ նախապան իւր պատանեկուԹեան որսի մարզանքներուն մէջ, որչափ իւր ծերուԹեան՝ Տղմուտի ափերուն վրայ, ուր օրն ի բուն նիզակ կը շարժէ, սուր կը շողացնէ, փքին կը տեղայ եւ տեղալ կու տայ իւր անզուգական փեսին՝ Արշաւիր Կամսարականին, "ի հաստատածգուԹիւն եւ յանվրէպ դիպողուԹիւն աննն վստահեալ„, ինչպէս երբեմն Կուրի ափերուն վրայ* (Փրպ. էջ 190—192)։

*Վարդանի մատուոր զարգացումը գէԹ հաւասար պիտի ըլլար իւր ռազմականին, եւ բաց ի հայերէնէ, որուն հարկաւ գրականուԹեան ալ զբաղեցաւ Սահակի ուղղուԹեան տակ, շատ վարժ էր անշուշտ յոյն եւ պարսիկ լեզուներուն։*

## § 2. ՎԱՐԴԱՆ ՍՏՐԱՏԵԼԱՏ։

*Ուրիշ ունեցանք յիշատակելու* (էջ 348) *Թէ Մեծն Սահակ՝ իւր Թոռն ու Մեծ Վարդա-*

[1] Փրպ. էջ 335, 337—338. — *Ճշգրիտ նկարագիր արեւելեան արքի ֆօնտքներու* (*օԹեւան*) *կամ օդաներու, որ այսչափ հնուԹիւն ունի։*

պետը Բիւզանդիոն ղրկեց 420ին՝ կարեւոր պաշտօնով մը։ Այս թուականը Վարդանի կեանքին նշանաւոր մէկ կէտը կ'որոշէ. կէտ մը գործունէութեան, որ կապուելով թէ՛ ազգային եւ թէ՛ մատենագրական պատմութեան դէպքի մը հետ, նոյնչափ յատուկ նշանակութիւն մը կ'ունենայ։

420էն յառաջ Վարդանի նկատմամբ բան մը չէ աւանդուած. գիտենք միայն թէ Մեծն Սահակ ———եւ խնամք կը տանէր իր թոռներու կրթութեան։ Բայց անտարակոյս գէթ երկրի ներքին գործերու մէջ՝ իբրեւ սպարապետի Տան զաւակ՝ բաժին մը կամ պաշտօն մ'ունէր։ Ո՛չ միայն իր Տոհմին դիրքը, ո՛չ միայն Մեծն Սահակի հովանաւորութիւնը՝ թոյլ չէին տար անգործ ենթադրել Վարդանը, այլ մանաւանդ տարիքը, որ բաւական յառաջացած էր 420էն յառաջ։ Արդէն Մամիկոնեան Տոհմին Տանուտէրութիւնը Վարդանին անցած պիտի ըլլար՝ իր հօր Համազասպի վախճանումէն յետոյ. թէպէտ այս մասին չկայ ո եւ է յիշատակութիւն, բայց այն ատեն Վարդան հասուն երիտասարդ մ'է 27—28 տարեկան եւ իբր անդրանիկ՝ Տանուտէրութիւնը իր ժառանգական իրաւունքն էր։ Եթէ պատմութիւնն ապերախտ գտնուած է այսպիսի անձերու կենսագրական նոյն իսկ ամէնէն էական պարագաներուն հանդէպ, գէթ մխիթարական է տեսնել՝ թէ երբ Վարդան յանկարծ կը կանգնի պատմութեան շէմքին վրայ պաշտօնով մը, շատ կարեւոր եւ շատ պատուաւոր թուական մը կը բացուի իր կենսագրութեան մէջ։ Այդ պաշտօնն է Բիւզանդիոնի (420) եւ Տիզբոնի (422) երկու նշանաւոր պատգամաւորութիւններու մասնակցումը։

Բիւզանդիոն ղրկուած պատգամաւորութեան կարեւորութիւնը ըմբռնելու համար՝ բաւական է ուշ դնել ժամանակին, պատգամաւորութեան նպատակին եւ պատգամաւորութիւնը կազմող ան-

ձերուն։ — Գիտենք ժամանակը, ուր քաղաքական տագնապներ անկում մը կը բերէին Հայկական գահին, երբ գրականութիւնը իբր ամոքիչ դարման՝ նոր ոյժ մը կը բերէր ազգին. Վռամ-Գոռ վրէժ կը լուծէր. Մեծն Սահակ ճակատագրական ցաւերուն հետ ներքին բան մը կը զգար՝ գրչի իշխանութեան բերած յաղթական սփոփանքը, որ Հայութեան սփոփանքն եղաւ։ — Պատգամաւորութեան նպատակը այս անկում-կանգնում վիճակին մէջ՝ կանգնումը աւելի լայն խարիսխի մը վրայ հաստատելու դիտաւորութիւնն է։ Քաղաքական երկու իշխանութեանց ճնշումին տակ ուժասպառ քակուած երկրի մ'ազգութիւնը անքակ պահելու քաղաքագիտութիւնն է։ Եւ Մեծն Սահակ այդ կանգնումը հաստատուն ընելու եւ բաժանումը ներքնապէս միացնելու նպատակը յառաջ վարելու համար կ'ընտրէ միայն երկու անձ՝ մին եկեղեցական, միւսն աշխարհական։ Մեծն Սահակ երբ իր պատկանած դասակարգէն մարդ մը միայն կ'ընտրէ եւ այս ճիշդ այն ատեն, որ նշանաւոր եւ կարող եկեղեցականներ պակաս չէին, շատ յայտնի է որ Մեսրոպի ծանր զբաղումներով գրաւուած ժամանակէն, մէկ մասին պատգամաւորութեան յատկացումը՝ կը շեշտէ ինչ որ մենք ըսել կ'ուզենք։ Յիրաւի, որչափ ալ Մեծ Վարդապետին ընտրութիւնը պատգամաւորութեան բնութենէն կը ծագէր՝ իբր գլխաւոր գործիչը գրականութեան, որուն ներկայութիւնը աւելի կշիռ պիտի տար պատգամաւորութեան, այսու հանդերձ ի զուր կազմուած պիտի չըլլար ուրիշ պատգամաւոր մարմին մը։ Եւ սակայն ճիշդ այս պարագան է որ մասնանիշ կ'ընէ պատգամաւոր անձերու արժանիքը, եւ Վարդան՝ երբ կ'ընկերանայ Մեսրոպին, կը ցուցընէ թէ իբր աշխարհական ինքն Սպարապետը պէտք էր ընտրուէր եւ ոչ ուրիշ մը։ Կը հանդիպինք պատմութեան մէջ թէ պատ-

գամաւորութեան համար ինչպիսի անձնաւորութիւններ կ՚ընտրուէին — կամ՝ "ի մեծ նախարարացն„ (Բուզ. Գ. իա) կամ Վահան Ամատունիի պէս "մարզպետի եւ խորհրդական„ իշխաններէն եւ Սեպուհներէն (Փրպ. էջ 184—185) եւ այլն: — Արդարեւ ազգ մը ներկայացնել կայսեր եւ խօսիլ անոր հետ՝ դիրք կը պահանջէ. այսինքն՝ բնախօսական եւ հոգեխօսական կատարելութիւններ, տարիք, ցեղական արժանիք (մանաւանդ այն ժամանակներուն համար), ճոխութիւն, տեսք եւ այլն, վերջապէս ինչ որ պէտք է պատգամաւորութիւն մը պատկառելի ընծայելու համար:

Վարդան՝ Մեսրոպին, այս Մեծ մարդուն, զուգակշիռ անձ մ՚է. եւ այն պատգամաւորութիւնը որ այս զոյգով կը կազմուի, Մեծն Սահակի ամենէն յաջող կարգադրութիւնն է. յաջող ամէն կերպով. պատգամաւորութիւն մը, որուն թէ խնդիրը կը պատուուի եւ թէ անձնաւորութիւնները: — Մեսրոպին կը տրուի Ակոսմիթ կամ Եկղեսիաստիկոս կամ Առաջին Վարդապետ [illegible] կամ տիտղոսը, իսկ Վարդանին՝ Ստրատելատ[1]:

---

1 Կորիւն էջ 16. — Խոր. Գ. ծէ. — Կորիւն չյիշեր Վարդանը, եւ բովանդակ պատիւը Մեսրոպին ընծայուած կը պահէ: Անշուշտ այս վերագրելի է Կորիւնի մենագրական ոճին, որով գրեթէ Մեսրոպի գործերն միայն կը նկարագրէ: — Աւելորդ չէ այս տեղ դիտել, թէ ինչ է Մեսրոպին տրուածը: Կորիւն կը գրէ. "Հրաման ելանէր վայելչական մեծարանօք զսուրբն Ակոսմիթ անուան կոչելոյ. իսկ Խորենացին "յառաջին վարդապետան գրեսցուք զՄեսրոպ„. եւ դարձեալ՝ "Եւ զառաքեալս ի քէն զՄեսրոպ յանուանեսցուք լինել Եկղեսիաստիկոս„: Ասոնք իրարմէ տարբեր բացատրութիւններ են: "Հայոց Գիրը„ գործին հեղինակը՝ "հաւանական„ կը համարի "որ նա առաջ Կաթողիկեայց [illegible] այդ ԿՈՉՈՒՄԸ, [illegible] ՏԻՏՂՈՍ„

Ի՞նչ է Վարդանին տրուած պատուանիշը. — Ստրատելատութիւն (= Սպարապետութիւն, Զօրավարութիւն) ուստի եւ Ստրատելատ (Στρατηλάτης = Սպարապետ, Զօրավար) յունական բառով, զոր Խորենացին այս առթիւ միայն կը գործածէ, այսինքն՝ երբ Վարդանի նկատմամբ կը խօսի։ Թէ Փարպեցին, թէ Եղիշէ

---

(էջ 391)։ Այս Հաւանականութիւնը բաւական տարօրինակ կը թուի. որովհետեւ Եկղեսիաստիկոս կամ Ակումիտ Հայոց Եկեղեցւոյն յատուկ տիտղոս մը կամ կոչում մը չէ՛ որ Կաթողիկոսը տար Մեսրոպին։ Հակառակ պարագային՝ եթէ մեր եկեղեցւոյն յատուկ կոչման մ՚իսկ են-թադրուի այդ, "Կաթողիկոսաց ստանալէ յետոյ զայն՝ ի՞նչ ըսել է "Կայսեր հոգւոյ իմբերեալ ի տեղւոյ ստանալ։ — Բայց արդէն մեր եկեղեցին չունի այդպիսի կոչում՝ ըլլա՛յ Եկղե-սիաստիկոս, ըլլա՛յ Ակումիտ (= Ακοίμητος. անքուն, ան-հանգիստ)։ Ցիրաւի՝ Սահակ "ըստ նմանութեան մայրաքաղա-քայն Սպուդէից (= Σουδαῖοι, տքնող, ճգնող) կարգ մը Հաստատեց Հայաստան (Խոր. Գ. խթ), բայց պարզ կրօնաւորական դրութիւն մ՚էր այդ եւ իւր վախճանումով վերջացաւ (անդ կէ), այնպէս որ ցրուած աշակերտներու Հաստատած վանքերն ալ անծանօթ կը մնան։ Բնականա-բար Մեսրոպ այդ կարգէն չէր։

Երկու կերպով կարելի է մեկնել Մեսրոպին տրուածը. կամ Մեսրոպ պարզ կրօնաւոր մ՚էր երբ Բիւզանդիոն գնաց եւ Հոն յետնադրութեամբ Եկղեսիաստիկոս (Նոր Հայկ. Ժողո-վող, Եկեղեցական, մանաւանդ իբր անուն պաշտօնոյ բա-րունապետաց առ Ցոյնս) կոչուեցաւ "այսինքն՝ Քարոզելու կամ Մեծ Վարդապետի իշխանութիւն առաւ, որ դժուար չէր, քանի որ դեռ եկեղեցական ատելութիւն, խտիր չկար քրիստոնեայ եկեղեցիներու մէջ, եւ կամ պարզապէս իբր պատուանուն մը կամ տիտղոս մը կամ պատիւ մը տրուեցաւ Մեսրոպին. ինչպէս մեր՝ Հայոց արդի Արքեպիսկոպոսու-թիւնը, զոր Հայոց կաթողիկոսը կու տայ իբր պատիւ, ա-ռանց ձեռնադրութեան։ Ըստ իս այս երկրորդ մեկնութիւնը աւելի Հիմնական է, եւ Խորենացու "յառաջին վարդապետեան գրեցաք" բացատրութեան պէտք է տալ ծանրակշռութիւնը։

չունին այս յունաբանութիւնը[1]։ Ամենէն աւելի գործածական արուեստագիտական (technique) բառերն են Ստրատելատ, Զօրավար։

Ստրատելատ՝ Նոր Հռոմի սեփական պաշտօնեայ մ՛էր, որուն պաշտօնն ալ Ստորին կայսրութեան կառավարչական բաժանումներուն կամ զինուորական կարգադրութեանց համեմատ կը չափուէր։ Այսպէս (Գ. դար.) Կայսեր քաղաքային տան մէջ (maison civile) պալատական պաշտօն մը կայ (service du palais)· երբ պալատը ճամբորդ է (palais en voyage) քանի մը պաշտօնեաներ կ'ընկերանան, որոնց մէջ Stratores (Ecuyers) = ստրատորներ կամ՝ Comes stabuli (Կոմս ախոռի) մը ներքեւ (Ծաւ. էջ 24)։ Straterներ յետոյ կ'ըլլան Comites rei militaris (զինուորական կոմսեր), (անդ էջ 168)։ Եւ Դրդ դարէն մինչեւ Ըրդ, երբ կայսրութիւնը սարսափելի փորձութիւններէ կ'անցնի, քաղաքական եւ զինուորական փոփոխութիւններ միասին կու գան։ Երդ դարուն Բիւզանդիոնի ամենէն կարեւոր պատուի տիտղոսներն երկու էին՝ պատրիկիոսն (Patrice) եւ Կոմ-

---

1 Բուզանդ Ստրատելատութիւն կը գործածէ յաճախ, եւ եթէ արդիւնք թարգմանութեան (?) բառը նոյնութեամբ փոխադրուած է հայերէնի մէջ։ Ասկէ զատ Բուզանդի թարգմանիչը (?) հաճոյք կը զգայ յունարէն եւ հայերէն նոյնանիշ բառերը շարել քովէ քով· զոր օր. «Նոյնպէս Ստրատելատութեան ստրատեղութեանն զօրավարութեանն մարդիկ կատարեալս, փորձով ընտրեալս ճակատամարտող նիզակիցն,, եւն, այս շռայլաբանութենէն՝ բառ մը միայն կը բաւէր թարգմանելու յունարէնը։ Շռայլաբանութեան օրինակներ Հմմտ. Բուզ. էջ 52–53, 68–69, 76, 177· եւայլն։ — Կ'ենթադրուի որ ասորերէնի ազդեցութիւն մ'ալ եղած ըլլայ շռայլելու այս ձեւը։ Միայն բաղդատութիւնը բնագրի հետ՝ պիտի ցուցընէր թէ Հայ թարգմանիչը ինչ դեր ունեցած է այս մասին։

Կոմէսն (Comte), որ երեք կարգի բաժանուած էր Կոստանդինէն ի վեր (անդ էջ 26, 167, 665)։

Պատրիկութիւնը Հայ իշխաններուն քիչ անգամ կը տրուէր Դրդ — Երդ դար։ Անդոկ միայն Պատրիկ Պատրկաց կոչուեցաւ (Օրբել. Ա. էջ 75), իսկ յետին դարերուն կը շռայլուի այն ամէն օտարազգիներուն, որք Բիւզանդիոնի գերիշխանութեան տակ են (Ծանօթ. էջ 654—655. Համմտ. Յուշիկք Ա. էջ 419)։

Կոմսութիւնը, որ քաղաքային եւ զինուորական պաշտօնեաներու զանազանութեան համար կը տրուէր, Ըրդ դարուն կ'ըլլայ Ստրատելատոսն իբր զինուորական պաշտօնեայ, իսկ պաշտօնեայն Stratège (ստրատեգոս), միեւնոյն ժամանակ երկրին կառավարչական բաժանումներն ալ Թեմ (thème) անունը կ'առնեն. անուն մը՝ որ մէն մի գաւառի բանակին ալ տրուեցաւ (Ծանօթ. էջ 201, 264 – 265)։ Թեմը կը կառավարուէր Ստրատեգով (անդ էջ 654), որ թէ կառավարիչ էր եւ թէ զօրավար՝ նշանակելի իշխանութեամբ մ'օժտուած, եւ որուն յարաբերութիւնը ուղղակի կայսեր հետ էր (անդ 665)։ Այսպէս՝ բանակը Թեմերու մէջ բաժնուած էր Ստրատեգներու հրամանատարութեան տակ։ Երբ կայսրութեան Արեւելքի կամ Արեւմուտքի բոլոր այդ ուժերը միացուէր գլխաւորի մը ներքեւ, այդ գլխաւորը կ'անուանուէր Արեւելքի կամ Արեւմուտքի Դոմեստիկոս (Domestiqe) կամ Հրամանատար (Archégète) եւ կամ Ստրատելատ (Stratelate) Ծանօթ. էջ 671։

Ա՛յս է Վարդանին տրուած պատիւը իբր տիտղոս եւ դեռ իւր տիտղոս վիճակին մէջ եւ ոչ իբր պաշտօն։ Ստրատելատը կայսրութեան մէջ Հին Հռովմի Պրետորին (Praetore) կը համապատասխանէ։

## § 3. ՎԱՐԴԱՆ ՍՊԱՐԱՊԵՏ

*Սպարապետութիւնն է «**իշխանութիւն բովանդակ ի վերայ ամենայն զօրաց քաջութեան Մեծաց Հայոց**» (**Բուզ. Գ. Բ.**)[1]։ — Վարդան իւր Տոհմին Տանուտէրն էր արդէն եւ Սպարապետի պատիւն ալ ունէր այժմ* (420)*։ Բայց այդ Տանուտէրութիւնը պէտք էր օժտուէր Հայոց Սպարապետութեան ...*

---

*[1] Ըստ Ալիշանի (Այրարատ) Սպարապետ է «**առաջնորդ հեծելոց գնդէից**». մինչ այրուձիոյն գերագոյն Հրամանատարն է Ասպետ (այսինքն Բագրատունիք)։ — Չենք գիտեր թէ որչափ ատեն Սպարապետութիւնն ու Ասպետութիւնը բաժնուած մնացին։ Վարդանանց պատերազմի ժամանակ գիտենք որ Վարդանն է բանակին վարիչը, որ միայն հեծելազօրներէ չէր բաղկանար. ընդհակառակը այրուձին յաճախ Վարդանին ձեռքն է։*

*Վարդանի հօր Համազասպէն յառաջ, ինչպէս կ'երեւի Խորենացու պատմածէն, Ասպետութիւնն ու Սպարապետութիւնը միացուած էր յանձին «**քաջ զօրավարին Հայոց Սահակայ Ասպետի**». մինչ յառաջ զատ էր Սպարապետութիւնը եւ յատուկ Մամիկոնեանց, որք Տուն Սպարապետութեան կոչուեցան։ Միացումի ժամանակը հաւանաբար Արտաշիրէն (Մանուէլի որդի) յետոյ պէտք է փնտռել, ուր արժանաւոր մը չկար կամ եղողն ալ շատ փոքր էր. իսկ փոքր յաջորդ մը միայն Տանուտէր կրնար ըլլալ եւ Զօրավարութիւնը ուրիշ մօտաւոր ազգականի մը կը տրուէր առ ժամանակեայ կերպով (Հմմտ. Բուզ. Գ. ժա.)։ Ասպետին անցած է ուրեմն, Զօրավարութիւնը այս պայմաններէն դուրս, քանի որ Մամիկոնեան մը կար։ Եւ թերեւս Մամիկոնեանք զրկուած էին այդ իրաւունքէն ժամանակ մը, բան մը որ շատ կը պատահէր (Հմմտ. Խոր. Գ. ծա. — Փրպ. էջ* 537—539)*, եւ Բագրատունեաց յանձնուած էր Սպարապետութիւնը։ Եւ երբ Համազասպ Սպարապետ եղաւ Ասպետէն անմիջապէս յետոյ, հաւանաբար Ասպետութիւնն ալ միասին տրուեցաւ իրեն, քանի որ իւր յաջորդը Վարդան թէ Սպարապետ է եւ թէ Ասպետ, այսինքն Այրուձիոյն Հրամանատարը։*

պետութեամբ ալ, որ քանի մը տարիներ յառաջ գահնամակով տրուած էր Համազասպին (տես էջ 344—347)։ Երբ Մեծն Սահակ Պուլը կոչուեցաւ 428ին, Արտաշէս Գ.ի վրայ յարուցուած ամբաստանութեան առթիւ, Վռամ Գոռ, Արեաց Հազարապետին բերնով կ՚առաջարկէր իրեն թէ "Եւ զԹոռն քո Վարդան կարգեսցէ ի վերայ Հայոց զուգահաւասար թագաւորին եւ համապատիւ„ (Խոր. Գ. կդ), այն պայմանով որ ինքն Սահակն ալ միանայ ամբաստանողներուն։ Այս խոստումը հաւանաբար Մարզպանութիւնն է՝ միացած Սպարապետութեամբ, ինչպէս յետոյ տրուեցաւ Մեծն Վահանին (Փրպ. էջ 546). մարզպանութիւն, որու անմիջապէս վերն է Շահնշահը, ըստ Աւեստայի քաղաքական կազմակերպութեան, որ նոյն մնաց Սասանեանց ժամանակ ալ եւ տրուեցաւ կառավարիչներու այն մեծ աշխարհներուն, որք Տիեզերի գերիշխանութիւնը կը ճանչնային. զոր օր. Մարզպանութիւն Հայոց, Վրաց, Կուրեաց (Փրպ. էջ 247, 369) եւայլն։ Մեծն Սահակ չամբաստանեց իւր ախտացեալ ոչխարը, զրկուեցաւ իւր կաթողիկոսական գահէն, եւ Վեհ-Միհր-Շապուհ՝ Հայ թագաւորին տեղ առաջին Մարզպանն է որ ղրկուեցաւ Հայաստան (428—9)։ Հայոց աշխարհը Մարզպանութիւն եղաւ. Վռամ Գոռ այս առաջին պատիւը պիտի ընէր Վարդանին, որ ընկերացած էր իւր հաւուն, եւ անձամբ կը գիտէր այն դարձուածները, որք տակնուվրայ կ՚ընէին Արշակունի գահը, որու անկախութեան համար արիւն թափած էին իւր նախնիք։

Ամբողջ երեք տարիներ անցան այդ տխուր պատահարներու վրայ, երբ 431—432ին կարգադրութիւններ եղան Մեծ Հայրապետին դիմումով. այնպէս որ "փորձեսցէ հաստատելով զԹոռն նորա զՎարդան Ստրատելատն ի Տէրութենէն իւր [illegible] Մամիկոնէից [illegible] ի Հայս„ (Խոր. Գ. կե.)։ Այս

պատմածին համեմատ Վարդանի Տէրութիւնը, հաւանաբար սպարապետութիւնն ալ միասին, նախապէս անգամ մը հաստատուած էր որ Վռամ "զօրացեալ հաստատելով ... որդւոյն ի Հայս„։ Շատ հաւանական է առաջին հաստատութիւն մը, որուն նկատմամբ, թէեւ կը լռէ պատմութիւնը, բայց անդէպ չէ 422ին դնել զայն, որ ատեն Վարդան գնաց Տիզբոն թէ՛ հաշտութիւն եւ թէ՛ Արտաշէս Գի թագաւորութիւնը խնդրելու համար (Խոր. Գ. ծը)։ Այս ժամանակը որչափ հաւանական, նոյնչափ ստոյգ կը թուի սա պատճառով, որ Վարդան երկու տարի յառաջ Բիւզանդիոնէն պատուուած զինուորական տիտղոսով մը, երբ ներկայացաւ Վռամին՝ սա հաստատեց իր նախորդներուն կնիքով տրուած իշխանութիւնը. մանաւանդ իր կողմէն նոր գահանամակ մ'ալ շնորհեց, որու պատուական եւ պատմական մէկ մասը հասած է մեզ (տե՛ս Այբուբեն) եւ երբ թագաւոր մը տուաւ Հայոց, անտարակոյս է որ Սպարապետն ալ միասին տուաւ։ — Եւ 422ին՝ Արտաշէսի գահակալութեան առթիւ հաստատուած Սպարապետութիւնն է, որ Արտաշէսի գահընկէցութեան առթիւ (եթէ հաճէր Սահակ, ընենք եւ Վարդան) պիտի պերճանար թագաւորին զուգահաւասար եւ համապատիւ փառքով մը։ Մեծն Սահակ իր թոռան փառքը ընիկ թագաւորի ծերանիին մէջ չտեսաւ. թէպէտ ինկաւ Արտաշէս, թէպէտ ինքն Սահակ եռամեայ զրկանքէ յետոյ դարձեալ մնաց ընդդիմափառի մը դէմ, բայց Վարդան զօրացեալ հաստատուեցաւ իր հայրենի Տէրութեան մէջ (431—2)։

Վերջին դարերու պատմագիրները Վարդանի Սպարապետութեան համար միեւնոյն ժամանակը (431—2) կ'որոշեն կարծես երբ մատնանիշ կ'ընեն 19ամեայ պատերազմներու սկիզբը (տե՛ս էջ

349—352)։ Այդ պատմածները թերի են[1]. պէտք է գիտել որ այս պատմագիրներն անշուշտ խոբհնացուն կը հետեւին, որ փորձէր հաստատու–

---

1 Այո՛ պատմագիրները կը տարբերին իրարմէ՝ Վարդանը ներկայացնելով իբր Մուշեղան, իբր Սպարապետ, իբր Սպարապետ՝ 5, 15, 17 տարի պաշտօնավարութեամբ. — "Յետ Արտաշրի թագաւորի՝ Սպարապետ Հայոց եղեւ Վարդան, որդի Համազասպայ՝ թոռն սրբոյն Իսահակայ ի դստերէ նորա Շուշանայ (?)։ Սա պայազատեաց զամս Ե. եկաց սպարապետ Հայոց ի ժամանս Թէոդոսի եւ հաստատեցաւ ի Վռամայ Պարսից արքայէ„ (Հնոց եւ Նորոց. էջ 91—92). Հմմտ. Ս. Անեցի էջ 70. թէ Շուշան, թէ Ե կամ ԺԵ տարիներ, թէ Թէոդոսի տուածը իբր պաշտօն նկատել պարզապէս սխալ են (տես նախորդ գլուխը)։ — Չամչեան Աստղիկի 19 տարիներուն համար կ'ըսէ թէ "զայս ոչ է մարթ այլազգ իմանալ, բայց եթէ զկնի չորից ամաց անկմանն Արտաշրի ի թագաւորութենէ՝ եւ զկնի գարձի սրբոյն Սահակայ յաշխարհէն Պարսից հանդերձ Շմուէլիւ, յորում ժամանակի Սպարապետութիւն բովանդակ զօրուն Հայոց մնաց տուաւ ի Վռամայ սրբոյն Վարդանայ, որ նախ մասինն յունաց էր կարգեալ սպարապետ ի Թէոդոս կայսերէ՝ ի գնալ նորա հանդերձ Մեսրոպաւ ի Կ. Պօլիս. եւ զի զայս ընդհանուր սպարապետութիւն վարեաց սուրբն Վարդան ի բաժնին Պարսից„ (Բ. էջ 459). — Չենք կրնար ընդունիլ մեկնութիւն մը որ կամայական է բոլորովին։ Արդէն տեսանք թէ Վարդանի տրուածը փէշղու մ'է լոկ։ Վարդան՝ Պարսից հպատակ՝ Յունաց բաժնին սպարապետ եղած չէ՛. 1. Վարդան իբր Պարսից հպատակ տունով տեղով (Տարօն), որու Տէրն է ինքն, Վարդան, կ'ըսենք, իբր նախարար, Տիարոնի հանդէպ պաշտօնական անձ, չէր կրնար օտար բաժնի մը զինուորական պաշտօն ընդունիլ. 2. Արդէն Յունաց բաժնին մէջ կային Մամիկոնեանք, որք Սպարապետն էին Սուրբին Հայոց. 3. Վարդան եթէ Յունաց բաժնին սպարապետն է (սպարապետ) ի՞նչպէս կրնայ յետոյ Պարսից բաժնին ալ սպարապետութիւն ընել. այսինքն՝ մէկ զինուորական պետ երկու տարբեր Տէրութեանց բանակներուն։ — Ս. Անեցիին եւ ուրիշներուն տեղեկութիւններն ալ սխալ են. Վարդան՝ Մարզպան չէ եղած (տես Չամչ. Պատմ. Հայ. Բ. էջ 458—459)։

Ըէ—նը աւանդած առեն կը լռէ առաջին հաստատութեան մը նկատմամբ. եւ որովհետեւ Վարդանի բուն գործը՝ իբր Սպարապետ՝ Արտաշէսի անկումէն յետոյ կը սկսի, այսինքն՝ նոյն առեն Վարդան պաշտօնապէս երկրորդ անգամ Սպարապետ կը ճանչցուի Դռնէն, Խորենացու այս վերջին պատմածը միայն հիմ կ'ըլլայ յաջորդ պատմագիրներուն։ Ընդհակառակը՝ եթէ Վարդան միայն 432ին Սպարապետ եղաւ եւ թէ դարձեալ հաստատութիւնը՝ հասկցուի իբր հաստատութիւն Թէոդոս Բ.ի տուած Ստրատելատ տիտղոսին եւ ոչ իբր առաջին հաստատութեան մը կրկնումը, կարելի՞ է ենթադրել, որ երկիրն առանց Սպարապետի մնացած ըլլայ Համազասպի վախճանէն (415) մինչեւ Արտաշէսի անկումը, այսինքն իբր 16 կամ 17 տարի։ — Բոլորովին անհաւանական է այս. 1. Այդչափ երկար ժամանակ երկիրն առանց Զօրավարի չէր կարող մնալ. 2. Միւս կողմանէ չկայ ուրիշ անձ մը, որ լեցնէ այդ ընդհատը։

Սպարապետութիւնը Սահակ Ասպետէն յետոյ Մամիկոնեանց Տոհմին տրուած էր. իսկ Մամիկոնեանց համար ժառանգական էր այդ՝ ինչպէս Տանուտէրութիւնը։ Արդ՝ երբ մեռաւ Համազասպ չկար ուրիշ Մամիկոնեան մը, գէթ այդպէս՝ կը ցուցընեն ծանօթ պատմութիւններ, բաց ի Ս. Սահակի թոռներէն. հետեւաբար Վարդան միայն կրնար իբր անդրանիկ ժառանգել թէ Տանուտէրութիւնը, թէ Սպարապետութիւնը։

Թովմայ Արծրունին միայն Վարդանի սպարապետութեան մասին պատմածներ ունի, եւ այն խառնիխուռն եւ սխալ։ Արծրունեաց Պատմիչը սպարապետ մը կը ստեղծէ կարծես Համազասպի եւ Վարդանի մէջ՝ երբ կ'ըսէ թէ Ս. Մաշթոց վախճանեցաւ (439) եւ Նախարարներ Օշական փոխադրեցին Սուրբին մարմինը "ի ձեռն Վահանայ Ամատունւոյ, որ էր ի ժամանակին սպարապետ

Հայոց„ (Դպր. Ա. Գլ. ժա.)։ Թովման իր ձեռք ունենալով հանդերձ Խորենացին՝ ճշտութեամբ չ'օրինակեր զայն, եւ սխալ մ'ուղղելու պէս անոր հազարապետութիւնը սպարապետով կը փոխէ. — “Քաջն Վահան Ամատունի... ի նա էր հաւատացեալ Պարսից զհազարապետութիւն Հայոց աշխարհիս„ (Կորիւն էջ 27 — Խոր. Գ. կէ.)։ — Թովման հազարապետութիւնը հասկցած է այնպէս ինչպէս կը հասկնանք այժմ. այսինքն իբր զինուորական հազարապետ (chiliarque, պին պաշը) եւ ասի առիթ տուած է իրեն սպարապետ՝ ուրիշ զինուորական բառով մը՝ փոխել զայն։ Բայց Վահանի հազարապետութիւնը՝ վերակացութիւն է։ Այսպէս Եղիշէն երբ կը պատմէ Դենշապուհի ի գործ դրած նեղմունքները, առանց տալու Քաջ Ամատունիին անունը, կը յիշատակէ անոր պաշտօնը եւ կը բացատրէ իմաստը. “Քանզի որ հազարապետ աշխարհին էր՝ իբրեւ հայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից„ (էջ 19)։ Բուզանդն ալ միեւնոյն կերպով կը մեկնէ. “գործակալութիւն հազարապետութեան աշխարհատարած դեհկանութեան„ (Բուզ. էջ 67). այսինքն՝ ճիշդ վերակացուի (intendant) պաշտօնը, որ լոկ քաղաքային հանգամանք մ'ունի։ Եւ յիրաւի լաւ վերակացու մը կրնայ հայր կոչուիլ. նա որ աշխարհի ներքին գործերուն խնամք կը տանի, նախնեաց բառով տեսանէ (աշխարհատես), երկիրը կը շէնցնէ (աշխարհաշէն), գիւղեր կամ շէներ կը շինէ (շինականաշինութիւն), այս էր Վահան Ամատունւոյ հազարապետութիւնը կամ մատակարարութիւնը, զոր հայրաբար ի գործ կը դնէր եւ ո՛չ Թովմայի իմացումով Սպարապետութիւն մը, որ Մամիկոնեանց կը պատկանէր։ Վահան Ամատունիի պէս հազարապետներ Պարսիկներն ալ ունէին թէ՛ Տիզբոն եւ թէ՛ իրենց գերիշխանութիւնը ճանչցող աշխարհներու մէջ (Հմմտ. Այրարատ 419)։ — Հմմտ. վերը էջ 132։

Թովմայի միւս սխալն ալ՝ իբր թէ "յետ մահուանն Մեծին Սահակայ Բագրատունւոյ սպարապետի ասպետի եւ զօրավարի Հայոց, հաստատեալ էր Թէոդոսի կայսեր զօրավարութիւնն Հայոց Համազասպ Մամիկոնէի եւ որդւոյ նորա Վարդանայ„ (Դպր. Ա. գլ. ժա.)։ — Մենք հաստատապէս գիտենք, որ Համազասպի Սպարապետութիւնը շատ կանուխ հաստատուեցաւ, այսինքն երբ Վարդան դեռ տղայ էր (388)։ Միւս կողմէն կամ Թէոդոս՝ իբր թէ Առաջինը, կամ ուրիշ կայսր մը չէին կրնար Համազասպին տալ իշխանութիւն մը, որ միայն Շահին անկ էր, քանի որ Մամիկոնեանք Տիեզոնի իշխանութեան ներքեւ էին։ Կայսրը շատ շատ կրնար պատուել, ինչպէս ալ պատուեց Վարդանը։ Աւելի այլանդակ սխալ մըն է Համազասպի եւ Վարդանի զուգակցումը. կարծել կու տայ ընթերցողին թէ Վարդան սպարապետ ըլլալու չափ հասուն երիտասարդ մ'եղած ըլլայ Համազասպի սպարապետութեան ժամանակ (?)։

Վարդան իր սպարապետութեան միջոցին պահ մը ստիպուած է թողուլ երկիրը եւ Մոկաց ամուրները քաշուիլ։ Ըստ Թովմայի այդ դէպքը տեղի կ'ունենայ Հայոց թագաւորութեան բարձումէն անմիջապէս յետոյ՝ երբ Պարսիկ մը, Մշկան զօրավար, (ըստ Յովհ. Կթղի. Մարզպան) կը ղրկուի Հայաստան։ Թովման՝ Վեհ-Միհր-Շապուհը չի ճանչնար. եւ յայտնապէս կը շփոթէ Վահան Ամատունիին տեղը գրաւող Մշկանին հետ՝ ժամանակագրական խոշոր սխալներով։ Վեհ-Միհր-Շապուհ 428ին ղրկուեցաւ, այսինքն նոյն ատեն վերցաւ Արշակունի գահը. իսկ Մշկան 449ի վերջերը. երկուքին ալ պաշտօնը իրարմէ բոլորովին տարբեր։ Կարելի չէ՛ որոշել Վարդանի քաշուելու ճիշդ տարին. բայց ամէն պարագայի մէջ սխալ է Թովմայի նշանակած ժամանակը, որով-

*Հետեւ Ղահապիվանի ժողովին կանոններուն պատմական մասը, որ Թովմայի պատմածին հետ կրնայ նոյնացուիլ, տարբեր ժամանակ մը կ'որոշէ, այսինքն՝ ժողովի գումարումէն* (445 *Նաւասարդ*) *յառաջ*[1]*։ Եւ որովհետեւ կարելի չէ, որ Վեհ-*

---

[1] *Ահա այդ պատմածները թէ Արծրունիէն եւ թէ Ղահապիվանի ժողովին կանոններու սկիզբը գտնուած պատմական մասէն.*

*— «Իսկ Վարդան... խոյս տուեալ գնաց զկողմամբքն Մոկաց, ի խոխոմս Ցորոաական լերինն, ի լեառնս Ջերմաձորոյ, եւ բնակէ յամրոցին, որ այժմ Զաղայլ վանն անխեղեդ ամրութեանն գեղջկարանեն։ Եւ քանզի յետ մահուանն մեծին Սահակայ Բագրատունոյ սպարապետի տապետի եւ զօրավարի Հայոց, հաւատացեալ էր Թէոդոսի կայսեր զսպարապետութիւնն Հայոց Համազասպ Մամիկոնէի, եւ որդւոյ իւրում Վարդանայ, երկեաւ Վարդան ի մարզպանէն բնակել յանդորրու, այլ այնր աղագաւ էանց գնաց յամուրսն Մոկաց, եւ կայր մնայր ի նախախնամութենէ Աստուծոյ այցելել աշխարհիս Հայոց» եւայլն (Դպր. Ա. գլ. ժա)։ Թովմայի պատմածին տուգութիւն կը համարիմ Փարպեցու սա թանկագին տողերը (էջ* 148–149, *ուր նախարարներ եւ սեպուհներ՝ Վարդանը առ երեսս ուրացութեան հաւանեցնելու համար իրենց բոլոր ճիգը թափելէ յետոյ, «յանհնարին տրտմութիւն» ընկղմած, «կոչէին առ ինքեանս զիշխանն Մոկաց Արտակ, եւ զնա առաւել փութացուցանէին՝ անձանձրոյթ խանդաղատանօք նստել առանձինն եւ խօսել ընդ Սպարապետին իւրեանց՝ Տեառն Մամիկոնէից Տոհմին։ Եւ նա ինքն էր այր հանճար, մտացի եւ խոհ. եւ Տէրն Մամիկոնէից Վարդան [illegible] ունէր զԱրտակ»։ Արտակ չմերժուեցաւ իւր բարեկամէն։ Վարդանին սէրը այս համեստ, մտացի եւ քաջ անձին նկատմամբ անշուշտ շատ բարեկամական բան մ'ունի՝ Մոկաց ամուրներուն տապնջականութենէն մնացած։*

*— Ղահապիվանի ժողովին (տես Ա. գիրք էջ* 59–61) *պատմութիւնը քիչ մ'ուռուցիկ գրուած է. այնպէս որ այդ պատմական նախաբանին երբեք չեն համապատասխաներ սահմանուած կանոնները։ Դիտելու է միայն որ երկրին մէջ*

Միհր-Շապուհին գալուստը պատճառ տուած ըլլայ նոր վրդովումի, գէթ պատմագիրները կը լռեն այդ մասին, հետեւաբար, բստ ամենայն հաւանութեան, Վասակի ժամանակ՝ (անմիջական յաջորդ Վեհ-Միհր-Շապուհի) եղած պարսկական բռնութիւններու եւ Պարսից Քուշանաց դէմ մղած պատերազմներու միջոցին (431—442) տեղի ունեցած ըլլայ Վարդանի քաշուիլը. գէթ այս միջոցին Վարդանի անունն իսկ չի յիշատակուիր Եղիշէի մէջ։

## § 4. ՎԱՐԴԱՆԻՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

Մամիկոնեանք շատով աճած ուռճացած էին, գէթ այնպէս մինչեւ Մանուէլ։ Ա՛լ հետզհետէ սեռական սպառում մը կը տիրէ. այնպէս որ շատ անգամ Սպարապետութիւնը ուրիշ ձեռքերու կ'անցնի պատրաստ կամ հասուն մանչ ժա-

---

եկեղեցական կամ կրօնական անկարգութիւններ սկսած են երեւան գալ եւ Մամիկոնեանց դերը զգալի եղած է՝ իբր նախանձախնդիր Յոյն մը քրիստոնէական բարգաւաճումին. — "մանաւանդ զի չէր ի ժամանակին յայնմիկ իշխանութիւն եւ տէրութիւն ի ձեռն ազգին Մամիկոնէից, զի զօրաւորք ի— նստածեալ ի— հնազանդեալ էին համբերելով դոր- ծոյքն Բագրատունեաց, զի թէպէտ եւ հեծէին մամռային մանչէին ի նմանութիւն կորեանց առեւծուց Վարդան Մամիկոնեան համազգօքն իւրեանց հանդերձ եղբարբք, այլ կային իբրեւ ի գառագիղի արգելեալք եւ ակն ունէին ի վերուստ օգնականութեան. քանզի չարահնար ազգն Պարսից ի կասկածանս կային եւ յերկիւղի եւ ոչ տային զիշխանութիւն ի ձեռս նոցա„ (Կանոնագիրք Ձեռագր. Դպրեվանուց Մատենադարանին)։

— Շահապիվանի ժողովի Կանոններուն սկիզբը դրուած այս յառաջաբանը բոլորովին համառօտ է Կանոնագիրքի ինչ ինչ օրինակներու մէջ, որոնցմէ հատ մը տեսած իմ Մուշի Ս. Կարապետ Վանքի ձեռագիրներուն մէջ։ Նոր Ծ. Հ. 1907։

ռանգ մը չըլլալուն համար։ Միեւնոյն սպառումը Մեծն Սահակի սերունդին մէջ սկսած էր արդէն, մինչեւ որ բոլորովին «քարքարոտ եղեւ», Խորենացու բացատրութեամբ, եւ դուստր մը, Սահականոյշ, մնաց մեծ սերունդի ամենամեծ Հայրապետին[1]։ Երկու սպառող Տոհմերու արիւնախառնումը թէեւ ժամանակ մ'ալ վերակենդանացուց Մամիկոնեանը, այլ՝ աճեցուն եւ առատ ճիւղաւորում մը չունեցաւ Համազասպէն եւ Հմայեակէն յետոյ։ Անտարակոյս պատճառն այս է որ Համազասպ երեք մանչ միայն թողուց[2]. գէթ աղջիկներն, եթէ կային, անծանօթ կը մնան պատմութեան, եւ այդ երեք մանչերէն՝ միայն երկուքին՝ առաջինը երկու դուստր միայն ունեցաւ, երկրորդը Վարդանի եւ Հմայեակի՝ նկատմամբ գիտենք որ չորս արու զաւակ. իսկ կրսերն՝ Համազասպ՝ երբեք չէ ունեցած սերունդ, եթէ ունեցած ըլլար՝ գէթ մանչերն պիտի յիշուէին իր եղբօր կորիճներուն Վահանի, Վասակի, Արտաշէսի եւ Վարդի հետ՝ թէ իրենց մանկութեան ժամանակ, թէ Վահանի պատերազմներու մէջ։

Վարդան թերեւս իր եղբայրներուն ամենէն

---

1 Թէ Լուսաւորչի եւ թէ Մամիկոնեանց Տոհմերուն սպառումը, շատ ստոյգ է որ արդիւնք եղաւ մերձաւոր ազգախառնումին. իւրաքանչիւր տոհմ իր ժառանգական իրաւունքը ուրիշ ցեղերու մէջ չտարածելու կամ չցրուելու համար կը սահմանափակուէին իրենց տոհմային արիւնի շրջանին մէջ. այս կերպով ազգախառնումը սպառումի ախտանիշն է, որ շուտով կը յայտնուի։

2 Ահա՛ Համազասպի ազգահամարը.

Համազասպ ✕ Սահականոյշ

Ա Վարդան ✕ Դստրիկ — Բ Հմայեակ ✕ Ձուիկ — Գ Համազասպ

Վարդանի զաւակներ: Շուշան-Վարդենի կին Վազգէնի բդեշխի — Վարդանոյշ կին Արշ. Կամսարականի

Հմայեակի զաւակներ: Վահան, Վասակ, Արտաշէս, Վարդ

Վասակ — Գրիգոր Մամիկոնեան

դժբախտ եղաւ իր առտնին վշտերով. եթէ իր կրտսերն Համազասպ երբեք չունեցաւ սերունդ, իր ունեցածն ալ բանագործութիւն մ'է ամբողջ։

Զենք կրնար հաստատուն ժամանակ մը նշանակել քաջ սպարապետին ամուսնութեան։ Ամէն պարագայի մէջ Մեծն Սահակ՝ իր թոռան պսակն ալ օրհնեց, ինչպէս օրհնած էր Համազասպինը, միշտ դէմ յանդիման տեսնելով այն բոսոր առագաստը, որու բոլոր կենդանութիւնը վարդացած էր Սահականուշով եւ ալ “արու զաւակ„ չունենալու սեւ երկիւղը կը մտածէր հոն. երկիւղ՝ զոր սրտի տրոփներու, արցունքի անհատնում հեղումներու մէջ միայն կրնար արտայայտել. եւ այն ալ տեսիլներու կամ արհաւիրքով կամ սփոփանքով տեսնուած։ — Ամուսնութիւնը հաւանաբար 407—413 եղաւ՝ երբ 20—25 տարեկան էր Վարդան։ Իր կենակիցն է Դուստր կամ Դստրիկ կամ Դխտիկ (Կորիւն. — Խոր. — Ասողիկ)։ Զենք գիտեր թէ Մեծն Սահակ ո՞ր տոհմէն ընտրեց իր նուն. նա որ իր կեսրայրի մահով միայն կենդանացած է պատմութեան մէջ, նման անոնց՝ որք մեծ կեանքերու անշշուկ զօրավիգն եղած լոկ անոնց վախճանին հետ յայտնուելու արդար յաւակնութեամբ կը պատկերանան պատմական հանգրուաններու վրայ. — Դստրիկ, “տոհմատէր իշխանուհին„, Տիկինն Մամիկոնեանց, Տիկնոջ մը կատարելութեամբ կը փայլի երբ Մեծն Սահակի “տենչալի նշխարք„ը կը պատէ, կը պատուէ, Բագրեւանդէն (Բլուր գիւղ) բերելով ի Տարօն “ի բնիկ գիւղն իւր (Սահակայ) սեփական յանուանեալն Աշտիշատ„ (Փրպ. էջ 104—105), զոր քիչ յառաջ “սուրբ այրն Աստուծոյ Սահակ„ “եւ որ ինչ միանգամ էր իւր„ թոռներուն կտակած էր “ի ժառանգութիւն եւ զաւակի նոցա մինչեւ “ցյաւիտեան„ (Փրպ. էջ 103—104)։ Ահա ինչ որ գիտենք այս Մեծ Տիկնոջ մասին։

Վարդան երկու դուստր միայն ունեցած է՝ — Վարդենի եւ Վարդանոյշ: Ճառընտիրներ կամ Վկայաբանութիւններ անդրանիկ կը ճանչնան Վարդենին, որ կը գրուի նաեւ Վարդանի, Վարդանուանի, Վարդուանի, իր հօր անունով: Վարդանուհին, որ “ըսփ ֆֆոանոյ„ կամ իր գեղեցկութեան համար կոչուած է Շուշան կամ Շուշանիկ՝ Տիկինն եղաւ Վրաց: Մամիկոնեանք շատոնց ազգակցած

---

1 Ասողիկ (էջ 80) եւ Ս. Անեցին (էջ 71) Մանփնոս անուն տրու զաւակ մը կու տան Վարդանին. “Եւ առնու զպարապետութիւն Հայոց Մանդնոս որդի Վարդանայ ամս 20„: Սամուէլի համար մոփնոսն է Մանդնոս: Յիշատակարան մ'ալ ելլի յառաջ կ'երթայ. “Եղեւ այս ի ժամանակս մարզպանութեան եւ սպարապետութեան Վահանայ որդւոյ Մոփնոսի որդւոյ Վարդանոյ, կամ որդեւ տէն խեջօր„: Այսպիսի յիշատակութիւն մը չունի Փարպեցին, որ Մամիկոնեանց տունը լաւ ճանչցող ժամանակակից միակ պատմագիրն է: Ընտեղի սխալ մ'է այդ: Ըստ Չամչեանի Մեծն Վահանի տոհմանունն պէտք է ըլլայ Մանդնոս. “փոխանակ ասելոյ Վահան Մանդնոս կամ Մամգոն, այսինքն Մամիկոնեան՝ եղբօրորդի Վարդանայ, եդեալ են Մանդնոս որդի Վարդանայ. գուցէ նայելով ի սխալագիր յիշատակարանս ինչ„ (Բ. էջ 459–60. Հմմտ. Պտմ. Հայ. Դպր. էջ 299–300. — Դաւիթ անյաղթ [Մանգր. Նախնեաց] էջ 102:

Այս բոլոր տարաձայնութիւններն ու ենթադրութիւնները պիտի հերքուէին, եթէ Եղիշէի սա խօսքերը “փոխանակ յետս կացելոցն՝ որ ելին զհետ իշխանին Սիւնեաց, ջեդժոր կամ ՋՈՐԴԻՍ կամ ջեդժորջն որդին է տեղէ նոյն մօտաւորաներ, ես ջերբուծանջեր ջերս տան նոյն„ (էջ 77)՝ հաւատարական ձեւ մը չունենային. որովհետեւ, եթէ Վարդան յիրաւի որդին (շառաւիղ) ունէր, եւ ոչ թէ միայն Մանդնոս մը, որք պատերազմի մտնելու եւ գունդ կառավարելու չափ հասած են, անպատճառ պիտի յիշուէին գէթ նահատակներու ցանկին մէջ: Փարպեցին մանաւանդ խանդաղատանքով պիտի արձանագրէր անոնց անունն ու գործերը: Որդին ընդհանուր բացատրութիւն մ'է եւ իր ազգականներու կամ համազգիներուն կ'ակնարկէ. իբր խորայինք (իրեններ): —

էին Վրաց բդեշխութեան հետ՝ Աշուշայի եւ Անուշ-Վռամի ամուսնութեամբ։ Փարպեցին՝ թէ իր պատմութեան եւ թէ իր Թուղթին մէջ արժանապէս եւ սքանչացումով կը դրուատէ այս ամոլները, որք ամէն խնամք, ամէն հոգ տարին Մամիկոնեան որբերու համար, որոնց հետ էր եւ ինքն Փարպեցին։ Աշուշա եւ Հմայեակ քենեկալ էին. “օրհնեալ„ն Անուշ-Վռամ, ինչպէս ակներեւ է, երէց էր քան “թագաւոր„ն Ջուիկ. ասոնց խնամքով պահպանուեցաւ Մամիկոնեան Տոհմը, որ արդէն սպառելու վիճակին մէջ՝ շատոնց պիտի հատնէր՝ եթէ Աշուշա, Անուշ-Վռամ եւ Ջուիկ իրենց անձնուիրութիւնը զլանային։

Վարդան իր Շուշանիկը ամուսնացուցած է Վրաց Բդեշխ Վազգէնի (Աշուշայի որդի) հետ[1]։ — Շուշանի կեանքը ամուսնութենէ յետոյ՝ եղերերգութիւն մ'է ամբողջ. ո՛չ մէկ գրիչ կրցած է, ինչպէս կ'երեւի, պատկերացնել այն պայծառ դէմքը, որ Ուփրէթի եօթնամեայ խաւարին մէջ, շղթայ կապանքներու տակ, զորս Վազգէն իր ձեռքով կը կնքէր, լախտերու կոտտանքին եւ վայրագ քարշումներու մէջ, անօթութեան խա-

---

1 Զարմանալի է որ Փարպեցին միայն անգամ մը կը յիշէ Վազգէնը “անօրէն„ անուանելով զանի. եւ չ'ակնարկեր իսկ թէ Վարդանի փեսան էր նա. Փարպեցին որ ամէնէն մանր դէպքեր կու տայ յետոյ իր պատմութեան։ — Շուշանի բերանը սա խօսքեր կը դրուին. “Դու ոչ ես ի իմ օգնական ոչ հայր ոչ եղբայր, դու ոչ այլ ես մերձաւորաց, որ ընդունիցիս հոգւոյս վասն իմ„ (Սոփերք Թ. էջ 25). այս կը ցուցընէ ոչ միայն թէ Վարդան զաւակ չունէր, այլ մանաւանդ դեռ այն ժամանակ, այսինքն՝ Աւարայրի պատերազմէն քանի մը տարի յետոյ, Վահան պատանեակ մ'էր դեռ։ Վահան անպատճառ վրէժ պիտի լուծէր եւ Փարպեցին պիտի չմոռնար զայն։ Փարպեցու բոլորովին լուռ անցնիլն ալ ասով կը մեկնուի որ Շուշանի կրած տանջանքն ու մահը Վահանի գործունէութեան ժամանակ չպատահեցաւ։

ծառումներու, ծարաւի ծիւրումներուն եւ իր Տիկնութեան կոխկռտումներու ներքեւ միշտ շուշան մնաց՝ համեստ եւ հոտաւէտ։ Ամէն բանէ զրկուած՝ գանձ մը միայն կրցած էր պահել իր մօտ, “Աւետարան մը փոքրիկ, որ նախնւոյն իւրոյ էր Սրբոյն Սահակայ։ Սանդուխտի եւ Հռիփսիմէի տանջանքներն չունին՝ ինչ որ կայ Շուշանիկի եօթնամեայ կրածներուն մէջ եւ այն իր կենակցին ձեռքով, զոր կարելի է միայն զգալ՝ մնացած յիշատակարաններու ընթերցումով[1]։ Որովհետեւ Շուշան զգացումի նահատակ է. նահատակ իր հաստատամտութեան, որու հանդէպ գազան Վազգէնի մտածումները ոչնչացան. գազա՛ն իր էութեամբ, “գազա՛ն չա՛ր եւ անընդել”։

Այս բանագործութեան պատմութիւնը շատ պարզ է։ Վազգէն՝ Վարդանանց նահատակութենէ յետոյ՝ լոկ իր “լկտի եւ անառակ” կրքերուն մղումով ուրացաւ. եւ “խնդրէր կին պարսիկ ի թագաւորէն”. առաւ Շահի զոքանչը։ Շուշան կործանում մը զգաց երբ լսեց այդ դէպքը՝ պղծութիւնը իր կրօնքին եւ պղծումն իր առագաստին. այս բաւական չէր սակայն, ուրացողն՝ իր կինն ալ ստիպեց. Շուշան չնետեց իր գոյնը Վազգէնի հրաշնչումներուն տակ. Վազգէն ողոքեց, միջնորդ ձգեց” ի զուր. կախարդանքի դիմեց, այդ “դիւական ցնորքն” ալ չկրցաւ բծաւորել անոր պայծառութիւնը. ամէն փորձ ըրաւ խամրեցընելու համար սպիտակութիւնը, բայց նա իր հօր կարմրութիւնը տեսած էր։ Վազգէն սկսաւ իր զաւակներուն վրայ բռնանալ եւ իր դուստրը “ըստ պարսկաց օրինին հանդերձեալ էր ի կնութիւն առնուլ”։ Շու-

---

[1] Սոփերք Թ. — Ուխտանէս Հտ. Բ. գլ. կէ. — Վարք Սրբոց (լիակատար) Հտ. Դ. էջ 63—67. — Իսկ Հ. Ալիշանի գրուածն (Յուշիկք Ա. էջ 266—267 եւ 273—404) ի Շուշան-Վարդենի՝ լաւագոյն գրուածն է այդ զգացումը արթընցնելու։

շան իւր զաւակներուն հոգերով ալ կը վտանգուէր, «աւաղէր ողորմ ողորմ զծնունդ որովայնի իւրոյ. եւ զվայրենութիւն առն ամբարշտի»։ Վաւաշոտն Վազգէն զանոնք «ուրացողներ եւ շնորհազրկ-ուածներ [illegible] Պարսից, զի [illegible] [illegible] ըն-[illegible] [illegible]։ Ծառայացներ եւ [illegible] [illegible] [illegible] Վարդանայ է, որ ընդդիմացաւ Պարսից, եւ վասն այսր օրինաց [illegible] եւ [illegible] զնա մինչեւ ցմահ, զի ոչ [illegible] [illegible] [illegible] [illegible], որ-[illegible] [illegible] իւր [illegible]»։ Ահա Շուշանի յանցանքը։ Նա կտտուեցաւ, տանջուեցաւ, ցաւեցաւ արցունքով եօթը տարի շարունակ, բայց չթուլցաւ երբեք՝ գէթ իւր հօր կամ հօրեղբօր պէս ինքզինք ազատելու համար. նա որչափ անպարտելի մնաց, բդեշխն այնչափ եւ առաւել զայրացած կը նախատէր «շնորհ Նորա», որոնց ոգին կը կենդանացնէր Շուշանը։ Նա, Մեծն Սահակի եւ Մեծն Վարդանի դուստրն էր, Տիկին մը շուշանի պէս մաքուր. չուզեց զինջանիլ «[illegible] անկողնակցին» այնպիսի ռազմի մը մէջ, որուն ասպարէզը չէր տարածուեր Տղմուտի ափերուն մօտ, այլ Ցուրտաւի աննշոյլ Ոփրէթին մէջ. մեռնիլ իւր հօր նման, որուն զարմն էր ինքն Զարմանալին. այսինքն՝ Կին մը որ իւր մէջ կը խտացնէ իւր Տոհմին բոլոր առնացի եւ բարոյական ոյժերը. — «Ընկալ զնա (Տէր) զի . . . [illegible] եւ նա [illegible] [illegible] [illegible], որք [illegible] [illegible]». այս եղաւ «Վարդանածին ծաղկին» արեւ տեսլա-

1 Վազգէնի նման քրիստոնեաներ «ուրացութեամբն գոռոզացեալ ամբարհաւաճէին ի ժամանակին, քան թէ ի բռնութենէ պարսիկ զօրագլխացն գործոց» (Փրպ. էջ 359)։ Այսպիսի ուրացութեանց յաճախումը, որ կրակ ու բոց դարձուց Մեծն Վահանը, որուն սիրտը իւր մանկութենէն ցաւած էր անշուշտ, «անօրէն» Վազգէնի անգութ վարմունքէն իւր հօրեղբօր աղջկան վրայ, որ վերջապէս յաջողեցաւ դաշնադրութեան մէջ իբր պայման դնել, որ ուրացողներ չպատուուին Դռնէն։

կանը, որու առջեւ միայն կը ծռէր իւր շուշան գլուխը։

Շուշան, «Սուրբ Թագուհին», ըստ ոմանց նահատակուած է «յամի Տեառն 458, ի հասակի իւր քառասուն եւ հինգ ամաց» (Լիակատար վարք սրբոց Դ. էջ 66) ուրիշ հաշիւի մը համեմատ «երեւի հանդիպեալ յամի Տեառն 474 կամ 476» (Սոփերք Թ. էջ 60)։ Թուականները վկայաբանական են, եւ ինչպէս կ'երեւի, բաւական ալ տարբեր։ 458ը աւելի յարմար է մեր հաշուին, որով Վարդանի համար մեր նշանակած տարիքը կը շեշտուի. Շուշան 45 տարեկան նահատակուած է. ծնունդը կը հանդիպի ուրեմն (458—45 =) 413ին. եւ որովհետեւ Վարդանի ծնունդը նշանակեցինք առնուազն 387, ամուսնացած 20—25 տարիներուն մէջ. այսինքն՝ ամուսնանալու ամէնէն յարմար տարիքը Մեծ սպարապետին համար (տե՛ս էջ 344 եւ հետեւ.) ամուսնութիւն մը, որուն առագաստը չծիծաղեցաւ իրեն, ինչպէս տեսանք քիչ մը յառաջ։

Վարդան անշուշտ վայելեց իւր թոռները՝ երեք ուստր եւ մէկ դուստր, զոր իրեն կին առնուլ կ'ուզէր գազանն Վազգէն «ըստ պարսկաց օրինին»։ Շուշանի մրրկած սիրտը բերկրանքով մը լեցուեցաւ իւր կապանքին մէջ երբ լսեց թէ իւր երեք որդիներէն մին կեր եղած է Կուրին. ազատուած էր նա իւր ուրացող հօր որոգայթէն։ Իսկ ուրացողը Վախթանգին փառասիրութեան զոհուեցաւ 481—482 (Փրպ. էջ 358—359)։ Ահա՛ Վարդանի առանին կեանքի մէկ կողմն ալ, որու վիշտն սակայն իւր շիրմին վրայ տարածուեցաւ։

Սպարապետին միւս դուստր՝ Վարդանուշի կեանքն անծանօթ է. ներա ամուսինը կը ճանչնանք միայն եւ երեք հարազատները։ Վարդանի բանակին աջակողմեան զօրագլուխն, իշխանն Արշարունեաց Արշաւիր Կամսարական, որ «էր եւ փեսայ Զօրավարին Հայոց սրբոյն Վարդանայ Տեառն Մա-

միկոնէից, ունելով դուստր նորա ի կնութեան„ (Փրպ. էջ 190, 338)։ Արշաւիր դարուն մեծ դէմքերէն է, Փարպեցու սքանչացած մէկ դէմքը, որ պատիւ կը բերէ իբր փեսայ Սպարապետութեան Տոհմին։ Արշաւիր անխոնջ գործող մ'է, մոացի ընտիր պատերազմիկ մը, մանաւանդ քաջ նետաձիգ մը (անդ էջ 192). կենդանի աղբիւրը Վարդանանց պատմութեան (անդ էջ 305). ինչպէս իւր որդին Ներսեհ՝ Վահանեանց դէպքերուն (անդ էջ 411). Արշաւիր, որ մինչեւ վերջը պաշտպան կեցաւ Վարդանանց դատին, դատախազն եղաւ Վասակին Տիսբոնի փուրսիշին ժամանակ (անդ էջ 244—250)։ Վարդան երեք թոռներ ունեցաւ Վարդանուշի եւ Արշաւրի ամուսնութենէն. Ներսեհ՝ Տէրն Շիրակայ, Հրահատ եւ Սահակ. հարազատ մարմնացումները իրենց հօր քաջին Արշաւրի. քաջութեան, անձնուիրութեան, հաւատարմութեան տիպեր. ինչպէս իրենց հայրը Վարդանին, իրենք ալ աջ բազուկն եղան Վահանին՝ միեւնոյն պատերազմի շարունակութեան մէջ։ Կամսարական հարազատներու փարումը Մեծն Վահանին, ճիշդ իրենց մանկութենէն կը սկսի։ Ասոնք Հմայեակի զաւակներու հետ մօքի եւ մարմնի միեւնոյն կրթութիւնն առին. ասոնք ալ քաջ նետաձիգ "դիւցազունք„ նման իրենց հօր, "թեթեւաշարժք եւ նախասպանք„, աջողակ, շնորհալից, Զուիկի զաւակներուն պէս. ասոնք են որ "Նմանեցուցեալ ինքեանց է յառաջնում քաջութեան և զօրութեան երանելւոյ Կամսարականին Արշաւրայ Տեառն Արշարունեաց, որք և ողջախոհան իւրեանց էին ձեռնտուք գործոյ մարտիրոսին Վարդանայ, իբրև և հրահանգեալ ընդ իւրեանց իմաստութեան և որոշեալք ջանային„ (Փրպ. էջ 337—338)։

Վարդանի այս թոռներու մասին Փարպեցու նուիրած էջերն սքանչելի են, մանաւանդ երբ մեր

գերազանց պատմագիրը երախտագիտական շեշտ մը կը դնէ անոնց հետ իր անձնական յարաբերութիւնները շօշափելով։ Կամսարականք իրենց ճշմարիտ բարեկամութիւնը նուիրած են Փարպեցուն (Փրպ․ էջ 570–571, 591)։

Ահա ուրիշ մէկ կողմնանկարն ալ Վարդանի առանին կեանքին, որ մխիթարական է, իբր հակապատկերն անոր, որ կ՚երկարի մինչեւ Ուփրէթի գնդանը։

Կը տեսնուի որ շատ դժբախտ եղած է Վարդան իբր տէր ընտանիքի մը, գերդաստանի մը։ Հաւանական է որ ազգային դժբախտ ժամանակի մը մէջ իր առանին դժբախտութիւնն ալ ողբաց Վարդան իր ճշմարիտ հաւուն պէս, "տուն–տեղ" չունենալու դժբախտութիւնը։ Տոհմի մը համար մահացում է այս վիճակը եւ եթէ Վարդան նախատեսաւ այդ աղէտը, գէթ կը սիրեմ հաւատալ որ իր աչքերը բերկրանքի նշոյլ մը ցոլացին․ քանի որ Վահան մը, Վասակ մը, Արտաշէս մը, Վարդ մը կար դեռ . . . ։

ԳԼՈՒԽ Ժ․

## ՎԱՐԴԱՆԻՆ ԱՐԺԱՆԻՔԸ

Վարդանի գնահատումը իր գործերն են։ Պատմութիւնն ընդարձակ էջերով ներբողած է Ազգին եւ Եկեղեցւոյն այդ դիւցազնը․ իսկ ժողովուրդը շատ լաւ կը զգայ Վարդանը։

Սպարապետն իր գործերուն մէջ, որոնց համաշխարհիկ շրջանակ մը գծած է հասարակաց զգացումը, ունի այնպիսի թերութիւններ, որոնցմով աւելի կը բարձրանայ մեծ անձնաւորութեանց արժանիքը, մանաւանդ զինուորական ասպարէզի մէջ, ուր Մամիկոնեան բոլոր զօրավարներ, իրենց բոլոր թերութիւններով կրնան մրցիլ աշխարհի մեծ

զօրավարներուն հետ. սա պայմանով որ նկատի առնուին այն ժամանակամիջոցներն ու միջավայրերը, ուր իրարմէ կը զատեն զանոնք։

Վարդանի թերութիւնները դուրսէն կու գան եւ այնպիսի թերութիւններ, որք չեն մնացած գործի մը, որուն գլուխ կանգնած էր Վարդան. այնպէս որ կարելի չէ Վասակի հետ բաղդատել զանի, եզր ունենալով Մարզպանին մտաւոր տարօրինակ յատկութիւնները, յաւելունք եւ կարծեցեալ քաղաքականութիւնը։ Վասակի մտքին յատկութիւնները զօրեղապէս շեշտեցինք։ Վարդանի այդպիսի տարօրինակ կարողութեան մասին պատմական ուղղակի վկայութեան մը չգոյութիւնը, ինչպէս գոյութիւնը Վասակի նկատմամբ, պատճառ մը չէ հասարակ միտք մ'ենթադրել Վարդանի գանկին մէջ եւ իր գործերն ու յառաջացումները համարիլ լոկ ոյժի արդիւնք, բան մը՝ զոր Վասակ չկրցաւ ցուցընել անձնապէս։ Վարդանը նկատել իբր խոշոր մարդ մը (ֆողոփոյը) հակառակ է գործի ոգւոյն, որու վարիչն է նա։ Մենք չենք կրնար հասկնալ թէ անձ մը, թող իր տոհմային եզական յատկութիւնները, որ մեծն Սահակի պէս քաղաքագէտ, հայրենասէր դէմքի մը ձեռաց տակ մտքի եւ սրտի կրթութիւն առած, Սահակ-Մեսրոպեան գործերուն անձամբ մասնակցած, երիտասարդ հասակէն արդէն Տանուտէր իր Տոհմին եւ Սպարապետ հայկական բանակին, Սպարապե՛տ եւ դարուն յատուկ շարժումի մը, որուն մէջ իրեն համակամներ ու համամիտներ ունի հեղինակ անձնաւորութիւններ, ինչպէս Վ. Ամատունի, Ա. Կամսարական, Արտակ Մոկացի, Յովսէփ կթղ., Սահակ Ռշտունի, Ղեւոնդ երէց, եւն եւն, այսինքն՝ ամբողջ եկեղեցին եւ կարող մի մասը ժողովրդեան, չենք կրնար հասկնալ թէ այսպիսի անձ մը լոկ ոյժի բեռ մ'եղած ըլլայ։ Այս տեսակ աննպաստ տեսութիւն մը Վարդանի մասին,

Վասակի նկատմամբ կազմուած խոր նախապաշարումի մ'արդիւնք է։ Վասակ, զուրկ չէր այնպիսի պայմաններէ, բայց ատոնք նման չէին Վարդանի պայմաններուն։ Վասակ իւր ննջամտութեամբ չինեց զանոնք, իսկ Վարդանի շուրջը ինքնին չինուեցան։ Մարզպանն ալ կշռած էր Սպարապետին արժէքը, պէտք էր փճացնել զայն, եւ Վասակ՝ այդ իւր պահ մը կատարեալ համակամութեան եւ համակրանքին տեւ դաւանք մը ուզեց դարբնել. զայս՝ ինքն Վասակ գիտէր միայն։

Ըսինք թէ Վարդանի թերութիւնները դուրսէն կու գան. — որովհետեւ չկայ սպարապետին մէջ ինչ որ կը գրէ Վասակը. այդ ինչը կարելի է բացատրել մտքի եւ սրտի ձուլուած խոտոր յղացումով մը՝ չարով, որ բարի է անձին տեսակէտով, իսկ չար ընդհանուրին համար։ Վասակի գործերն ու շարժումներն այդ նպատակին լարուած են։ Վարդան չար չէ։ Այս հայեցքով պէտք է դիտել այն չուերը, որոնց պատմութիւնը կ'աւանդեն Արծրունին (տես վեր եւ էջ 375—377) եւ Փարպեցին[1]։ Վերջինս, որ Սպարապետի բերնէն ուղիղ տեսութիւն մ'արձանագրած է, շատ լաւ կը բացատրէ այն թերութիւններուն պատճառը, որոնց համար ըսինք թէ դուրսէն կու գան։ Վարդան կ'ըսէ թէ նախարարներ ննջած են իրենց Տոհմին, որ ամէն ժամանակ ինքզինք զոհած է բարի ընկերին համար. մենք կը թողունք կ'երթանք, որովհետեւ "ցանկ չէր մեղաւ է մեղեղ է նեղ, եւ չէր անցեալ ի քոյ ունելով՝ մեր միայն աղէ-

---

1 Փրպ. էջ 162—171։ — Վահան եւս միտքը դրած էր "երթալ ընդ աշխարհ ելանել եւ կորնչել". բայց չգնաց ճիշդ այն նկատումներով, որով Վարդան ետ դարձաւ (Փրպ. էջ 514)։ Հօրեղբայր եւ Եղբօրորդի՝ երկուքն ալ իրաւունք ունէին եւ երբեք ստուերած չի բերեր այս իրենց արժանիքի մեծութեան։

պատրաստեալ է վշտաց մեծաց եւ մահուցն։ Այս ամէնը դուք շատ լաւ գիտէք թէ պատմութենէն եւ թէ ծերերէն լսելով։ Վարդան այս տագնապներուն մէջ, որք մանաւանդ աւելի նշանակութիւն պիտի ունենային տոհմական ապառումի տեսակէտով, չդեդեւեցաւ հանդէպ այն ձայնի, որ զինքն գործի գլուխը կը հրաւիրեր. “Քաջք արարք եւ երկնաւոր հրամանին Աստուածային՝ ոչ կոչեալ ոք է ընդդէմ ի մեր աշխարհ, եւ ոչ մեք կամք. քաջ լեալ, բայց ՚դիւր ընդ մահկանութեամբ վարիք եւ կամ երկմտութեամբ, դիւր գիտէք„ (Փրպ. էջ 170—171)։

Այդ առարկութեան եւ յետս կոչումի ոյժն ինքնին կը յայտնուի՝ երբ միտ դնենք թէ Վարդան նախարարական դրութեան մէջ կը գործէ եւ իւր խօսքն կ'ուղղէ նախարարութիւններուն, որք իրենց շահը մտածելու բնականութեամբ ամէն միջոց կրնային արդարացնել։ Եւ որովհետեւ այդ դրութեան մէջ ազգին տէրը չէ այս կամ այն տոհմը, այլ՝ տոհմերու, ազգերու ամբողջութիւնը, հետեւաբար ազգին ապառնացող վտանգներուն դէմ կուրծք տալ համայնքին պարտքն էր։ Հակառակը փճացում մ'էր նաեւ նախարարական սեւրունդին համար։ Մամնաւոր տոհմի մ'արժէքն համերաշխ գործունէութեան մէջ կը գնահատուի. ահա թէ ինչու Մամիկոնեանք միշտ բարձր եղան եւ յատուկ դիրք մը գրաւեցին ազգին մէջ թէ թագաւոր-նախարարութեան եւ թէ լոկ նախարարութեան ժամանակ, եւ ահա թէ ինչու Վարդան կը բարձրանայ Վարդանանց գործին բարձրութեան մէջ։

Վարդան իրապէս քաջ մ'է, քաջ իւր թեւութիւններով. քաջ մանաւանդ սրտով եւ մտքով։ Վարդան մարմնացումն է երկու նշանաւոր Տոհմերու (Լուսաւորչեան եւ Մամիկոնեան) նկարագիրներուն։ Վարդան գործեց ինչպէս գործեցին իւր փառաւոր նախնիքը. գործեց ինչպէս աւանդեց

*իրեն իր «Ճշմարիտ հայր»: Նա իր գործերուն նահատակն է «Նորահրաշ», զոր անշուշտ ողբաց նոյն ինքն Վասակ: Կը հաւատամ որ ողբաց սրտագին այն մարդը, որուն դաւեց երբեմն. մինչ եթէ համաձայնէր անոր՝ Վարդանանց, պիտի ապրէր Վարդան դեռ եւ գործն ուրիշ արագութեամբ մը պիտի փայլէր: Վարդան պիտի ապրէր, Վազգէն պիտի չուրանար, Վիրք եւ Աղուանք պիտի հանդարտէին: Հանճարեղն Վասակ զգաց այս վշտերը, մեծ կորուստի մը վիշտերը, զոր Դուռն ալ կը ճանչնար եւ իր դառնութիւնը կը թափէր Մարզպանին վրայ, իբր դաւաճանի վրայ. — «Երդմնեցուցեալ ըզհաւատարիմ եւ զայնպիսի պիտանի ծառայն մեր զքաջն Վարդան եւ զընկերակիցս նորա՝* **ԽԱԲԵՑԵՐ** *նամականիւ առ կայսր եւ առ նորին սպարապետն. երդմնեցուցեալ* **ՆԵՆԳՈՎ** *զայնպիսի քաջ եւ պիտանի եւ հաւատարիմն մեր զՎարդան եւ զայլ ընկերս, եւ դարձեալ գումարեալ զնա զօրու յԱղուանս՝ ի վերայ պարսկաց գումարտակին համարձակեցուցեր երթալ,* **ՆԵՆԳՈՒԹԵԱՄԲ ՄԱՏՆԵԱԼ** *զաշխարհն Արեաց կորուսեր, եւ կոտորածի այնչափ իմոց ծառայից եղեր պատճառ: Զի զայնպիսի ծառայ մի զմեր, որպէս զՎարդան, եւ կայսր եւ կամ Հոնաց արքայ բռնաբերեամբ յինէն հանել կամէին, ամենայն Արեաց ազգաւ կամէաք եւ չտայաք հանել, մինչեւ այսօրէն չէր հանէն: Եւ արդ դու ընդ քո ձեռն զայնպիսի ծառայն սպաներ, եւ զմեծ եւ զպիտանի աշխարհ մի (զՀայաստան) կորուսեր, եւ դու իշխեցեր լրբաբար առ մեզ՝ եկիր եւ անգէտս զոր նենգաւոր գործոյդ՝ գալ եւ զմեզ տեսանել: Բայց զայս գիտեա, զի յայսմհետէ Սիւնեաց Տէր չես. եւ շնորհեալ ամենայն զոր խորհեցար եւ կատարեցեր, կուտեսցի ի վերայ* **ՉԱՐ** *գլխոյ քո», եւն* (Փարպ. էջ 251—252):

# ԽԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Վարդանն ու Վասակը, Վարդանանց գործերն ու Վասակեանց շարժումները կատարելապէս իրարու հակապատկերներն են։ Բայց այս հակապատկերները չեն պարսկական կամ յունական քաղաքականութեան հակառակ ցոլացումները. զայդ ապացոյցներով կրկնելու առիթն ունեցանք։

Դիւրապէս համոզում մը գոյացնելու համար այս մասին, պէտք է շարունակել անցնիլ Պերոզի ժամանակ, սորին քան Ցազկերտ. անցնիլ վառ Թէոդոս Բ.էն Մարկիանոս, Անաստաս. անցնիլ Պերոզէն յետոյ Վաղարշ-Բալաշի ժամանակ՝ տաղանդաւոր Շահ մը։ Համոզուելու համար պէտք է շարունակել Վարդանանց գործը, եւ դիտել Վահանը՝ գերազանցապէս նոր Վարդան մը, օժտուած մտաւոր ամէնէն բարձր կարողութիւններով, որուն քով կը նսեմանան Վասակի հնարամտութիւնները, դիտել Գդիհոնը, գերազանցապէս քաջ նոր Վասակ մը, հաւանաբար զուրկ անոր մտքին տարօրինակ կարողութիւններէն. շարունակել վերջապէս եւ դիտել Վահանեանց գործը, անվրէպ յառաջխաղացումը Վարդանանց գործին, աւելի ամփոփ շրջանակի մը, բայց չ—ր—ղ ձեռքի մը մէջ, բառին ամէնէն զօրաւոր իմաստով։ Ըսել կ՚ուզենք Մամիկոնեանք կը շարունակեն գործը միայն իրենց ոյժով։

Արդ՝ կը տեսնենք որ Վարդանանց գործը առանց պարսկասէր կամ յունասէր քաղաքականութեան կը պսակուի եւ այն՝ Պարսից գերիշխանութիւնը ճանչցող “պիտանի աշխարհի„ մը մէջ. այսինքն՝ հոն, ուր Վարդանանք գործեցին։ Ո՞ւր այն կարծեցեալ յոյն քաղաքականութեան ազդակը, որով Վարդանանք իբր թէ կը շարժէին. ո՞ւր պարսկասիրութենէ մտրակուողներ։ Եթէ Վարդանանց եւ Վասակեանց շարժումները հակառակ քաղաքականութիւններու արդիւնք էր, ինչո՞ւ

միեւնոյն շարժումի շարունակութեան մէջ միայն Վահան մը կը գործէ։ Ո՞ւր են Վասակեանք. — Գդիհոն մը կայ միայն, ուրիշ քանի մը սինլքորներու հետ, որ Պերոզի բանակին մէջ կը յոխորտայ. շատ չտեւեց սակայն, Վահանեանք շուտով շամփրեցին զանի։ Իսկ Վասակի հարազատները՝ Վահանի հետ միացած քաջագործութիւններ կը ստեղծեն. պէտք է ըսել՝ իրենց հօր մեղքը կը քաւեն։ Յառաջիմաց հօր, անշուշտ "յառաջիմաց" զաւակները հասկցան իրենց հօր սխալը. գիտցան ազգին համար գործել։

Վահանի գործերը անվիճելի հերքումն են այն դատումին, որով Վասակ եւ իր ձկտումները կը պաշտպանուին իբր ազգին շահը ընդգրկող Ճնուր+ մը (tactique)։ Հինգերորդ դարու այս շարժումին վրայ դատում մ'ընելու համար պէտք է դիտել զայն իր ծագումին, իր շարունակութեան, իր ելքին մէջ։ Վարդանանց գործը Ճնուր+ չի վերցներ, որովհետեւ ժողովրդական բան մ'ունի այդ. Ճնուր+ը համերաշխութիւնն պէտք էր ըլլալ։ Մանուար (Տոհմերու) նկատումները մի-մի վտանգներ էին, կրնային գործին վնասել ոեւէ եղանակով մը, ինչպէս Վասակի նկատումները վնասեցին ուշացնելով Վարդանանց գործին ելքը, որուն մէջ "Քաջ Սիսականն" գիտնալով վատացաւ։

Վարդան բաց ճակատով գործեց, Վասակ նենգամտութեամբ սողոսկեցաւ. Վարդան հաւատարիմ էր առաջադրուած դատին, Վասակ իր փառքին իրականացումը կ'երազէր հոն. Վարդան հասկցուած էր ուխտապահներէն, Վասակ իր դարձուածներուն մէջ կը լկուէր. Վարդան Աւետարանի հանդէպ կը պատկառէր, Վասակ ատրուշան կը բոցավառէր. Վարդան կ'անսար հանրութեան ձայնին, Վասակ իր տենչին միայն կը ձկտէր. Վարդան Հայոց աշխարհին փառքը կը տենչար, Վասակ Թագին սեւեռուած էր. Վարդան կը

յարգէր Մարզպանին առաջարկներն իբր երկրի Մեծին, սա կը դաւէր սպարապետին. Վարդան “ողջախորհուրդ„ մ'է, Վասակ “չարախորհուրդ„ (Փրպ. էջ 186). Վարդան կը քաջալերէ, Վասակ վարանքով կը մխայ. Վարդան Արտազի մէջ կը շահատակէ, Վասակ Արտաշիրի փիղերուն ետեւ կը խորասուզի, Վարդան բանակ կը շարժէ, Վասակ հրամանի տակ կը խլրտի. Վարդան կը նահատակուի հանրութեան համար, Վասակ իր փառատենչիկ պատրանքը կը լուծէ. Վարդան կարմրած է պատերազմի դաշտին մէջ, ժողովրդեան սրտին մէջ, Վասակ Տիզբոնի գնդանին մէջ դառն արցունք կը թափէ. Վարդան սրբացած է իր փառացումէն, Վասակ ուրացած կը մեռնի. Վարդան յարացոյց եղած է զգացումի, քաջութեան. Վասակի բարձր կարողութիւնները մթագնած են արհամարհանքի տարափին տակ. Վարդան ամէն սրտի վրայ դրոշմուած է, Վասակի գերեզմանին տեղն իսկ չերեւցաւ. Վարդան “Նորահրաշ պսակաւոր„ մ'է[1], սուրբ

---

[1] Վարդան մեծ սուրբ մ'է մեր Եկեղեցւոյն մէջ. ժողովրդական այն մեծ համակրութեան արդիւնքն է այդ, զոր արդարացուց Վարդան իր կարմիր արիւնով։ Եկեղեցիներ շինուեցան Անոր յիշատակին թերեւս շատ հին ժամանակներէն սկսեալ. Աստապատի “փառաւոր„ եկեղեցին (Կ. Վ. Շ. Օրբլ. էջ 299—300), Վանի Հաւկավանքի (Հայկավանք ?) եկեղեցին Ս. Վարդանի նուիրուած են։ Աւերակ եկեղեցի մ'ալ կայ, հին վանքի մը մնացորդ, Ուշտունեաց մէջ, Ջեվէ քրդաբնակ գիւղի մօտ բլրակին վրայ, Ս. Վարդան անունով։ Եւ դեռ ո՛ գիտէ որչափ շինուած եւ աւերուած են, քանի որ ժողովրդեան մէջ կենդանի մնացած է Վարդան՝ Լանկթիմուրի դէմ կռուիլ տալու չափ աղաւաղուած։ Եղիշէի Պատմութիւնն իսկ “Վարդանակերտ„ անուանեցին (Թորոս Աղբար Մասն Բ. էջ 334 տե՛ս վերեւ Ա. Գիրք. գլ. Բ.)։ Անոր սուսերամերկ պատկերը քանդակեցին թանկագին մանատուփի մը վրայ (տե՛ս Ալիշանին “Սրբարանն Սկեւռայ„ գրուածը ՍԻՍՈՒԱՆի մէջ)։

մ՚է, Վասակի յիշատակն իսկ չեղաւ “առաջի սուրբ սեղանոյն„. Վարդան Անմահ է, Վասակ կը կշտամբուի։

Վարդանէն յետոյ Վահան մը, Վասակէն յետոյ Գդիհոն մը. Եկեղեցին է յաղթապանծը, իսկ քանդումը՝ Մոխրանոցներուն. Ազգն տեսակ մ՚ինքնութիւն կը շնչէ, սինլիքոր մոգացածներ ամքած են ինքնին։

Քաջը գծեց յաղթանակի այս հիմը իր “Վարդագոյն արեամբ„. Արշակունեաց ծիրանիին տեղ իր կեանքի ծիրանին ծաւալեց. գարունը նախանձեցաւ իր երանգներով այդ Կարմիրին։ Դարեր կը պանծան ի Կարմիրն Վարդան։

---

Ո՛ր բանաստեղծական երեւակայութիւնն արդեօք սրտի զգացածը բացատրելու համար Վարդանին անունը արշալուսով գունաւորեց։ Քաջին երետասարդական առոյգութիւնը, վառ խանդը արտայայտող ժողովրդական կոչում մ՚է Կարմիրը թէ զգուանքի կամ փաղաքշական անուն մը։ — Արեւելեան սովորութիւն մ՚է այնպիսի անուններ դնել մանաւանդ արքունքի հասած երիտասարդներուն, որք անձին կամ հոգեխօսական կամ բնախօսական նկարագիրը ցոլացնեն իր ամէնէն նրբին գծերով։ Ժողովուրդը շատ վարպետ է այս գիտութեան մէջ. թէեւ գերդաստաններու մէջ եւս կը դարբնուին այդպիսի յորջորջումներ նոյն իսկ տղուն երեխայութեան ժամանակ. ասոնք են փաղաքշական կամ զգուական ըսուած անուններ։ Արդէն տեսանք Վարդենին, զոր գեղեցկութեան համար իբր Շուշան կը զգուէին. այսպէս են անշուշտ Թով-

— “Սրբոյ Վարդանանց Զօրավարացն„ տօնը թերեւս Գիւտ կաթողիկոսն հաստատեց անմիջապէս, ինչպէս սովորութիւն էր (Բուզ. Գ. ժա). եւ “Արեւոցեալ„ ներբողը կամ սրբազան դիւցազներգութիւնը, հաւանաբար նոյն Գիւտն է երգողը։

մայի եւ Օրբէլեանի Գէբէնլիկ (Արծրունեաց), Գոքօօ (Վասակ), Սօօֆան (Գրիգոր) Սիւնեանց փաղաքշականները։ — Պարսիկներ ունէին Մէհր, Վէհ, Հօբօղ, Աօր եւայլն անուններ, որ թէեւ շատ անգամ անարժան անձերու ալ տրուեցան, շատ հին ծագում մ'ունին եւ նկարագիր արտայայտող յորջորջումներ են։ Պարսիկներն Հայ քաջերը խրախուսելու կամ անոնց նկարագիրը բացատրելու յորջորջում մ'ունէին, զոր մեր պատմագիրները լօ բառով պահած են. — լօ=քաջ. — Լօ այր, Լօ Բաբիկ, թէպէտ սովորական դարձած է յետոյ այդ բառին կիրարկումը։

Լսած եմ եւ գիտեմ սա ֆըղըլ, ֆօրօ (ղըզըլ, ղարա) ղօղ թուրք անուանումները. — Արեւելքի յատուկ է հզօր կենդանիներու անուններ տալ քաջերուն, Առիւծ (Արօլան), Այծեամ (Ճէյրան), եւ անարգական կամ թոյլ կամ խորամանկ բնաւորութիւններ ալ արտայայտող անուններ, շուն, աղուէս, ոչխար, աւանակ, եւն եւն — որք ուղղակի նկարագիր կ'արտայայտեն, կամ կը գործածուին իբր փաղաքշական, զոր օր. ֆըղըլ Եղիա — արդի բացատրութեամբ՝ չէկ — եթէ չեմ սխալիր իբր կըօօ (շուտ բարկացող, կարմրող) բնաւորութեան մ'արտայայտիչ տրուած է անձի մը, յետոյ փոխանցուած իւր զաւկին իբր տոհմանուն։ Ղօրօ օղլու՝ շատ անգամ փաղաքշական, բայց ջաջուռ, ճարպիկ երիտասարդներուն կ'ըսուի. ղօղ օղլու՝ գրեթէ փաղաքշական է, որմէ շինուած է ղօղօ յատուկ այրանուններ։

Այսպէս թէպէտ եւ անհաւանական չէ Կօրմիըը քաջ Սպարապետին վաղուց տրուած ն եւ է յորջորջում ընդունիլ, բայց աւելի հաւանական կը համարիմ այդ գերազանցապէս արտայայտիչ կոչումը իբր կենդանի անդրադարձումն իւր թափած արեան։ Կօրմիըը ոչ Փարպեցին ունի, ոչ Եղիշէն. մանաւանդ Եղիշէն սիրով պիտի նկարէր այդ իրա-

պէս բանաստեղծական գիւտը իր բանաստեղծի էջերու մէջ։ Վարդան հազար անգամ քաջ, կորովի, արի, երանելի, սուրբ կոչուած է ջուխտակ պատմագիրներէն․ իսկ ոչ մին ունի Կարմիր։ — Հաւանաբար Ե․րդ դարուն պատմական եղած է Կարմիրը․ յիշատակութեան ձեւը իբր աւելի կանուխ ժամանակի մը աւանդ կը ցուցնէ զայդ քան թէ պատմագրին ստեղծումը — "Եւ Նախանձաւորն Աստուծոյ Նահատակն Մամիկոնէից Տանն Կարմիրն կոչեցեալ Վարդան" (Սեբէոս էջ 22) — "Իսկ քաջն Եւ հզօրն Կարմիրն Վարդան, որդի դստեր սրբոյն Սահակայ" (Հնոց եւ Նորոց էջ 52—54)․ — Ցայտնապէս Սպարապետի նահատակութենէն յետոյ տրուած կ'երեւայ այդ անունը Վարդանին։ Արդէն Վարդկան, որ բաւական տարբեր ձեւ մ'է, կարծես փաղաքշական բան մ'ունի, եւ աւելորդ կ'ընէ ենթադրել այդ տեսակ ուրիշ անուն մը։ Ցետնագոյն ժամանակի մը ստեղծումին, այսինքն՝ պատերազմէն ետքը ժամանակին, նպաստաւոր է Շնորհալիի ըմբռնումն ալ, որ թէեւ տարբեր կերպով, բայց շատ լաւ կը մեկնէ Կարմիրը․ "Վարդա՛ն, քաջ նահատակ, որ վանեցեր զԹշնամին, Վարդագոյն արեամբք քո ցօղեցեր զեկեղեցի" (Շրկն)։ Շնորհալիին միտքը վառողն, յիրաւի, Վարդն է, որու գոյնը բանաստեղծօրէն կը մտածէ ի Կարմիրն կամ Վարդն ու արիւնը Վարդանին հետ կը նոյնացնէ բանաստեղծական բառախաղով մը, ինչպէս Արտակը (= հուր, կարմիր բոց) "Թաթաւեալ ի կարմրութիւն բոսորային բղխեալ աղբիւրն" (Շրկն)․ Հմմտ․ Բացայայտութիւն Շարականաց էջ 597․ — Ասողիկ (Գ․ Է․) Հայրն Վարդէկ եւ Հայրն Կարմիր անուններու հետ։

Եթէ ժողովուրդը Կարմիրը կը ստեղծէ քաջին էութիւնը բացատրելու համար, Շնորհալին արուեստով եւ ներշնչումով բոլոր Վարդանեան քաջերը իրենց անուններով կ'այլաբանէ։ Այս իսկ բաւական է ցուցընելու թէ ինչպէս յետոյ ապա կը մտածուին կամ կը յարմարցուին յատուկ յորջորջումներ։

*Ժողովրդական աւանդութիւն մ'ալ* Կուրմիզը *Սպարապետին Ջորիին կը վերագրէ.*

*«ՍՎարդան (Ս. Վարդան) խեծած* Կուրմիզ Ջորին։
*Գնաց խասաւ Մասիս սարին,*
*Զրմէն ղօշուն գլխին ժողվեց,*
*Մասսայ ոտքին երեք օր կռուեց։*
*Լանկ Թիմուրի ղօշուն ջարդեց», եւն*

(Ծրագիր Հայ. Աշխ. Գ. Խալաթեանի 1887. *էջ* 58. — *Հմմտ.* Ծաղիկ *Հանդէս* Նոր Շրջան 1895 *Հոկ.* 15. *Թիւ* 17, 608). — Աւանդութիւնը *որչափ ալ* Սպարապետը Կարմիր *Ջորիի վրայ՝ Լանկթիմուրի դէմ կը հանէ, փոխանակ* Կուրմիզ ձիի *վրայ* Յազկերտ Բ.ի *դէմ հանելու, բաւական է այս գրոյցն ալ ցուցընելու համար, թէ* Կուրմիզը *Սպարապետին յետոյ տրուած կարմիր կոչում մ'է։ Որովհետեւ ես կը սիրեմ հաւատալ, որ Վարդան* «Տերմանջոյի» *էր քաջին Մուշեղի պէս։ Ճերմակաձիէն աւելի ընտիր եւ պատմական ձիավարժ մը չէր կրնար մտածել Վարդան իբր յարացոյց։*



## ԵՐՐՈՐԴ ԳԻՐՔ

---

### ԳԼՈՒԽ Ա.

### § 1. ՍԱՍԱՆԵԱՆՔ

*Սասանեանց տիրապետութիւնը կամ Հարըստութիւնը նոր էջեր բացաւ թէ՛ քաղաքական եւ թէ՛ կրօնից պատմութեանց մէջ։ Այս Հարստութիւնը իւր կրօնական եւ քաղաքական ըմբռնումներուն ամէնէն տենդոտ ժամանակին մէջ սկսաւ քրիստոնեայ Հայաստանի հետ շփուիլ. ընկճելու շփում մը։ Քաղաքականութիւնը կրօնն է Սասանեանց համար. այս է պատճառն որ իրենց բոլոր պատերազմները կրօնական դիմակ մ'ունին։ Արտաշիր, Սասանեան Հաստութեան հիմնադիրը, գերազանց մոգ մ'է մոգերու ցեղէն. պետական կրօնի գաղափարը նա յղացաւ. նա պատրաստեց այն ծրագիրը, որուն հաւատարիմ մնացին իւր գրեթէ բոլոր յաջորդները. բացառութիւնը շատ քիչ է։ Արտաշիր Սասանեան գահը հաստատելով, մոգութիւնը հաստատեց. մոգեր, որ մինչեւ այն ատեն սըմքած մնացած էին, իրմով զօրացան շուտով եւ սկսան ծանրակշիռ հեղինակութիւն ունենալ պետական գործերու մէջ։ Արտաշիր՝ պետական կրօնքին իւր բոլոր հպատակներէն ընդգրկումին մէջ կը տեսնէր Սասանեան Հարստութեան ապա-*

գան, եւ մոգեր միշտ նոյնը շեշտեցին Արտաշիրի յաջորդներուն առջեւ — "Արքայ քաջ. Աստուածքն ետուն քեզ զտէրութիւնդ եւ զյաղթութիւն, եւ ոչինչ կարօտին նոքա մարմնաւոր մեծութեան, բայց եթէ է մի օրէնս զուարթացուցանես զմինոյն ազգս եւ ազինս, որ են ի տէրութեան քում" (Եղիշէ էջ 9, 16)։ Արտաշիր այդ սկզբունքով գործեց եւ իր սկզբունքները աւանդներ եղան. նա կտակեց իր յաջորդին. "Գիտցի՛ր, զաւակս, որ կրօնն ու թագաւորութիւնը երկու քոյրեր են. մին առանց միւսին չի կրնար կենալ. որովհետեւ կրօնը խարիսխն է թագաւորութեան եւ թագաւորութիւնը կրօնի պաշտպանն է". — "Կրօն հաստատուն կայ առանց թագաւորութեան, բայց թագաւորութիւն առանց կրօնի ոչ երբեք" (Annales C. p. XXV. — Պրոֆ. Պարթեւց էջ 51)։

Շապուհ Բ. աւելի յառաջ գնաց. նա նոյն իսկ պիտի չհանդուրժէր իր կրօնի աղանդներուն (տե՛ս Բ. Գիրք. Գլ. Զ.), թո՛ղ ուրիշ կրօնները, մանաւանդ Քրիստոնէութիւնը, որ բաւական նախանձելի բարգաւաճումով մը կը յառաջանար եւ այն ալ Տիզբոնի մէջ։ Շապուհ Գենիմազդէզի հանդէպ կը հաստատէր ուղղափառութիւնը գրեթէ այն ժամանակները, երբ Նիկիոյ Ա. ժողովը քրիստոնէութեան հերետիկոսները կը հարուածէր։

Սասանեանք, որ իրենց "իշխանութիւնն օրէնօք մոգուց" վարէին, Շապուհով (Բ) սկսան բուն գործին. այսինքն՝ "մարտնչել ընդ այնոսիկ, որ ոչ ընդ նովին օրինօք մտանէին" (Եղիշէ էջ 7)։ Հայք ճիշդ այդ օրէն սկսան տարբեր աչքով դիտել Տիզբոնի շարժումները. զգացին որ ապագան արիւնոտ պիտի ըլլար։ Այդ տագնապներուն առաջին պայթումը պոռթկաց, երբ Յազկերտ (Բ) սկսաւ "թշնամի եւ հակառակորդ երեւեցուցանել իւր զհաւատացեալքս ի Քրիստոս" (Նոյն անդ)։ Որովհետեւ մազդէզները կը հաւատային թէ, որ "ոչ

ունի զօրէն Դենիմազդեզն, Նա խուլ է եւ կոյր[1] »
(անդ էջ 20)։

Մենք տեսանք պատճառն ու բնութիւնը այն բոլոր ընդհարումներուն, որք Ե՛ էն Զ դար զբաղեցուցին Տիզբոնն ու Հայերը։ Այս էջերու մէջ կ'ուզենք ներկայացնել այն կրօնը, որ Սասանեանց ոյժն եղաւ եւ զոր ուզեցին հաստատել Հայաստան։ Եղիշէի շրջանակին մէջ եւ Եղիշէի տեղեկութիւններուն լուսաբանումը բաւական է այդ աշխատութեան համար։

Սասանեանց կրօնը այսպէս ըստ ինքեան դիտելով կարելի է սա եզրակացութեան յանգիլ. Սասանեանք ի զո՞ր կ'աշխատէին թէ ոչ. ուրիշ խօսքով Մազդէականութիւնը պիտի կրնա՞ր յաղթել Քրիստոնէութեան։ — Խնդրին այս տեսութեամբ քննութիւն ալ կրնայ շեշտել Վարդանանց առանձնած դերին արժէքը, հերքելու համար կամ յունասիրական կամ պարսկասիրական քաղաքականութեան մ'ենթադրութիւնը։

## § 2. ՄՈԳՈՒԹԻՒՆ

Սասանեանց պետական կրօնը Վարդանանց Պատմութեան մէջ նշանակուած է սա ձեւերով. Օրէնք մազդոյ, Դէնիմազդեզ, Մազդայասն, Դէնայազդանական օրէնք, Օրէնք զրադաշտական պատուէրանէն. իսկ Փարպեցին յաճախ «մազդայասն» կը գործածէ։ Եղիշէի բոլոր ձեւերը միեւնոյն նշանակութիւն ունին եւ կը համապատասխանեն արդի գիտական բացատրութիւններու՝ Մազդէականասն կամ

---

[1] Այսինքն՝ kikan=կոյր եւ karpan=խուլ (Հմմտ. Քուրք, որ կը խնու իւր ականջները). որոնք որ Կոյր եւ Խուլ են աստուածային ճշմարտութիւններուն, ոչ կը տեսնեն Դենիմազդեզի ճշմարտութիւնը ոչ ալ լսել կ'ուզեն զայն (Annales A. էջ 91)։

Մազդէիզմ (Mazdéisme), Զրադաշտականիզմ (Zoroastrisme)։

*Մազդէականութիւն կ'ըսուի կրօնի պաշտամունքեան բուն առարկային՝ Մազդաօի (Maz-dâ = մեծ-գիտունը։ Գերագոյն աստուածը մազդէականութեան Ահուրա Մազդաօ. Ahura = Տէր) անունով։ Զրադաշտականութիւն կ'ըսուի այն մեծ օրէնսդրի կամ մարգարէի, Զրադաշտ կամ Զրադեշտ անունով (Zarat-ushtra, դեղին կամ ոսկեգոյն ուղտեր ունեցող), որ բարձր անցեալի մը մէջ օրինադրած է Ահուրամազդայի կրօնը։ Իսկ Մոգիզմ (Magisme) կ'ըսուի այն պաշտօնեաներու անունով, որք քուրմերն կամ քահանաներն են մազդէական կրօնի։ Այս երեւոյթը բաւական է բացատրելու մոգերու դերը Պարսկաստանի կրօնական ճակատագրին մէջ։ Մազդէականութիւնը միշտ ունեցաւ նոյն պաշտօնեաները. բայց Մոգիզմ Սասանեանց ժամանակ՝ Արտաշիր Բաբիկանով՝ միայն սկսաւ նշանակել Մազդէականութիւն կամ Զրադաշտականութիւն։ Աքիմենեանց ժամանակ հազիւ նշանակութիւն ունէին՝ թէեւ տարածուած Պարսկաստանի ամէն կողմ։ Վերջին Աքիմենեաններու (Կիւրոս եւ Դարեհ) ժամանակ մոգերու գլխաւոր գործն էր երազ մեկնել։ Արքունիքի մէջ այսպէս յառաջ քայլելով պահ մը գահի ալ տիրացան. Դարեհ ընկճեց զանոնք. իսկ Քսերքսէսի ժամանակ նորէն սկսան հեղինակութիւն ստանալ. Արշակունեաց ժամանակ աւելի ընդարձակուեցան. Սասանեանց տիրապետութիւնը մոգութեան անկախութիւնն է. մոգեր ա՛լ իրենց գլխաւորէն միայն կը վախնային։ Արքունիքի մէջ մոգերու այսչափ յառաջացումը կը բացատրուի իրենց կրօնական հեղինակութիւնով. անոնք իբր աստուածներու պաշտօնեաներ կ'աստուածացընէին Շահերը, անկարելի բան չկար ասոնց համար ըստ մոգերու շողոքորթ վարդապետութեան։ Շահեր նախա-*

պաշարուած իրենց ընծայուած գիրքէն, շլացած կրօնական գործիչներու այս գերազանց շողոքոր-պաշտեթութենէն, շատ անգամ կայրգկուրայն գործի կը Maz-dâ ձեռնարկէին։ Այսու, շողոքորթել բարացուցականն մազդէա.է մոգերուն։

Մոգեր մարական ծագում ունէին․ իրենց կեդրոնն էր Ռագա (Ragha) կամ Ռէ (Rai) Զրադաշտի ծննդավայրը, զոր կը միտիմ նոյնացնել Փարպեցու Ռէանին հետ. "յԱպար աշխարհի, մերձ ի գեօղն Մոգաց՝ որ անուանեալ կոչի Ռէան" (Փրպ. էջ 305)։ Մոգը՝ Զրադաշտականութեան մէջ Քաղդէայ (գուշակ, աստղագէտ) իմաստը չունի. հին հեղինակներ, ինչպէս նաեւ Եղիշէ տեղ մը (էջ 16. — Հարլէ CXC) գէշ մեկնած են, այսինքն՝ իբր ըղձապաշտում։

Մոգերը ծագումով մոգ են. այսինքն՝ մոգ կը ծնանին. առանձին ցեղ մը կը կազմեն անոնք ինչպէս հրէից Ղեւտականք, կամ Զրադաշտականութեան արդի ներկայացուցիչներուն (Փարսիներ) Մոպետական ցեղը։ Մոգական ցեղին ամէն անդամը քուրմ չէ, բայց ամէն քուրմ մոգ է՝ (Annales G. LXXIII—LXXIV)։

Մոգերը իրենց հեղինակութիւնը կը պարտին ոչ միայն Արտաշիր Բաբիկանին, այլ մանաւանդ այն աշխատութեան, որով Աւեստան վերակազմեցին։ Հելլենականութիւնը Աղեքսանդրի աշխարհակալութիւններով ուրիշ կերպարանք մը տուած էր Զրադաշտի կրօնին եւ Աւեստայի հին լեզուն ալ անհասկնալի եղած էր նոյն իսկ մոգերուն (Հարլէ XXXIV). վտանգը ծանր էր՝ երբ Սասանեանց ժամանակ սկսան կազմել իրենց կրօնական գիրքը, զուտ մոգական էր եւ Զրադաշտի անունով խորհրդանշանեցին։ Սասանեանց Աւեստան 21 գրքերէ կամ Նասխներէ (Naska) կը բաղկանար իբր մնացորդը Աղեքսանդրի այրածներուն։ 21էն երեք գիրք մնացած է այժմ եւ այս

երեքէն Վենդիդադը միայն ամբողջ կը համարուի։ Այս գիրքը Սասանեանց Աւեստային հազիւ երկորդ կրնայ համարուիլ, ինչպէս Սասանեանցն ալ իրենց նախորդին։ Միայն Դարեհ Վշտասպեանի ժամանակ 12.000 կովու մագաղաթներու վրայ գրուած էր Աւեստան։ Սասանեանց եւ մոգերուն ճիգը եղաւ իրենց գտածը հաւաքել եւ կազմել կրօնական գիրքը, որ սակայն թէ քանակութեամբ եւ թէ մանաւանդ որակութեամբ բոլորովին հեռացած էր հնագոյնէն։ Նոր Աւեստայի թէ լեզուն եւ թէ բովանդակութիւնը մոգական է եւ կրօնական վերհաստատութեամբ Նոր-Զրադաշտականութիւնն էր որ կը տիրէր կամ Մազդէականութիւնը՝ մեր մատենագիրներու ծանօթ կոչումով (Հմմտ. Հարլէ CXC. — Annales C. chap. V—VI)։

Հազիւ չորս դար տեւեց մոգութեան վերականգնումը՝ 226—652։ Արաբական սուրն ու հուրը փճացուց ամէն ինչ (Պատմ. Պարսից էջ 74։ — Հարլէ XXXVI—VII Annales A chp. II)։ Հին կրօնի արդի ներկայացուցիչները, որ Փարսի կ'ըսուին (ուսկից՝ Փարսիականութիւն, Parsisme), 1881ին հազիւ 16.000ի կը հանէին պարսիկ տիրապետութեան մէջ։ Հետզհետէ ծանրացող իսլամական ճնշումին տակ ապաւինեցան Հնդկաստան ապաստանիլ եւ նոյն տարին 89.837ի կը հանէր հնդիկ-Փարսիներու թիւը (Annales նոյն անդ)։

Հելլենականութիւնը եւ Արաբականութիւնը՝ եղծիչ ազդակներ եղան Պարսկաստանի կրօնական կեանքին համար, որուն դարմանը անկումն էր ալ։ Հելլենականութիւնը նոր ըմբռնումներ, միթոսներ բերաւ բուն Զրադաշտականութեան. Արաբականութիւնը բոլորովին վերցուց Մոգութիւնը, որ Զրադաշտի անունով խորհրդանշանուած էր եւ ըստ ինքեան հեռի էր անկէ։ Իսկ Քրիստոնէութիւնը՝ Հելլենականութենէն մինչեւ Արաբականութիւնը տարածուող ժամանակամիջո-

ցին՝ նպաստեց Մազդէականութեան։ Միայն, պէտք է խոստովանիլ, որ եթէ Շապուհ չփոխէր իւր ընթացքը Քրիստոնէութեան հանդէպ ըստ ամենայն հաւանութեան Կոստանդիանոսէն պիտի կրէր լաւագոյն հարուածը։

Աւեստա Զրադաշտական կամ Մազդէական կրօնի սուրբ գրքերուն ամբողջութիւն է. Սասանեանց 21 նուսխաները, զոր մոգերը յօրինեցին, կորսուած են. անոնցմէ երեք գիրք միայն կայ այժմ. 1. Վանտիտատ (Vandidâd)՝ մաքրութեան օրէնքներուն գիրքը, որ 22 գլուխներէ կամ Ֆարկարտներէ (Fargard) կը բաղկանայ. 2. Յասնա (Yasna) կամ Yaçna)՝ զոհագործութեան կամ Յաշտից գիրքը, որ 72 գլուխներէ կամ Հաերէ (Hâ) կը բաղկանայ. 3. Վիսպերէտ (Vispered), որ Յաշնայի յաւելուած մ՚է, լաւ եւս Յաշնա մը, որուն մէջ քանի մը գլուխներ ընդլայնուած են[1]։

Այս գրքերն են որ կը կանոնաւորեն մազդէական պաշտամունքի արարողութիւնները։ Երկու Աւեստա կայ. մին մեծ Աւեստա, որուն կցուած է Զենտը կամ Զանտը (Zend), միւսը պաշտամունքի համար պատրաստուած՝ Վանտիտատ-Սատէ (Vendidâd-Sâdê, Պարզ-Վանտիտատ)։ Ասոնցմէ զատ ունին Խորտա-Աւեստա (Khorda-Avesta. Խորտէ = կտոր, մանր, փոքրիկ) կամ Փոքրիկ Աւեստա, որ կը բովանդակէ հաւատացեալներուն աղօթքը կամ թէ Աւեստայի Վանտիտատէն, Յաշնայէն, Վիսպերէտէն զատ ուրիշ մասերը։ — Թանկագին ուսումնասիրութիւններ արտադրեց Եւրոպա այս գրքերուն վրայ, որք դեռ կը զբաղեցնեն երանա-

---

1 Le livre Vispered n'a pas d'existence en lui-même: On ne le récite, on ne le l'offre jamais seul: il ne répond à aucune réalité liturgique: ce n'est qu'une notation abrégée d'un service. (Annales A. p. LXVII)

կան գիտութեանց վարպետները։ Ամէնէն ծանր եւ գլխաւոր խնդիրներէն մին այս գրքերուն լեզուն էր։ Եղիշէի մէկ հատուածը (էջ 112) զօրաւոր հեղինակութիւն մ'եղաւ Տարմշթեթերին՝ լուծելու այդ խնդիրը։ Մինչեւ հիմայ մազդէական կրօնի սուրբ գրքերը Զանդ-Աւեստա անունով ծանօթ է։

## § 3. ԱՒԵՍՏԱՅԻ ԼԵԶՈՒՆ ԵՒ ԵՂԻՇԷ

“Սասանեանց ժամանակ Աւեստա բառը կը նշանակէր եւ դեռ կը նշանակէ կրօնին սրբազան բնագիրը. իսկ այն լեզուն, որով գրուած էին անոնք, կ'ըսուէր Աւեստայի լեզու։ Այս լեզուն գործածական չէր այն ժամանակամիջոցին, յորում Սասանեանք Աւեստան եւ անոր վարդապետութիւնը Պետութեան գիրք եւ Վարդապետութիւն ըրին։ Սանսկրիտի ազգական լեզու մ'է այդ եւ շատ մօտ ազգական հին պարսկերէնի, այսինքն՝ այն լեզուին որ կը տեսնուի Աքիմէնեանց պաշտօնական արձանագրութիւններուն վրայ եւ որ Պարսկաստան գաւառին՝ հարստութեան (Dynastie) որրանին՝ յատուկ գաւառաբարբառն էր (Dialecte)։ Բայց երկու գաւառաբարբառներուն բանասիրական բաղդատութիւնը կ'ապացուցանէ, որ անոնք ոչ թէ միեւնոյն լեզուի երկու ժամանակները կը ներկայացնեն, այլ երկու զուգահեռական եւ անկախ ձեւեր. ուրիշ խօսքով՝ Աւեստայի լեզուն ուրիշ գաւառի մը բարբառը կը ներկայացնէ եւ ոչ թէ Պարսկաստանինը։ Ընդհանրապէս զէնդ (zend) անունը կու տան այս գաւառաբարբառին. սխալ անուանում. որովհետեւ բառը, ինչպէս պիտի տեսնենք, երբեք լեզու չնշանակեր։ Առաջարկուեցաւ Հին Բակտրիական (vieux-bactriens) անուանել զայն, սա ենթադրութեամբ որ Բակտրիայի՝ Զրադաշտի առաջին հետեւողին Վշտաս-

պին երկրի՝ լեզուն պիտի ներկայացնէր . . . ձրի ենթադրութիւն մ'է այս. մենք գործածական բառը (terme) պիտի պահենք միայն պիտակ արժէք մը տալով անոր։

Երկար ժամանակէ ի վեր մեռած էր Աւեստայի լեզուն, որուն հասկցողութիւնը կը պահուէր թէեւ աստուածաբանական դպրոցներու աւանդութեան մէջ, բայց կորուստի վտանգին մէջ էր։ Այն ատեն սուրբ գրքի թարգմանութիւնները ժամանակին լեզուովը՝ պահլաւերէնով (pehlevi) ըրին, այսինքն՝ այն ձեւը զոր Աքեմենեանց հին պարսկերէնը առած էր հինգ դար վերջը։ Այս թարգմանութիւնները հին բնագրին ընծայուած աւանդական իմաստը կը ներկայացնեն եւ որ կը նշանակուի զէնդ անունով, բառականօրէն "ծանօթութիւն"։ Կը կարծուէր թէ այս աւանդական բացատրութիւնները գրքի հետ միեւնոյն աղբիւրէ բղխած ըլլային, այսինքն՝ անձնապէս Զրադաշտէն։ Ասի բացարձակապէս հարկաւոր կեղծիք մ'էր ոյժ տալու համար սասանեան թարգմանութիւններու. վասն զի գիրքը մեռած լեզուով մը խմբագրուած եւ մէկէն ժողովուրդի յարգանքին ներկայացուած ըլլալով, պէտք էր որ այս թարգմանութիւնները, դարերով առաջ եղած սկզբնագրին հասկցողութեանը վերանալու համար, կոթնէին աւանդութեան մը, որ հնազանդութեան բռնադատէր։ Նոյնպէս պահլաւերէն թարգմանութիւնը երբ սրբազան բնագիրներու ամբողջը նշանակել ուզէ, Ապաստակ ու Զէնդ (Apastak u Zend), "Աւեստա ու Զէնդ", ձեւը կը գործածէ. այսինքն՝ սրբազան բնագիրը եւ իր հրամայուած ու սրբազան բացատրութիւնը. [Զէնդ երբեք չնշանակեր բնագիր կամ լեզու]։ Երբեք տեղ մը չտեսնուիր որ Զէնդ անուն գիրք մ'եղած ըլլայ իբր Աւեստայի մեկնութիւն. բայց անպատճառ կային բազմաթիւ գործեր, որք կը մարմնաւորէին

աւանդական Ջէնտը եւ այս գործերէն է որ եղած են թարգմանութիւններ ու մեկնութիւններ, որք հասած են մեզ։ Այս տեսակ գործերէն կային արդէն պարթեւական ժամանակամիջոցին. վասն զի Ե^րդ դարու Հայ մատենագիր մը, Եղիշէ, Նշանաւոր հատուածի մը մէջ կը յիշէ Պահլաւիկ կամ Պահլաւի կրօնական գրականութեան այն ճիւղերուն մէջ, որոնց տիրացած պէտք էր ըլլալ մեծ քուրմ մը (այսինքն՝ Դէնպէտ կամ Մոգպէտ)։ Արդ՝ այս Պահլաւի բառն է որ միջին դարուն եւ արդի ժամանակամիջոցին, ամէն հին բանի համար կիրարկուելով մինչեւ իսկ Սասանեանց լեզուն ալ նշանակեց, եւ Սասանեանց ժամանակ իսկ կը պահէր իւր սկզբնական իմաստը եւ կը կիրարկուէր Պահլաւ կամ Պարթեւ (Parthava) լեզուին եւ գրականութեան մէջ„ (Annales A. chp. II. — C. p. XCIV—V)։

### ԳԼՈՒԽ Բ.

## § 1. ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Դենիմազդեզի հիմնական Վարդապետութիւնը երկու սկզբունքներու վրայ՝ մին Բարի եւ միւսը Չար՝ հաստատուած է. Եզնիկի բացատրութիւնով Երկարմատութիւն (Dualisme) կ'ըսուի կրօնական այս դրութիւնը[1]։ — Ահուրա Մազդա

---

1 Աւեստայի երկարմատութենէն բոլորովին կը տարբերի Քրիստոնէութեանը։ Աւեստայի վարդապետութիւնով Չարը ինքնագոյ է, չար իւր գոյութիւնով եւ արարիչ չարերու։ Մինչ քրիստոնէութեան մէջ չարը ի սկզբան Աստուծոյ բարի արարածն էր եւ յետոյ չարացած է. բացարձակ չէ քրիստոնէական վարդապետութեան չարը ոչ ալ իւր ոյժերը հաւասար են Աստուծոյ ոյժերուն։ Յորը փորձող սատանան՝ Չարը՝ Աստուծոյ թոյլտուութեամբ գործեց։ Աւեստայի Չարը չկրնար բարի ըլլալ, իսկ քրիստոնէական ըմբռնումով կարելի է. "եթէ կամին եւ դեւք

(Ahura = Տէր. Maz-dâo = Մեծ-գիտունը. այսինքն՝ Ամենագէտ Տէր) գերագոյն աստուածն է, նոյն ինքն Որմիզդը, արարիչը երկնի եւ երկրի եւ ինչ որ բարի է, լաւ եւս Բարիին արարիչը։ Նա Ամենակարող է եւ Ամենագէտ։ Կ'ըսուի նաեւ Սպենտա-Մէնիյու (Spenta-Mainyn), Բարերար ոգի կամ Բարիի ոգին, կամ Մէնիյու Սպենիշտա (Mainiyn Spénishta), Յոյժ բարերար ոգի, ոգիներու ամենէն բարերարը։ — Անգրա Մէնիյու (Angra Mainyn), Ահարման կամ Ահրիման. Չարի ոգին կամ "Կործանիչ ոգի", նոյն ինքն Արհմն կամ Հարաման (Խարաման)։ Չարի աղբիւրն է Արհմն եւ միշտ "ընդդէմ" կը գործէ Որմզդին. ընդհանուր բացատրութիւնով՝ "ամենայն ինչ զոր Որմիզդն առնէր բարի էր եւ ուղիղ, եւ զոր ինչ Արհմն գործէր չար էր եւ թիւր" (Եզնիկ՝ Գիրք Բ. — Եղիշէ էջ 20—21)։ Որմիզդ բարձրագոյն երկինքը անսահման լոյսի մէջ կը բնակի, լոյս մը որ իւր թէ կայանն է եւ թէ մարմինը։ Հարամանը կը բնակի անսահման խաւարի մէջ։

Որմիզդ մինակ չէ. անոր օգնականներն են վեց առաքինութիւններու անձնաւորումները, որք Ամեշա-Սպանտա (Amesha-Spanta) կամ Ամշասպանդ կը կոչուին, եւ Եղիշէի (էջ 27) ասացուածով խումբ "Եօթներորդաց աստուածոց" (Haft Amshaspand)՝ Որմիզդը միասին հաշուած։ Ասոնք են 1. Վոհու Մանօ (Vohu Mano) = "Բարի մտածում" (Bonne Pensée), իմացական եւ բարոյական իմաստով. իմացականութիւնը կը ներկայացնէ Խրատու (Khratu), իսկ բարոյականը՝ Ախշտի (Akhshti. հաշտութիւն, խաղաղութիւն)։ Որմզդի խորհրդականն է Վոհու Մանօ եւ դրախտի իշխանը,

---

բարի լինին, եւ եթէ կամին եւ հրեշտակք չար լինին" (Եղիշէ էջ 24. — Եզնիկ)։ Այսինքն՝ պարզապէս [illegible] հետեւանք է չարութիւնը։

*իսկ երկրի վրայ արդարութեան պահապանը*[1]։ 2. Աշա Վահիշտա (Asha Vahista) *կամ* Արըտա Վահիշտա (Areta Vahishta, Արտաւաշտ ?) = *Կատարեալ Սրբութիւն կամ Առաքինութիւն„։ Կրակի վրայ կ'իշխէ եւ* Ատրով (Atar. *Կրակի Աստուած*) *կը կոչուի*։ 3. Խշաթրա Վէրեա (Khshathra Vairya) = *Թագաւորութիւն, որ իւր բաղձանքը կը կատարէ. Վեհագոյն Կարողութիւնը, լաւ կառավարութեան Ոգին։ Մետաղներու վրայ կը տիրէ* (*Խորհրդանկար* — emblème — *եւ գործի պատերազմական թագաւորութեան*)։ 4. Սպանտա-Արամէտէ (Spenta Aramaiti), *Սպանդարամետ = Կատարեալ մտածում, Սուրբ իմաստութիւն։ Միակ իգական Ամշասպանդն է. նէ երկրին նմանցուած է, որովհետեւ երկիրն ալ իգական է՝ կին մը. Երկիրը Որմիզդի թէ աղջիկն է եւ թէ կինը։* 5. *եւ* 6. Հաուրվատատ *(Haurvatât) եւ* Ամերետատ *(Amoratât.) Ամր. եօմր? = կեանք).* Աւողջաթին *եւ* Երէտար կեանք։ *Ասոնք ջուրերու եւ բոյսերու վրայ կ'իշխեն, ուսկից կը վտարեն հիւանդութիւնն ու մահը։*

*Արհմն ալ համաչափօրէն վեց* Դէւա (Daêva) *ստեղծեց վեց Ամշասպանդներու դէմ մաքառելու համար.* Աքեմ-Մանօ, Ինդրա, Սաուրու, Նաօնհէթեա, Տաուրու, Զէրէ (Akem-Manô, Indra, Sauru, Nâonhaithya, Tauru, Zairi)։ *Ասոնցմէ զատ դեւական բազմաթիւ ոգիներու խումբեր, որք ընդարձակ տեղ մը կը գրաւեն Պարսից կրօնական ըմբռնումին մէջ եւ* "Աստուած եւ Դէւք„ *ընդհանուր ձեւերով կ'ակնարկուին մեր մատենագիրներէն* (Եզնիկ. Փրպ. Եղիշէ)։

---

1 *Հայերէն ձեւն է հաւանաբար* Եզնիկի Մահմն, *որ իբր* դեւ *նշանակուած է։ Մեր մատենագիրները դեւանունով կը մկրտեն ուրիշ կրօններու ոգիները. Նոյն իսկ* Եղիշէ Դիւադաշտաթին *կ'անուանէ մազդեականութիւնը.* (Եղիշէ էջ 71)։

## § 2. ԲԱՐՈՅԱԿԱՆ

Եղիշէի մէջ՝ Դէնիմազդեզի բարոյականը կազմող տարրներէն Ամուսնութիւն, Քաջութիւն, Աշխատութիւն, Երկրագործութիւն, եւայլն, միայն ընտանեաց խառնութեանը կամ ամուսնութեանը շեշտուած է։ — Հայք կը պախարակուին, «զի հանապազ ի կանայս ոչ մերձենան» (Եղիշէ էջ 35. Համմտ. էջ 21). իսկ Դէնիմազդեզը կը հրամայէ զի «Կարճեսցին եւ արգելցին օրէնք ամուսնութեան... փոխանակ ընդ կնոջ միոյ՝ բազում կանայս արասցեն, զի աճեցեալ բազմասցի ազգ Հայոց։ Դստերք հարանց լինիցին, եւ քորք՝ եղբարց. մարք մի ելցեն յորդւոց¹, այլ եւ թոռանք ելցեն յանկողինս մամանց» (անդ էջ 40. — Համմտ. Խոր. Գ. ծե. — Պատմ. Պարսից էջ 89—90)։ Ամուրին անարգ էր Պարսից մէջ. ընդհակառակը շատ զաւակ ունենալ, բեղմնաւոր որդեծնութիւն մեծ արժանիք մը կը համարուէր. Շահը կը վարձատրէր բազմորդի հայրերը։ Լաւ ուտել խմել իբր պայման կը նկատուէր այդ կեանքին համար, իսկ ծոմը՝ նոյն իսկ թեթեւ կերակուրներ ուտելը՝ մեղք։ Ամուսնութեան բուն նպատակն է օճախը չմարել. կեանքի երջանկութիւնը կը կայանար զաւակներ եւ բազմաթիւ զաւակներ թողլու մէջ։ Պատճառն այս էր որ ծնողական ամուսնութիւնը կը թոյլատրուէր. հօր մ'ամուսնութիւնը իր աղջկան հետ եւ եղբօրը՝ իւր քրոջ հետ, բարձր արժանիքի գործ մ'էր։ Ամուսնութեան տարիքը 16 էր եւ բազմակնութիւնը անհրաժեշտ պայման մը, ոչ միայն օճախը տեւական ընելու այլ մանաւանդ բազմամարդու-

---

¹ Օձնեցին իր «Ընդդէմ Պաւղիկեանց» ճառին մէջ մայրախառնութեան կ'անուանէ այս միացումը — «Ընդ խաւար զխաւարային կատարելով ծանակութիւնս, ի պղծախառն մայրախառնութեանցն վայր փառնդեալ խոլն խոզերս» (Օձնեցի Մատեն. էջ 37–38)։

թիւնը ապահովելու համար (Հարլէ CLXXI. Annales B. էջ 61. — Պարսիկ Ամուսնութիւն Հմմտ. Փիլոն էջ 269—275)։

Տարմսթեթեր յատուկ գլուխ մը նուիրած է ցուցընելու համար թէ Հվաէթվադաթա (Hvaetva-data) կամ Խէթուկ-դաս (Khetuk-das), որ դեռ հիմայ Փարսիներու մէջ կը նշանակէ երկրորդ աստիճանի ամուսնութիւն, Դենիմազդէզի ընդունումէն ի վեր բարքերու վրայ հաստատուած է եւ ոչ կրօնի վրայ։ Նահապետական կեանքի դրութիւնը, շահը միջոց մ'եղած են արիւնը մաքուր եւ ամփոփ պահելու միեւնոյն գերդաստանի մէջ։ Խէթուք-դաս Սասանեանց ժամանակ քիչ օրինակներ ունի. ըստ Տարմսթեթերի միայն Կաւատը ամուսնացաւ իր աղջկան հետ։ Նէօլտէքէ՝ Յազկերտ Բ.ն ալ կը յիշէ, եւ Եղիշէի տեղեկութիւնները կը ցուցընեն որ աւելի համարիւն ամուսնութիւնք սովորական բան մ'էր Սասանեանց ժամանակ։ Մենք տեսանք Վազգէնը, "որ ըստ պարսկաց օրինին հանդերձեալ էր ի կնութիւն առնուլ" իւր աղջիկը (տես Բ. գիրք. էջ 382). իսկ մօտաւոր ամուսնութիւնք եւ ամուսնալուծութիւնք Դ-րդ դարուն կը տիրէր հայ բարքերու մէջ (Բուզնդ. Ե. լա. — Annales A. էջ 126—134)։

## § 3. ԾԷՍ, ՕՐԷՆՔ

Եղիշէի տեղեկութիւններն ընդհանուր են Դենիմազդէզի ծիսական եւ օրինական տրամադրութիւններու մասին։ Զոհագործութիւնը մազդէական պաշտամունքին էական տարրներէն մին է. կրկնակ ձեւի տակ կը գործադրուէր՝ ուրվանար եւ անուրվան զոհ։ Առաջին ձեւը կը յիշէ Եղիշէ "ցլուք սպիտակօք եւ գիսաւոր նոխազօք առատացոյց զզոհս կրակին" (էջ 11. Հմմտ. Ագաթ. էջ 30). — "Եւ ահա մատուցանեն երկրպագութիւն

արեգական, պատուեալ գնա զոհիւք եւ ամենայն օրինօք մոգութեան,, (Եղիշէ էջ 38)։ Ցուլը՝ անասնական բնութեան անձնաւորումը՝ Որմզդի ստեղծած առաջին կենդանի արարածն է. անոր ոգին անմահ է մազդէական ըմբռնումով եւ կը հսկէ կենդանիներու եւ մարդոց առողջութեան։ Ցլազոհը ամէնէն յարգին էր նախնական Իրանի մէջ. նոյն իսկ հարիւրեզնեան զոհեր առատ էին։ Զրադաշտ խափանեց արիւնաւոր զոհը, թէեւ Աւեստայի մէջ մնացած է մի կտորներու նուէրը, որ ամբողջ կիզումով չէր։ Եղիշէ հռետորական ձեւով մը կը խօսի արիւնաւոր զոհերու մասին։ Փարպեցի՝ "նուէրս ազգի ազգի բազում խնդութեամբ մատուցանէին աստուածոց իւրեանց,, (էջ 154) ունի ճիշդ այն տեղ, ուր Եղիշէ (էջ 38) արիւնաւոր կը նշանակէ։

Յաշտը անարիւն է արդէն եւ այս էր բուն սովորականը։ Անարիւն զոհի գլխաւոր նիւթն է 1. Հօմ (Homa = հոյզ), դեղնածաղիկ եւ վարակոտ (noueux) ցօղունով տունկ մը իրանական լեռներու վրայ։ Բուսական նուէրներու գլխաւորը կը համարուի Հօման, որուն սպիտակն ալ կայ՝ նշան անմահութեան։ 2. Ուրվարամ (Urvarâm, ——? = տունկ) նռնենիի փոքրիկ տունկ մը, որ հօմայի հետ լեսուած պղնձէ հաւանի (havân = սանդ) մէջ Պարահօմ (Parahoma) հեղուկը կու տայ. 3. անուշահոտ փայտեր եւ խունկեր կրակի նուիրուած. 4. Դարուն (Darûn) անխմոր կլորիկ հաց մը հին Փրանքնոցէն մեծ, որ կարագով եւ մսով միասին կը նուիրուի։ Կենդանական նուէրներ են 1. միս (gost կօշտ?). 2. կաթ (չիճուկ jiv կամ jivan). 3. միեազդա (Myazda), որ ծաղկի եւ պտղի նուէր կը նշանակէ այժմ սովորական լեզուի մէջ, ընդհանուր առումով յօդէօլի իմաստ ունի, այսինքն՝ կատարելապէս յագուած դարուն, միս եւ կաթ։ Այս միսն էր որ Յազկերտ իւր ճոխ սե-

ղանին վրայ դրաւ եւ պատուեց քրիստոնեայ զինուորականները, "զի թերեւս հաւանեցին ուտել զմա զմեռեալ, զոր ոչ երբէք էր օրէն ուտել քրիստոնէից։ Իբրեւ ոչ կալան յանձին ամենեքին, ոչ ինչ կարի ստիպեաց, այլ հրամայեաց՝ նոցա մատուցանել զսովորական կերակուրն" (Եղիշէ էջ 17. — Հմմտ. էջ 40 "պատրուճակք մի՛ մեռցին անյաղ. եւ էջ 49 "եւ բռնաբար կնքաւոր մարդկանն տալ ուտել միս յաղթոյ")։

Անարիւն զոհերէն հօմն, ամենէն պատուականն ու հաճելին, կարելի է Եղիշէի "Հոյ-տանց քանդամի մ՛ ղանգցին" բացատրութեան մէջ գտնել։ Իմ բանասէր վարդապետը, Տ. Եղիշէ Դուրեան, կ'ենթադրէ որ հօյը ոչ թէ խմոր նշանակէ այն տեղ, այլ հօյմ՝ հայացած մէկ ձեւն ըլլայ հօմային. հօյմ, որ յետոյ կրնայ հօյ եղած ըլլալ Մ եւ Ս մերօպեան տառերու շփոթումով[1]։ Իմ կողմէն հօյղ աղաւաղուած ձեւ մը պիտի նկատէի հօյը, քանի որ հօմ կը նշանակէ suc = հոյղ (Հարլէ էջ CLXVI) եւ այն ատեն ղանգել ուրիշ առում մ'ալ պիտի ունենար, այսինքն հօմ եւ ադրվորամի) հետ (խառնել, լեսուլ) պատրաստելու, մանաւանդ սանդահարելու (եղանակով) գործողութիւնը[2]. ասոր պիտի նպաստէր

---

1 Այս շփոթն ու աղաւաղումը թերեւս արդարանայ՝ ենթադրելով գաղափարողներու տգիտութիւնը. որք կրնային՝ իբր անտեղեակ մազդէական պաշտամունքի ներքին տրամադրութիւններուն՝ անիմաստ գտնել այս տեղ հօյմը կամ հօյղը եւ ուղղել հօյ ծանօթ բառով։ Բայց կը խոստովանինք որ ենթադրութիւնը չէ ստուգաբանութիւն։

2 Հօմայի սանդահարումը եղանակով կ'ըլլէին. այսինքն սանդահարողը իւրաքանչիւր հարուածին սանդխառնը բարձրացնելու եւ իջեցնելու ժամանակ պղնձէ սանդին կողերուն կը զարնէ եւ միօրինակութենէ տարբեր եղանակ մը կը ներդաշնակաւորէ։ Ասոր հետքն է անշուշտ որ դեռ գաւառներու մէջ սանդ գործածողներ այլեւայլ նիւթեր սանդահարելու ժամանակ սանդը կը հնչեցնեն եղանակով եւ

փանդամի անհրաժեշտ գործածութիւնը Հօմայի պատրաստութեան միջոցին։ Միւս կողմէն սակայն, նոյն բառին ծանօթ իմաստը պահել, այսինքն՝ բաղարջ զանգուած ալիւրի եւ ջուրի, եւ մեկնել ուղղակի դարունի (անխմոր, բաղարջ հաց) վրայ, որու պատրաստութեան ժամանակ պէտք էր գործածել փանդամ կամ փադան (Partidâna կամ *Pâdan* կամ *Penona*), երկտակ քող մը սպիտակ կտաւէ դէմքի ստորին մասը՝ քիթն ու բերանը՝ ծածկելու համար, որպէս զի շունչով չպղծուէին նուիրական առարկաները, ինչպէս՝ կրակը, կերակուրները եւայլն։ Որովհետեւ մազդէական ըմբռնումով մարդէն արտադրուած ամէն ինչ պիղծ է. շունչն ալ պիղծ կը համարուէր։

Մաքրութիւնը մարդու համար ծնունդէ յետոյ ամէնէն մեծ բարիքն է (Վանտիտատ)։ Օրինական անմաքրութիւնը բնախօսական պատճառներ ունի. ամէնէն պիղծ բանն է դիակը. մարդու բոլոր արտադրութիւնը պիղծ է. ասոնք տարափոխիկ հիւանդութիւններու պատճառ են. ասոր համար էր որ քրիստոնեայք կ'ամբաստանուէին. «զջուրս պղծէք եւ զմեռեալս ի հող թաղելով զերկիր ապականէք եւ քրտիկար[1] չառնելով դժ

---

անդիմակ իրենց բրածին — Ջանգիլ (ուստի Ջանգակ?) Թերեւս նմանաձայնական հին նշանակութիւն մ'ալ ունեցած ըլլայ, երբ դինկ դինկ ձայն հանել, հնչել։

[1] Քրտիկար այս տեղ անդարձեալ կը նշանակէ մազդեական կրօնի օրինական մաքրութիւններէն մին։ Եղիշէ ուրիշ տեղ մը տարբեր իմաստով կը գործածէ միեւնոյն բառը. «Եւ սպանանել (Վասակ) զհօրեղբայր իւր զՎաղինակ եւ յինքն տարաւ զտէրութիւնն (Սիւնեաց) եւ քրտիկար յարդարանին» (էջ 106)։ Լանկլուա թարգմանած է այս կտորը. ministre fidèle de la cour (Coll. II. p. 228)։ Փարպեցւոյ բացատրութիւնները հանգուցանակ պարագաներու մէջ կ'արդարացնէ այդ իմաստը. զոր օր. «պատուէին զնա (զՎասակ) որդեօ վհայր (զայր)? հաստաբերմ

*տաք Հարամանաց„* (Եղիշէ էջ 35)։ *Գենիմազդեցի տրամադրութիւնով մեռելները պիտի չթաղուէին*

---

*Խօ քուրեֆուրծ„* (Փրպ. էջ 229). — *«Եւ արդ ինքն (Վասակ) զարդարեալ աւագին որդեօ քուրեֆուրծ նորէ„* (անդ էջ 249)։ *Նոյն քուրեֆուրծի հետ, իմաստով կը նոյնանայ նաեւ «վոռ-փոխոորը„* (Հմմտ. անդ էջ 251). — *«որ թէպէտ կայր ինչ վոռփոխ առնն (Վասակայ) առ դուրսիկս, եւ ջանայր ցուցանել ի ժամուն, եւ այն ոչինչ էր օգուտ„* (անդ էջ 253)։ — *Այս իմաստով մեկնեց բանասէր մ'ալ* (*Բզմվէպ.* 1895 *Յունուար էջ* 5-6 *քրոփկորը նոյնացնելով* Kerba (= *գործ*) *աւեստական բացատրութեան հետ։ Ցարմչթեթեր Յաշտից գրքին* (Հ. 72) Kerfemuzda *բնագիրը կը թարգմանէ* „Bonne oeuvre, récompense“, *քուրէ ֆուրծ, վարձատրութիւն* (Annales A. էջ 441). *արդ, ըստ այսմ, ինձ կը թուի, պէտք է իմանալ թէ Վասակ Սիւնեաց Տէրութիւնը առած ըլլայ իբր վարձատրութիւն։ Վարձատրութիւնը իրաւցնէ քուրէ ֆուրծի մ'արդիւնքն է, եւ Եղիշէն է որ սուդ լուրջ երգիծանքը կ'ընէ իր կողմէն իբր թէ լուռ, բարի գործ մ'եղած ըլլար հօրեղբայրը սպաննել տալը. եւ մենք գիտենք որ Վասակ «յուրփոնիօ„ էր երբ Սիւնեաց Տէր եղաւ* (տես Բ. գիրք. գլ. Գ)։

*Իսկ «քրոփկոր շառնելով ոյժ տաք Հարամանոյ„ ճիշդ նոյն իմաստը չունի. քրոփ այս տեղ պիտի նշանակէ այնպիսի գործ մը, որ արժանի ըլլայ վարձքի եւ ակարացնէ Հարամանի ոյժը. արդ՝* Kerba *նոյն Յաշտից գրքին մէջ սապէս կը բացատրուի.* „Kerba mazhd, *քուրէ՝ վարձատրութեան արժանի գործեր կ'ընեմ մեղքերս քաւել տալու եւ հոգիս փրկութեան օգնելու համար։ Եւ երանի թէ ինձի գային կատարելապէս երկրի եօթը քարշվարներու* (Karshvare) *բոլոր արդարներուն բոլոր բարի գործերը. որչափ հեռուն երկիրը տարածուի, որչափ գետեր երկննան, որչափ արեւը կը բարձրանայ„* (Annales B, էջ 345)։ — *Իրանական աշխարհածնութեան մէջ քարշվար երկրագունդի եօթը մասերու բաժանումն է.* — *Քրոփկար այս տեղ պիտի նշանակէ թերեւս այն բարի գործերէն մին, որ երկրի մաքրութեան պիտի նպաստէ. զոր օր. երկրագործութիւն։ Այսպէս կամ այնպէս քուրէ ֆուրծ՝ քըրպա՝ միշտ ընդհանուր իմաստ մը կ'ունենայ, եւ քրոփկոր գէթ այս տեղ բուն իմաստը չունի,*

տի թաղուէին. պարսիկները դիակը գիշակեր թռչուններու եւ գազաններու յափշտակել տալէ յետոյ Դախմա (Dakhma) ըսուած յատուկ շինուածներու մէջ (տես յատակագծերն ու շինուածքը Annales A), ոսկերոտին միայն կը թաղէին գորակներով (Պատմ. Պարսից էջ 25) անկոխ անապատ վայրեր։ Մեռելը թաղել՝ կը նշանակէ երկիրը թունաւորել. երկրի ոգին՝ Սպանդարամետ՝ կը սարսի թաղումէն։ Մեռել թաղուած հող մը մաքրուելու համար 50 տարի պէտք է. ամէն միջոց ձեռք կ'առնուի երկիրը պղծութենէ ազատելու համար։ Դիակիզութիւնը ոճիր մ'է. ոչ միայն կրակը, որ սուրբ է եւ սրբիչ, կը պղծուի, այլ մանաւանդ Որմիզդ չի հաճիր։ — Ջուրի մաքրութիւնը պահպանելու ծայրայեղ խնամք տանիլ պէտք է. ջուրի մէջ թքնել, միզել, դիակ նետել, լուացուիլ անոր մէջ՝ պղծելու պատճառներ են. ըստ Հերոդոտոսի ուրիշներուն իսկ թոյլ չէին տար ընել ջուրի, ինչ որ կ'արգիլէր իրենց օրէնքը։ Ձեռքի լուացումը գոմէզով պիտի ըլլար՝ ջուրէն յետոյ առաջին մաքրիչը. — “Ձեռք առանց գոմիզոյ մի լուասցին„ (Եղիշէ էջ 40)։ — Գոմէզ, լաւ եւս Կոմէզ (gaomeza կամ gômêz, կովի մէզ) “Ժողովրդական բժշկութեան կը վերաբերի. իբր գերազանց ապանեխական մ'ընդունուած էր եւ է' դեռ ոչ միայն Պարսկաստանի, այլ նոյն իսկ Հնդկաստանի մէջ, ուր կը գործածուի իբր դարման բորոտութեան, եւ ինչպէս կը գրու-

---

հետեւաբար խնդրական է. քանի որ բոլորովին տարբեր մեկնութիւնով դարեր յառաջ նշանակուած է իբր լուացման փորձի ստորին մասերուն։ Բոլորովին անիմաստ չէ այդ մեկնութիւնը, գէթ տարբեր եւ ճիշդ, շատ ճիշդ, իմաստ մը հանելու կռուան չունինք։ Այս տարբեր իմաստներէն կարելի է եզրակացնել, թէ ֆրֆիլոյ ընդհանուր առում մ'ունի իբր բարի գործ, այնպէս որ խարամանը տկարացնող ամեն գործ բարի է Որմզդին համար։

ցուի առաջին անգամ ճէմշետի համար գործածուած է այդ իբր դարման միեւնոյն ախտին (Annales B. XII)։ — Ջուրը (ap, ապ) Որմզդի արարածն է, սուրբ եւ մաքուր. երկիրը կը բեղնաւորէ. պէտք է գոհաբերութիւններ ընել անոր։ Կրակը մարել ջուրով, հողով՝ աններելի է (Հմմտ. Պատմ. Պարսից էջ 21—24). Ջուրն ու հուրը այնքան նուիրական էին որ Շապուհ անոնց վրայ կ'երդնուր (Բուզ. էջ 130)։

Կրակը ամէնէն գերազանց մաքրիչն է. անոր պաշտօնեաներն ու երկրպագուները պարտին փանդամ գործածել. շունչով չպղծելու համար, կրակը պէտք է սնուցանել հոտաւէտ կամ ազնիւ համարուած եւ չոր փայտերով, ուր կը միայ ծխով եւ տաքով վառել։ Հայաստանի շատ տեղերը զուրկ են փայտի անտառներէ. ստիպուած են քակոր կամ թրիք վառել, ինչպէս այժմ. ծանր մեղք մ'էր այս Դենիմազդեզի տրամադրութեան հանդէպ. ասոր համար էր որ մոգերը կը հրամայէին "ծիւղք եւ քակորք ի կրակ մի՛ եկեսցեն„ (Եղիշէ էջ 40)։ Կրակը մշտավառ պէտք է ըլլայ սեղանի վրայ. ասի տեւական կռիւն է դեւերու դէմ։ Կրակը (Atar, Atur, âdar, atash, Ատր, Աթաշ՝ Կրակի Ոգին) Որմիզդի որդին է, միակ իր բնութեան մէջ, բազմապիսի ձեւերով կը ներկայանայ։ Եղիշէ (էջ 54) ասոնցմէ կը յիշէ Վռամական Կրակը՝ (Bahrâm, հայերէն ձեւը Վռամ — vram — Յաղթութեան ոգին, Հմմտ. Annales B. էջ 559)՝ Յաղթութեան կրակը, իր ամէնէն մաքուր եւ ամէնէն զօրաւոր վիճակին մէջ Մաքրութեան հետ միացած կրակն է։ Տան եւ վեց տեսակ տարբեր կրակներու կեդրոնն էր այդ։ Ամէն գաւառի մէջ պէտք էր գտնուէր Վռամական կրակը իբր Դեհպետ (Dahyupat)։

Խորենացի եւ Ասողիկ որմզդական հուր անունով կը ճանչնան միեւնոյն կրակը (Խոր. Բ. հէ.

— Ասողիկ 84—85) — Դենշապուհ որ դշնմոլութիւնն շատացոյց եւ որմզդական հուրն վառեաց ի Ռշտունիս. եւ սահպէր զքրիստոնեայս կրակի երկիր պագանել. յաղագս որոյ բազումք մեռան„ — Որմզդական հուրը 16երէն մին է. բայց յաղթութեան կրակն է Վռամականը. բնականաբար այս կրակը պիտի ըլլար Ռշտունիքի մէջ վառուածը։ Եթէ շփոթ մը չէ այս մեր հեղինակներու կողմէն, կամ նոյն իսկ Պարսիկներէն Զ^րդ դարուն, պէտք է ենթադրել որ իրենց հմտութիւնը ցուցընելու համար մին միւսին տեղ գործածած ըլլան։ Պարսիկները ուր որ յաղթութիւն կը տանէին հոն անմիջապէս կը վառէին Վռամական կրակը յատուկ Ատրուշանի մէջ իբր Յաղթութեան նշանը։

Կրակի պաշտամունքին վայրերը մեր մատենագիրները Ատրուշան[1], Կրակարան, Վառարան, Մոխրանոց կոչումներով կը ծանօթացնեն։ Մեծ զոհերու կամ զոհաբերութիւններու վայրն էր կրակի մեհեանները կամ Դարի Մհեր (Dari Mihr =

---

[1] Ատրուշան ոչ թէ հաստատուն շէնք մը, ինչպէս մեհեան, այլ կը նշանակէ կրակարան (յատուկ մանղալ մը) ուղղակի կը համապատասխանէ Աթաշգահ բառին։ Օրբէլեանի տեղեկութիւնը. „Եւ հրամայեաց թագաւորն հրովարտակս գրել առ իշխանսն Հայոց, եւ ընդ նմին ատրուշանս եւ փուշտիպանս եւ տաճարս առաքեալ... Եւ մեծաւ պարգեւօք արձակեցան յաշխարհս իւրեանց ածեալ ընդ ինքեանս ատրուշանս եւ վարդապետս օրինաց„ (Օրբէլ. գլ. ԺԷ), շատ ճիշդ է. Ատրուշաններ (= Աթաշտան) կրնային փոխադրուիլ կամ բերուիլ։ Այս կրակարանները միշտ պատրաստ կային մոգերու (շրջուն) քով, միասին կը տանէին ո՛ւր որ կ'երթային։ — Դիտելի է նաեւ Օրբէլեանի Փուշտիպանը, որ Թիկնապահ կը նշանակէ (Հմմտ. Բուզ. Դ. ծգ. — Փրպ. էջ 390)․ բայց Օրբէլեան իբր կրօնական պաշտօնեայ կը ներկայացնէ, թէեւ Եւսեբայի մէջ չկայ. թերեւս Եղիշէի (էջ 49) յիշած Փուշտիպանը արդարացնէ Օրբէլեանը, մանաւանդ երբ ենթադրենք զանոնք Թիկնապահ կամ սպասաւոր մոգպետներու։

Միհիրի դարա կամ Ադարան. — դարա Արեւելքի մէջ կը նշանակէ Ապարանք. Սարաւոյթ, Պալատ)։ Եղիշէի համար Դուրէ Նի-րէ է այս նշանաւոր տեղը[1]։ Երկու տեսակ կրակի մեհեաններ կային. Ատուշ բահրամ կամ Վաղամական կրակ եւ փոքրիկ Դեհկան կամ Ադարան (Adaran = Կրակարան)։

Գենիմազդեզի օրինական տրամադրութիւն. Ներուն կը պատկանի կենդանիներու խնամքը շունը եւ աքլոր, որ մեծ դեր ունին Աւեստայի կրօնի մէջ, չեն յիշուած Եղիշէի մէջ։ Յիշուածներն ալ սակայն կարեւորներէն են. «Ընձիւղք եւ աղուէսք եւ նապաստակք մի՛ մեռցին» (Եղիշէ էջ 40)։ Ընձուղը (udra upâpa, *sag-i abi*, = շուն ջրի), որ ջուրի մէջ եղած դեւերուն դէմ կը կռուի, մեռցնողը ծանր տուգանքի կ՚ենթարկուի. ի մէջ այլոց՝ նա իւր մեղքը քաւելու կամ իւր հոգին փրկանաւորելու համար պարտի մեռցնել 10.000 օձ (— կրօնական գերագոյն գործ մ՚է օձ մեռցնել մանաւանդ երբ փոքր են. ինչպէս նաեւ Արհմնի արարածները), 10.000 քարբ (kahrpu), 10.000 կրեայ, 10.000 ցամաքային գորտ, 10.000 ջրային գորտ, 10.000 մրջիւն՝ ցորենի գողեր, 10.000 մանր թունաւոր մրջիւն, 10.000 մողէզ, որ տիղմի մէջ կ՚ապրին, 10.000 խառնափնդոր ճճի» (Վանդիտատ Ֆարկարդ 14)։ Ըստ Եղիշէի "Օձք եւ մողէսք, գորտք եւ մրջմունք, եւ որ այլ եւս խառնա-

---

[1] Եղիշէի Դուրէնի-րէն, ինչպէս ըսինք, Միհրի դուռն է, ուր պիտի յաղէր Մօղպետան Մօղպետ Ռոտը։ Դարիթիւրով ոմանք Տիր տաճարուն Դուռը կամ Ապարանքը հասկցան (Սօս եւ Սօնդէոդէ էջ 97). Աւեստան չունի այդպիսի դուռ մը։ — Հայերէն Նի-ր կամ Նիր փոխագրութիւնը երկու կերպով կարելի է մեկնել. Միհրի բուն ձեւն է Mithra, Mihr. այս ձեւը Նի-ր կամ Նիր ըլլալու համար կամ Միհրային մը ինկած եւ առաջնութեամբ եղած Նիրա (Եղիշէ Նի-րէ), կամ Հ եւ հ ընկած։

փընդար ՟ձմի էն, մ՛ կայցէն. այլ փաղ՝ բասաֆ էս հա-մարաֆ է մէջ բէրցէն ըստ արթաանէ նաքայն„ (էջ 40)։

— Արծրունեաց պատմագիրը ուրիշ զրոյցով մը կը մեկնէ թէ ինչու օրինական կերպով պէտք էր փճանային այդ կենդանիները. "դէպ եղեւ լինել պատերազմ Որմզդի ընդ Հարամանւոյն. եւ ի սաստիկ սովոյն ելեալ Որմզդի յածէր ընդ վայրս ի խնդիր կերակրոց. եւ տեսեալ զուարակ մի՝ գողացաւ եւ տարեալ մեկուսի յագեաց զնա եւ կարկառեալ քարամբք՝ Մայր երեկոյինն, զի տարցի անյայտաբար զգողանս առ իւր, եւ լցէ զսովառնութիւն իւր։ Եւ եկեալ երեկոյին խնդալից՝ ակն ունէր առնուլ կերակրոյն, եգիտ ապականեալ եւ գիշակեր. զի մաղէաթ էս կաֆիդայթ, թարաբաբօշթ էս-բնդաաանթ է վէրայ էկէալ կէրան զորա նարա։ Արդ յայսմ հետէ ըստ նեպուկի գեաղջն կապճահամար ժամակք յամենայն ի դուռն արքունի ի սատակումն եկեացեն. զի սոքա մնասակարք առ աստուծոյն եղեն„ (Թովմ. էջ 27)։

## § 4. ՔՐՄԱԿԱՆ ԿԱՐԳ

Գենիմազդեցի կրօնական կարգ (caste)ը նախահայրէ մը կը սերի. ամէնն ալ միեւնոյն ընտանիքի անդամ են, ամէնն ալ համարիւն։ Այդ առաջին կրօնական պաշտօնեայն է Աթրավան կամ Մագու (Athravan, Magu), այսօր Մոպետ (Մոպետ, Մագուպատ Magûpat). հայերէն փոխագրութիւնով Մոգպետ։ — Մոգպետ մը կրնայ ամուսնանալ աշխարհականի (beh-din) աղջկան հետ. փոխադարձը ներելի չէ, եւ մոգպետին հետ ամուսնացողը օշի, (اوشی), կը կոչուի քրմական ցեղի կիներուն տիտղոսով։

Մոգպետի տղան մոգպետ մը չէ, ոչ ալ ipso facto իրաւունք ունի մոգութիւն ընելու։ Նախ պարզ աշխարհական մ’է (beh-din) նա կամ

օրէնք մը, այսինքն՝ զրադաշտական մը կամ մազդեզն մը. յետոյ Հերպետ (herbed) եւ ապա Մոպետ: — Մոգպետ կոչումը նոր է. Զրադաշտի ժամանակ նուիրապետութեան գլուխն էր, 1. Մոպատան Մոպատ կամ Մովղպետան Մովղպետ (Maubâdan Maubed). այդ ձեւը պահած են Եղիշէ եւ Կաղանկայտուացին: Մովպետան Մովպետ նոյն է կրօնական նուիրապետութեան մէջ, ինչ որ է Մեծ Թագաւորը կամ Շահնշահը քաղաքականին մէջ, որմէ յետոյ կու գան 2. Մագու-անդարզպատ (Magû-andarzpat)՝ մեծ գաւառներու կամ Սատրապութեան մէջ, 3. Ռատ կամ Ռատու (Rat, Ratu)՝ գաւառներու մէջ, 4. Մոգպետ՝ քաղաքներու մէջ. 5. քաղաքային դատաւորներ կամ դատոբար (dâtobar. داور):

Ատոնցմէ Մովղպետան Մովղպետ Ռատը, այսինքն՝ ինչպէս կ'երեւի անձ մ'երկու պաշտօնով կամ տիտղոսով, է այն, որուն համար կը գրէ Եղիշէ, "Վաղագոյն առաւօտուցն ի Դուրէնի-րէ եկայք, զի վաղիւ անդ Մովղպետան Մովղպետ Ռատ յազէ, եւ նոյն հաճեալ հաւանեցուսցէ զմիտս ձեր„ (էջ 141): — Ռատ կը նշանակէ Տէր, Գլխաւոր, եւ Գենիմազդեզի մէջ էակներու ամէն դասը, Ռատ մ'ունի: Որմիզդ ինքն Ռատն է երկնաւոր էակներու, իսկ Զրադաշտ՝ երկրաւորներուն, եւայլն: Դիւրին է ըմբռնել թէ ուրեմն Ռատը միացած է Մովղպետան Մովղպետին՝ նշանակելու համար անոր գլխաւորութիւնը իւր դասին վրայ:

Փարպեցու, Եղիշէի, Օրբէլեանի Վարդապետները, Ռատերը, կը համապատասխանեն այսօրուան Դաստուրին (Dastur), այսինքն՝ նա որ կանոն կու տայ, ուղղիչ, կառավարիչ է խիղճերու. մազդեզը իւր կասկածները փարատելու համար (կրօնական խնդիրներու մէջ) անոր կը դիմէր: — Վարդապետները Մոգեր չեն. Եղիշէ կը զատէ որոշ կերպով. "բազում այրուձի գումարէր ընդ նոսա,

*եւ ի մոգացն ոչ սակաւս, աւելի քան զեօթն հարիւր վարդապետս յղէր ընդ նոսա, եւ զմեծ ոմն իշխան մոգպետ կացուցանէր ի վերայ նոցա„* (*էջ* 39)։ — *Մոգերուն մէկ մասը շրջուն էր գրեթէ. եւ Դենիմազդէզն ուր որ մուտ գտնէր, անոնք պատրաստ էին այն տեղ. Ճամբորդ Աթրավաններ կային միշտ* (Annales A. *էջ* 94)։ *Քաղաքներն ու գիւղեր վիճակով կը բաժնուէր անոնց մէջ. Հայաստան ղրկուող խումբը այս շրջուններէն էին. "եւ մինչ չեւ հասեալ էին յերկիրն Հայոց, փայտ ընկենուին եւ վիճակս արկանէին, թէ ո՛ր լեզուօրում պաշտօն հասցէ յաշակերտութիւն„* (*նոյն անդ. Համմ.* Annales A. LVIII)։

## § 5. ՄՈԳՊԵՏ *կամ* ԴԵՆՊԵՏ

*Եղիշէի համար նոյն է այդ երկու ձեւերն ալ։ Դեն* (Daêna, din = "*Բարի Կրօնը, որ կը պաշտէ զՄազդա„. ընդդէմը Դէշ կամ Անար Կրօնքն* = aka danea *կամ* ag-dinih)։ *Դէն-դէւ է ուրեմն դէւ կրօնք*։ *Ըստ Եղիշէի պատմութեան գիշերանց գաղտնի մկրտուեցաւ այսպիսի պետ մը, որ Ապար աշխարհի "իշխան Դենպետ„ն էր*։ — *Մոգպետ մը կամ Դենպետ կատարելապէս գիտուն կը համարուէր, երբ տիրանար դենիմազդէզի կրօնական գրականութեան բոլոր ճիւղերուն եւ լեզուին* (*Եղիշէ էջ* 112). *այն ատեն նա կ'անուանուէր Համակ-դէն, որ կը նշանակէ "կրօնական կատարեալ պաշտօն„ կամ "Ամբողջութիւնը այն ամէն արարողութիւններուն, զոր ամէն հաւատացեալ պարտաւոր էր կատարել տալ իւր անունով այդ բանին սահմանուած քուրմերու ձեռամբ„* (Annales C. p. XCIV)։ *Տարմէթեթեր կը կարծէ, եւ իրաւամբ, որ Եղիշէ շփոթած ըլլայ քրմական նուիրապետութեան աստիճաններն ու սրբազան գրականութեան ճիւղերը*։ *Եւ ինքն սա-*

պէս կը բացատրէ, "Թերեւս բառը գործածուած ըլլայ նաեւ համակ-դէնը (hama-daên) կատարելու կարող քուրմը»։ Եղիշէ այլուր կը բացատրէ համակդենի բուն նշանակութիւնը, "եթէ զո՛րպիսի այր տոհմիկ, զոր Թագաւորն ինքնին յականէ յանուանէ ճանաչէր վասն մեծի ֆէրոռ-բնեան օրէնացդէրոյ, ԵՒ ԿԱՏԱՐԵԱԼ ԷՐ ՅԱՄԵՆԱՅՆ ԴԵՆԻՍ (համակ-դէն) եւ ամենայն մեծամեծաց սիրելի, եւ գրէ թէ բոլոր աշխարհս կախեալ էր զնմանէ» (էջ 126). — դարձեալ՝ "այր մի համակդէն, երեւելի ընդ ամենայն վերին աշխարհս» (էջ 123)։ Համակդեն կը նշանակէ ուրեմն այն անձը դենիմազդէզի նուիրապետութեան մէջ, որ իւր դէ՛ին ամբողջովին (համակ) ծանօթ է։ Թովմա Արծրունի կը հաստատէ զայդ. "յայնցանէ որ Շախրիքն կոչին, որոց դէտ էղէ ինչ հանդիդէլ... որք անուանէին զինքեանս համակդէնս, այսինքն ամենագէտ ի հատոր կրօնին» (Թովմ. էջ 28)։ Ինչպէս կը տեսնուի համակդէն գիտական տիտղոս մ'է եւ կրնայ համեմատուիլ, արդի docteur տիտղոսին հետ. սա տարբերութեամբ, որ համակդէնը կը տրուի Դենիմազդէզի կրօնական գիտութեան ճիւղերու ամբողջին տիրացած անձին, մինչ docteur առանձին առանձին ճիւղերու կը տրուի։

Եղիշէի թուածներն Ամդարփոշ, Բողդոյէր Պահլաւիկ եւ Պարսկադէն, որք իբր կէշտ ներկայացուած են, շատ ծանօթ չեն այժմ։ Ցարդ ոմանք ընկերական դասակարգութիւն մ'ենթադրեցին (Պատմ. Պարսից էջ 5—6. Ծնթ.). ոմանք՝ աղանդ (Տիեզ. Պատմ. — Քննկ. Պատմ. Բ. էջ 98)։ Տարմէսթեթեր, ինչպէս ըսինք, չփոթ կը գտնէ Եղիշէի թուումները. "չեմ կրնար գտնել, կ'ըսէ, այն բառերը, որոնց փոխագրութիւնն ու խանգարումն են Ամդարփոշն ու Բողդոյէրը — Պահլաւիկն է (տես վերը էջ 406—408) պահլաւերէն գրականութիւնը, այսինքն այն, որ պահլաւերէնով

զէնդ պիտի ըսուէր։ Վիշպերէտի մէկ հատուածին մէջ Զէնդը նիրանգներու (ծէս, արարողութիւն) հետ միասին յիշուած է. բնագրի բացատրութիւնները մեկնուած են զէնդ եւ նիրանգ բառերով։ Չեմ գիտեր թէ ինչպէս Հուզուարշի իմաստէն, որ peresvi բառին յայտնի նշանակութիւնն է, կարելի կ'ըլլայ անցնիլ ուղղական ձեւի իմաստին։ Իսկ Պահլաւիկը եւ Պարսկերէնը պիտի ըլլային աւանդական գրականութիւնը (Զէնդ) եւ արարողականը (Նիրանգ). — Իսկ կէշդ բառը, զոր Եղիշէ աղանդի պէս կը ներկայացնէ, զենտերէն thaêsha (ուստի քէշ) է, եւ կը նշանակէ օրէնք, (Annales C. XCIV—XCV)։

Եղիշէի նշանաւոր հատուածը կը մնայ, ուրեմն, մասամբ խնդրական, որչափ ալ անոր մէկ կէտը իբր Հեղինակութիւն ծառայէ Տարմշթեթերին բացատրելու համար Աւեստայի կցուած Զէնդը։ Անշուշտ մասնագէտներու հետազօտութիւնները պիտի պարզեն շփոթները եւ պիտի լուսաբանեն մնացած մութ կէտերն ալ։

## ԳԼՈՒԽ Գ.

### § 1. ՕՏԱՐ ԳԻԾԵՐ ԴԵՆԻՄԱԶԴԷԶԻ ՄԷՋ

Զրադաշտի կրօնը չմնաց իր սկզբնական պայծառութեան մէջ. շատ բան փոխուեցաւ դարերու ընթացքին մէջ, մանաւանդ երբ Աղեքսանդր կրակի մատնեց սրբազան բնագիրներու մեծ մասը։ Մոգերը, որ բուն մարական ցեղէ էին, իրենց յատուկ ըմբռնումները ներմուծեցին Դենիմազդէզի մէջ Աւեստայի վերակազմութեան ժամանակ. Նոր նոր վարդապետութիւններու դուռն էր այդ։ Աղանդներ, իրաւցընէ, անմիջապէս գլուխ վերցուցին վտանգաւոր սպառնալիքով. Մանէս, Քօբատ կամ Կաւատ, Մազդաք՝ բաւական մտատանջեցին Դենիմազդէզը։ Զրուանական դրութիւնը, Միհրի մայ-

բածնութիւնը օտար են բուն աւեստական վարդապետութեան. այնպէս որ, ինչպէս կը ցուցընեն Եզնիկի եւ Եղիշէի տեղեկութիւնները, Սասանեանց ժամանակ Զրադաշտականութիւնը գրեթէ խանգարուած էր (Հարլէզ, էջ XXXVI)։ — Եզնիկի սա դիտողութիւնը — "Եւ քանզի ընդ գրովք չեն կրօնքն, երբեմն զայն ասեն, եւ այնու խաբեն, եւ երբեմն զայս, եւ սովին խաբեն զախմարս„ —, շատ լաւ կը բացատրէ, թէ ինչ վիճակի հասած էր Սասանեանց ժամանակ այն մաքուր, եւ շատ մաքուր բարոյականի կրօնը՝[1] Զրադաշտի ուսուցածը։ Մոգերու տգիտութեան մէջ թաղուած մնացած է Աւեստան, երբեմն այսպէս, երբեմն այնպէս բսուելու չափ տգիտացած։ Տիրոն կ'ուզէր այս կրօնը եւ այսպիսի պաշտօնեաներու ուսուցումով ընդգրկել տալ Հայոց, երբ Հայք ասդին նոր գրականութեան եւ Հելլէն իմաստասիրութեան ոյժերով չափած կշռած էին Պարսից քէշը. — Եզնիկ շատ լաւ ուսումնասիրած է Սասանեանց Դենիմազդէզը եւ իւր հերքումը զօրաւոր է։ Եզնիկ, ուսկից եւ Եղիշէ, ծանրացած են Զրուանականութեան վրայ, որ եկամուտ է Աւեստային համար. այդ վարդապետութեան ամէնէն տեղդաս ժամանակն է Յազկերտ Բ.ի իշխանութեան տարիները։ — "Զրուան, որ թարգմանի Բախտ կամ Փառք„ (Եզնիկ) ծնունդ տուած է Որմզդին եւ Խարամանին։ Զրուան, որ Աւեստային մէջ կը յիշուի միայն իբր զրուան ակարանա (= ժամանակ անսահման) եւ զրուան հւադհատա (gatva hvadhada = գերա-

---

1 „Et cette morale est certainement le plus pure, le plus saine qui ait été produite en dehors du judaisme". (Հարլէզ էջ CL). — Հմմտ. „Entre toutes les institutions religieuses du monde antique, le judaïsme seule éleva contre la corruption des temps un cri de désespoir. Gloire éternelle et unique, qui doit faire oublier bien des folies et des violences!" (Marc-Aurèle p. 561).

գոյն միջոց), եւ ըստ Տարմշթեթերի արդէն սկսած էր Աքիմէնեանց ժամանակ թանձրացումով վարդապետութիւն մ'ըլլալ, բոլորովին թանձրացած կերպաւորուած էր Եʳᵈ դարուն (Annales A. էջ 7. 221. — G. էջ LXIX—LXX)։ — Միհր կամ Միթրա զարմանալի եւ գերազանց յատկութիւններով օժտուած է Արեաց ըմբռնումին մէջ. Նա գիտակցութեան եւ ճշմարտութեան երկնային մարմնացումն է եւ կը նշանակէ “բարեկամ,“ “բարեկամութիւն,„ կը հսկէ մարդոց հաւատարմութեան վրայ. ասկէ զատ Միհր կ'անձնաւորէ լոյսը եւ լոյս մ'է ինքնին՝ անկախ արեւէն ու աստղերէն։ Այս լուսաւոր յատկութիւնը պատճառ եղած է որ Միհր արեւի հետ նոյնացուի. Աքիմենեանց ժամանակ բարձուած էր այդ խտիրը եւ Սասանեանք Միհրով բուն արեւը կը հասկընային. երկրի պտղաբերութիւնը, մշակութեան յաջողութիւնը անոր կը վերագրուէր իբր արեւի. “Եւ ձեզ ոչ է իշխանութիւն այդպէս ընդդիմանալ կամաց նոցա եւ ոչ առնուլ յանձն զերկրպագութիւն որդւոյն որ ճառագայթիւք իւրովք լուսաւորէ զամենայն տիեզերս, եւ ջերմութեամբ իւրով հասուցանէ զկերակուր մարդկան եւ անասնոց, Եւ վասն հասարակաբաշխ առատութեան եւ անաչառ մատակարարութեանն անուանեցաւ Միհր Աստուած, զի չիք ի նմա նենգութիւն եւ անգիտութիւն„ (Եղիշէ, էջ 128 — Հմմտ. էջ 34, Փրպ. էջ 110)։ Միհրի բուն յատկութիւնն է անկախ լոյսի անձնաւորումը, հաւատարմութիւն եւ միտք։ Արեւի հետ նոյնացումը բնական էր որ օտարացնէր զինքը իր հարազատ ըմբռնումէն եւ թերեւս աստ արդիւնքն ըլլայ անոր նոյրոժին կոչումն ալ, որ ըստ Ժ. Ռէվիլի շփոթում մ'է ուրիշ աստուածութեան մը հետ[1]։

---

[1] Տե՛ս քիչ մը վարը։ — Ի բաց կը թողունք Պարսից աշխարհածնական, վախճանաբանական նորութիւնները.

*Ինչ ալ ըլլայ այս օտարութիւններու եւ նորութիւններու պատճառը, սա յայտնի է որ Սասանեանց Դենիմազդէզը բաւական խոշորցած էր վերանցական ըմբռնումներու ռամկակաբար թանձրացումներով եւ շփոթումներով։ Այդ կրօնը անտանելի էր Հայ-քրիստոնեայ մտքին, եւ Սասանեանց բռնադատումին հանդէպ ասոնք թէ պիտի պայքարէին հերքումով եւ թէ պիտի մարտնչէին զէնքով։ Եւ Վարդանանք հակաւեստական վարդապետութեան տենդոտ ձգտումներուն դէմ զինուած էին թէ գրչով եւ թէ սուրով։ Գրչով (Եզնիկ, Եղիշէ) ներքին ամրապնդում մը, սուրով արտաքին յարձակումներու դէմ ամրապընդուելով։*

## § 2· ԴԵՆԻՄԱԶԴԷԶ ԵՒ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆ

*Ինչ որ խօսեցանք իբր ամփոփում այս ընդարձակ կրօնի, Ասիական ընդարձակ դաշտեր, լեռնադաշտեր, ծովեզրներ գրաւեց իր կազմութեան եւ բարգաւաճումի ժամանակամիջոցներուն. իր անկումն ալ այդ ծայրագոյն աշխարհներու սահմաններուն վրայ տեսաւ, եւ հոն նշմարեց դիտեց նոր կրօնի մը յաղթական ծաւալումը։*

*Դենիմազդէզ այդ վիճակին մէջ՝ իր աղաւաղումներով, իր խրթնացումներով՝ դուրս կը ցատկէր իր տրապիզաձեւ սահմանէն եւ Ատրպատականէն անցնելով ոտնկոխ մը կը ջանար գտնել այնպիսի երկրի մը մէջ, որ սկզբունքով շատոնց լքած թողած էր հեթանոսական հաւատալիքներ, եւ արիւնով, սիրով փարած էր կրօններու ամէնէն վսեմին, ամէնէն աստուածայինին, թէեւ դեռ տեղ տեղ (ի Գողթն, ի Սիւնիս) առկայծեալ հոյն*

---

*որոնցմով այլասերած է բուն Զրադաշտականութիւնը. քանի որ Եղիշէի տեղեկութիւններու շրջանակէն դուրս կը մնան ասոնք։*

մը կը փայլէր նպաստաւոր շունչով։ Այդ շունչը կեդրոնացած էր Սիւնեաց ամէնէն "խորհրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց" իշխանին քաղաքականութեան մէջ. այսինքն՝ քանի որ Հայք իրենք զօրաւոր կուսակցութիւնով մը քաջալերեցին Սասանեանց առաջադրութիւնը Դենիմազդէզը Հայաստանի մէջ տարածելու համար, այս պայմաններու մէջ իսկ, կ՚ըսենք պիտի տապալուէ՞ր արդեօք Հայոց Քրիստոնէութիւնը։

Որպէս զի Դենիմազդէզը կարենար յաղթել Քրիստոնէութեան՝ պէտք էր որ ըստ ամենայնի գերակշիռ բան մ՚ունենար Քրիստոսի կրօնին վրայ. այսինքն՝ ոչ միայն պէտք չէր որ իր ծաւալումը պետական ուժով յառաջ մղուէր, այլ մանաւանդ գէթ իր նախնական բարձրութեան մէջ փայլած պէտք էր մնալ։ Ընդհանրապէս խօսելով՝ Քրիստոնէութիւնը իր կրած հալածանքներու փոխարէն ոչ մէկ հալածանքով բռնադատեց իր ծաւալումը արտաքին աշխարհաց մէջ։ Իբր ներքին կամ մասնաւոր ստիպումներ կրնանք նշանակել Սիւնեաց եւ Գողթան հեթանոսութեան դէմ ի գործ դրուած միջոցները եւ այն Հայոց կողմէն եւ Հայոց վրայ։ Քրիստոնէութիւնը ամենեւին չխրթնացաւ եկամուտ տարրներով, եւ հակառակ Մազդէականին՝ իր ներքին յեղափոխութիւնները ոչ թէ անկումի տարին՝ զինքն, այլ բարձրացումի. եկեղեցիներու բարեկարգական խլրտումները՝ միշտ բարձրացում են։ Քրիստոնէութիւնը իր այս նկարագրով ուր որ կը տիրապետէր, կը համաձայնէր ամէն բանի, կ՚ընկլուզէր ինչ որ լաւ էր եւ իբրեւ իրենը դուրս կը հանէր զայն։

Քրիստոնէութեան այս զէնքը, որ շատ աւելի հատու եղաւ քան Մազդէականինը, մեծապէս նպաստեց իր ծաւալումին՝ առանց երբեք խոշորնալու այն դրութիւններէն, որք կամ իբր աղանդ, կամ իբր փիլիսոփայութիւն շրջապատեցին զինքը։

Կրօնք մը կը վտանգուի գլխաւորապէս այդ երկու տեսութեանց հակառակ միջոցներով — ծաւալումի եղանակ եւ օտար տարրներով խըրթնացում։ Զրադաշտականութիւնը մինչեւ իր մազդէական շրջանը՝ մեծապէս այլայլումէ յետոյ, Սասանեանց աւերիչ ձեռքին մէջ գործիք կը դառնար իր ծաւալումին եւ այն քաղաքական հիմերու վրայ. այս վտանգը զօրացաւ իր մէջ ոչ թէ խոնարհեցնելու համար Քրիստոնէութիւնը, այլ մանաւանդ խոնարհելու համար Ղուրանին առջեւ։

Մազդէական դրութեան այլայլումներէն գիտենք միայն մէկը, որ ուրիշ այլայլում մ'ալ ունեցաւ, Միհրականութիւնը։

Հայք՝ Պարսիկներէն առնելով գիտեն, որ „Միհր աստուած ի կնոջէ ծնաւ", կամ "Միհրն աստուած մայրածին է ի մարդկանէ" (Եղիշէ)։ Միհիրի համար այս ծագումը շատ նոր է մազդէականութեան մէջ եւ չփոթութիւն ուրիշ ոգիի մը հետ իբր արդիւնք հանգունատիպ ստորոգելիքներու[1]։ Այլ եւս նոյն Միհրը չէ, որ բուն զրադաշտիկ ըմբռնումով զուտ լոյս էր եւ հաւատարմութիւն եւ իմաստութիւն, ոչ ալ Աքիմէնեանց Արեւը, այլ բոլորովին տարբեր աստուածութիւն մը Արեւմուտքի Պանթէոնի մէջ՝ ցլազոհի, մարդազոհի առատութեան, մեղրասուրբ ընծայեալներու նուիրումներու մէջ։ Պահելով հանդերձ իր նախկին բարացուցիչ գիծերը, քանի բարձրացաւ լուքերու եւ բէն-ըններու ապաստան գաղափարներու մէջ այնչափ նոր գիծեր առաւ, կամ իւրացուց այն աստուածութիւնները, որ ծագումով իսկ օտար չէին իրեն։ Այս նորութիւնները Միհրականութիւն մը ստեղծեցին։

---

[1] Տես էջ 82 La Religion à Rome sous les Sévères. Par Jean Réville. Paris ed. Ernest Leroux 1886.

Զարմանալի է սակայն, որ Միհրականութիւնը գլելով Հռովմէական Պանթէոնին բոլոր միւս աստուածութիւնները, ըստ գիտական ծանրակշիռ տեսութեանց, պիտի վտանգէր նոյն իսկ Քրիստոնէութիւնը, եւ այս պիտի յաջողէր շնորհիւ այն հանգիտութիւններու, որք շատ կը մօտեցընեն իրարու Քրիստոնէութիւնն ու Միհրականութիւնը, մանաւանդ որ հեթանոսութեան ջլատիչ նախապաշարումէն հազիւ արթնցած մտքեր դիւրաւ թերեւս պիտի թօթվէին քրիստոնէութեան կախարդանքը՝ ըստ ինքեան հեթանոս բայց իր արտաքին ձեւերով Քրիստոնէութիւնը յիշեցնող Միհրականութեան փարելու համար։

Քրիստոնեայք իրենց մկրտութեան, դրոշմի, հաղորդութեան հանգունատիպ խորհուրդն ու արարողութիւնները տեսնելով Միհրականներու մէջ՝ կը նկատէին զանոնք իբր սատանայական նմանութիւններ։ Եւ իրաւի այս պարագաներ շատ նպաստաւոր էին հակակշռելու Քրիստոնէութեան ազդեցութիւնը, նոյն իսկ “Կարելի է ըսել որ Քրիստոնէութիւնն եթէ իր աճումին մէջ կասէր որեւէ մահացու հիւանդութիւնով, աշխարհը միհրապաշտ պիտի ըլլար [1]։„ Սասանեանց Միհրը այսչափ դրաւիչ հանգամանքով օժտուած էր։

Բայց գիտենք որ ոչ միայն Քրիստոնէութիւնը չվարակեցաւ կամ կասեցաւ մահացու հիւանդութիւնով մը եւ ընդհակառակն իր գործարանաւորութիւնը կատարեալ եռանդով զարգացաւ, այլ մանաւանդ Միհրականութեան նմանութիւնները Քրիստոնէութեան հետ, իրաւցընէ ընկլուզումներ էին դուրսէն եկած. եւ քրիստո-

---

1 Marc-Aurèle, էջ 579. Տես մանաւանդ ամբողջ Միհրականութեան մասին, անդ էջ 575—581, եւ Ժ. Ռէվիլի հեռաքրքրական ուսումնասիրութիւնը, La Religion à Rome եւայլն, էջ 77—103։

նէական խորհուրդներու եւ ինչ ինչ արարողու-
թիւններու նմանութիւնը պիտի վտանգէր ոչ թէ
Քրիստոնէութիւնը, այլ նոյն ինքն Միհրականու-
թիւնը. այնպէս որ օտար բեռներէ՝ իբր մահացու
հիւանդութենէ մը ընկճած՝ թող պիտի տար որ
աշխարհ ամենայն քրիստոնէանայ։

Այս տեսութիւնը կրնանք ընդարձակել
ամբողջ Մազդէականութեան վրայ. այսինքն՝ եթէ
Միհրը իբր կեդրոն Սասանեանց ըմբռնումին ոչ թէ
իւր Քրիստոնէութիւնը խրտչեցնող ձեւին մէջ,
այլ իբր Միհրականութիւն եւ իւր Քրիստոնէու-
թիւնը յիշեցնող հակակշիռ ոյժերով չկրցաւ
գլել Քրիստոնէութիւնը, աւելի եւս Մազդէա-
կանութիւնը[1] պիտի կասէր իւր անկեալ վիճակին
մէջ իբր անհանգէտ եւ տրամագծապէս հակառակ
դրութիւն մը Քրիստոնէութեան հետ։

Դիտենք նաեւ բարոյական վիճակը Իրան
աշխարհին, որ ոեւէ հրապուրիչ կողմ չունէր.
կիրքերը գրգռող կրօն մը՝ կը սպառէ ժողովուրդնե-
րու կենսական ոյժը. ռամիկը չգիտեր զայդ՝ եւ
չի զգար նոյն իսկ իւր ամենէն լոյծ եւ մեղկ կացու-
թեան մէջ։ Պարսիկ ծանօթ բարոյականը[2] ար-

---

[1] Մազդէականութիւնը, որ այլ եւս չէր բուն Զրադաշտականութիւնը, չկրցաւ ջնջել Պարսկաստանի մէջ արաբական ազդեցութենէն յետոյ. այժմ նոյն կրօնի հետեւողներ՝ Փարսիներ՝ կը գտնուին Հնդկաստանի, Պոմպայի եւ Կիւզէրէթի գաւառները։ Այդ կրօնը Երդ դարու մեհեաններուն մէջ գտած յարգը չի վայելեր այլ Փարսիներու մէջ. բաւական փոփոխութիւններու ենթարկուած է իբր հետեւանք հնդկական հողի վրայ ապրող կրօններու հետ իր ունեցած շփումին։ Մազդէականութիւնը իւր արդի վիճակին մէջ ներկայացաւ երեք տարի առաջ (1893) Չիկակոյի Կրօնական Համաժողովին (տես Le Congrès des Religions à Chicago en 1893, par G. Bonet-Maury, Paris Lib. Hachette 1895, p. 48)։

[2] Զրադաշտեան Պարսիկներուն համար չէ մեր ակնար-
կութիւնը։ Զրադաշտ եւ Զրադաշտի հետեւողներ չունէին

*դիւնքն է նախնական, ոչ զբաղաշտական, կրօնի թոյլ եւ շոյող կողմերուն, որ ժառանգական դարձեր է իրենց համար՝ իբր անվիճելի ախտանիշ կեանքի մը, որ այլեւս չարտադրեր հանճար մը, միտք մը վառվռուն։ Քրիստոնէութիւնը ճիշդ այս կեանքի սաղմնային վիճակին մէջ կը հանէր քաղելու այրելու որոմը. ճիշդ այն վայրկենին երբ Աճուճ Մաճուճ Փրկչի մը կը սպասէին. լոյծ բարոյականը պնդացնելու, մեղկ կեանքը զօրացնելու ոյժը Քրիստոնէութիւնն իւր մէջ ունի արդէն. այս ոյժը, յիրաւի, փրկարար եղաւ. յայրատ աչքեր արեկ մ'ընդգրկեցին զայն եւ առատ եղան կազդուրիչ բարոյականի մը մէջ։*

*Դիտենք ընդհանուր ակնարկով մ'ալ, որ եթէ Քրիստոնէութիւնը աւերիչը եղաւ Յաւիտենական Քաղաքի քաղաքական կեանքին եւ առտնին սովորոյթներուն, իրողութիւն մը որ աչքի կը զարնէ Քրիստոնէութեան դարձող բոլոր նախկին ազգերու մէջ, անուրանալի է սակայն, այն ազդեցութիւնը՝ զոր ի գործ դրաւ բարոյական աշխարհքի մէջ, որուն վրայ բարձրացաւ աւելի փայլուն եւ աւելի հռչակաւոր քաղաքական կեանք մը, քաղաքակրթութիւն մը։ Այս է Քրիստոնէութեան ընդհանուր բարիքը հեթանոսութիւններու յաղթելէ յետոյ։ Ոչ իբր ջատագովութիւն կը շեշտենք զայդ, այլ՝ իբր իրողութիւն մը պատմական, որ ուղղակի եւ որոշ կապ մ'ունի ազգերու կեանքին հետ։ Աշխարհը բարոյական վերածնութեան մը կարօտ էր. ոչ փիլիսոփայութիւն, ոչ ալ յոյն*

---

*այն լոյծ բարքը. արդէն տեսանք որ մինչեւ Երդ դար ամէն ինչ փոխուած էր եւ Սասանեանց տարած դարմանը արտաքին եղաւ եւ կարճ. ապականութիւնը խորապէս արմատացած էր, այնպէս որ հիմակուան իշխաններ, Վարդանանց եւ Վահանեանց ժամանակ միեւնոյն ֆէօտալ իշխաններն են.* (*Փրպ. էջ* 375, *Հմմտ.* 48—49, 70—71, 113—114, 143—144, 182—185, 215—216, 282 չ.)։

*եւ լատին երկիրներու կրօնները կրցան ծնունդ տալ անոր. որովհետեւ այդ կրօնները անձեռնհաս էին, հարկաւոր տարրները չունէին մարդոց բարւոքումին համար. միայն Հրէութիւնը յուսահատական ճիգ մ'եղաւ մարդկային ապականութեան դէմ (տես էջ 426. Ծնթ.) եւ երբ Քրիստոնէութիւնն ծնաւ նոյն Հրէութեան ծոցէն, ըրաւ հարկաւորը մարդու բարւոքումին համար։ Մարդը ուրիշ ո՞ւ էր ա՛լ, երբ կը նետուէր Քրիստոնէութեան ծոցը. ճգնաւորական խստութիւն մը ցանկական կիրքերու սանձ դրաւ. եւ յիրաւի քրիստոնեայ բարքերն էին որ ամէնէն լաւ քարոզներ, ծաւալումի միջոցներ հանդիսացան Քրիստոնէութեան համար։ Քրիստոնեայ բարեպաշտութիւնը, պարկեշտութիւնը, կամ նախնեաց ասացուածով +տղտ+տձորո–Ռի–Նը յեղափոխիչ ույժերն էին այն կրօնին, որուն պիտի չկրնար յաղթել Մազդէականութիւնը Սասանեանց ժամանակ եւ չկրցան յաղթել։*

*Մեր պատմագիրներու գրչէն ցայտած երգիծանքը, իբր արտայայտութիւն հայ-քրիստոնեաներու գիտակցութեան իրենց կրօնին, Հայոց կողմէն բռնադատումի տակ առ երեսս ուրացութիւնները, եւ Պարսից կողմէն քրիստոնէացող նորահաւատներու պատմութիւնները հզօր շեշտերն են այդ իրողութեան։*

*Դէպքերու այս վիճակին մէջ Վարդանանց դարուն ուղղութիւնը ինքնին կը խօսի։ Անոնք զուր արիւն չթափեցին։*

## ԳԼՈՒԽ Դ.

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆԸ ՉՈՐՐՈՐԴ ԴԱՐՈՒՆ

*Հայոց լուսաւորութեան բոլոր պատմութիւնները (աւանդական) քիչ մը ջատագովական*

են. որովհետեւ ոչ միայն մթին է Հայ-քրիստոնէութեան վիճակը Լուսաւորիչը Առաքեալներէն անջրպետող ժամանակամիջոցին մէջ, այլ՝ Լուսաւորչէն յետոյ ալ Քրիստոնէութեան փառապանծ յառաջացումը դիտելէ վերջ, դեռ հեթանոսութիւնը արմատացած կը գտնենք Գողթան եւ Սիւնեաց երկիրները (Կորիւն. Խոր)։ Հայաստանը, յիրաւի, շատ լաւ քրիստոնեայ երկիր մ'եղաւ, բայց շատ դժուար եղաւ։ Այս հայեացքով կ'ուզենք դիտել Դրդ դարը, Երդին ուղղակի ոստում մ'ըրած չըլլալու համար։

Երդ դարը հազիւ շունչ կ'առնէր երբ Քրիստոնէութիւնը (ընդհանուր) հետզհետէ հարուածող Տասը Հալածանքներէն (54—311) յետոյ Մեծն Կոստանդիանոսի արձանը կանգնեցաւ Հռովմի դռներուն մօտ. դարագլուխ մ'էր այդ, յորում Եկեղեցին զինքը ճնշող արտաքին թշնամիներու արհաւիրքը փարատելէ զատ ոչ նուազ վտանգաւոր ներքին թշնամիներու յառաջացումը կը ջլատէր եւ քրիստոնէական վարդապետութիւնը դաւանանքի պաշտօնական բանաձեւերու կամ հանգանակներու մէջ կը կաղապարէր իր Տիեզերական ժողովներով։ Իրաց այս ելքը, որ կրօնական, քաղաքական մեծ յեղափոխութիւններու կը հետեւէր, դեռ առաջին քայլ մ'է, սկիզբ մ'է այն արագ բարգաւաճումին, զոր Քրիստոնէութիւնը պիտի ունենար նախ տիեզերական եւ յետոյ ազգային եկեղեցիներու մէջ։

Մեր Եկեղեցին դիւրին չմտաւ այդ բարգաւաճումի շաւղին մէջ, թէեւ հազիւ վրդոված կը նկարագրուի մեզ այն սարսափելի տագնապներէն, որք բնական օրէնքով կը տաքնան, կը պայթին երկու հակառակ ոյժերու ընդհարումով թէ կրօնական ըլլան անոնք, թէ քաղաքական։ Հայաստանի հին հեթանոսութեան յուսահատ ճիգերուն եւ նորածագ քրիստոնէութեան եռանդնոտ

վայրկեաններուն այնքան զօրաւոր բախումը Ագաթանգեղոս կամ Զենոբ հազիւ իբր հասարակ ընդհարում մը կը ջանան ցուցնել՝ քրիստոնէութեան ջատագովութիւն մ'ընելու նախանձախնդիր ոգւով։ Եւ Բուզանդ, որ դարուն ամէնէն կարեւոր մի շրջանին (342—382) դէպքերը կը պատմագրէ, կողմնակի փայլուն գոյն մը կու տայ Հայաստանի քրիստոնէութեան. ուրիշ խօսքով՝ Եկեղեցւոյ եւ Հայրապետանոցի վերաբերող բոլոր անձնաւորութիւններ, իրողութիւններ կը ջատագովուին. իսկ միեւնոյն իրողութիւնները կը պախարակուին խառնաղանճ բազմութեան, զինուորական կարգերու եւ արքունի պալատին մէջ՝ երբ Հայրապետական Աթոռը թափուր է կամ տկար անձ մըն է գահակալը։

Բուզանդարանի խմբագրութեան եղանակը, պատմութեան եւ գրոյցներու բունը ճիշդ ցոլացումն է դարուն։ Դ^րդ դարը համակուած յոյն, ասորի կամ պարսիկ դպրութեան գաղափարներով՝ դժուար կրնար իրականապէս ցոլացընել եկեղեցական այն պայծառութիւնը, որ Լուսաւորչեան շառաւիղներով կ'անդրադառնար իւր վրայ։ Այսպէս Ս. Վրթանէսի ժամանակ "խաղաղութիւն եւ շինութիւն, մարդաշատութիւն եւ առողջութիւն, պտղաբերութիւն եւ աստուածաշատութիւն եւ շահեկանութիւն, եւ մեծ աստուածասէր պաշտօն ի հաճոյակատար բարութիւն... աճեալ բազմանայր։ Լուսաւորէր եւ առաջնորդէր նոցա սուրբն Վրթանէս [illegible] շնորհօք հօրն իւր. [illegible] եւ արդարութիւն ծաղկեալ էին ի գաւառն յայնմ" (Բուզ. Գ., գ. եւ հետեւ)։ Այս ամէնուն ետեւ սակայն, շարք մը ներքին կռիւներու, որ միշտ յուզուեցան Լուսաւորչեաններու եւ Արշակունիներու մէջ։ Եւ Բուզանդի կեղտոտ ներկայացընել ուզած պատկերները երբ մօտէն դիտենք, կը տեսնենք որ դեռ հեթանոսութիւնը անխորտակելի կերպարանք

մ՚ունի Արշակունեաց պալատներու մէջ. հեթանոսական սովորութիւններ չէին հանդուրժեր նոր վարդապետութեան խստութիւններուն, որք իբր պատգամ կը տրուէին հայրապետական Աթոռէն. այնպէս որ “Մեծին Հայոց Տիկնոջ„ դրդումով, “որք մանկամբ զննութեան կատարելութեան հեթանոսութեան զնոյն սովորութիւն մինչև ցայնժամ եւս ունէին գաղտնի, և մոլութեան ժողովելոց՝ հատանէին իբրև հաղորդ երկու (Բուզանդի առասպելական թեւերէն չէ այս), խորհուրդ եդեալ ընդ միմեանս՝ սպանանել զքահանայապետն Աստուծոյ զՆերսէս„ (նոյն անդ)։ Սպանութեան այս խորհուրդը որչափ ալ հակասութեամբ “գաղտնի չնութեան կծծութեան ճարոյից պաշտօնութեան„ զրոյցով մեկնուի, միշտ արքունիքի սոյզ հեթանոսութիւնը կը շեշտէ, որ փոխանակ տեղի տալու “աշխարհախումբ բազմութեամբ„ “ամի ամի եւթն անգամ„ կատարուող քրիստոնէական հանդէսներու հմայքին, կարծես աւելի կը զայրանար։ Արքունիքի այս բնական ընթացքը, որ յանիրաւի կեղտոտութիւններով կը շաղախուի Բուզանդի գրչին տակ, չկրցաւ քրիստոնէութեան վնասել։ Հեթանոսութեան իրաւունքն էր այդ ընդդիմութիւնը, բայց սկիզբն էր այդ միանգամայն մեր եկեղեցական բարգաւաճումին. եւ Դրդ դարը հեթանոսութեան ամէնէն տենդոտ մէկ շրջանն է, ջլատումի տենդոտութիւն մը։ Որովհետեւ կարելի՞ է ըսել թէ այնքան շուտ մարած ըլլայ դարաւոր հաւատալիքներու ամբողջութիւնը, կամ թէ ի՞նչ է Երդ դարու ոսկեղինիկ շողշողումը։

Որպէս զի Դրդ դարու այդ նկարագրական կողմնակի պայծառութիւնը իրական ըլլար, պէտք էր որ սեփական մատենագրութիւն մ՚արդէն մշակուած, զարգացած ըլլար. առանց այս պայմանի, որ ժողովուրդը կը կապէ իր հաւատալիքին եւ իր եկեղեցիին, անկարելի է քրիստոնէական զարգա-

ցած վիճակ մ՚ընդունիլ Դրդ դարուն։ Եւ ոչ միայն կը պակսէր այդ յեղափոխիչ ոյժը, ազգային սեփական գրականութիւնը, մանաւանդ բարձրագոյն դասակարգը հազիւ կը ճանչնար հելլէն կամ ասորի դպրութիւնը՝ Քրիստոնէութիւնը լաւ հասկնալու համար. իսկ ռամիկը կը դժկամակէր թողուլ հեթանոսական սովորութիւնը եւ Յուսիկի նման նախանձաւոր հայրապետի մը եւ անոր վարդապետներուն յորդ, կայտառ եւ համոզկեր խօսքերէն նշմարուն․ մ՚անգամ չէր տպաւորուեր իրենց մտքին մէջ։ Հնագոյն սովորութիւնները, հեթանոսական պաշտամունք եւ վիպասանական երգեր, զորս չէին մոռցած եւ կարծես չէին ալ ուզեր մոռնալ, աւելի հեշտին էին իրենց համար քան յորդահեղեղ վարդապետութիւններ (Բուզ. Գ, ժգ)։

Մեծն Ներսէս, դարուն եկեղեցական դիւցազնը, որ իբր գործնական եւ նախանձաւոր քրիստոնեայ, կը բանեցընէր իր հեղինակութիւնը գոդենոցներէն մինչեւ արքունիք, չկրցաւ արմատաքի խլել ժողովրդական խաւերէն ինչ որ հին էր, ինչ որ հեթանոսական էր։ Նա՝ մեծ եւ իրաւցնէ առնական գործեր կատարեց երկրի կրօնական եւ քաղաքական կեանքին մէջ. իր ջանքով ամէն ինչ պայծառացաւ. հեթանոսութիւնը կարծես պահ մը ծածկուիլ կը թուէր անոր գտնուած միջավայրին մէջ. այս ամէնը սակայն Մեծ Հայրապետի վախճանին կը նայէր, ցորչափ սեփական գրականութիւնը օժանդակ չեղաւ իրեն. եւ Մեծն Սահակ, որ տեսակէտով մը նուազ գործունեայ եղաւ Ներսէսի բաղդատմամբ, աւելի բարձր գիրքով եւ աւելի մեծ գործերով կը կանգնի Երդ դարու սեկեղէն չէմքին վրայ. — Գրականութիւնը մեծցուց, փայլեցուց Սահակը իր ճշմարիտ արժանիքին մէջ։ Ներսէս թէեւ գրականութեան ալ զարկ տուաւ հաստատելով՝ ի տեղիս տեղիս դպրոցս յու-

նարէն եւ ասորերէն յամենայն գաւառս Հայոց (Բուզ. էջ 78), բայց քանի որ օտար էին անոնք Հայ մտքերու՝ միշտ ապարդիւն մնաց իւր ձեռնարկը մինչեւ Երդ դար, յորում "Հոգացեալ յարաժամ տրտմէր երանելին այրն Մաշթոց՝ տեսանելով զմեծաջան ծախս մանկանցն Հայաստան աշխարհին", որք ի զուր կը մաշէին իրենց ժամանակը "ի դպրոցս ասորի դպրութեան" (Փրպ.)։

Ցոյցնելու համար թէ տակաւին Դրդ դարուն հեթանոսութիւնը զօրաւոր է, մտադիր պէտք է ըլլալ երկու կեդրոններու՝ Հայրապետանոցի եւ Արքունիքի՝ յարաբերութիւններուն։ — Յուսիկ կաթողիկոսի եւ Տիրան Բ.ի կռիւները շատ լաւ կը բացատրեն թէ թագաւորն ինչպէս կը դիտէր եկեղեցին եւ քրիստոնէութիւնը։ Ընդհանրապէս խօսելով Դրդ դարուն՝ Տրդատի յաջորդներէն եւ ոչ մին ուղղակի զօրավիգն կը հանդիսանար հեթանոսութեան՝ բորբոքելով ժողովրդեան մէջ նախկին պաշտամունքի եռանդը. բայց հակառակէն գէթ պաշտօնական քաջալերութիւն ալ չէին տար քրիստոնէութեան, թող որ փոքր հալածանքներ ընել կամ տեսակ մը ստիպումներ գործադրել հայ հեթանոսներու մասին, ինչպէս ըրաւ Մեսրոպ յաջորդ դարուն (Կորիւն, Խոր.)[1]։

Տիրան Բ., հարազատ որդի իւր հեթանոսամէտ մօր, "Մեծին Հայոց Տիկնոջ", դրդիչ Ս. Վրթանէսը սպաննելու, աւելի ազատամիտ էր կրօնական խնդիրներու մէջ։ Հազիւ կատարուած էր Յուսիկի գահակալութեան պաշտօնական ձեւակերպու-

---

[1] Պահ մը միեւնոյն եղանակով Մեծն Ներսէս ալ գործեց բուն երկրին մէջ. "...զմոլորութիւնս դարձուցանէր։ Առնէր եւ զայսպիսի [illegible], զոր կարի յամառեալ տեսանէր, ահ արկանելով հաւանեցուցանէր" (Բուզ. Դ, դ.)։

թիւններր[1], Տիրան եւ իր նախարարութիւնը դուրս տուին իրենց դոյնը՝ հակառակ Յուսիկի խրատներուն եւ իշխանական սաստերուն. Յուսիկ կը խրատէ, կը յանդիմանէ, որովհետեւ իբր թէ ամէն տեսակ աննկարագրելի, պիտի ըսէի անհաւատալի մոլութիւններ տիրած ըլլային Արշակունի գահուն վրայ (Բուզ. Գ, ժբ.) ընդհակառակը Տիրան անոնցմէ էր "ոչ անցանէին չկարգօքն Քրիստոսի", կը սիրէին հին կարգն ու սովորութիւնները։ Բնական էր որ այդ սէրը մղէր Տիրանր եւ Նախարարները այնպիսի արարքներու, որոնց չէր կրնար ներել Քրիստոնէութիւնը, բայց սոդոմական ոճիրներ չէին եւ չէին կրնար ըլլալ արշակունի պայապատներուն արարքը, որոնց հանդէպ Յուսիկ կը խստանար, այլ՝ այն անտարբերութիւնը, եթէ ուզէք, ազատամտութիւնը կրօնի մասին, որ համարձակեցուց Տիրանը, եթէ վստահինք Խորենացւոյ, բարեկամանալու "ամբարիշտն Յուլիանոսի" հետ եւ մանաւանդ "յիւրում արքունական եկեղեցւոջն կամեցաւ կանգնել զպատկերն" իր գերիշխան բարեկամին (Խոր.) խօսքերուն։ Ի՞նչ փոյթ Տիրանի համար. եթէ պատկեր մ՚աւելի կամ պակաս ըլլար իր արքունական եկեղեցւոյ զարդերուն մէջ։

Յուսիկ կաթողիկոսի կուինները շարունակուեցան իր յաջորդ Դանիէլի ժամանակ։ Դանիէլ բնական ճշդութիւնով կը հետեւէր իր նախորդին քայլերուն. որովհետեւ հեթանոսական բարքեր դեռ կը տիրէին արքունիքի մէջ. Դանիէլ "ընդէ՞ր մոռացարուք դուք զԱստուած զարարիչն ձեր" սպառնալիքով կ՚ելլէ Տիրանի առջեւ։ Եւ յիրաւի, Յուսիկի եւ Դանիէլի յանդիմանութեան

---

[1] Արքայական շուքով կեսարիա կ՚ուղարկուէին նորընտիր կաթողիկոսունք. թագաւորն իր պատիւը բարձրացնելու եւ իր ոյժը ցուցընելու համար ամէն պերճութիւն կը շռայլէր։

տեղի տուող միակ եւ միակ պատճառը, ոչ թէ Բուզանդի բաց կերպով նկարագրած անհատական խնդիրներ են, այլ՝ այն զօրաւոր միտումը, որ դեռ կը մղէր արքունիքը նախնի պաշտամունքներուն. — "Եւ դեռ եւս դարձեալ ի մոլորութեան կռապաշտութեան նախնեացն յերկրորդ, ասորի Դանիէլին նուիրուած հրաշապատում էջերուն ամէնէն սուր կտորին է (Բուզ. Գ, ժգ.)։

Յաջորդ երկու կաթողիկոսներուն՝ Փառէնի եւ Շահակի ընթացքը, որ երբեք չհամարձակեցան "յանդիմանել զմոլորութիւն ինչ զուրուք կամ զամբարշտութիւնս", ակնյայտնի կը ցուցընեն թէ որչափ խոր տպաւորուած էր նախնի պաշտամունքի յիշատակը ամէն դասակարգի մէջ. — "առ հասարակ թագաւորն եւ նախարարքն եւ իշխանքն, եւս չար քան զնոսա առ մարդիկ մարդկանն ամբարշտեալք, ի հնութեան առաջին կարգացն հարցն իւրեանց դարձեալք, ի փոքրկանց մինչեւ ցմեծամեծս ի յոյս էին հարեալք եւ ի նոյն կանխեալք" (Բուզ. Գ, ժգ, ժէ)։

Մեծն Ներսէս ալ միեւնոյն դժուարութիւններու մէջ գտնուեցաւ Արշակ Բ. ի արքունին հանդէպ։ Խաղ տեղապահի յանդիմանութիւնները Արշակին դէմ եւ այս մասին Արշակի գանգատները, Ներսէսի ընթացքը յայտնի կ'ընեն մըն է հեթանոսական բարքերու եւ սովորոյթներու դէմ։ Ներսէս՝ Դանիէլի ոճով կը յանդիմանէ Արշակը իր առաջին տեսութեան մէջ, "ընդէ՞ր մոռացար զՏէր" (Բուզ. Դ. ժգ.)։ Ներսէս որ գիտէր վարուիլ հեթանոսամիտ ժողովուրդի մը հետ, — եւ վարուելու այս եղանակը յիրաւի օտանելի մ'է Բուզանդի համար էջ 74, "զմոլորութեան. դարձուցանէր... եւ հաստատէր ի կատարումն ապաշխարութեան զներհաստատս" եւն. (Բուզ. Գ. դ.), կարծես կատարելապէս հեթանոս հասարակութեան մէջ կը գտնուի. ազատամիտ արքունիք մը, անուղղայ ժողովուրդ մը

կը զբաղեցնէ զինքն եւ թերեւս իր շինած եկեղեցիներն ու կանգնած սեղանները (Նոյն անդ. Դ—Ե. ԻԱ.) այս ժողովուրդի աւերածներն ու կործանածներն են։

Արշակի եղերական գործերուն մէջ մեծ դեր մ՚ունի անշուշտ իր հեթանոսական կողմերը, զոր յետոյ ամենայն համարձակութեամբ մշակեց իր որդին ու յաջորդը՝ Պապ, որու բարքին եւ կենցաղին նկատմամբ Բուզանդի արտասովոր դիտողութիւնները խիստ են եւ չափազանց։ Պապ ցանկական կիրքերու կը զակատէր, որովհետեւ Արշակ եւ Փառանձեմ անօրէն էին եւ տղայիկը (Պապ) դեւերու ձօնեցին (Բուզ. Դ. խդ. Ե. իբ.). իմա՛ երախայի ծնունդին արարողութիւնները կատարեցին հեթանոսական սովորութիւններով. բան մը որ շատ հեշտ էր Սիւնեաց դուստր՝ իր երկրին բնիկ եւ միեւնոյն սովորոյթներով զարգացած Փառանձեմի համար։ Եւ ի՞նչ կրնան ըլլալ դիւանուէր Պապին կախարդական գործողութիւնները (?), եթէ ոչ այն սաստիկ տենչն ու ցանկութիւնը, որուն հանդէպ շատ ներող էր հեթանոսութիւնը[1]։ Պապ իբր թագաւոր կարող էր ուզածին պէս վարուիլ, արհամարհել քրիստոնէական ժուժկալութիւնը, եկեղեցական իշխանութեան սաստը։ Իսկ ժողովուրդը ունէր դեռ Ներսէսին երկիւղը. երբ վախճանեցաւ նա ամէն մարդ արձակ համարձակ հրաման առաւ

---

[1] Մեր պատմագիրները շատ սեւ շրջանակի մէջ կը ներկայացնեն Պապը իբր վատ եւ անարժան մը արշակունի գահին. իր հեթանոսիկ արարքները, որ զինքն կոխոբէ մ՚ընծայելու չափ հաստատուն կ՚երեւին, ծանր սխալում կ՚ենթարկեն մեր բարեպաշտիկ պատմագիրները ճշմարտութիւնը թիւրելու համար։ Պապը վատ թագաւոր մը չէր։ Բաւական է քննադատի աչքով դիտել պատմածները Պապը արդարացնելու համար։ Բարեբախտաբար օտար պատմագրութիւնը բաւական քաջագործութիւններով կը ներկայացնէ այս Հայ թագաւորը։ (Տիգ. Պատմ. Բ. էջ 506–509)

թագաւորէն «ბოლოსა ჟამთა ღმრთისნი ხარბეთა, ერ ეს მე აჲრ ფაან კენ ჭოხერ»․ այս կեանքը հասարակ էր արքունիքէն մինչեւ յետին խուղը։ Կեանքի ցանկական կողմերը գգուող կրօն մ՚ի հարկէ պիտի նախապաշարէր ամէն միտք, եւ կարելի է ըսել թէ առհաւութիւնը կրօնական խնդիրներու մէջ անխուսափելի էր, եթէ Եր^դ դարը փոքր ինչ ուշանար Դ^րդ դարու եկեղեցական մեծ դէմքերուն վաստակներն ու առաջադրութիւնները հաստատել յատուկ գրականութեան մ՚ազդակներով, քանի որ Ներսէսի հզօր եւ անդրդուելի կամքին արդիւնք եւ ամէնէն ժողովրդական գործերն ալ կրցան շուտով խափանուիլ, հեթանոսական յիշատակներու գործնական զարթնումով (Բուզ․ Ե․ լա․)։

Թէ Դ^րդ դարուն հեթանոսութիւնը կը տիրէր դեռ, կրնայինք ապացոյցները շատցնել՝ քաղելով Բուզանդարանի իւրաքանչիւր գլխէն, կը բաւականանանք միայն յիշատակելով Ներսէսի խափանել ջանացած հեթանոսական բարքերէն «ჰროძაღელ ადნეაჲნ ჲ ძაღლოფაოჲ ლა ჟორნნე ოთხლოჲ»․ եւ յուղարկաւորութեան եղեռնաւոր տեսարաններու[1] խափանումը եւ փոխանակումը «լոյկ արտասուօք եւ ըստ արժանի սաղմոսիւք եւ օրհնութեամբ, կանթեղօք եւ մամեղենօք» (Բուզ․ Դ․ գ․ Ե․ խդ․ լա)։ — Դեռ անխախտ էր Հայոց մէջ Առլէզներու վերագրուած կենդանացուցիչ հաւատքը, եւ նոյն իսկ Մամիկոնեանց Տան մէջ (անդ Ե․ լզ․)։

Հայ-հեթանոս բարքերուն այս տիպերը, որ մինչեւ յետին ժամանակներու մէջ իսկ, մերթ զոյգ եւ մերթ խառն գնացին քրիստոնէական բարքե-

[1] «Ապա յետ մահուան Ներսէսի յորժամ զմեռեալսն լային, փողովք եւ փանդռօք եւ ճօք զկոծման պարուցն կաքաւելով, զանգան հարանելս, զերեսս պատառեալս, ორთ ხელთაჲ ღეძაჲნხეამბ ნჲ-ალოჲნხეამბ ლორეთ დէմ ընդ դէմ հարկանելով եւ կամ ափս (ասիս) հարկանելով, զմեռեալսն յուղարկէին»։

րու հետ, Չորրորդ դարու բարացուցականն է եւ որ միշտ կարկառուն կը մնայ Բուզանդի այլապէս նկարագրել ուզած պատկերներու մէջ։ Հեթանոսութիւնը դեռ Քրիստոնէութեան դիմագրաւելու զօրեղ փորձեր կը փորձէ. եւ այս սոսկալի կռուին մէջ է որ Հայ-Քրիստոնէութիւնը խորին արմատներ արձակեց Հայաստանի մէջ, եւ միանգամ ընդ միշտ յաջորդող դարուն վերածնութիւնով Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ իրապէս պայծառանալէ յետոյ անսասան մնաց Սասանեանց արիւնոտ պատերազմներուն հանդէպ։ Հայոց կրօնական կեանքին այս երեւոյթը մեր եկեղեցական պատմութեան ամէնէն բարձր կէտն է։

Մազդէական վերականգնումին եւ զայն պետական կրօն հռչակելէ յետոյ՝ բնիկ եւ օտար ազգերու մէջ ալ տարածելու առաջադրութեան մէջ թէ Սասանեանք ինչ եռանդ ցուցուցին, ծանօթ է մեզ։ Խնդիրը մասնաւորելով Հայ ազգին եւ Պարսից վրայ, կը տեսնենք թէ Դրդ դարու վերջին կէսէն մինչեւ Զրդ գրգռուած պատերազմներ առանձին նկարագիր մ'ունին. պատերազմներ, որոնց առաջին մասը շատ քաղաքագիտօրէն մղեց Երկայնակեացն Շապուհ։

Հայաստանի կրօնական-քաղաքական վիճակին տագնապը հեթանոսութեան եւ քրիստոնէութեան մէջ բուական հաստատուն կռուան մը կ'ընծայէր իմաստուն Շապուհի հնարագիտութեան. Մէկ կողմէն Քրիստոնէութեան բարգաւաճումը, որ վերջապէս Հայ-հեթանոսութիւնը կամաց կամաց տկարացնելէ յետոյ յաղթական քայլերով կը սպառնար յառաջել դէպ ի Պարսկաստան, բոլորովին քրիստոնեայ երկրի մը վերածելու համար զայն, եւ միւս կողմէն Հայոց յոյն դպրութեան ցուցուցած կարեւորութիւնը ոչ սակաւ երկիւղ կ'ազդէին։ Շապուհ կը նախատեսէր մանաւանդ որ Քրիստոնէութիւնը կրնար տապալել Սասանեանց կրօնական

շէնքը, զոր կանգնեցին քաղաքական ծրագիրներու վրայ։ Շապուհի երկիւղներուն թարգման են նախ Սիւնեաց երկիրը, որ երկար ժամանակ պահեց հին հեթանոսութիւնը իրեն անմատչելի ամուրներուն մէջ եւ ոյժ տուաւ Շապուհի գաղափարներուն՝ "միանգամ անդրէն պկռապաշտութիւն հաստատել յաշխարհիս Հայոց" (տե՛ս Բ. Գիրք. գլ. Բ.), եւ յետոյ Մերուժանի եւ Վահանի արարքները, Արշակ Բ.ի Շապուհի հետ ունեցած յարաբերութիւնները, Տիրանի Մարի եւ Արտաշատի Ջուիթ երէցներու նահատակութեան պարագաները, որոնց ներքեւ անհնարին հալածանք մը կը մղուի Քրիստոնէութեան դէմ (Բուզ. Դ. ԺԶ. ծդ—ծէ. — Խոր. Գ. ԼԵ. ԼԶ. — Սոփերք Ի.)։ Այս ամէնը դեռ թաքուն էին այն բարեկամական յարաբերութեանց մէջ զոր խզեց Արշակ (Բուզ. Դ. Ի. Ծ. ԾԱ. ԾԴ.)։ Արշակ որչափ ալ անտարբեր մը կրօնական խնդիրներու մասին, շուտ իմացաւ սակայն իւր ոսոխին միտքը, եւ յամառութեամբ շարունակեց իւր ատելութիւնը մինչեւ Անյուշ բերդի եղերական վախճանը։ Այս տագնապի միջոցին էր որ Մերուժան¹, պէտք է ըսել Շապուհ, "զորս միանգամ գիրս գտանէր՝ այրէր, եւ հրաման տայր մի՛ ուսանել զդպրութիւն յունարէն, այլ [illegible]... զի ամենեւին մի՛ լիցի Հայոց ընդ Յունաց ծանօթութիւնս եւ հաղորդութիւն սիրոյ, այլ ճշմարիտ՝ [illegible]" (Խոր. Գ. ԼԶ.)։

Շատ դժուար ձեռնարկ մ'էր այս։ Հայք դիւրին չընտելացան Քրիստոնէութեան. բայց միան-

---

¹ Մերուժանի բոլոր աւերիչ ձեռնարկներն ու գործերը իւր սուգին հեթանոսութեան արդիւնքն է եւ ոչ միմիայն հակառակութեան մը դէպ ի արքունիք. նա սակաւին խորապէս կը հաւատար. "կիջանէր ի հմայս քաւդէութեան գքուէս հարցանէր, եւ ոչ գոյր նմա յաջողակ հռութ կախարդանացն՝ յոր յուսայրն" (Բուզ. Ե. ԽԳ.)։

*գամ ընդ միշտ ընդունելէ յետոյ, անհնար եղաւ թողուլ տալ անոնց իրենց հաւատալիքները։ Ընդհակառակը Պարսիկներ աւելի յողդողդ բնաւորութիւնով մ՚օժտուած՝ դոյզն ստիպում կամ բռնադատում մը բաւական էր փոխել տալու անանց իրենց համոզումը. այսպէս Զրադաշտէն մինչեւ Մահմէդ կրօնական եւ փիլիսոփայական ամէն տեսակ ազդեցութեան ենթարկուեցան։ Հայոց նախանձաւոր նկարագիրը սակայն, բոլորովին հակառակ տեսարան մը կը բանայ պատմութեան մէջ։ Շապուհ անշուշտ սոսկումով կը դիտէր այս երեւոյթը իրեն սահմանակից երկրի վրայ։ Հեթանոս Հայաստանը այդչափ երկիւղալից չէր, որչափ Դրդ դարու Հեթանոս-Քրիստոնեայ Հայաստանը։ Հայ հեթանոսութիւնը սորրին էր Շապուհի աչքին քան Մազդէականութիւնը, զոր իբր ամէնէն ուղղափառ կրօն մը հաստատելէ յետոյ՝ անլուր հալածանք մը հանեց ոչ միայն քրիստոնէութեան դէմ, այլ մանաւանդ իւր պետական կրօնը հերձուածող աղանդներու դէմ։ Շապուհի արարքները կը ցուցնեն թէ վրդովված է նա հեթանոս Հայաստանի մէջ Քրիստոնէութեան կամաց կամաց տարած յաղթանակին հանդէպ. փոյթ չէր իրեն համար որ Հայաստանը քրիստոնեայ կը դառնար, բայց կը սոսկար որ մի՛ գուցէ խաչը Պարսկաստանի մէջ ալ փայլէր վերջնականապէս[1]։ Եւ "որչափ նա կամեցաւ արգելուլ, եւս քան զեւս աճեցին եւ բազմացան, եւ հասին մինչեւ յաշխարհն Քուշանաց, եւ անտի ի հարաւակողմն, մինչեւ ի Հնդիկս տարածեցաւ„ (Եղիշէ. Գ.). Հայ հողին վրայ արիւնով արմատացած էին Աւետարանի սերմերը, եւ Հայք արիւնով սկսած էին պաշտպանել եւ պիտի պաշտպանէին։*

---

*1 Զի Քրիստոնէութիւնն վաղուց տարածուած էր Պարսկաստան եւ գլխաւոր քաղաքները կը պայծառանային եկեղեցիներով (Հ. Գաթրճ. Տիեզ. Պատմ. Բ. էջ 489—484)։*

Հայ արքունիքի հեթանոսական բարքերը չկրցան Շապուհի գաղափարներուն զօրավիգն ըլլալ։ Արշակունի հիմնադրին ընթացքը բուռն բողոք մ'եղաւ։ Հայք թէեւ կէս հեթանոս Դրդ դարուն, սակայն արտաքին թշնամիներու նկատումներուն հանդէպ կարծես որոշեցին վճռապէս փարիլ Աւետարանին։ Դրան այս ձկտումը հիմն եղաւ Երդ դարու յաջողութեան. եւ այնուհետեւ որչափ արտաքին բռնութիւններ սաստկացան, այնչափ հաստատուն եւ տեղական նկարագիր մ'առաւ Քրիստոնէութիւնը Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

---

## ՏԵՂԵԿԱԳԻՐ ՔՆՆՈՒԹԵԱՆ

## ԹՈՎՄԱՍ ԷՖ. ԹԷՐԶԵԱՆԻ

*Ուղղուած Յ. Իզմիրեանց Գրական Յանձնաժողովոյ Նախագահ Ամեն. Տ. Տ. Մաղաքիա Ս. Պատրիարք Հօր.*

---

Սրբազան Հայր

Ձեր Սրբութեան կողմէն 1898 փետրուար 21 թուականաւ շնորհեալ նամակ մը ինձ կը յանձնէր ճանիկի Առաջնորդական Տեղապահ Հոգեշնորհ Տ. Բաբգէն Ծ. Վարդապետ Կիւլէսէրեանի “Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն„ անուամբ մէկ երկասիրութիւնը՝ որ բարեյիշատակ Յ. Իզմիրեանցի կտակի տրամադրութեան համեմատ հաստատուած գրական մրցանաց մասնակցելու սահմանեալ է։

Ձեր Սրբութեան այս հրամանը փութացայ կատարել եւ կուգամ հակիրճ եւ անկեղծ կերպով տեղեկագրել Ձեզ՝ այդ պատուական երկասիրութեան իմ վրայ գործած տպաւորութիւնը։

Աւերակներու դարաւոր տխրութեանց մէջէն հնչող սոխակի մը գեղգեղանաց նման անուշ եւ սրտառուչ ձայն մը կը տանջէ ամէն հայ սրտի մէջ՝ եւ այդ ձայնը Եղիշէինն է որ այսչափ դարերէ վերջը անստերիւր պահած է իւր յանկուցիչ հրապոյրը։ Անոր մէն մի խօսքը խանդաղատական է՝ ինչպէս որբ տղու մը համար սիրելի՝ այլ կորուսեալ ծնողաց յետին մրմունջք։ Գործոյ մը իրական արժանիքն անհնար է որ ճշդիւ գնահատեն ժամանակակիցք. դարերու եւ իրարու յաջորդող սերնդոց ու տարբեր ազգաց վաւերացումը զայն կը նուիրագործէ։ Եթէ ճշմարտապէս ընտիր արդիւնք մ'է՝ կը դասուի մարդկային մտաց յաղթանակներու անջնջելի շարքին մէջ, եթէ ոչ՝ պղպջակի նման առժամեայ փայլէ մը յետոյ պայթելով կ'անհետանայ։ Այս դարաւոր եւ ընդհանուր վաւերացման կնիքը կրող սակաւաթիւ մատենկանց մին ալ է մեղրածորան Եղիշէին պատմութիւնը, կամ թէ ըսենք սրտաթռուցիկ դիւցազներգութիւնը։ Ուստի եւ իրաւամբ է որ քննիչք կը տքնին անոր մեկնութեան, եւ անոր ամենէն դոյզն հանգամանքն իսկ մանրախոյզ հետազօտութեանց արժանի կը համարին։ — Այսոնց կարգէն է Բաբգէն Ծ. Վարդապետին աշխատութիւնն ալ։

Այս նոր եւ ընտիր քննադատութիւնը ընդարձակ երկասիրութիւն մ'է 500 մանրագիր էջերէ աւելի. եւ կը համարձակիմ ըսել թէ իւր վրայ կը կրէ մնայուն գործոց այդ դժուա-

րագիտ կնիքը, այն է ախորժելի ընթերցում մ՚ընծայելու՝ հակառակ նիւթին ցամաքութեանց եւ խրթնութեանց։

Գործը Զեր Սրբութեան նուիրուած Ուղերձէ մը վերջը կ՚ըսկսի Յառաջաբանով մը, յորում հեղինակն ընդհանուր գծերով կ՚ուրուագրէ իւր աշխատութեան մէջ հետեւած ուղղութիւնն եւ ոգին եւ անոր կից դժուարութիւնները։ Անոր կը յաջորդէ այն մատենագրաց ցանկը, զորս հարկ համարած է ուսումնասիրել իւր ընդարձակ խուզարկութեանց մէջ։ Յետոյ մանրակրկիտ տեղեկութիւնք կան մինչեւ ցարդ Եղիշէի վրայ եղած հրատարակութեանց, Եւրոպական թարգմանութեանց եւ քննադատութեանց, հայերէն թարգմանութեանց եւ ուսումնասիրութեանց եւ հուսկ ուրեմն անոր զանազան ձեռագրաց վրայ։ Ասոնց ամենուն մէջ հեղինակը հետազօտութեան ՚անխոնջ ոգի մը կը ցուցնէ, եւ միանգամայն ուղիղ եւ սուր դատողութիւն մը, որով իր գործը կը տարբերէ հարեւանցի ուսումնասիրութիւններէ։

Մինչեւ ցարդ կերպով մը գործոյն ներածութեան մէջ էինք, այժմ կ՚ըսկսի բուն իսկ պատմութեան քննական ուսումնասիրութիւնը, բայց անոր թեւակոխելէ առաջ քննադատը նախ հարկ կը համարի ուսումնասիրել Վարդանանց նահատակութեան անմահ հեղինակը։ Սկեպտիկեան՝ կամ եթէ այդ ծայրայեղ կը թուի՝ կարդեսեան վարանմամբ խնդրոյ տակ կը դնէ նախ բուն Եղիշէի անունն եւ կամ այդ

անուամբ հեղինակի մը գոյութիւնը, եւ կը նկրտի ի դերեւ հանելու Աւարայրի հրաշանուագ սոխակին վրայ ընդհանրապէս ընդունուած շատ մը կարծիքներ՝ ինչպէս, զոր օրինակ անոր ոչ միայն ականատես վկայ ըլլալը իւր պատմած դէպքերուն, այլ եւ Վարդանայ ատենադպիրն ըլլալը։ Դիւցազնին եւ իւր անմահ երգչին մտերմութիւնը եթէ թիւր կարծիք մ՚է միայն՝ մեր ցնորքներէն մէկ հատին եւս փարատելուն վրայ կրնանք ցաւիլ, բայց եթէ ճշմարտութիւնը զայդ կը պահանջէ պէտք է խոնարհինք անոր առջեւ. խնդիր է ստուգել եթէ այդ իսկ է ճշմարիտ իրողութիւնն։ Բուն իսկ ոսկեղենիկ մատենկան խորագրին վրայ ալ ընտիր ուսումնասիրութենէ մը յետոյ՝ քննադատը ամբողջ պատմութեան բովանդակութիւնը կը համառօտէ, եւ զայն կ՚աւարտէ Վարդանանց պատմութեան Յեղանակներու բաժանման խնդրովը։ Չմոռնանք ըսել թէ քննչին ոչ դոյզն արժանեաց մին է իւր զգուշաւոր խուզարկութիւնը թուականները ճշդելու։ Եղիշէ՝ որ աւելի մտաց հետամուտ է քան տառին՝ ժամանակագրական ճշդութեան նկատմամբ տաժանելի աշխատութեան մը կ՚ենթարկէ իւր մեկնիչները։

Քննադատը կը հասնի ապա Վարդանանց պատմութեան գրութեան ժամանակին եւ աղբիւրներուն, եւ յետ երկար թարթափմանց Յովհան Պատմաբանի, Թովմայի Արծրունւոյ, Աբրահամ Խոստովանողի եւ իւր Թարգմանութեան, Արեւելեայ (Սովփերք Հայկականք Հա-

տոր Ի.) Փիլոնի գործոց թարգմանութեան եւ Ղազար Փարպեցւոյ, յետ այս հեղինակաց բաղմաթիւ հատուածները Եղիշէի հետ համեմատելու, հուսկ ուրեմն յետ Վարդանանց պատմութեան մէջ յիշատակուած հրովարտակաց ճառերու եւ նամակաց պատճէններն ուսումնասիրելու, սա եզրակացութեան կը յանգի թէ, Վարդանանց պատերազմի պատմութիւնը անանուն հեղինակի մը գործն է, եւ այս անանուն հեղինակը պատմածներուն ականատես եղած չէ։ Թէ իւր նկարագրական մասերուն աղբիւրը բնտռելու է Մարութասայ եւ Փիլոնի հայերէն թարգմանութեանց մէջ, եւ պատմական մասերունը Ղա́զար Փարպեցւոյն մէջ։ Ըստ այսմ Եղիշէի պատմութիւնը Փարպեցիէն քաղուած եւ պարզապէս հանապազօրեայ ընթերցման համար խմբագրուած գործ մ'է։

Անկարելի է ինձ այս մասին համառօտ տեղեկագրի մը մէջ ստուգել այսչափ նոր եւ ըստ իս նորանշան կարծիք մը, որ երկար եւ տաժանելի աշխատութեանց կը կարօտի։ Միայն պիտի համարձակիմ դիտողութիւն մ'ընել ուշիմ քննչին.

Այսչափ հանրածանօթ հեղինակի մը վրայ յերկուական եւ անորոշ հիմանց վրայ յենլով՝ այսչափ բացարձակ վճիռ մը արձակելը, չըսեմ յանդուգն՝ այլ գէթ շատ խիստ կ'երեւայ։ Գիտեմ որ այդ քննադատութիւնն անխնայ է։ Ոչ Հոմեր, ոչ Գուլիէլմոս Թէլը կան իրեն համար։ Այսու հանդերձ կայ բարոյական, այսինքն մտա-

ւոր աղբիւր մը՝ որուն անտեղի չէ դիմելը մեր վարանմանց մէջ։ Արդ՝ եթէ մեր ձեռքն հասած պատմական հատուածները իրենց անհամաձայնութեամբն իսկ կը ներեն քննչաց շատ կէտերու վրայ տարակարծիք ըլլալ, կամ ըսածիս պէս նկատողութիւն մը, զոր արդար է կշռին մէջ դնել, եւ այն է գործի մը ներքին կազմութիւնն։ Արդ Վարդանանց պատմութիւնն այնպիսի սերտ միութիւն մ'ունի թէ ներշնչման եւ թէ արտադրութեան մասին, անձանց նկարագիրք այնչափ հաստատ միութիւն մը կ'ընծայեն, եւ այս ամենակարեւոր հանգամանքներէն զատ՝ գործին ամբողջութեան վրայ տիրող ոգին այնչափ — եթէ ներելի է ըսել — միաձոյլ է, որ այդպիսի գործ մը կցկտուր հաւաքածոյ մը ենթադրել, հանապազօրեայ ընթերցման սահմանէն աւելի դժուարաւ կը մեկնուի քան պատմչաց հակասութիւնները։ Ըսել չէ թէ պատմագիրը ուրիշ հեղինակաց ընթերցմամբ ուրեք ուրեք ներշնչուած չըլլայ, ինչպէս արդէն ամէն պատմագիրք, բայց այս պարագայիս մէջ նոր զարմանաց աղբիւր մը պիտի բացուի մեզ տեսնելով թէ ինչ ճարտարութեամբ զանոնք իւրացուցած է։ Մեղուն ալ այսպէս իւր խորիսխը կը յօրինէ։ Հաւատացնելու համար Վարդանանց Պատմութեան գողօն մ'ըլլալու կարելիութիւնը՝ ամբողջ մատենագրական աշխարհի մէջ կարելի ըլլալու էր ցուցնել նոյն օրինակ ուրիշ երեւոյթ մ'ալ։ Արդ՝ Եղիշէի գործոյն մէջ անձանց նկարագրին եւ տեղեաց նկարագրութեան իսկատիպ ձեւն այնչափ մեծ է, որ

ուրիշ նշանաւոր քննիչ մը յաջողած է անոր մէջէն քաղելով ամբողջ եւ անձերի պատկերներ կազմել մէն մի դիւցազնին, երկրին մէն մի հանգամանաց, ժամանակի սովորութեանց եւն, եւն[1]։

Իններորդ գլխուն մէջ քննիչը կ՚ուսումնասիրէ Վարդանանց պատմագիրը իբրեւ թարգմանիչ, եւ անոր դերը դասական հայերէնին մէջ։ Նուրբ եւ խորին դիտողութիւններ կան այս մասին մէջ ալ.

Բ. Գրոց մէջ հեղինակն՝ աւարտելով ուղղակի քննադատութիւնը՝ հրաշագեղ պատմչի գրութեննէն կը քաղէ մեծամեծ եւ գեղեցիկ գիտելիքներ նախարարական հաստատութեան, Սիւնեաց, Վասակայ, Մամիկոնեանց,. Վարդանանց, անոնց պատերազմին բնութեան եւ արգեանց, եւ ուր ուրեմն Մեծին Վարդանայ վրայ։ Այս ամէն ուսումնասիրութիւնները ստուար ծանօթութեամբք ճոխացեալ՝ ոչ միայն իրենց ներքին արժանեօք դրուատելի են՝ այլ եւ նորանոր ընդարձակ ուսումնասիրութեանց լայնածաւալ ասպարէզ մը բանալուն համար։ Հոս միայն հեղինակը ներէ մեզ որ իրեն դիտել տանք, թէ Վասակայ վրայ ըրած դատաստանը կը տարբերի ուրիշ մեծանուն քննչի մը դատաստանէն[2]։ Մենք՝

---

1 Եթէ չենք սխալիր՝ Մեծայարգ Գնահատիչը կ՚ակնարկէ Միքայէլ Փորթուգալ Փաշային, որու գործը հրատարակուեցաւ 1903ին. Վենետիկ, Ս. Ղազարու տպարանէն։
Նոր Տ. Հ.

2 Դարձեալ, եթէ չենք սխալիր, այս տեղ ալ Ա. Մ. Գարագաշի կ՚ակնարկուի։ Նոր Տ. Հ.

որ միայն իւր գործը գնահատելու ձեռնարկած ենք՝ յանցանք մը չենք գրեր իրեն այս տարբերութիւնը. բայց միայն դիտել կուտանք թէ այնքան սուր եւ ճշմարիտ դիտողութիւններ ընելէն յետոյ Սիւնեաց աշխարհին դրից եւ պահանջմանց վրայ՝ յիշելու էր նաեւ պահ մը որ մեր ամէն պատմիչք եկեղեցական են եւ թէ շատ բան իրենց մասնաւոր դիտակէտէն նկատած են։

Վերջապէս, Գ. Գիրքը կ'ուսումնասիրէ Սասանեանք, Մոգութիւնը, անոր վարդապետութիւնը, անոր բարոյականը, ծէսերն ու օրէնքը, քրմական կարգը, մոգպետը, Դենեմազդեզան մէջ օտարամոյծ կէտերը, Դենիմազդեզան վարդապետութիւնը եւ Քրիստոնէութիւնը, Հայաստանի քրիստոնէութիւնը Դ. դարուն, անոր վարդապետութիւնը, խորհուրդները, պաշտամունքը, պահքը, տօները, բեմը, պաշտօնէութիւնը, վանականութիւնը, Հայաստանեայց եկեղեցւոյ ոգին, եւ այսու կ'ամբողջացնէ այն ամէն տեղեկութիւնները, որոց պէտքը կը զգացնէ մեզ Եղիշէին ընթերցումը կամ որք կը սատարեն մեզ ամբողջովին հասկնալու Վարդանանց պատմութիւնը եւ այդ դարը, յորում՝ այս դէպք պանծացուցին մեր հայրենի երկիրը։

Եթէ այսպիսի ծանրակշիռ երկասիրութեան մը մէջ ներելի ըլլար ի նկատի առնուլ մանր բիծերը, պիտի խնդրէինք Արգոյ Հեղինակէն ամէն տեղ անստերիւր պահել իւր ոճոյն այդ խնամոտ զգուշութիւնը որ կը փայլի իւր գործոյն վրայ, եւ խորշիլ խորթ եւ օտարոտի

բացատրութիւններէ, որ ուրեք ուրեք սպրդած են իր գեղեցիկ երկասիրութեան մէջ. եւ կամ այսպիսի ծայրայեղ վճիռներէ. “Պատմագիրը (Եղիշէն) վիճաբանական խօսակցութեանց տեղեր ընդլայնում մը կուտայ, լաւ եւս կը ծեծէ-ծէ„: “Եւ թերեւս այդ ՅԱՒԱԿՆՈՒԹԻՒՆՆ է որ ականատեսի մը ՔՆՆԱԴԱՏԵԼԻ ԴԵՐԸ կատարելու մղած է զինք (Եղիշէ՛ն!!!)„:

Այս օրինակ բիծերը ընթերցողին սիրտն ու միտքը միանգամայն ա՛յնչափ աւելի կը վիրաւորեն, ո՛րչափ Յարգոյ Հեղինակին գեղեցիկ քննական եւ մատենագրական յատկութիւնք աւելի պահանջոտ եւ բծախնդիր կ'ընեն ընթերցողը:

Ամփոփելով մեր տեսութիւնն այս ընտիր երկասիրութեան վրայ, պիտի ըսենք որ իր նուրբ եւ խոր հայեցողութեամբք, իր նորանոր լուրջ խուզարկութեամբք, իր ընդարձակ տեսութեամբք եւ զգօն խորհրդածութիւններով, ազգային աւանդութեանց եւ ի մասնաւորի սխրալւոյն Եղիշէի ամէն հետամուտ անձանց ընթերցման արժանի է, եւ փափաքել կուտայ որ այսօրինակ այլ եւս գրութեամբք Արգոյ Հեղինակը ճոխացնէ մեր մատենագրութեան քննադատական ճիւղը: Գուցէ ուրեք ուրեք ամէն ընթերցողք համակարծիք չգտնուին իրեն — եւ այս իսկ է ընդհանրապէս քննադատութեանց ճակատագիրը — բայց ոչ ոք պիտի ուրանայ որ երիտասարդ հեղինակը ո՛եւէ յոգնութենէ — ո՛րչափ տաժանելի ալ ենթադրուի — խոյս տուած չէ իր

*գործն ամբողջացնելու համար։ Ժամանակը որ ամէն բան կը հարթէ, եւ Եւրոպացի մեծանուն քննադատներուն զգուշաւոր ընթերցումը՝ անտարակոյս կը յղկեն ուրեք ուրեք պատանեկան աշխոյժին արդիւնքն եղող խոտութիւնները, եւ աւելի ճոխ մատենադարաններու թարթափումը՝ աւելի ընդարձակութիւն կուտայ իւր խորաթափանց հայեցողութեանց։*

*Ուստի ի նկատի առնելով այն հմտալից շարակարգութիւնն, հայեցողութեանց սրութիւնն ու խորութիւնը, տեսութեանց նորութիւնը, զգուշաւոր խուզարկութիւններն, կորովալի քննադատութիւններն, որովք յոյժ օգտակար եւ հետաքրքրաշարժ կը հանդիսանայ այս գործը, ըստ իմ խոնարհ կարծեաց զայն արժանի կը հրատարակեմ առաջադրեալ մրցանակին։*

*4 Ապրիլ 1898։* Թ. ԹԷՐՋԵԱՆ

# ԳԼԽԱԿԱՐԳ

# ԲԱԲԳԷՆ ՎԱՐԴ.Ի ԳՈՐԾԵՐԸ

## Ա. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. ԿԻԼԻԿԻԱ (*արտատպուած Լումայէն*) *Տփխիս* 1896։ 8° *էջ* 40։
2. ԾՈՎՔ *Տլուք եւ Հռոմկլայ* (*արտատպուած Հանդէս Ամսօրեայէն եւ ճոխացուած սրբագրութիւններով, յաւելուածներով եւ քարտէսով մը*) *Վիեննա*, 1904։ 8° *էջ* Ը+119։
3. ԿՈԼՈՏ *Յովհաննէս Պատրիարք* (*մասամբ արտատպուած Հանդէս Ամսօրեայէն եւ ճոխացուած սրբագրութիւններով եւ յաւելուածներով*), *Վիեննա*, 1904։ 8° *էջ* ԺԴ+227։
4. ԵՂԻՇԷ, *Քննական Ուսումնասիրութիւն* (*պսակուած Յովսէփ Իզմիրեանց մրցանակով, Արտատպուած Հանդէս Ամսօրեայէն*) *Վիեննա*, 1908։ 8° ԻԸ+436։

## Բ. ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

5. ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ՏՕՆԱՑՈՅՑԸ, *Տօնացոյցի եւ Տօներու մասին կարեւոր եւ պարզ գիտելիքներ. տպ. Յ. Մատթէոսեան, Կ.Պոլիս*, 1901։ 8° *էջ* 86։
6. ՄԻՒՆԱՃԱԹ (*Տուա՛ Քիթապը*), *յատկապէս պատրաստուած թրքերէն խօսող Հայոց համար.* ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ, *Յ. Մատթէոսեան. Կ.Պոլիս*, 1904։ 16° *էջ* ԻԳ+304։
7. ՔԱՐՈԶՆԵՐ, *Ա. Հատոր, տպ. Յ. Մատթէոսեան, Կ. Պոլիս*, 1904։ 8° *էջ* ԺԵ+388։

## Գ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

8. ԼՈՅՍ Շաբաթաթերթ Եկեղեցական, *Նոր Շրջան, Առաջին տարի արտ. Վ. Մինասեան (= Գ. Պաղտասլեան)*, Կ. Պոլիս, 1905։ = Հատոր Ա. էջ Ը+1252։ — Հատոր Բ. 1906. էջ Ը+1240։

☞ ԼՈՅՍի *հաւաքածոյները ձեռք բերելու համար պէտք է դիմել* Կ. Պոլիս, *Մէյտանճըգ, Ա. եւ Խ. Խօրասանճեան Թղթավաճառանոցին։* ☜

9. ՑՈՒՇԱՏԱԿԱՐԱՆ Պատմական Գրերու Պարբերականէ (*Յառաջաբան եւ Բնագիր, արտատպուած* Բանասէրէն) *Փարիզ* 1908։ *Միջ.* 8° *էջ* Դ+149։

## ՀՐԱՏԱՐԱԿԵԼԻ

10. ՄԱՑՐ ՑՈՒՑԱԿ Ազգային Մատենադարանի (Կ. *Պոլիս Ղալաթիա*) 300*ի մօտ Ձեռագիրներուն։*

---

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1890: Էջ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Տան Դ., Արեւելեան Հայք ի Բուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Տըվիլէ Ա. եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Ն., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գծակատիպ.) 1893: Էջ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տխտկ. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Փր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անունք 1894: Էջ Թ+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրքհերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Փր. 2.5

ԺԸ. Տիրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրոպոլիսը կամ Նկարագիր Գեռլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., «Վարդապետութիւն առաքելոց» անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ

Ցակոբայ առ Կողբատոս եւ Կանոնք Թադէի:
1896: Էջ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Ֆր. 1.—

ԻԲ Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897. Էջ ԺԵ+107: Ֆր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Սան Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, Էջ Ը+272: Ֆր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Ֆր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ.. Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու աոթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Ֆր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօղուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Ֆր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Ֆր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Ֆր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ.. Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Ֆր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Լ+26: Ֆր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Ֆր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Ֆր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յՇղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հոր. 1780—1825: 1899: Էջ Լ+554: Ֆր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Ֆր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Ֆր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Ֆր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է—Ժ. Խրկար եւ իւր իմաստութիւնն, Ագաթեսու եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Ֆր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Ֆր. 1.50

ԼԹ. Վէբէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ե+77: Ֆր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ

որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Փր. 4.50

ԽԱ. Խալաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Փր. 3.—

ԽԳ. Մարկվարտ Յ., Հայ Բղեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Փր. —.75

ԽԴ. Գելցեր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք. Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 քարտէզով): 1904: Էջ Ը+117: Փր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը Հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.5

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս: Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257:

Փր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺՁ+443:

Փր. 7.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին Հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90:

Փր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին Հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԳ+433:

Փր. 7.—

ԾԶ. Աճառեան Հրաչեայ, Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38:

Փր. —.60

ԾԷ. Բաբգէն Ծ. Վ. Կիւլէսէրեան, Եղիշէ քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458:

Փր. 7.—

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Լ+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յնդիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զընկատիպ.) 1893: Էջ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Ջ+78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տխտկ. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Փր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոբէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անունք 1894: Էջ Թ+145: Փր. 2.—

ԺՁ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա—Ձ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրքհերձուածոց, Պրոկղ եւ Սեւերիանոս: 1895: Էջ ԺԲ+296: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատսիրութիւնք հայազէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Փր. 2.5

ԺԸ. Տիրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., "Վարդապետութիւն առաքելոց" անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ

Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Ֆր. 1.—

ԻԲ Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897. Էջ ԺԵ+107: Ֆր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, Էջ Ը+272: Ֆր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Ֆր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ.. Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Ֆր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօդուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Ֆր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Ֆր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Ֆր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ.. Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Ֆր. 2.50

Լ. *Մսերեան Լ.*, Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Ը+26: Փր. —.50

ԼԱ. *Քօսեան Հ. Յ. Վ.*, Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. *Քօսեան Հ. Յ. Վ.*, Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. *Գովրիկեան Հ. Գ. Վ.*, Հայք յՕղիսաբէթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Ը+554: Փր. 5.—

ԼԴ. *Գազանճեան Յ.*, Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Ը+120: Փր. 1.—

ԼԵ. *Կարրիէր Ա.*, Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Փր. —.70

ԼԶ. *Տաշեան Հ. Յ. Վ.*, Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Փր. 2.50

ԼԷ. *Տաշեան Հ. Յ. Վ.*, Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Ը—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Փր. 4.50

ԼԸ. *Տէր-Պօղոսեան Գր.*, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Փր. 1.50

ԼԹ. *Վէբէր Ս.*, Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ե+77: Փր. 1.—

Խ. *Սանտալճեան Յովսէփ Վ.*, Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ

որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Փր. 4.50

ԽԱ. Խաչաթեաձց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մեձեվիշեաձ Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Փր. 3.—

ԽԳ. Մարկվարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Պէտիկեան: 1903: Էջ 39: Փր. —.75

ԽԴ. Գեցցեր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ Գ. Գալէմքեարեան: 1903: Էջ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլեսերեաձ Բ. Վ., Ծովք. Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 քարտէզով): 1904: Էջ Ը+117: Փր. 1.50

ԽԶ. Կիւլեսերեաձ Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըձ Հ., Նպաստ մը Հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գալէմքեարեան: 1904: Էջ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տեր-Մկրտչեաձ Գ. եւ Աձասեաձ Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Փր. 1.5

ԽԹ. Գովրիկեաձ Հ. Գ. Վ., Հայք յՕդիսաքեթուպոլիս: Գ. Հտր. 1825–1904: Էջ Ժ+658: Փր. 7.—

Ծ. Շտրեք Մ., Հայաստան, Քրդստան եւ արեւմտեան Պարսկաստան քաքելական-աստղերատանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Փր. 3.—

ԾԱ. Խաչաթեաձց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Փր. 1.50

ԾԲ. Պ ե դ ե ր ս ը ն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257:
Ֆր. 5.—

ԾԳ. Հ ի ւ բ շ մ ա ն Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443:
Ֆր. 7.—

ԾԴ. Պ ե դ ե ր ս ը ն Հ., Հին Հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90:
Ֆր. 2.—

ԾԵ. Գ ա ղ է մ ք ե ա ր ե ա ն Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին Հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԳ+433:
Ֆր. 7.—

ԾԶ. Ա ճ ա ռ ե ա ն Հ ր ա չ ե ա յ, Հայերէն նոր բառեր Նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38:
Ֆր. —.60

ԾԷ. Բ ա բ գ է ն Ծ. Վ. Կ ի ւ լ է ս է ր ե ա ն, Եղիշէ քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458:
Ֆր. 7.—